ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆԸ ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է ՀՀ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԵՎ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ
ԵՎ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԵՎ ԳԱԱ ԱՐՎԵՍՏԻ ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ԳԻՏԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ԵՐԱՇԽԱՎՈՐՈՒԹՅԱՄԲ

RAA ԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԳԻՐՔ III (I)

Սամվել Կարապետյան

# ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԱԴՐԲԵՋԱՆԻՆ ԲՌՆԱԿՑՎԱԾ ՇՐՋԱՆՆԵՐՈՒՄ

ՀՀ ԳԱԱ «ԳԻՏՈՒԹՅՈՒՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1999

ԴՏՀ 008
ԳՄԴ 71(2Հ)
Կ–294

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս.
Կ–294 Հայ մշակույթի հուշարձանները Խորհրդային Ադրբեջանին բռնակցված շրջաններում. .–Եր.: ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատ., 1999 – 288 էջ:

ԳՄԴ 71(2Հ)

Գիրքը նվիրված է 1979 թվականից ի վեր, բայց հատկապես 1993–1996 թվականներին RAA կազմակերպության նախաձեռնությամբ Քարվաճառի (Քյալբաջար), Քաշաթաղի (Լաչին), Քաշունիքի (Ղուբաթլի), Զանգելանի, Ջաբրայիլի, Ֆիզուլու, Բայլականի, Աղդամի, Աղջաբեդու, Թարթառի եւ Պարտավի (Բարդա) շրջաններում իրականացված որոնողական եւ հետազոտական աշխատանքների ընթացքում հայտնաբերված պատմական հուշարձաններին: Տեղական մի շարք ճամփորդությունների շնորհիվ կուտակված դաշտային նյութի, ինչպես նաեւ գրավոր աղբյուրների (մատենագրություն, արխիվային վավերագրեր, պարբերական մամուլ, հին ու նոր քարտեզներ) համատեղ ուսումնասիրմամբ ներկայացված են շրջանի բազմաթիվ բնակավայրերն ու հնավայրերը:

Հասցեագրվում է հայ ժողովրդի պատմությամբ ու մշակույթով հետաքրքրվողներին:

Կ $\frac{0505000000}{703(02)\text{-}99}$

ISBN 5-8080-0144-8

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՔԱՐՎԱՃԱՌԻ (ՔՅԱԼԲԱՋԱՐ) ՇՐՋԱՆ

ՔԱՐՎԱՃԱՌԻ
ՇՐՋԱՆԻ
ՊԱՏՄԱԿԱՆ
ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ



## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԸ

***Տարածքը:*** Քարվաճառի շրջանը զբաղեցնում է 1936 կմ$^2$ մակերես, որից շուրջ 140-ը (Մեծ եւ Փոքր Ալ լճերի ավազանը), անջատելով Խորհրդային Հայաստանից շրջանին է կցվել 1923 թ.:[1] Սահմանակից է ԼՂՀ Մարտակերտի (արեւելքից) եւ Քաշաթաղի (հարավից) շրջաններին, ՀՀ Վարդենիսի, Վայքի եւ Սիսիանի (արեւմտյան եւ հարավ-արեւմտյան կողմերից) եւ Ադրբեջանի՝ Դաշքյասանի, Խանլարի (հյուսիսից) շրջաններին:

***Լեռները:*** Շրջանի ողջ տարածքը խիստ լեռնային է ու կտրտված: Շատ են բարձրաբերձ լեռնագագաթները (Գյամիշ՝ 3724.6 մ, Սպիտակքար՝ 3300.4 մ, Քոնգուր՝ 3043.2մ, Իծաքար՝ 3125.8մ, Ցամաքասար (Սուսուզլուղ) 2845 մ, Պահակ՝ 2018.3 մ, Քոշտեռ՝ 2525.0 մ, Լաչին՝ 2261 մ, Քեթի՝ 3399 մ, Երկաթասար՝ 2900.9 մ եւ այլն): Առավել բարձրադիր՝ հյուսիսում՝ Մռավի, արեւմուտքում՝ Ռմբոսյան եւ հարավում՝ Ծավդեից լեռնաշղթաները ձգվում են շրջանի սահմանների երկայնքով:

***Լեռնանցքները:*** Ինչպես նշվեց, շրջանը երեք կողմերից (բացառությամբ՝ արեւելյանի) մեկուսացած է բարձրաբերձ ու ջրբաժան լեռնաշղթաներով: Հաղորդակցությունը հարեւան շրջանների հետ պահպանվում է լեռնանցքների շնորհիվ: Առավել բարձրադիր Մռավի լեռնաշղթայում են Ջնգրլիի (2885 մ), Օմարի (3261 մ) եւ Գյամիշի (3505 մ) լեռնանցքները: Արեւմուտքից շրջանը երիզող Վարդե-

1. *Ինչպես հայտնի է, Մեծ եւ Փոքր Ալ լճերի շրջանը Հայաստանից խլելն ու Ադրբեջանին կցելու որոշումն իրականացվել է Անդրկենտգործկոմի հողային ու անտառային վեճեր լուծող հանձնաժողովի՝ փետրվարի 2-ի նիստի, ապա եւ՝ Անդրկենտգործկոմի նախագահության՝ փետրվարի 18-ի նիստի որոշմամբ: Համաձայն դրա՝ «...որոշվեց 2.000 դեսյատին զբաղեցնող Ալագյոլլարը եւ հարակից արոտավայրերը վերցնել Հայաստանից ու տալ Քուրդիստանի գավառին, այն է՝ Ադրբեջանին»* (**Ռ. Գրիգորյան**, *Հայաստանի սահմանամերձ տարածքների զավթումը Խորհրդային Ադրբեջանի կողմից 1920-30-ական թվականներին, «Առեւտուր», 1996, N16, էջ 6):*

նիսի կամ Ռմբոսկյան լեռնաշղթայում են գտնվում Ռմբոսկյան կամ Սողքի (2400 մ), Նորաբակի (2600 մ) և Վ. Շորժա-Ջայլիկ (2751 մ) լեռնանցքները: Վերջապես՝ հարավում ձգվող Ծավդեից լեռնաշղթան հատում են Նաղդալի-Թախտաբաշի (2045 մ), Լյալյաբաղրլի-Ղազիխանլի (2215 մ) և մի քանի այլ ավելի դժվարանցանելի լեռնանցքներ: Ի դեպ, բուն Քարվաճառի շրջանի տարածքում էլ կան բազմաթիվ լեռնանցքներ, որոնցից հիշատակելի են դեպի Խաչեն և Արաքչուր գետերի հովիտները տանող լեռնանցքները (Քեչիլու-Աղջաքյանդի՝ 2180 մ և Օթախլար-Մրջմանի՝ 1930 մ):

***Գետերը:*** Բարձրլեռնային Քարվաճառի շրջանը բնականաբար հարուստ է բազմաթիվ գետերով ու վտակներով: Լեռնաշխարհի ջրհավաք ավազանով սնուցվում է Հայաստանի խոշոր գետերից մեկը՝ Տրտուն (Թարթառ): Լեռնային աղբյուրներից գոյացած հարյուրավոր վտակները միախառնվելով սնուցում են շրջանի երեք հիմնական՝ Լեւ, Տրտու և Դուտխու գետերը: Այդ և մյուս ավելի փոքր գետերն



Տրտու (Թարթառ) գետի կիրճը վերին հոսանքի շրջանում

ու վտակները մշտահոս են, բայց հատկապես ջրառատ՝ գարնանն ու ամռան սկզբին՝ ձնհալի ժամանակ: Այդ ամիսներին գետերի վարարումները սովորական երեւույթ են: Հաճախ դրանք ողողում են լայնածավալ հովիտներ, քանդում կամուրջներ ու ավերում ճանապարհներ: Այդ է նաեւ պատճառը, որ շատ գետերի ու վտակների վրա կառուցված բազմաթիվ միջնադարյան կամուրջներ չեն պահպանվել կամ պահպանվել են միայն դրանց խելերը:

***Լճերը:*** Շրջանի տարածքում կան մի քանի փոքրիկ լեռնային լճեր: Դրանցից նշանավոր են Մեծ և Փոքր Ալ (թուրք. Ալագյոլ), Գորտագարակ (թուրք. Ղանլիգյոլ), Սեւ (թուրք. Ղարագյոլ) և Ջալխա լճերը: Բոլորն էլ ունեն հրաբխային ծագում և որպես կանոն գտնվում են ալպիական գոտում, ծովի մակերեւույթից ավելի քան 2000 մ բարձրության վրա (Մեծ Ալ՝ 2729 մ, Փոքր Ալ՝ 2739 մ, Գորտագարակ՝ 2056 մ, Ջալխա՝ 3062 մ): Լճերի մեծ մասը սնուցվում է մոտակա աղբյուրներից և ունի ջրհավաք փակ ավազաններ: Միայն Ջալխա և Գորտագարակ լճակներն են, որ սնուցում են համապատասխանաբար՝ Որոտան և Իրիցաջուր գետերը:

***Ջրվեժները:*** Որպես լեռնային, ջրառատ շրջան՝ Քարվաճառը զուրկ չէ նաեւ ջրվեժներից, բայց դրանք, նախ՝ շատ բարձր չեն և երկրորդ՝ գտնվում են ոչ թե հիմնական գետերի, այլ դրանց մանր վտակների վրա: Հիշատակելի են, օրինակ, Լյակզուգետի վրա Ղարագյունեյ գյուղի եզրին գտնվող (բարձր. 5 մ) Լեւ գետի ձախ վտակի վրա (8 մ) և աջ վտակին (5 մ, երկուսն էլ Լեւ գյուղից 2-2,5 կմ հյուսիս-արեւմուտք), Եղցաջրի վրա (3 մ), Գյոյդարա գյուղից 0,5 կմ ներքեւ գտնվող և այլ ջրվեժները:

***Անտառները:*** Չնայած տեղանքի խիստ կտրտվածությանը, այնուամենայնիվ շրջանի տարածքի 28,2 հազ. հա մակերեսը անտառածածկ է: Վերջիններս գլխավորապես տարածված են Տրտու և Դուտխու գետերի հովիտներում ու դրանց հարող նախալեռներում: Ծառատեսակների մեջ գերակշռում են կաղնին, ավելի սակավ՝ փշատերեւ ծառերը: Անտառներն առատ են վայրի մրգատու ծառատեսակներով:

***Արոտավայրերը եւ դաշտերը:*** Զբաղեցնում են շրջանի բարձրլեռնային տարածքների հիմնական հատվածները: Ալպիական գոտիներում դրանք փռված են ծովի մակերեւույթից 2000-2800 մ բարձրության վրա: Ավելի ցածրադիր մասերում դաշտավայրեր գրեթե չկան: Ի դեպ, այս գոտում բազմաթիվ են փարախներն ու անասնապահական համալիրները:

***Հանքային աղբյուրները:*** Հնուց անտի հայտնի են եղել Քարվաճառի բուժիչ հանքային ջրերը: Միջնադարի շատ պատմիչներ զանազան հիշատակություններ են թողել դրանց մասին: Քարվաճառի շրջանի տարածքում բխում են ինչպես սառը, այնպես էլ տաք հանքային աղբյուրներ: Ուշագրավ օրինաչափությամբ բոլոր աղբյուրները բխում են խոր ձորերի կամ հովիտների մեջ, մեծ գետերի ափերից ոչ հեռու: Դրանցից նշանավորներն են, օրինակ, Խոլոզանց գյուղատեղիից 1 կմ հյուսիս-արեւմուտք, Տրտուի աջ ափին (սառը) և նույն գյուղատեղիից 2 կմ հյուսիս-արեւելք, Տրտուի հանդիպակաց երկու ափերին (տաք), Քարվաճառի հյուսիս-արեւելյան եզրին, Բոյախլի գյուղատեղիի մոտ, Տրտուի աջ ափին՝ երկու տեղ (սառը), նույն գյուղատեղիից 2,7 կմ հարավ-արեւելք, Դուտխու գետի ձախ ափին (սառը), Ջիվղարլի գյուղատեղիից 3 կմ հարավ, Դուխպու գետի ձախ ափին (սառը), Ջերմաջուր (թուրք. Իստիսու) առողջարանային ավանի հարա-

վային ծայրում (փաք եւ սառը), Ղալաֆալը գյուղապեղիում (սառը), Ապահեն կամ Տպել (թուրք. Բաշլիբել) գյուղապեղիից 2,5 կմ արեւելք (սառը) գտնվող հանքային աղբյուրները:

***Ճանապարհները:*** Քարվաճառի շրջանում գլխավոր ճանապարհները հիմնականում անցնում են գետահովիտներով եւ առանձին դեպքերում միայն հատում ջրբաժան լեռնաշղթաները: Որպես կանոն, գոյություն ունեցող եւ համեմատաբար բարվոք վիճակում գտնվող ճանապարհները գործել են առնըվազն միջնադարից, իսկ խորհրդային տարիներին դրանք միայն լայնացվել են կամ պատվել կոշտ



*Լեւ գետի կիրճով անցնող Դվին-Պարտավ տարանցիկ հնագույն ճանապարհը*

ծածկույթով (Ջերմաջուր-Խութավան հատվածը): Ուշագրավ է, որ ընդամենը 1-2 տարի չգործածված նորակառույց բազմաթիվ գյուղամիջյան ճանապարհներն արդեն հասցրել են իսպառ քայքայվել ու անհետանալ, իսկ հարյուրավոր տարիներ առաջ, հայերի կողմից պատրաստված ճանապարհները (օր.՝ Ծար-Քարվաճառ կամ Քիլիսալի-Ղուշյուվասի) այսօր էլ պիտանի են ու անցանելի:

Ի դեպ, ներկայիս շրջանի տարածքով էր անցնում միջնադարյան Հայաստանի հնագույն ճանապարհներից մեկը, որը Սեւանի ավազանը միացնում էր Պարտավ քաղաքին:

## ՎԱՐՉԱՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ

Կան աղբյուրագիտական փվյալներ, որոնք առիթ են տալիս կարծելու, որ Քարվաճառի շրջանի տարածքը միավորված եղել է Վանի թագավորության կազմում: Կարեւոր մի հանգամանք. ողջ Արեւելյան Հայաստանում շրջանն առաջիններից էր, ուր սկսեցին տարածվել քրիստոնեական գաղափարները (V դարից սկսած եպիսկոպոսանիստ Դադի վանքն ըստ ավանդության հիմնադրվել է մ. թ. I դարի 2-րդ կեսին քրիստոնեական քարոզչության համար նախատեսված Թադեոս Առաքյալի յոթանասուն աշակերտներից մեկի՝ Դադիի գերեզմանի տեղում):[2] V-VI դարերում շրջանի տարածքը մաս էր կազմում Աղվանից մարզպանության, որը կախում ուներ Պարսկաստանից: Ըստ «Աշխարհացոյցի» շրջանը արդեն իսկ VII դարում պատմական Արցախ նահանգի 12 գավառներից մեկն էր՝ Վայկունիք անունով:[3] Նույն դարի կեսերից մինչեւ VIII դարի վերջերը գավառը ողջ Արցախի հետ միասին գտնըվում էր արաբական տիրապետության ներքո:

IX դարի սկզբներից սկսեց հզորանալ գավառին տիրող հայ Առանշահիկ տոհմը, որի ներկայացուցիչները ամենաեռանդուն կերպով մասնակցում էին հակաարաբական պայքարին՝ միաժամանակ նորոգելով ու կառուցելով պաշտպանական ամրություններ, բերդեր:

Մինչեւ մոնղոլների տիրապետության շրջանը Վայկունիք-Ծարի իշխանության ներկայացուցիչները խնամիական կապերով բարեկամացած էին Զաքարյան զորապետների հետ (մասնավորապես՝ Զաքարե եւ Իվանե իշխանների քույրը՝ Դոփը, ամուսնացել էր տեղական իշխան Հասանի հետ)[4] եւ վայելում էին վերջիններիս հովանավորությունը:

XII-XIII դարերում Ծարի կամ Վերին Խաչենի իշխանության սահմանները զգալի ընդարձակվել էին: Թերեւս, պատճառը Իվանե աթաբեկից որպես օժիտ իշխանուհի Դոփի ստացած կալվածներն էին, որ ձգվում էին Սեւանա լճի հարավային ափի ողջ երկարությամբ՝ Սոդքից մինչեւ Շողվագա հատվածը:[5] Արեւելքում իշխանության սահմանները հասնում էին մինչեւ Ականաբերդ: Այս սահմանների մեջ Դոփյան իշխանությունը կարողացավ մնալ մինչեւ XIV դարի սկզբները: Համենայն դեպս 1312 թ. Խա-

---

*2. **Միխայիլ Ասորի**, Ժամանակագրութիւն, Երուսաղէմ, 1871, հավելված, էջ 33:*

*3. **Անանիա Շիրակացի**, Մատենագրություն, Երեւան, 1979, էջ 295:*

*4. **Գ. Հովսեփյան**, Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, Վաղարշապատ, 1928, էջ 19-20:*

*5. **Կարապետ եպիսկոպոս**, Նիւթեր հայ մելիքութեան մասին, պրակ Բ, Դօփեանք եւ Մելիք Շահնազարեանք, Էջմիածին, 1914, էջ 34 (այսուհետեւ՝ «Նիւթեր հայ մելիքութեան», համապատասխան էջերով):*

չակապի Թարգմանչաց վանքում գրված ավետարանի հիշատակարանում մատնանշված են վերոհիշյալ սահմանները. «...Գրիգոր իշխան Հայոց՝ տէր եւ պարոն Փոքր Սիւնեաց՝ Հանդաբերդոյ եւ Ականոյ եւ բարձր լերանց ծովակին Գեղամայ, Սոթից մինչեւ ի Շաղուագայ եւ գաւառք մեր յանուանէ այս է՝ Սոթ Գլուխ եւ Բերդաձոր եւ Ճոխանց, Հասկաբակս, Ապրենիս, Կալեր, Ուռիաձոր եւ Խորուագետ, Դաւնոց եւ այլ իւրեանց միջոց մազրովն ի մեր նախնեաց մնացեալ հայրենիքէ, իւրեանց չորս սահմանովն...»:[6] Դոփյանների իշխանական տունը մեծ կորուստներ կրեց Լանկթամուրի 1387 թ. արշավանքի ժամանակ: Բացի այն, որ Ծար գավառի բնակչության շրջանում եղան կոտորածներ, նահատակվեցին նաեւ իշխան Հասանը, կնոջ՝ Խոնձայի եւ որդիների՝ «քաջ ու արի պարոններ» Գրիգորի, Սարգսի, Շանշեի, Ջհանշեի, Աղբուղայի եւ Շրվանի հետ միասին:[7] Այսուհանդերձ Դոփյան իշխանությունը կարողացավ իր գոյությունը պահպանել մինչեւ XVIII դարի սկզբները: Այդ ընթացքում արդեն Արեւելյան Հայաստանի որոշ գավառներ թափանցած թյուրքական տարրերը ոչ միայն չէին կարողացել մուտք գործել իշխանության սահմաններից ներս, այլեւ Ծարը, որպես մի ամուր եւ պաշտպանության տեսակետից հուսալի երկրամաս, կայուն ապաստարան էր դարձել թուրք-պարսկական պատերազմների հետեւանքով տեղահանված շատ հայերի համար: Այդպես է եղել, օրինակ, 1552 թ., երբ Շահ-Թամազի դեպի Արեւմտա-Հայաստան կատարած ավերիչ արշավանքի հետեւանքով տեղահանված հայերի մի մասը ապաստան գտավ «ի յապրուածապահ յամուրն Ծար»:[8] XVI դարի վերջերից ողջ Արեւելյան Հայաստանի հետ միասին շրջանի տարածքն էլ գտնվում էր պարսից տիրապետության ներքո, սակայն 1603 թ. Դոփյան Հասանի որդի Ջհանշեի սերունդները Շահ-Աբբասից ստացան գավառի վրա օրինական մելիքության վավերացումը:[9] Ծարի մելիքությունը կարողացավ պահպանել իր գոյությունը մինչեւ XVIII դարի սկզբները: Այդ ընթացքում նորոգվեցին մի շարք բնակավայրերի եկեղեցիներ, կառուցվեցին նորերը: Մելիքների նախաձեռնությամբ ստեղծվեցին նաեւ բազմաթիվ հասարակական նշանակության կառույցներ՝ կամուրջներ, աղբյուրներ եւ այլն: Վավերագրերից ու վիմագրերից հայտնի են այդ շրջանի մի շարք մելիքների անունները: Դրանցից էին օրինակ՝ մեծ իշխան Միրզաջանը (հիշ. 1549 եւ 1552 թթ.),[10] մելիք Բալասանը (հիշ. 1630 թ.),[11] Ջհանգիր բեկը (հիշ. 1676 թ.),[12] Մելիք Միրզախանը (հիշ. 1684 թ.,[13] 1701 թ.)[14] Մելիք-բեկը (հիշ. 1717 թ.)[15] եւ այլն:[16] Սկսած XVIII դարի սկզբներից՝ ավելի ու ավելի հաճախակի կրկնվող թյուրքական ցեղերի հարձակումներն ու պարսկական ծանր հարկահանությունը դժվարին կացության մեջ էին դրել գավառի մելիքներին ու բնակչությանը:[17] XVII դարի վերջին Ծարի մելիքությունը լուծվեց հարեւան Սոդքի եւ Ջրաբերդի մելիքությունների մեջ: XVIII դարի 2-րդ քառորդը գավառի դեռեւս միապարր հայ բնակչության համար առավել ծանր, անգամ՝ օրհասական ժամանակաշրջան դարձավ: Կովկասյան լեռնականների, մասնավորապես՝ լեզգիների թալանչիական արշավանքները իրար հետեւից հաջորդում էին միմյանց:[18] Մյուս կողմից էլ, շրջանի հարուստ արոտավայրերին աչք էին դրել Կուր-Արաքսյան տափաստաններին վաղուց ի վեր փիրացած, ծագումով՝ թուրք եւ քուրդ, քոչվորական խաշնարած զանազան ցեղեր: Սրանք իրենց անհամար հոտերով սկսել էին յուրաքանչյուր տարվա ամառային ամիսներին

6. «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Երեւան, 1950, էջ 84:

7. **Գրիգոր Խլաթեցի**, Յիշատակարան աղէտից. Վաղարշապատ, 1897, էջ 6: «Նիւթեր հայ մելիքութեան», Բ, էջ 84:

8. «Մանր ժամանակագրություններ». հատոր Բ. Երեւան 1956, էջ 275 (այսուհետեւ՝ «ՄԺԲ», համապատասխան էջերով):

9. **Ա. Յովհաննիսեան**, Գեղամայ եւ Ծարայ մելիքների տոհմը, «Բանբեր Հայաստանի գիտական ինստիտուտի», գիրք Ա եւ Բ, 1921-1922, էջ 105-113: **Բ. Ուլուբաբյան**, Խաչենի իշխանությունը X-XVI դարերում, Երեւան, 1975:

10. **Մ. եպիս. Բարխուտարեանց**, Արցախ, Բագու, 1895, էջ 406 (այսուհետեւ՝ «Արցախ» համապատասխան էջերով): «ՄԺԲ», էջ 275:

11. «Արարատ» ամսագիր, 1914, էջ 736:

12. «Արցախ», էջ 406:

13. «Արարատ», 1915, էջ 791:

14. «Դիվան հայ վիմագրության», պրակ 3, կազմող՝ Ս. Բարխուդարյան, Երեւան, 1973, էջ 332:

15. Նույն տեղում:

16. Գավառի տերերի տոհմածառին առնչվող նյութերը տես՝ նաեւ՝ **Ղ. Ալիշան**, Սիսական, Վենետիկ, 1893, էջ 37:

17. Պատմական հիմքից միանգամայն զուրկ են որոշ հետազոտողների այն պնդումները, թե Քարվաճառի շրջանի ներկայիս տարածքը հայաթափ է եղել XVII դարի սկզբին, Շահ-Աբբասի կազմակերպած բռնագաղթի ժամանակ (օրինակ՝ **Հ. Սիմոնյան**, «Նպատակ» N 1, 1995, էջ 1: **Գ. Դեւրիկյան**, «Հանդիպում», 1995, N 9, էջ Դ-Ե կամ **Զ. Թադեւոսյան**, «Ազատամարտ», N 49, 1993, էջ 13): Իրականում XVII դարի սկզբին Ծար գավառի բնակչությունը բռնագաղթի չէր ենթարկվել (այն հեռու էր թուրք-պարսկական ռազմական գործողությունների թատերաբեմից): Ավելին, այնտեղ հանգրվան էին գտել բռնագաղթից խուսափած բազմաթիվ հայեր: «Յորժամ եղեւ գարուն, այս բարեմիտ եւ իմաստուն իշխանս պարոն Մէլիք Շահնազարս, իմացաւ զոխս սրտից Օսման ազգին, հրաման արար երկրիս, թէ «Եկայք մտցուք յամուրս, զի մի լիցուք կոխան այլազգեաց» եւ ինքն գնաց ի Ծար եւ ի Տպէլ: Եւ որք զհետ նորա գնացին, զերծան ի սրոյ եւ ի գերութենէ այլազգեաց» («ԺԷ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», հատոր Ա. Երեւան, 1974, էջ 218): Հարցի առթիվ ավելի մանրամասն տես մեր «Հայ մեծատոհմականները եւ Շահ-Աբբասի չգործած հանցանքը» հոդվածը («Հայք» օրաթերթ, 1995, 13 հունիս, N 105, էջ 7):

18. 1722 թ. կատարված հերթական կործանարար արշավանքներից մեկի մասին պատմում է նաեւ Եսայի կաթողիկոսը («Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի յօրինեալ ի Տ. **Եսայի Աղուանից կաթողիկոսէ Հասան Ջալալեանց**, Յերուսաղէմ, 1868, էջ 37-38):

սփռվել գավառի ամբողջ ալպիական գոտու արոտավայրերում:

XVIII դարի սկզբներին Խամսայի մելիքների օրինակով ազատագրական պայքարի էին նախապատրաստվել նաեւ Ծար գավառի[19] հայերը: Սրանք իրենց տարածքում եւս ստեղծել էին հատուկ զորակայաններ՝ սղնախներ:[20] 1720-ական թվականների վերջերից, սակայն, գավառի շատ գյուղեր կամաց-կամաց սկսեցին պարպվել բնիկ հայ բնակչությունից: Հայաթափումն աննախադեպ ու մասսայական չափեր ընդունեց հատկապես 1724 թվականից հետո, երբ հակառակ արցախահայությանը մինչեւ այդ տված բազմաթիվ խոստումներին՝ կայսր Պետրոս Մեծը, Պարսկաստանից նվաճած մերձկասպյան խանությունները Ռուսաստանի համար ապահովելու միտումով, Թուրքիայի հետ կնքեց պայմանագիր՝ վերջինիս արտոնելով ողջ Անդրկովկասում (մինչեւ՝ Շամախի) վարվել իր հայեցողությամբ:[21] Նույն թվականից երկրամասով մեկ սփռվեցին օսմանյան բանակները, առաջին հերթին պատժելով արցախահայությանը, որոնք իրենց մելիքների գլխավորությամբ եւ ռուսների աջակցության հույսով համարձակվել էին պայքարի ելնել հանուն անկախության:

Սկսված արտագաղթի ընթացքում, որքան ավելի քիչ հայաբնակ գյուղեր էին մնում Քարվաճառի ներկայիս շրջանի տարածքում, այնքան ավելի էր ծանրանում մնացողների վիճակն ու արագանում նաեւ վերջիններիս արտագաղթի ընթացքը:

Դեռեւս 1725 թ. հանգուցյալ Եսայի կաթողիկոսի փոխարեն նրա եղբորը՝ Գրիգոր վարդապետին կաթողիկոս ձեռնադրելուց հետո թեմերի առաջնորդներին եւ իշխաններին հղված ուղերձը (որով գավառի գործակալներին, մելիքներին եւ գյուղավագներին տեղեկացվում էր կաթողիկոսական փոփոխության մասին եւ խնդրվում առաջվա պես հավատարիմ մնալ Սուրբ Աթոռին)[22] վկայում է, որ ի թիվս հարեւան՝ Գանձակի եւ Մաղավուզի[23] գավառների «Ջարուզիբիլու» («Ծարայ») գավառում նույնպես դեռ այդ ժամանակ գոյություն ունեին հայաբնակ գյուղեր: Հիմնական զանգը տեղի է ունեցել 1725 թվականից հետո, եւ հետագա 2-3 տասնամյակների ընթացքում Ծար գավառը գրեթե ամբողջովին հայաթափ է եղել: Ի դեպ, այդ տարիներին արտագաղթի էր դիմել (իր չափերով աննախադեպ) ողջ արցախահայությունը: Անխտիր գաղթել էին բնակչության բոլոր խավերը: Օրինակ՝ Գյուլիստանի մելիքները հանգրվանել էին Կախեթի Թելավ քաղաքում եւ Վրաստանի կազմում գտնվող Գուգարքի Բողնոփոր գավառում (Բոլնիս): Արտագաղթած հայերով համալրվել էին նաեւ բուն Տփղիսի եւ ողջ Քարթլիի բազմաթիվ վրացական գյուղերը: Միայն շուրջ հարյուր գյուղ էին հիմնադրել արտագաղթած արցախահայերը Շաքի եւ Շիրվան գավառներում: Ինչ վերաբերում է Ծար գավառի հայերին, ապա սրանց մեծ մասը նույնպես հանգրվանել էր Վրաստանում: Մասնավորապես հայտնի է, որ Չիրքին գյուղի հայերը վերաբնակվել էին Տփղիսում, Ցանշաղցիները՝ Տփղիսից ոչ հեռու Տաբախմելիք (այժմ՝ Տաբախմելա գյուղը Գարդաբանի շրջանում) գյուղում, Խութավանցիների մի մասը՝ Շուլավերում եւ այլն:

Արդեն 1760-ական թվականներին շրջանի տարածքը գրեթե լիովին հայաթափ էր, բացառությամբ Խութավան գյուղի եւ երբեմնի եպիսկոպոսանիստ ու թեմական կենտրոն Դադի վանքի:

XX դարի սկզբներին շրջանի տարածքում ճամփորդած Մեսրոպ մագիստրոսը գրել է. «Բնիկ հայ ազգաբնակչութիւնը մահմեդական ծով ժողովրդով շրջապատուած, չտոկալով երկար անհաւասար կռիւների եւ հիւսիսի ռուսական «քրիստոնեայ» Պետրոս «Մեծ» կոչւած ցարից խաբուելով, գաղթի դիմեց դէպի այդ ցարի մեծ անապատները, Մոզդոկի ու Ղզլարի շրջաններն, ամայի եւ անմարդաբնակ ձգելով իր բնիկ երկիրը: ԺԸ դարում փոքր չափով կատարվեց այն, ինչ որ ահռելիօրէն կրկնեց «մեծ պատերազմին» Հայաստանի մեծագոյն երկրամասի մէջ»:[24]

XVIII դարի 2-րդ կեսից ամայի լեռնաշխարհը ազատ էր քոչվոր ցեղերի առջեւ, բայց այդ ընթացքում վերջիններս անընդհատ տեղաշարժերի մեջ էին. մասնավորապես՝ ձմռան ամիսներին սրանք լքում էին ամառանոցի վերածված երկրամասի լայնածավալ արոտներն ու իջնում Ուտիքի եւ Առանի (Մուղանի) տափաստանները՝ հաջորդ տարի, ձյան քաշվելուց հետո, նորից վեր բարձրանալու մտադրությամբ:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ խաշնարած ցեղերի՝ գավառի տարածք ներթափանցելու պահին, թեկուզ սակավաթիվ, այնուամենայնիվ մի շարք բնակավայրերում դեռեւս կային հայ բնակիչներ: Համենայն դեպս, մեզ հասած բազմաթիվ թարգմանված կամ աղավաղված գյուղանունները դրա ապացույցն են: Չէ որ նորահաստատ խաշնարածները միայն տեղաբնակներից կարող էին իմանալ տվյալ գյուղի անունը, որն էլ հարմա-

19. *Ի դէպ, արդէն այդ ժամանակներից սկսած օտարների կողմից գաւառի համար գործածական էր դարձել «Քոլան» անուանումը:*

20. *«Հայ ժողովրդի պատմություն», հատոր 4, Երեւան, 1972, էջ 151:*

21. ***Աշոտ Յովհաննիսեան***, *Պետրոս դի Սարգիս Գիլանենց, Վաղարշապատ, 1916, էջ 16:*

22. *ՀՀՊՊԿԱ. ֆոնդ 57. ցուցակ 1. գործ 4. թերթ 1:*

23. *XVII-XIX դարերում ներկայիս Քաշաթաղի (Լաչինի) շրջանը առավելապես հայտնի էր Մաղավուզ անունով:*

24. ***Մեսրոպ մագիստրոս արքեպիս. Տէր-Մովսիսեան***, *Հայկական երեք մեծ վանքերի՝ Տաթեւի, Հաղարծնի եւ Դադի եկեղեցիները եւ վանական շինութիւնները..., Երուսաղեմ, 1938, էջ 84:*

ընձնելով իրենց լեզվական հնարավորություններին՝ աղավաղել ու իմաստային կամ բառացի թարգմանության էին ենթարկել: Օրինակ՝ Երիցուշենը թարգմանվել է՝ Քեշիշքյանդ (քեշիշ=քահանա, քյանդ=շեն/գյուղ), Խնձորեկը՝ Ալմալու (ալմա=խնձոր), Ցրտնոտը՝ Սոյուղբուլաղ (սոյուղ=սառը/ցուրտ, բուլաղ=աղբյուր), Ապահենը՝ Բաշլիբել (բաշ=գլխավոր/հիմնական, բել=մեջք/ հեն եւ ուրեմն՝ ապահով կամ ապառաժ հենարան՝ Ապահեն), Եզնարածանցը՝ Չովդառ (չովդառ=անասնաշուկա, անասնապահ), Սեւաջուրը՝ Ղարասու (ղարա=սեւ, սու=ջուր), Մրջմանը՝ Մարջումակ, Ծարը՝ Զառ, Մոսը՝ Մոզքյանդ եւ այլն:[25]

1813 թ. շրջանի տարածքը վերջնականապես միացավ Ռուսաստանին, իսկ 1868 թ. այն վարչականորեն մտավ Զիվանշիրի գավառի (ուեզդ) մեջ, որն էլ իր հերթին մաս էր կազմում նորաստեղծ Ելիզավետպոլի նահանգի:

Տարածքը՝ Ռուսաստանին միացնելուց հետո կառավարության պահանջով քոչվորների որոշ խմբեր սկսեցին կամաց-կամաց մշտապես հաստատվել մի քանի գյուղատեղիներում, բայց մինչեւ 1850-ականները դրանք խիստ սակավաթիվ էին:

Ուշագրավ է, որ հենց այս շրջանում Արցախի հոգեւորականությունը եւ առաջին հերթին Բաղդասար մետրոպոլիտը սկսեցին եռանդուն կերպով աշխատանք ծավալել հին կալվածագրերով վավերացված Դադի վանքին պատկանած երբեմնի կալվածները օրենքի ուժով քոչվորներից ետ վերադարձնելու ուղղությամբ: Տարիների հետեւողական ջանքերը պտղեցին արդյունք, եւ վանքապատկան տարածքներից 140000 դեսյատին հողատարածքը վերստին անցավ վանքի տնօրինությանը: Այդ կալվածքի տարածքը կազմում էր ներկայիս Քարվաճառի շրջանի մոտավորապես կեսը եւ ԼՂՀ Մարտակերտի շրջանի արեւմտյան սահմանամերձ մասը: Ի դեպ, մինչեւ խորհրդային կարգերի հաստատումը Դադի վանքը տեր ու տնօրեն էր այդ հսկայական կալվածքի, որի եկամուտներով եւ գոյատեւում էր: Սակայն 1920 թվականից հետո, խորհրդային կարգերի հաստատմամբ ու Ադրբեջան անունով հանրապետության ստեղծմամբ՝ իրերի ընթացքը կտրուկ փոխվեց: Նախ՝ Դադի վանքն ամայացավ զրկվելով իր բոլոր կալվածներից, իսկ նորաստեղծ Քարվաճառի շրջանը միացվեց Ադրբեջանին: 1923-ից շրջանը ընդգրկվեց վարչական մի նոր միավորի՝ Կարմիր Քրդստանի կազմում, բայց 1930-ին, վերջինիս կազմալուծումից հետո, Քարվաճառը վերածվեց վարչական առանձին շրջանի՝ Ադրբեջանի Խորհրդային Հանրապետության կազմում:[26] Այդպիսով պատմական Ծար կամ Վերին Խաչեն գավառի տարածքի վրա 1930 թ. կազմավորվեց Ադրբեջանի վարչական 60 շրջաններից մեկը՝ Քյալբաջարը (Քարվաճառ հայաթափ գյուղի անունով), իսկ համանուն գյուղը վերածվեց շրջկենտրոնի: Վերջինս 1960 թվականից վերածվեց քաղաքատիպ ավանի, իսկ 1980-ին ստացավ քաղաքի կարգավիճակ:[27]

1988 թվականից Ադրբեջանի իշխանությունները Քյալբաջարի շրջանը վերածեցին Արցախին թիկունքից հարվածելու հենակետի, բայց Արցախյան ազատամարտի հզոր ալիքը հասավ նաեւ հայոց հինավուրց Քարվաճառին:

1993 թ. մարտի 31-ին Դադի վանքի ազատագրումով սկսվեցին ու հաշված օրերի ընթացքում (ապրիլի 3-ին ազատագրվեց շրջկենտրոն Քարվաճառը) ավարտվեցին ողջ շրջանի ազատագրման գործողությունները:

## ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒ ՆԱԽԿԻՆ ԱՆՎԱՆՈՒՄՆԵՐԸ, ԴՐԱՆՑ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԸՍՏ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅԱՆ

«Քարվաճառի շրջան» անվամբ հայտնի է վարչատարածքային այն միավորը, որը շնորհիվ ջրբաժան բարձրաբերձ լեռնաշղթաներով բնականից առանձնացած կամ մեկուսացած դիրքին, առնվազն վաղ միջնադարից շատ որոշակի սահմաններով ընկալվել է որպես մի առանձին գավառ՝ Արցախ նահանգի կազմում: Վաղ միջնադարի մատենագիր աղբյուրները տարածքը հիշում են Վայկունիք անվամբ (Անանիա Շիրակացի, Մովսես Կաղանկատվացի), բայց հետագա դարերում գավառը բազմիցս հիշվում է «Ծար գավառ» կամ «Ծարա երկիր» անուններով: XII-XIII դարերում Ծար գավառը աղբյուրներում սկսում է հիշատակվել նաեւ «Վերին Խաչեն» անունով (օրինակ՝ Դադի վանքի արձանագրություններում): XVII դարի սկզբներից Ծարը կամ Վերին Խաչենը ավելի հաճախակի, եւ մանավանդ, օտարների կողմից սկսում է կոչվել Ջարուզիբիլ (Ջարուզիվիլ) գավառ:[28] Այս անունն էլ ծագել է իշխանանիստ՝ Ծար (թուրք. Ջառ կամ Ջար) եւ մոտակա Ջիբիլ կամ Ջիվիլ (պատմ. Ջուար) գյուղերի

---

25. *Հարցի առթիվ ավելի հանգամանալից տես մեր՝ «Արդյո՞ք խոպան հայաթափ էր Ծար գավառը խաշնարած ցեղերի ներթափանցման պահին» հոդվածը, «Ար» շաբաթաթերթ, 1995, N 9, էջ 5:*

26. *Փաստորեն Քարվաճառի շրջանը համանուն շրջկենտրոնով կազմավորվել է 1930 թվականին, հետեւաբար ճիշտ չէ այն կարծիքը, թե Ծար գավառը Քարվաճառ անունով իր հայտնի էր արդեն XVII դարից սկսած (տես օրինակ՝* ***Ա. Մելքոնյանի****՝ «Քելբաջարի եւ Լաչինի պատմությունից» հոդվածը, «Հայրենիքի ձայն», N 12, 1993, էջ 6 կամ* ***Հ. Սիմոնյանի*** *հետ հարցազրույցը «Նպատակ», N1, 1995, էջ 1):*

27. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր 5, Բաքու, 1981, էջ 334:*

28. *Ձեռքի տակ ունենք 1630 եւ 1725 թթ. հիշատակումները («Արարատ», 1914, էջ 736 եւ ՀՀՊԿԱ, ֆ. 57, ց. 1, գ. 4, թ. 1):*

անունների միացումից:[29] Վերջինս, ըստ պարսից վարչական բաժանման, Երեւանի բեկլերբեկության գավառներից մեկն էր:[30] XVIII դարի կեսերից ներկայիս Քարվաճառի շրջանը ավելի հայտնի էր Քոլանի գավառ անունով:[31] Սրա ծագումն էլ կապված էր տարածք ներթափանցած խաշնարած ցեղերից մեկի՝ քոլանիների անվան հետ:

Հարկ է նշել, որ այդ նույն ժամանակներում, երբ գավառը օտարների կողմից պաշտոնապես մերթ կոչվում էր Ջարուզիբիլ, մերթ՝ Քոլան եւ կամ Զվանշիր, հայկական աղբյուրները բոլոր դեպքերում գործածում էին հնավանդ՝ Ծար գավառանունը:[32]

## ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

Քարվաճառի շրջանում հայտնաբերված հնագիտական հուշարձանները վկայում են, որ տարածքը բնակեցված է եղել վաղնջական ժամանակներից սկսած: Մասնավորապես հնագույն ժամանակներից ի վեր Տրտուի կիրճում գտնվող մի շարք բնական քարայրներն օգտագործվել են որպես կացարաններ: Բացի այդ, Ջալխա լճի մոտ՝ Այիչինգիլ եւ Փերիչինգիլ լեռների փեշերին, հսկայական ժայռաբեկորների վրա պահպանվել են մ.թ.ա. IV-III հազարամյակներով թվագրվող իծագրեր (ժայռապատկերներ): Դրանց ոճական ու գեղարվեստական առանձնահատկությունները, պատկերների



*Մի նմուշ Զերմաջրից հարավ-արեւելք, Ջալխա լճի մոտ գտնվող ժայռապատկերներից (արտատպված «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան»-ից, h.V, Բաքու, 1981, էջ 334):*

*29. Համանուն գյուղ կար նաեւ Սողքում:*

*30. **Լեո**, Հայոց պատմություն, հատոր 3, գիրք 1, Երեւան, 1969, էջ 56:*

*31. Ջամբռ համաժողովեցեալ եւ շարադրեցեալ ի **Սիմէօնէ կաթողիկոսէ Երեւանցւոյ**, Վաղարշապատ, 1873, էջ 283 (այսուհետեւ՝ «Ջամբռ», համապատասխան էջերով):*

*32. Տես նաեւ մեր՝ «Վերջապես ո՞րն է ճիշտ անվանաձեւը (Քարվաճառ տեղանվան մասին)» հոդվածը, «Հայաստանի Հանրապետություն» օրաթերթ, 1995, 19 ապրիլ, N 89, էջ 2:*

բնույթն ու բովանդակությունը, կատարման արվեստն ու կերպը հար եւ նման են Վարդենիսի ու Սյունիքի լեռներում պահպանված համանման հուշարձաններին:

Տարածքի միջնադարյան շրջանին վերաբերող բազմաթիվ ու բազմաբնույթ հուշարձանների, մասնավորապես՝ գյուղատեղիների, ուսումնասիրությունից պարզվում է, որ հարյուրամյակներ շարունակ, ընդհուպ մինչեւ XVIII դարի առաջին քառորդի վերջերը, շրջանի տարածքում գոյություն են ունեցել շուրջ 140 մեծ ու փոքր գյուղեր: Տարբեր դարաշրջաններին վերաբերող հուշարձանների առկայությունը վկայում է, որ շրջանի տարածքում հայ կյանքը ընդհանրապես չի ընդհատվել կամ ընդմիջվել: Ակնհայտ է նաեւ, որ մինչեւ XVIII դարի 30-ական թվականները գավառի բնակչությունը բաղկացած է եղել բացառապես հայերից: Համենայն դեպս, ըստ մեր ձեռքի տակ եղած՝ խնդրին առնչվող նյութերի, ինչպես պատմական հուշարձանները, այնպես էլ աղբյուրները ակնարկ անգամ չեն պարունակում այն մասին, թե մինչեւ 1730-ական թվականները բացի հայերից շրջանի տարածքում եղել են այլ ազգություններ:

XVIII դարի կեսերից սկսած, արդեն զգալի մասով հայաթափ շրջանը խաշնարած ցեղերի համար վեր էր ածվել այսպես ասած ամառանոցավայրի, իսկ բնիկ հայ բնակչությունը, չկարողանալով դիմակայել լեռնականների, թուրքերի ու փախստականներից ամեն տարի գավառի տարածք թափանցող ցեղերի բազմաբնույթ ճնշումներին (հատկապես՝ գերեվարություն եւ թալան), բռնել էին գաղթի ճամփան:

Ավելորդ չենք համարում մեջբերել հայերի համատարած արտագաղթի մասին ուշագրավ մի դրվագի պատմություն, որը գրի է առել ուսուցիչ Սարգիս Քամալյանը Հաթերք գյուղում, ծերունազարդ Գյուքի պապից՝ 1892 թվականին. «Է՜, վարժապետ. Խութայ վանքը[33] շատ զարմանալի շէն եւ հարուստ է եղել, բայց անիրաւ լէզգիքը թափուրդա արին: Դրանք աներեսի պէս՝ հէնց որ կամ աղն էր պակաս լինում կամ մառը, վազում էին մեր պատերի մօտ եւ նստում ամիսներով, ամեն ինչ պահանջում առօք փառօք վայելում: Վերջը՝ որ յուսահատւում են, դրանց ձեռից ազատուելու համար, խորհուրդ են անում հայ իշխաններն ու մեծերը, այդտեղ լինում է ամբողջ Ջրաբերդին յայտնի Սիպտակ Եղեցը, որ նրանց երկար խօսք ու զրոյցը կտրում է հետեւեալով.- ամենից լաւ հնարն է, վեր կացէք գիշեր ժամանակ ձեր տներում քնոտած շուն-լէզգիներին կոտորեցէք, որ միանգամ աչքները վախենայ, մեր երկիրը ոտք չկոխեն: Այս պատուէրը խիկութեամբ

*33. Խմա՝ Դադի վանքը:*

կապարեց մեծ մասը, բացի մի քանի վախկոտներից: Լէզգիներին կոտորելու լուրը հասաւ Դաղըստան, անթիւ անհամար լէզգիք թափուեցին Խոթայ վանքի մօտերը, ժողովուրդն իւր ընտանիքն առած խոր ծմակներն ապաւինեց, իսկ նրանց թողած տներն ու իրերը կրակի բոցերին մատնուեց: Երկար հարցնելուց յետոյ լեզգիքը իմացան, որ այդ կոտորածը Սիպտակ երեցի (աղ-քէշիշ) խորհրդով է եղել: Վապասրտի մէկը կաշառում, ցոյց է տալիս Սիպտակ երէցի թագստատեղին, որ լինում է մի հընձան: Լէզգիքը հանում են սրան եւ կապաղաբար յարձակուելով ջախջախում են քարերով գլուխը եւ մահացնում: Այդ սոսկալի պատժի ձայնը երբ լսում են, վերցնում են ու որդով, դստրով քոչում այս ու այն կողմը: Այն օրից շատ տարիք անցան ու մեր աշխարհը խաղաղ օր չտեսաւ: Խօթայ վանքում Ս. Նշան կար, մեռնիմ նրա զօրութեանը, չի երեւում, ո՞վ գիտէ որտեղ են տարել կամ ո՞ւր կորցրել»:[34] Ի ամփոփումն Գյուքի ապոր պատմածին Ս. Քամալյանը հավելել է. «Անթիւ ժողովրդի հետ դէպի Գեղամայ ծովի կողմերը գաղթում են Ջալալեանց տոհմի անդամներից ոմանք, իրենց հետ փախցնելով Խոթայ Ս. Նշանը եւ այլ մասունքներ: Հետզհետէ կրկնուող աւերմունքների ու սրածութիւնների մէջ չեն կարողանում աչք բանալ եւ Խոթ վերադառնալ, այլ մի տեղից միւսը պանդխտելով այդ Ջալալեան շառաւիղները ս. մասունքները հասցրել են Բորչալու գաւառի Շուլաւէր աւանը: Այս բանը իմ լսածներիս համեմատ (ինձ ասողը Ջալալեանց ազգից էր, որ դեռ այժմ կենդանի է 86-ամեայ Հեքիմ Խեչօ անունով) պատահել է ԺԹ դարու սկզբին...»:[35]

Հայերի գաղթից հետո, փաստորեն, խաշնարած ցեղերի համար մուտքը՝ դեպի ընդարձակ ողջ լեռնաշխարհ, միանգամայն ազատ էր:[36] XVIII դարի կեսերից սկսած վրանաբնակ ցեղերը, դեռ միայն ամառային ամիսներին, սկսեցին հաստատվել հայաթափ շրջանի տարածքում, մեծ մասամբ՝ հայերից մնացած գյուղատեղիներում: Ի դեպ, խաշնարած ցեղերի՝ շրջանի արոտներին տիրանալու ձգտումը, խրախուսվում եւ հովանավորվում էր Շուշիում ամրացած խաների կողմից: Չնայած դրան, միշտ չէ, որ խաշնարածները դյուրությամբ են մուտք գործել ամայի երկրամասը: Մասնավորապես 1760-ական թթ. տեղի է ունեցել հետեւյալ ուշագրավ դեպքը, որին ականատես էր Հովսեփ Էմինը. ինչպես հիշատակում է Լեոն. «Ճանապարհին Սեւանա լճի մոտ լեզգիները պատահեցին քյոլա̀նի անունով քուրդ թափառական ցեղին, որ գաղթում էր Արարատյան երկրից Ղարաբաղի հյուսիսային լեռնամասերը: Այս գաղթականությունը կապարվում էր Շուշու Իբրահիմ խանի ջանքերով: Ղարաբաղի նորահաստատ խանության համար կարեւոր քաղաքական հարց էր մահմեդական ազգաբնակչություն կազմելը երկրի այն կողմերում, ուր չկար այնպիսի տարր, որը պիտի խանական իշխանության նեցուկը դառնար: Փանահ խանը դավաճանությամբ սողոսկելով զուտ հայաբնակ Խամսայի երկրի սիրտը, շուտ զգաց, որ Շուշու ժայռերը դեռ բավարար հիմք չեն տիրապետություն հաստատելու համար եւ նա շտապեց թուրք թափառական ցեղեր գրավել դրսից՝ հարեւան խանություններից, խոստանալով նրանց զանազան արտոնություններ: Այսպիսով, Վրաստանից եւ այլ տեղերից Ղարաբաղ փոխադրվեցին փյուսյան, կարաչարլի, ջինլի, դամրչի-հասանլի, ղըզըլ-հաջիլի, սաֆի-քյուրդ, բոյ-ահմեդլի, սահաթլի, քենգերլի եւ այլ շատ թափառական ցեղեր: Հոր օրինակին հետեւելով՝ Իբրահիմ խանն էլ ամեն ջանք գործ էր դնում դրսից բերելու նոր մահմեդական տարրեր: Քյոլանի քրդերը դեռ նոր էին հասել Սեւանի ափերին՝ Թարթառ գետի վերին ակունքների լեռնաստանն անցնելու համար, երբ հանդիպեցին լեզգիներին: Համառ ու արյունահեղ կռիվ սկսվեց, որի մեջ, ի վերջո, հաղթող հանդիսացան լեզգիները: Էմինը, որ ներկա էր այդ ճակատամարտին պատմում է, թե լեռնցիները քրդերից վերցրին 814 գերի, 8000 ոչխար, 2000 տավար եւ 600 մատակ ձի: Ստացված ավարը 12.000 թումանի արժեք էր ներկայացնում»:[37]

Այնուամենայնիվ ժամանակի ընթացքում, ինչպես քոլանիները, այնպես էլ ուրիշ խաշնարած թուրք եւ քուրդ ցեղեր մուտք գործեցին հայաթափ երկրամաս, բայց ոչ իբրեւ նստակյաց մշտաբնակներ:

Ահա, թե ինչպես է բնութագրում ժամանակակիցը քոլանի ցեղին. «Քօլանի,- սա մի թիւրք տարր է, որ Ջիվանշիրում նոյն է անում, ինչ որ աւազակ եւ թափառական քրդերը Տաճկահայաստանում: Կերպարանքները՝ դաժան, աչքերը՝ արեան ծարավ, ուսերին՝ հրացան, մէջքներին դաշոյն..., քօլանիները ճակատ առ ճակատ կռուողներ չեն...: Չը բաւականանալով գիւղացիներից արած յափշտակութիւններով, քօլանիները երբեմն յարձակում են եւ վանքերի

34. **Ս. Քամալեանց**, *Խոթայ վանքի Ս. Նշանը, «Արձագանք», 1892, N III, էջ 1–2:*

35. *Նոյն տեղում:*

36. *Ներկայիս Քարվաճառի շրջանի տարածքից բացի 1730-50-ական թթ. ընթացքում բնիկ հայ բնակչությունից դատարկվել էին նաեւ ներկայիս Քաշաթաղի, Ղուբաթլիի, Զանգելանի, Ջաբրայիլի, Քարհատի եւ Խանլարի (վերջին երկուսի հարավային կես մասերը), Գետաբեկի եւ Թոուզի շրջանները, ինչպես նաեւ Սեւանա լճի արեւելյան ափը, Գետիկի հովիտը (Միափոր գավառ) եւ այլ տարածքներ:*

37. **Լեո**, *Հայոց պատմություն, հատոր 3, գիրք երկրորդ, Երեւան, 1973, էջ 303: Տես նաեւ՝ «The Life and Adventures of Joseph Emin, London, 1792, էջ 372: «Դիւան Հայոց Պատմութեան», Գ, Թիֆլիզ, 1894, էջ 494:*

վերայ, սպանում վանահայրերին (Եղիշէ Առաքեալի վանահօրը՝ օրինակ) եւ վանքը թալանում...»:[38] Նրանց ձեռքի գործն էր նաեւ Ջանյաթաղ գյուղի մոտ գտնվող ձիաբուծարանի տնօրեն գերմանացի Վիլմանի սպանությունը:

Այդպիսով, տասնամյակներ շարունակ (մոտ 80-90 տարի) երկրամասը փաստորեն հանձինս այդ ցեղերի չուներ նստակյաց, մշտական բնակչություն:

Երբ, 1830-ական թթ. վերջերին Արցախի հոգեւոր առաջնորդ Բաղդասար մետրոպոլիտ Հասան-Ջալալյանը մեծ ջանքերի գնով կարողացավ դատական կարգով հաստատել տալ Դադի վանքի կալվածների օրինականությունն ու սահմանները, այդ տիրույթներում արդեն հաստատվել էին թափառական շատ ցեղեր (դեռեւս ոչ մշտաբնակ): Ի դեպ, ըստ շահած դատի արդյունքների, կալվածների սահմաններում թեկուզ ժամանակավոր հաստատված ցեղերը որոշակի տուրք պիտի վճարեին վանքին: Իր ժամանակին մետրոպոլիտի ներդրած ջանքերը՝ վանքից խլած կալվածները ետ բերելու ուղղությամբ, համարվել էին անհույս եւ իզուր, բայց հոգեւոր առաջնորդը կարողացավ հասնել իր նպատակին, եւ Դադի վանքը սկսեց ստանալ իր ամենամյա եկամուտները, շուրջ՝ 140000 դեսյատին հողատարածքի վրա հաստատված խաշնարածներից:[39] Ցավոք, առաջնորդի մահից հետո (1854 թ.) նրա հետագա փոխարինողները չկարողացան պահպանել ձեռք բերածը, եւ կալվածների մի մասը հետզհետե կրկին անցավ մահմեդական բեկերի ձեռքը (Մեհտիղուլի խանի Խուրշիդ դստեր, Դավութ աղա-Աղալարովի եւ այլոց): Արդեն 1895 թ. «թիրք ղշլաղներ»-ի թիվն անցնում էր 22-ից (150 տուն):

Ի դեպ, դեռեւս 1870-ական թթ. սկզբներիցցարական կառավարությունը մտադրվել էր տարածքից հեռացնել ավազակաբարո վաչկատուն ցեղերին. «...դեռ նախկին փոխարքայի ժամանակից հրամայուած է Քօլանիներին Ռուսիոյ սահմաններիցը վտարել, բայց դա չէ յաջողուել և կարծես չպիտի էլ յաջողուի, որովհետեւ իսկապէս դժուար գործ է մի ամբողջ համայնք բռնութեամբ հեռուացնել...»:[40]

Այնուամենայնիվ, ստեղծված ծանր պայմաններում էլ ջանքերի գնով հնարավոր էր վիճակը բարեփոխել, եւ դա գոնե մասամբ կարողացավ անել վանքապատկան կալվածներին կառավարիչ նշանակված, թիֆլիսաբնակ Լեւոն Տեր-Ավետիքյանը: Վերջինս, 1913 թ. հարցի առնչությամբ փաստաբանի կարծիքը ստանալուց հետո (ուր մասնավորապես նշված էր. «...կոնսիստորիան թոյլ է տուել այրումցիներին օգտուել կալուածից գիւղացիական իրաւունքներով, այսինքն հողից եւ արօտատեղերից օգտուելու համար վճարելով որոշ տուրք... այրումցիների Խօտավանքի կալուածից օգտուիլը համարւում է ժամանակավոր վարձակալութիւն: Վարձակալութեան ամենաերկար ժամանակը օրէնքով 12 տարուց աւելի չէ, եթէ հաշուենք, որ կոնսիստորիայի տուած վկայականը հաւասար է վարձակալութեան պայմանագրի, ուրեմն օրէնքով համաձայն ժամանակը լրացել է 1896 թուին, որովհետեւ օրէնքով անվերջ պայմանագիր չկայ եւ որովհետեւ այրումցիները յիշեալ թուականից յետոյ էլ շարունակել են օգտուիլ հողերից եւ միշտ էլ վճարել են այդ օգտուելու համար վարձը, ուրեմն պէտք է ընդունել, որ կոնսիստորիան իր լռութեամբ ամեն անգամ նորոգել է մի-մի տարով յիշեալ պայմանը՝ մինչեւ այսօր: Այս հանգամանքներում կոնսիստորիան ամեն րոպէ կարող է դատ սկըսել թուրքերի դեմ՝ կալուածից հեռացնելու համար...»)[41] ձեռնամուխ եղավ կալվածքից թուրքերի վտարմանը: Արդեն 1914 թ. հուլիսին կառավարիչ Տեր-Ավետիքյանը գրել էր. «Յայտարարում եմ Ս. Սինօդին, որ այս տարի շատ չարչարանքներից յետոյ եւ չափազանց դժուարութեամբ մեզ յաջողուեց խլել քիւրտերից եւ այրումներից Խօթավանքի հետեւեալ եայլաղները. Դիւզ-իւրտ, Հաճի-ղայլու, Գամու-իւրտ, Աղդաշ, Արփա-թալա, Բեհբութ-Ալի-իւրտ, Ահմատխան-իւրտ եւ կապալով տալ ուրիշներին, բայց այդ ի դիմաց ամբողջութեան մի փոքր մասն է կազմում...»:[42] 1915 թ. մարտի 31-ին նույն կառավարչի ջանքերով եւ փոխարքայի հրամանագրով եւս 11 ամառանոց ետ էր վերցվել քոչվորներից ու հանձնվել վանքին, որը եւ կապալով, 1 տարի ժամկետով տրվել էր թուրքերին 2250 ռ. վարձով:[43]

Վանքի եկամուտներն, առհասարակ, մինչեւ 1910-ական թթ. անընդհատ կրճատվել են:[44]

Բազմաթիվ վավերագրեր վկայում են, որ միայն 1850-ական թվականներից հետո շրջանի տարածքում երեւան եկան առաջին մշտաբնակ ցեղերը, ո-

38. *«Մեղու Հայաստանի», 1885, N65, էջ 3:*

39. *«Տարազ», 1913, N7-8, էջ 91:*

40. *«Մեղու Հայաստանի», 1885, N 65, էջ 3:*

41. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 18, գ. 968, թ. 1:*

42. *Նշված գործը, թ. 9:*

43. *Նշված գործը, թ. 22: Ի դեպ, կառավարիչը հանդիպելով քոչվորների բուռն դիմադրության, կալվածները վերադարձնելու նպատակով կիրառում էր նաեւ այլ եղանակներ: Դրանցից ուշագրավ է, օրինակ, նրա մի մտահղացումը, ըստ որի ծրագրված էր թուրքերից, հենց՝ թուրքերի միջոցով հողերը վերադարձնել՝ (1914-ին 1 տարով Դադի վանքի «Բեյբութ-Ալի-Յուրտ» ամառանոցը կապալով տրվել էր Գանձակի գավառի Խանքարվենդ գյուղի 4 թուրք բնակիչների), ինչն ի վերջո արդյունք չէր տվել, քանի որ այրում թուրքերը սրանց դեմ եւս ընդդիմացել էին (ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 1127, թ. 4): Տես նաեւ մեր՝ «Քարվաճառի ազատագրումը սկսվել է 1913 թվականին» հոդվածը, «ՀՀ», 1995, 13 մարտի, N 52, էջ 2:*

44. *Տես՝ ներկա աշխատության Դադի վանքի (պատմություն) բաժինը:*

րոնք, իրենց համար բնակության վայրեր ընտրելով հին գյուղատեղիներն, անցան նստակյաց կենցաղավարության: Հայտնի է, որ 1861 թ. շրջանի ամբողջ տարածքում ապրում էին շուրջ 100 տուն «ալիանլուեցի բարբարոս քոչանիներ» եւ կազմում էին 14 փոքրիկ գյուղ:[45] Ավելի վստահելի ու ստույգ է թվում 1865 թ. կազմված մեկ այլ վիճակագիր, ըստ որի շրջանի տարածքում գոյություն ունեին ընդամենը 9 նորաստեղծ գյուղ՝ 102 տուն բնակչությամբ:[46]

Ի դեպ. «...մինչեւ... 84-87 թթ. նրանք (թյուրք եւ քուրդ ցեղերը-Ս. Կ.) իրենց պապերից ժառանգած արհեստով էին պարապում՝ աւազակութեամբ: Երբ վերջին ժամանակներս կառաւարութիւնը ուշադրութիւն դարձրեց դրանց բարբարոսութիւնների վրայ ու զանազան միջոցներով ստիպեց թողնել աւազակութիւնը, սկսել են պարապել գիւղատնտեսութեամբ, բայց միայն Ալլահը կարող է իմանալ այդ գիւղատընտեսութիւնը: Նրանք միայն պարապում են անասնապահութեամբ, թէեւ ոչ բաւի բուն նշանակութեամբ...»:[47]

Ի դեպ, 1905-06 թթ. հայ-թուրքական ընդհարման ժամանակ կալվածները մնացել էին բարձիթողի վիճակում, եւ այդ ժամանակահատվածում որեւէ կառավարիչ չէր համարձակվել մտնել թուրքերով ու քրդերով բնակեցված վանքապատկան կալվածները: Հասկանալի է, որ Դադի վանքն այդ տարիներին ընդհանրապես զրկված է եղել որեւէ եկամուտից, մինչեւ անգամ «ընդհարումների ժամանակ թիւրքերը եւ քրդերը ձեռնարկել էին հրդեհել անտառները, բայց չէր յաջողուել, միայն ջարդել են մօտ 50.000 ռուբլու ծառեր, որոնք մնում են անտառում թափուած...»:[48] Ի դեպ, 1906 թ. քոլանեցի ավազակապետ Ասկարխանը, նոր տեսակի հրացաններով զինված 50 քուրդ ձիավորների գլուխ կանգնած, մինչեւ իսկ մտադրություն էր ունեցել հարձակվել հայաբնակ մեծ գյուղերի՝ Հաթերքի եւ Վանքի վրա:[49]

Դադի վանքին պատկանող կալվածների հատակագիծը՝ կազմված 1913 թ.
(բնօրինակը պահվում է ՀԱՊԿԴ արխիվում, ֆ.57, ց.1, գ.400, թ.1)

Անմխիթար վիճակում էր նույնիսկ կալվածների յուրատեսակ «վարչական կենտրոն» Դադի վանքը: Հայտնի է, օրինակ, որ 1890-ին այստեղ ոչ միայն միաբաններ, այլեւ վանահայր իսկ չկային եւ վանքի բազմաթիվ շինություններին տիրացել էր մի քոլանեցի ոչխարապահ սեիդ մոլլա, որին կարողացել էր դուրս վռնդել Մեծշեն գյուղի տանուտեր Բախիշ-բեկը:[50]

Փաստորեն հայ-թուրքական ընդհարման հետեւանքը՝ անիշխան ժամանակահատվածը թափառական նորանոր ցեղերին բացառիկ հնարավորություն ընձեռեց մուտք գործել տարածք եւ նորանոր «ղըշ-

45. «Նոր-Դար» օրաթերթ, 1885, N 104, էջ 4:
46. «Արարատ» ամսագիր, 1910, ապրիլ, էջ 58:
47. «Նոր-Դար», 1892, N 15, էջ 2:
48. ՀՀՊԴԿԱ, ֆ. 57, ց. 2, գ. 1851, թ. 2-3:
49. «Մշակ», 1906, N70, 31 մարտի, էջ 1:
50 «Նոր-Դար», օրաթերթ, 1890, N 158, էջ 3-4:

լաղներ» հիմնել: 1910 թ. դրանց թիվը հասել էր 40-ի՝ շուրջ, 1000 տուն բնակչությամբ:[51]

1911 թ. կալվածների դրությանը ծանոթանալու նպատակով շրջանում ճամփորդած Մեսրոպ արքեպիսկոպոսը նշում է, որ նորաբնակ ընտանիքների թիվը հասել էր 200-ի. «Կալուածքի ընդարձակութեան մէջ բնակւում էին ընդամենը մօտ երկու հարիւր ընտանիք «քիւրդեր», փոքրաթիւ ընտանիքներով առանձնացած, իրենց խաշնարածական կեանքով»:[52] Ուշագրավ են նաեւ արքեպիսկոպոսի այն հիշատակումները, որոնք վերաբերում են առանձին գյուղերի նորահաստատ բնակիչների թվին: Օրինակ՝ Չափնի գյուղի մասին Մեսրոպ արքեպիսկոպոսը վկայում է. «Լեւ գետի հոսանքով առաջ ընթանալով հասանք մի աւերակ գիւղատեղիի, որի մերձակայքում 12 ջրաղացի աւերակներ՝ նախկին բազմաթիւ բնակիչների չափանիշն էր, իսկ այժմ նոյն ընդարձակ տեղերում ապրում է միայն մի բազմանդամ այրում ընտանիք, ամեն տեսակ անասունների մեծ հօտերով, որ օգտագործելով շրջապատի անմարդաբնակ դարձած տեղերը, միջնադարեան աւատական իշխանի դիրք էր ստեղծել իր համար, աւելի օգտվելով կալուածքից, քան կալուածատէր Ղարաբաղի հայոց հոգեւոր իշխանութիւնը կամ Էջմիածնի վանքը»:[53] Նույն՝ 1911 թվականին մոտակա Քեշիշքյանդ գյուղատեղիում հաստատվել էին երեք ընտանիք խաշնարածներ:[54]

Թափառական ցեղերի նստակեցության անցնելու գործընթացն ավարտվեց միայն խորհրդային տարիներին (մինչեւ 1930-ական թվականները):

Կարմիր Քրդստանի կազմալուծումից (1930 թ.) անմիջապես հետո, դեռեւս սակավաբնակ Քարվաճառի շրջանը թուրք տարրով համալրելու նպատակով, Ադրբեջանի իշխանությունները սկսեցին իրականացնել մի շարք վերաբնակեցումներ, մասնավորապես՝ այլ շրջաններից դեպի Քարվաճառի տարածք փոխադրել զգալի թվով թուրքերի: Ի դեպ, Ադրբեջանի իշխանությունները մտահոգ էին ոչ միայն շրջանի թուրք բնակչության թվաքանակը ավելացնելու, այլեւ տեղի քրդերին էլ թուրքացնելու խնդրով: Այդ նպատակով կազմակերպվեցին տեղի քրդերի որոշ մասի տեղահանումներ եւ վերաբնակեցումներ՝ քրդական միջավայրից հեռու, այլ շրջաններում: Ինչ վերաբերում է Քարվաճառում մնացած քրդերին, ապա նրանց համար ստեղծվեցին այնպիսի պայմաններ, որպեսզի ամենակարճ ժամանակում նրանք կորցնեն ազգային նկարագիրն ու ինքնագիտակցությունը: Ի դեպ, զուտ քրդաբնակ էին՝ Ջայլիկ, Աղջաքյանդ, Շուրթան, Օրուջլու, Խալանլի, Սոյուղբուլաղ եւ այլ գյուղերը:[55] Հարկ է նշել, որ տեղի քրդերի դեմ պայքարը սկսվել էր դեռեւս 1918-20 թվականներին՝ մուսավաթական կառավարության կողմից, որի քաղաքականությունը որդեգրվեց ու հետեւողականորեն շարունակվեց «խորհրդային» դիմակի տակ թաքնված Ադրբեջանի թուրքական իշխանությունների կողմից: Սրանց նպատակամղված գործունեության արդյունքն էր, որ 1920-ական թվականների վերջերին Քարվաճառի շրջանում մնացել էր միայն 11 քրդաբնակ գյուղ:[56]

Այնուամենայնիվ 1918-ից մինչեւ 1960-ականների վերջերը հնարավոր չեղավ անել այն, ինչ արվեց 1970-90 թվականներին: Արդեն 1980-ին շրջանի 1 կմ$^2$ վրա բնակչության միջին խտությունը հասցրված էր 21 մարդու, իսկ ողջ շրջանն ուներ 122 գյուղական եւ 2 քաղաքային բնակավայր՝ 40.300 բնակչով:[57] Ընդ որում, այլեւս միատարր «թուրք» բնակչությամբ, քանի որ բոլոր քրդերը գրեթե վերջնականապես կորցրել էին ցեղային նկարագիրն ու թուրքացել: Մինչեւ 1988 թ. շրջանի բնակչությունը շարունակել է աճել (առավելագույնը՝ շուրջ 42.000), բայց այնուհետեւ մինչեւ 1993-ը փոքր-ինչ նվազել է:

Ի վերջո հայտնի չէ, թե հայոց, բայց հայազուրկ այս երկրամասում էլի քանի թուրքի գյուղ կամ բնակիչ կավելանար, եթե արցախյան ազատամարտի հզոր ալիքը 1993 թ. ապրիլին չհասներ այդտեղ: Ընդհանրացնենք. թուրք եւ թուրքացած քուրդ բնակչությունը Քարվաճառի (Քյալբաջարի) շրջանի տարածք մուտք էր գործել առավելագույնը՝ 250 տարի առաջ եւ միայն վերջին 130-140 տարին էր վարել նստակյաց կյանք:

## ԲՆԱԿԱՎԱՅՐԵՐԸ

Լեռնաշխարհի բնական պայմանների թելադրանքով, դեռեւս միջնադարում գրեթե բոլոր բնակավայրերը հիմնվել են գլխավորապես գետերի կամ դրանց վտակների ափերին, հովիտներում: Պաշտպանական նկատառումներով որոշ բնակավայրեր հիմնվել են բնականից դժվարամատչելի տեղերում՝ անշուշտ հաշվի առնելով ջրի առկայության հանգա-

51. *«Արարատ» ամսագիր, 1910, ապրիլ, էջ 58:*

52. ***Մ. Տէր-Մովսիսեան**, նշվ. աշխ, էջ 84:*

53. *Նշվ. աշխ., էջ 93: Այս մասին ավելի որոշակի տվյալներ է պարունակում 1913 թ. մի վավերագիր, որտեղ նշված է, թե Չափնիի բնակիչ, տեղական ավագ, այրում Հասան Քերբալայ Ալի օղլին ուներ 2000 գլուխ խոշոր եղջերավոր անասուն (ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 18, գ. 968, թ. 13):*

54. *Նույն տեղում:*

55. ***Գառնիկ Ասատրյան, Նիկոլայ Գեւորգյան**, Ադրբեջան. յուրացման սկզբունքը եւ իրանական աշխարհը, Երեւան, 1990, էջ 19:*

56. ***А. Букшпан**, Азербайджанские курды, Баку, 1932, էջ 34-36, 61, 72: Տես նաեւ՝ **Աշոտ Մելքոնյան**, Քելբաջարի եւ Լաչինի պատմությունից, «Հայրենիքի ձայն», 1993, N 12, էջ 6:*

57. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր V, Բաքու, 1981, էջ 334:*

մանքը: Նման օրինակ է իշխանանիստ Ծար գյուղը, որը տարածված է ծովի մակերեւույթից 2050 մ բարձրության սարահարթի վրա եւ ձորով հոսող Տրտու գետի ափից (1730 մ) բարձր է ավելի քան 300 մ:

Քարվաճառի շրջանում գյուղերն իրենց կառուցապատման բնույթով խիստ տարբերվում են եւ հիմնականում բաժանվում են երկու խմբի: Այն գյուղերը, որոնք գոյացել են հայաթափ գյուղատեղիների վրա, տեղի են տվել արդեն առկա կառուցապատման առանձնահատկություններին, հարմարվել են եղածին: Դրանք աչքի են ընկնում ոչ մեծ տարածքի վրա խիտ կառուցապատմամբ, թեկուզ ոլոր-մոլոր, բայց շատ որոշակի փողոցների առկայությամբ, տների ու մյուս շինությունների կառուցման տեղի ընտրությամբ (ոչ թե արգավանդ հողերի, այլ՝ ապառաժների վրա): Հակառակ դրան՝ խորհրդային տարիներին հիմնված թուրքական գյուղերն ունեն անկանոն ու ցրված կառուցապատում, երբեմն 20-25 տուն ունեցող գյուղը զբաղեցնում է 1.0-1.5 քկմ մակերես, լրիվ բացակայում են փողոցները, մինչեւ անգամ գյուղը՝ գյուղի հետ կապող ճանապարհները, յուրաքանչյուր աղբյուրի մոտ առատորեն կառուցված են ընդարձակ գոմեր, անասնաշենքեր: Այդ տարբերություններն այնքան ակնառու են, որ փոքրինչ փորձված յուրաքանչյուր ոք, մտնելով որեւէ գյուղ, խկույն կարող է նկատել, թե այն թուրքե՞րն են հիմնել, թե՞ «ժառանգություն» են ստացել արտագաղթած բնիկներից:

Քարվաճառի շրջանի երբեմնի հայկական բնակավայրերի բոլոր անվանումներն ու ամբողջական թվաքանակը ամբողջությամբ հայտնի չեն: Ցավոք, այս գավառի մասին մեզ չի հասել այնպիսի համապարփակ մատենագրական աշխատություն, ինչպիսին է օրինակ՝ Ս. Օրբելյանի աշխատությունը Սյունիքի գավառների մասին, ուր հիշված են բոլոր գյուղերն անուն առ անուն: Հետեւաբար, որպեսզի գոնե մասամբ լրացրած լինենք այդ բացը, ի մի ենք բերել մատենագրական, վավերագրային եւ վիմագիր բոլոր այն հիշատակումները, ուր տարբեր առիթներով հիշված են գավառի այս կամ այն գյուղը, ագարակը, հանդամասը եւ այլն: XII-XVIII դդ. թվագրվող այդ հիշատակումների համեմատական եւ ստուգաբանական ուսումնասիրության շնորհիվ բացահայտվել են որոշ բնակավայրերի պատմական անվանումները, դրանց հետագա անվանափոխումներն ու աղավաղումները: Սկսած XVIII դարի 30-ական թվականներից՝ հայաթափ շեների մեծագույն մասը պարբերաբար անվանափոխվել է: Այդ կերպ շատ հին տեղանուններ մոռացության են մատնվել եւ փոխարինվել օտարաշունչ տեղանուններով: Լավագույն դեպքում հին անունները մեզ են հասել թարգմանաբար կամ աղավաղումներով եւ հազվադեպ միայն՝ պահպանել իրենց նախնական, անաղարտ անվանաձեւը (օր. Լեւ, Մոս):

Ստորեւ ներկայացվող աղյուսակում ըստ ժամանակագրության ցուցակագրված են շրջանի տարածքում գտնվող բոլոր այն բնակավայրերը, որոնց մասին առկա են գրավոր հիշատակություններ:

Բացի աղյուսակում նշվածներից, աղբյուրներում հիշատակված են նաեւ մի շարք այլ տեղանուններ (մեծ մասամբ գյուղանուններ), որոնց տեղադրության հարցը, սակայն, դեռեւս մնում է չպարզված: Անշուշտ դրանց մեծ մասն աղյուսակում նշված թուրքական անվանումների պատմական-հայկական տարբերակներն են, բայց թե դրանցից որը ներկայիս ո՞ր գյուղի նախնական անունն է, դժվար է որոշել: Այդպես անհայտ ու անհաւսցե են մնում XII-XVIII դարերում հիշված՝ Հավար, Գրիգորաթաղ, Բերդաքար, Ծովատեղ, Ծաղիկանց,[58] Կռապաշտոց, Սոխանանց, Ջաջռանց, Պետրոսաբակ, Չոլեկյանց, Ողնով, Զագունյանց Ագարակ, Արախիշ (Րախիշ), Դաշտակ, Մարդաղունեանց Սբ. Նշան, Ցրագետ Անապատ, Գումեր, Կաժ, Անուխս, Հաճար, Ճումեն, Քարատակ, Խրանց, Մոթանց, Փոքր Դավաչխուր, Խոզենեկ եւ Խոզենակուց Մեծ Այգի, Մանանաձոր եւ այլ տեղավայրերի անվանումներ:

Տեղադրությամբ հայտնի ու անհայտ մի շարք գյուղեր ու վանքեր միջնադարում հանդիսացել են գրչօջախներ: Դրանցից են՝ Դադի եւ Գետամիջո վանքերը, Ցրագետ Անապատը, Ապահեն կամ Տպել (թուրք.Բաշլիբել), Արախիշ կամ Րախիշ (տեղադրությունն անհայտ), Դաշտակ (տեղ. անհայտ), Մոս (այժմ՝ Մոզքյանդ) եւ Քարվաճառ գյուղերը:

Շրջանի ազատագրման նախօրյակին, ըստ պաշտոնական աղբյուրների, Քարվաճառի տարածքում կար 122 գյուղ: Բացառությամբ մի քանիսի (օր. Ջառ, Ջըլփդարլի, Ջայլիկ, Ղըլչլի, Բաշլիբել), ուր յուրաքանչյուրում մինչեւ 200 տուն բնակիչ կար, մնացած գյուղերի մեծ մասը բաղկացած էր 30-60 տնից: Քիչ չէին նաեւ այնպիսի «գյուղերը», որ կազմված էին մինչեւ 10 տնից (օր.՝ Ալչալի, Ղուշչուվասի, Օթախլար, Սարիգյունեյ, Օրդշլար, Ղազիխանլի, Ղալաֆալըղ, Ղալաբոյուն եւ այլն): Փաստորեն բավականին ընդարձակ շրջանը պատված էր մանր գյուղերի խիտ ցանցով, որոնց՝ միմյանցից միջին հեռավորությունը կազմում էր 3,0-3,5 կմ: Ի դեպ, մի շարք փոքր գյուղակներ, որոնք այնուամենայնիվ ստացել էին գյուղի կարգավիճակ, իրականում կառուցապատված էին ավելի շատ գոմերով, քան բնակելի շենքերով:

---

*58. Ենթադրում ենք, որ Ծաղիկանցը ներկայիս Չիչակլի լեռան անվանումն է եղել (նկատի ունենք հայերենից թուրքերեն բառացի թարգմանված լինելու հավանականությունը):*

Ավելի քան երկու տասնյակ գյուղեր ծնունդ են առել 1960-ական թվականներից հետո: Նույն ժամանակամիջոցում էլ զգալի ընդարձակվել են եղածները, իսկ շրջկենտրոնն այդ ընթացքում պարզապես







*Քարվաճառ (Քյալբաջար) քաղաքի հատակագիծը 1952 եւ 1972 թվականների դրությամբ*

քառապատկվել է իր զբաղեցրած մակերեսով (համեմատիր՝ 1952 եւ 1972 թթ. հատակագծերը) եւ տասնապատկվել՝ բնակչությամբ:[59]

Ստորեւ ներկայացնում ենք շրջանի տարածքի բնակավայրերի անվանացանկը՝ ըստ ժամանակագրական անվանափոխության պատկերի:

| Հերթական համարը | Բնակավայրի անունը խորհրդային տարիներին | անվանումը 1812-1920 թթ. | անվանումը 1600-1812 թթ. | անվանումը V-XVI դարեր |
|---|---|---|---|---|
| 1 | Աբդուլլաուշաղի | Մեծ Աբդուլլաուշաղի | | |
| 2 | Ալի-Բայրամլի | Կույուղայասի | | |
| 3 | Ալիրզալար | Թոփալ-Իրզա | | |
| 4 | Ալլիքյանդ | - | | |
| 5 | - | Ալլահվերդի | | |
| 6 | Ալմալըղ | Չայքյանդ | Խնձորեկ | |
| 7 | Ալոլար | - | | |
| 8 | Ալչալի | Ալչալի | | |
| 9 | Ալչալի | - | | |
| 10 | Ալչալի | - | | |
| 11 | Աղդաբան | Աղդաբան | | |
| 12 | Աղդաշ | - | | |
| 13 | - | Աղզիբիր | | |
| 14 | Աղդայա | - | | |
| 15 | Աղյաբաղ | Աղյաբաղ | | |
| 16 | Աղջաքյանդ | Մեծ կամ Վ. Ասրիկ | Սեւաքո՞ւր | |
| 17 | Աղջաքյանդ | - | | |
| 18 | Ասրիկ | Փոքր կամ Ն. Ասրիկ | | |
| 19 | Աշաղա (Ներքին) Այրում | | - | |
| 20 | Աշաղա (Ներքին) Խաչ | - | | |
| 21 | Աշաղա (Ն. Ղարաչանլի) | | - | |
| 22 | Աշաղա (Ն. Շուրբան) | Շորոբան | | |
| 23 | Արմուդլի | Գոխուա | | |
| 24 | Բաբաշլար | - | | |
| 25 | Բաղըրփայա | Բաղլիփայա | | |
| 26 | Բաղրլու | - | - | Իգածո՞ր |
| 27 | Բաղրսաղ | Բաղրսան (Բաղրսի) | Բարսղիշեն | |
| 28 | - | Բաղրսաղ | | Բաղանիք |
| 29 | Բաշլիբել | Բաշտուբել (Սեյիդլար) | Արահեն (Տոել) | Արահեն |
| 30 | Բաշ-Ղարաչանլի | Խաչդարչի | | |
| 31 | Բաշքյանդ | - | | |
| 32 | Բարմախբինա | - | Բորո՞ւ | |
| 33 | Բեգիրխանա | - | | |
| 34 | Բոզլու | - | | |
| 35 | Բոյախլի | - | | |
| 36 | - | Գյոզդի (Գյուզլուբուլաղ) | | |
| 37 | Գյոյդերե | - | | |
| 38 | Գյունեփայա | Գյունե Փայա | | |
| 39 | Դամրչիդամ | Դամրչիլյար | Դարբնո՞ց | |
| 40 | Դերեղըլաղ | - | | |
| 41 | Ելիջա | Մաշադի | | |
| 42 | Ենիքյանդ | Ալլաղայա | | |
| 43 | Զայլիկ | Զայլիկ | | |
| 44 | Զառ | Զառ | Մեծ Ծար | Ծար |
| 45 | Զարխուլու | Զարխուլու (Զարկու) | | |
| 46 | Զիվիլ | Զիբիլ (ավերակ) | Զուար | |
| 47 | Զուլֆուխարլի | Զիլփղարլու (Հաքամ-բեկլի) | | |
| 48 | Էյլասալիլար | Էլլա Զալլար | | |
| 49 | Թազաքյանդ | - | | |
| 50 | Թաթլար | Թազախարաբի | | |
| 51 | Թախտաբաշի | | | |
| 52 | - | Թախտամ | | |
| 53 | Թաքդամ | - | | |
| 54 | Թաքյադայա | Թաք-դարասի | | |
| 55 | Թիրքեշեւենդ | Թուրքիշեւան | | |
| 56 | Թովլեդերե | - | | |
| 57 | Իմամբինասի | - | | |
| 58 | Իստիբուլաղ | Իստիբուլաղ | | |
| 59 | Լաչին | Լաչին | | |
| 60 | Լեւ | Լեւքյանդ | Լեւ | |
| 61 | Խալանլի | Դավաչխուր | Մ. Դավաչխուր | |
| 62 | Խոլազեյ-Ալխասլի | Խոլոզյակ (Խայուտցոկ) | Խոլոզանց | |
| 63 | Խոփուրլի | - | | |
| 64 | Հասանլար | Հաջիբաբա | | |
| 65 | Ղազիխանլի | Կոբուրլի | | |
| 66 | Ղալաբոյուն | Մ. Կոբուրլի | | Կոդուր |

*59. Տես՝ **Ս. Կարապետյան**, Ինչպե՞ս էին յուրացնում հայկական հողերը (Քարվաճառ քաղաքի օրինակով), «Ազատամարտ», 1994, N 40, էջ 13:*

| | | | | |
|---|---|---|---|---|
| 67 | Ղալաֆալըղ | - | | |
| 68 | Ղամշլի | Աղայար | | |
| 69 | - | Ղայադուբալա | | |
| 70 | Ղանլիքյանդ | - | | |
| 71 | Ղասըմբինասի | - | | |
| 72 | Ղարագյունեյ | Ղարագյունեյ | | |
| 73 | Ղարագյունեյ | - | | |
| 74 | Ղարախանչալի | Փարի (Նարա) | | |
| 75 | Ղարաջանլի | Փ. Աբդուլլաուշաղի | | |
| 76 | Ղըշլի | Ղըշլի | | |
| 77 | Ղըշլի | Կալըշտի | | |
| 78 | Ղուզեչիրքին | Չիրքին | | |
| 79 | Ղուշյուվասի | - | | |
| 80 | Մամեդսափի | Մամեդ-Սափի | | |
| 81 | Մամեդ ուշաղի | Ուլուխան | | |
| 82 | - | Մարալդամի | | |
| 83 | Մարջումակ | Մարջումեկ | Մրջման | |
| 84 | - | Մեյդան | Մեյտան | |
| 85 | Միլլի-1 | Քյոբանլի | | |
| 86 | Միլլի-2 | Միլլի | | |
| 87 | Միլլի-3 | - | | |
| 88 | Միշնի (Միշլի) | - | | |
| 89 | - | Միշնի | | |
| 90 | Մոզքյանդ | Մոզ | Մոս | Մոս |
| 91 | Յանշաղ | Յանշախ | Եանշաղ | Յանշաղ |
| 92 | Յանշաղբինա | - | | |
| 93 | Յուխարի (Վերին) Այրում | Այրում-դարասի | | |
| 94 | Յուխարի (Վերին) Շուրբան | - | | |
| 95 | Նադրխանլի | - | | |
| 96 | Նաջաֆալիլար (Բյագիրխանա) | | - | |
| 97 | Շահքյարամ | Շիքերան | | |
| 98 | Շափլար | Ֆարխանլի (Փարխանլի) | | |
| 99 | Շեհնլի | Շահդամ | | |
| 100 | - | Չախմախ | | |
| 101 | Չայդովուշան | - | | |
| 102 | Չայքյանդ | Չայքյանդ | | |
| 103 | Չափլի | Չափնի (Ջանկի) | | |
| 104 | Չոբանքյարահմեզ | Չոբանհերեքեմաս | | |
| 105 | Չովդառ | Չովդառ | | Եգնարածանց |
| 106 | - | Չովդուր | | |
| 107 | Չոփուրլի | - | | |
| 108 | Չոման | Չուման | | Շիռմանա՞նց |
| 109 | Չրաղ | Չրաղ (Չիրաղ) | | |
| 110 | Ջամիլլի | Ջամիլի | | |
| 111 | Ջոմարդ | Ջոմարդ | | |
| 112 | Սարիդաշ | - | | |
| 113 | Սարիգյունեյ | - | | |
| 114 | - | Սերին | | |
| 115 | Սեյդլար | Բաշդամ | | |
| 116 | Սոյուղբուլաղ | Սոյուղբուլաղ | | Ցրտնոտ |
| 117 | Սուսուզլուղ | Սուսուզլյարուխ | | |
| 118 | Վանք | - | | Գետամեջ |
| 119 | Վանք (Քյոլանի) | Խոբավան | Խուբավան | |
| 120 | Քենդյերի | - | | |
| 121 | Քեշդեք | Քեյշբաղ | | |
| 122 | - | Քեշիշքյանդ | Երիցուշեն | |
| 123 | Քեչիլիդայա | Քեչիլու (Քեչալի) | | |
| 124 | Քիլյա | Քիլիսալիքյանդ | | |
| 125 | Քիլյալի | Քիլիսալի | | |
| 126 | Քիլյալի | - | | |
| 127 | Օբախլար | Մամեդալու-Ալխասլի | | |
| 128 | Օբախլի | - | | |
| 129 | Օկտյաբրքյանդ (Մոլոտով) | - | Հաճակ | Հաճակ |
| 130 | Օրթա-Ղարաչանլի | - | | |
| 131 | Օրթա-Շուրբան | - | | |
| 132 | Օրուջլու | Աղջաքյանդ | Հալո՞ւճ | |
| 133 | Ֆաթալիլար | Ղըլվանք (ավ.) | | |
| 134 | Իստիսու | - | Ջերմաջուր | Վայկունիք |
| 135 | Քյալբաջար | Քյալվաջար | Քարվաճառ | Քարվաճառ |
| 136 | - | Քյաշար | | |
| 137 | - | Քյուրդդամ | | |
| 138 | - | Քոշնալար | | |

## ՊԱՏՄԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ ՄԻՆՉԵՎ 1920 Թ.

Քարվաճառի շրջանում պատմական հուշարձանների ուսումնասիրությունն առանձնապես հին պատմություն չունի:

Առաջին ուսումնասիրողը Հովհաննես եպիսկոպոսն էր, որն 1830-ական թվականներին այցելելով Դադի եւ Գետամիջո (Ծարա) վանքերը՝ մի քանի արձանագրություն էր գրի առել ու հրապարակել:[60]

Գրեթե նույն տարիներին, մի շարք հնավայրեր այցելելուց հետո իր ուսումնասիրություններն է հրապարակում նաեւ Սարգիս վարդապետ (հետագայում՝ արքեպիսկոպոս) Ջալալյանցը:[61] 1885-ին գավառի մի քանի հնավայրերին վերաբերող տեղագրական բնույթի իր շարադրանքն է հրապարակել Եղիշե ավագ քահանա Գեղամյանցը (Հայկունի),[62] ապա 1891-ին հատկապես Դադի վանքում, վիմագրական ուսումնասիրություններ է կատարել Խաչիկ վարդապետ (այդ ժամանակ՝ Վահան սարկավագ) Դադյանը, որի ձեռագրերն առ այսօր մնացել են անտիպ:[63]

Մեզ հայտնի չէ այդ ուղղությամբ հետագա մի քանի տարիների ընթացքում կատարված որեւէ այլ աշխատանք մինչեւ 1895-ին հրապարակված երախտաշատ Մակար եպիսկոպոսի մեծարժեք ու հայտնի աշխատությունը:[64] Սակայն հանգամանքները թույլ չէին տվել եպիսկոպոսին շատ հնավայրեր այցելել, եւ նրա գրքի համապատասխան բաժինը սահմանափակված է նորահաստատ թուրք գյուղերի ցուցակի մեջբերումով: Բարեբախտաբար եպիսկոպոսը կարողացել էր այցելել Ծար գյուղը: Իրոք՝ բարեբախտաբար, քանի որ նրան վիճակվեց այդտեղ գտնված բազում վիմագրերի՝ փաստորեն միակ հրապարակիչը դառնալ: Վերջապես, հարկ է նշել 1911 թ. էջմիածնապատկան Դադի վանքի կալվածներն այցելած Մեսրոպ մագիստրոսի՝ իր ճանապարհին հանդիպած գյուղերի ու պատմական հուշարձանների հանգամանալի նկարագրությունները (մի շարք արձանագրությունների վերծանություններով հանդերձ):[65] Սրանով էլ ավարտվել են նախախորհրդային

60. *Յովհաննու եպիսկոպոսի Շահխաթունյ-Ստորագրութիւն կաթողիկէ Էջմիածնի եւ հինգ գաւառացն Արարատայ, հատոր Բ, Էջմիածին, 1842, էջ 356–365:*

61. *Սարգիս վարդապետ Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Ա, Տփխիս, 1842, էջ 199–227:*

62. *«Մեղու Հայաստանի», 1885, N65, 78, 80:*

63. *ՀՀՊԴԿԱ, ֆ. 319, ց.1, գ.5, թ.23–28:*

64. *Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ.:*

65. *Մ. Տէր-Մովսիսեան, նշվ. աշխ.:*

փարիներին կապարված հիմնական ուսումնասիրությունները, եթե նկատի չունենանք նաեւ մի շարք ավելի սեղմ հրապարակումները մամուլում:[66]

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՏԱՐԻՆԵՐԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Խորհրդային կարգերի հաստատումից հետո, համարյա 40 տարի, մինչեւ 1960-ական թվականները հետազոտողների կողմից այդ ուղղությամբ որեւէ աշխատանք չի ձեռնարկվել: Թերեւս բացառություն էր կազմում ռուս հետազոտող-հնագետ Ե. Պչելինան, որի՝ 1940 թ. հրապարակված «Հայկական հուշարձանները Ադրբեջանական ՍՍՀ տարածքում» աշխատությունում[67] վկայություններ կան նաեւ Քարվաճառի շրջանի հուշարձանների մասին: Ավելորդ չէ, թերեւս, մեջբերել ռուս հետազոտողի՝ իր շրջագայությունից ստացած տպավորությունը. «Բազմաթիվ բնակելի քարայրներ, գյուղերի ավերակներ, բերդապարիսպներ, մատուռներ եւ եկեղեցիներ խոսում են երբեմնի կյանքի մասին՝ ներկայիս համարյա մարդազուրկ հեռաստաններում: Ցավոք, գերակշռող մեծամասնությամբ այդ բոլոր հուշարձանները ոչ միայն չեն հետազոտված, այլեւ անգամ չեն նշված գրականությունում, թեկուզեւ հաշվառման կարգով: Այստեղ հոծ զանգվածներով ամենուր ապրող հայերից մնացել են լայնատարած գերեզմանոցներ, որ սփռված են թե կիսավեր եկեղեցիների շուրջ, թե առանձին»:[68] Վերջապես 1960-64 թթ. վիմագրագետ Ս. Բարխուդարյանի գլխավորած գիտարշավի շնորհիվ, պասնամյակների ընդհատումից հետո վերստին ուսումնասիրության արժանացան Քարվաճառի պատմական հուշարձանները:

Արշավախմբի մասնագիտական ուղվածությունը խիստ նպատակային էր՝ միայն հայերեն վիմագրերի հայտնաբերում եւ վերծանում: Ցավոք գիտարշավը սահմանափակվեց միայն դեռեւս նախորդ դարից հայտնի հնավայրերն այցելելով: Արշավախումբը նախկին հետազոտողների հավաքած ու հրապարակած նյութին (72 միավոր արձանագրություն) հավելեց նաեւ գիտարշավների ընթացքում ժողովածը՝ նորահայտ 35 միավոր արձանագրություն: Այսպիսով, ամբողջ շրջանից հայտնաբերված հավաքածուն կազմեց 107 միավոր, որը հրապարակվեց բավական ուշացումով 1982 թ. (գիտարշավը գլխավորած Ս. Բարխուդարյանը մահացել է 1970-ին) Հնագիտության եւ ազգագրության ինստիտուտի հովանավորությամբ:[69]

1970-ական թվականներին եւ 80-ականների սկզբներին լույս տեսան բացառապես Դադի վանքին նվիրված մի քանի հոդվածներ:[70]

Ցոթանասնականներին ճարտ. Մ. Հասրաթյանը՝ առաջինը Դադի վանքի հետազոտողներից, չափագրեց հուշարձանախումբը: Այդ նյութերը բազմիցս օգտագործվել են Շ. Մկրտչյանի աշխատություններում:[71]

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՔԱՐՎԱՃԱՌԻ ՇՐՋԱՆՈՒՄ 1979-1987 ԹԹ.

Սկսած 1979 թ-ից, երբ առաջին անգամ հնարավորություն ունեցանք այցելել Քարվաճառի շրջան՝ պատմական Ծարա երկիր, շուրջ ինը տարվա ընթացքում, մինչեւ 1987 թ. մեր կողմից հետազոտվել են (չափագրում, լուսանկարում, վիմագրերի ընդօրինակում եւ քարտեզագրում) Հանդաբերդը, Չափնի գյուղի հուշարձանախումբը (որի կիսավեր եկեղեցին, ի դեպ, բնակարան էր ծառայում ոմն Ամիրասլան Մամեդովի համար), Ղամշլի գյուղի հարավային ծայրին, Լեւ գետի ձախ ափին մնացած միջնադարյան միաթռիչք մեծ կամրջի խելը (1980 թ.), որը գետի հետագա վարարումների զոհը դարձավ, Տրտուի աջ ափին գտնվող Սբ. Աստվածածնա վանքը, Երիցուշենի եկեղեցին ու խաչքարերը եւ այլն:

Հարկ է նշել, որ 1980-ական թվականների սկզբներից իրենց «ուսումնասիրություններն» էին սկսել հրապարակել նաեւ Բաքվի «գիտնականները»՝ մեկը մյուսի հետեւից աղվանական պիտակով ներկայացնելով մի շարք հուշարձաններ: Անցած տարիներին ավերել չհասցրածը՝ ստիպված իբրեւ սեփական ներկայացնելու տենդով տառապող այդ գիտնականները, ինչպես հայտնի է, փորձում էին Դադի եւ Սբ. Աստվածածնա վանքերը, Քիլիսա գյուղի եկեղեցին եւ ուրիշ հայկական հուշարձանները ներկայացնել որպես իրենց քրիստոնյա նախնիներից «ժառանգված» հուշարձաններ: Խստիվ արգելված էր (անշուշտ, Բաքվի կարգադրությամբ) լուսանկարչական սարքերով՝ հայաստանցի այցելուների

---

*66. «Արձագանք» 1886, N 44, էջ 577-578: «Նոր-Դար», 1890, N 158, էջ 3-4: «Նոր-Դար», 1891, N 123: «Նոր-Դար», 1892, N 15, էջ 2: «Արարատ» 1896, յունուար, էջ 42-43 եւ այլն:*

*67. **Пчелина Е. Г.**, Армянские памятники на территории Азербайджанской ССР, Труды Отдела Востока Эрмитажа, том 30, Ленинград, 1940, стр. 92-243.*

*68. Նույն տեղում, էջ 243:*

*69 «Դիվան հայ վիմագրության», պրակ 5, կազմող Ս. Գ. **Բարխուդարյան**, Երեւան, 1982, էջ 197-227:*

*70 **Բ. Ուլուբաբյան**, Դադի կամ Խութա վանքը, «Էջմիածին», 1971, N 6-7: **Մ. Հասրաթյան**, Դադի վանք, «Գիտություն եւ տեխնիկա», 1981, N 9:*

*71. **Շ. Մկրտչյան**, Լեռնային Ղարաբաղի պատմա-ճարտարապետական հուշարձանները, Երեւան, 1980, էջ 34: Նույնի՝ նշվ. աշխ. 2-րդ հրատարակությունը, Երեւան, 1985, էջ 38-46: **Ш. Мкртчян**, Историко-архитектурные памятники Нагорного Карабаха, Ереван, 1989, стр. 34-39.*

մուտքը Հանդաբերդ ու Դադի վանք: Այդտեղ կարգված պահակների հիմնական պարտականությունն էր՝ արգելել կապարելու այդ հուշարձաններից որեւէ լուսանկարչական աշխատանք:

Այդ տարիներին դաշտային աշխատանքների առանց այն էլ ոչ դյուրին ընթացքն էլ ավելի չբարդացնելու նկատառումով ժամանակին գիտակցաբար ձեռնպահ մնացինք նյութերի տպագրումից: Բայց դրությունը կտրուկ փոխվեց 1988-ից հետո:

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՄԻՆՉԵՎ ՔԱՐՎԱՃԱՌԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ

1988 թվականից այլեւս անհնար դարձավ դաշտային աշխատանքների շարունակումը: Մյուս կողմից՝ վերջապես հասել էր Բաքվի «գիտնականներին» պատասխան տալու ժամանակը, մանավանդ Արցախյան Ազատամարտի օրըստօրե հզորացող պայքարի պայմաններում: Այդպես՝ Թ. Աբդուլլաեւի մի հոդվածի առիթով 1989 թ. լույս տեսավ մեր՝ համահեղինակային պատասխանը՝ «աղվանական» հայտարարված Սբ. Աստվածածնա վանքի մանրամասն ուսումնասիրությունը:[72]

Այնուհետեւ լույս տեսան մեր եւս մի քանի հոդվածները:[73]

Ցավոք, մինչեւ տարածքի ազատագրումը (1989-1992 թթ.) թուրքերը հասցրել էին հիմնահատակ ավերել եւս մի քանի եկեղեցու տասնյակ հայերեն վիմագիր արձանագրություններ (մասնավորապես Սբ. Աստվածածնա վանքում փշրել էին XII-XIII դարերի շուրջ մեկ տասնյակ պատմական մեծ նշանակություն ունեցող արձանագրությունները եւ գեղաքանդակ արձանագիր խաչքարերը):

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ RAA ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՄԲ 1993-1996 ԹԹ.

1993 թ. ապրիլին ազատագրվեց մեր պատմական Ծարա երկիրը՝ Քարվաճառի շրջանը:

Արդեն մի քանի տարի ընդմիջված ուսումնասիրական աշխատանքների համար նոր ու աննախադեպ հնարավորություն էր ընձեռնված, որը եւ սպանձնեց «Հայկական ճարտարապետությունն ուսումնասիրող» (RAA) կազմակերպությունը:

Հուշարձանների որոնողական եւ ուսումնասիրման աշխատանքները սկսվեցին 1993-ի հունիս ամսվա սկզբից: Մինչեւ 1996 թ. նոյեմբեր ամիսը պարբերաբար ձեռնարկված բազմօրյա արշավների ընթացքում հետազոտվեցին ողջ լեռնաշխարհի գրեթե բոլոր գյուղերն ու գյուղատեղիները, հնավայրերը: Հայտնաբերվեցին ոչ քիչ թվով միանգամայն նոր հնավայրեր, իսկ հայտնիները նորովի ուսումնասիրվեցին: Այստեղ ցավով պիտի արձանագրենք, որ, ինչպես պեղում պարզվեց, նախկին ուսումնասիրությունները բազմաթիվ եւ էական թերություններ ունեին՝ սկսած ամենակարեւոր բնագավառից՝ վիմագիր արձանագրությունների ընդօրինակման ու վերծանման աշխատանքից, ընդհուպ՝ ճարտարապետական կառույցների չափագրումները: Այդ աշխատանքներն անհրաժեշտաբար կատարվեցին «զրոյից սկսած», քանի որ ավելի հեշտ էր նորն ու ճիշտը կատարել, քան զբաղվել անվերջ շտկումներով: Ընթերցվեցին նախկինում (1960-64 թթ.) անվերծանելի համարված բազմաթիվ, նաեւ սվաղի շերտի վրա փորագրված, վիմագիր արձանագրություններ:

Չորս տարվա ընթացքում շրջանի տարածքում հայտնաբերված ու հաշվառված պատմական հուշարձանների թիվը հասավ 518 միավորի, բայց այդ քանակությունը բոլորովին էլ վերջնական չէ, քանի որ հնարավոր են նաեւ մեր տեսադաշտից դուրս մնացած հուշարձաններ: Այսուհանդերձ, հավաքված նյութը թույլ է տալիս ամբողջական պատկերացում կազմել Պատմական Հայաստանի Ծար գավառի հայկական մշակութային ժառանգության մասին: Այն, ինչպես իր ճարտարվեստի, այնպես էլ պատմության առումով ներկայանում է որպես հայ մշակույթի անքակտելի եւ կարեւոր բաղկացուցիչներից մեկը:

Ի դեպ, հայկական պատմական հուշարձանների ուսումնասիրությանը զուգահեռ հետազոտվել ու հաշվառվել են նաեւ շրջանի տարածքում պահպանված XIX-XX դարերին վերաբերող քրդական եւ թուրքական «պատմական հուշարձանները»: Դրանք բացառապես գերեզմանական բնույթի հուշարձաններ են՝ դամբարաններ (քյումբազ) եւ պարզապես գերեզմանաքարեր (այդ թվում ձիակերպ եւ խոյաձեւ): Սրանցից ամենահները 1870-ական թվականներից են,[74] իսկ ինչ վերաբերում է մահմեդական հոգեւոր ժողովարաններին՝ մզկիթներին, ապա այդպիսիք Քարվաճառի շրջանի տարածքում փաստորեն գոյություն չունեն: Պատճառը շատ պարզ է, մինչեւ խորհրդային կարգերը գյուղերն այնքան նստակյաց ծխեր չունեին, որ մզկիթ ունենալու խնդիր առաջանար: Միակ մզկիթը, որ հիմնադրվել էր 1990 թ. (ա-

72 *В. А. Арутюнян, С. Г. Карапетян, Н. М. Саркисян, Монастырский комплекс Сурб Аствацацин в гаваре Цар. «ԼՀԳ», 1989, № 7, էջ 82-92:*

73. *Ս. Կարապետյան, Դադի (Խութա) վանքի կալվածները, «Ազատամարտ» շաբաթաթերթ, 1992, N 15, էջ 14: Նույնի՝ Քյալբաջարի շրջանի հայկական պատմական հուշարձանները, «Ազատամարտ», 1992, N 22, էջ 14 (նաեւ ռուսերենով «Азатамарт», 1992, N 7):*

74. *Էֆենդիեւ Ռասիմ Սամեդ օղլի, Քարերն են խոսում (ադրբեջաներեն), Բաքու, 1980:*

ռավելապես քաղաքական նկատառումներով) այդպես էլ թերավարտ էր մնացել (գտնվում է Դուտխու գետի ձախ ափին, Ջըլփղարլի գյուղից հարավ):[75] Քյումբազ կոչված գմբեթաձեւ դամբարաններ (առավելագույնը 110-120 տարվա վաղեմության) պահպանվել են՝ Մոս, Աղյաթաղ, Դամրչիդամ, Սուսուզլուղ եւ այլ գյուղերի տարածքում, իսկ կենդանակերպ տապանաքարեր՝ Քարվաճառ, Ծար եւ այլ գյուղերի գերեզմանատներում: Ի դեպ, քյումբազներ կառուցվել են նաեւ խորհրդային տարիներին:

## ՀԱՆԴԱԲԵՐԴ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ

Ոչ միայն Ծար գավառի, այլեւ ողջ Արցախի եւ ընդհանրապես Հայոց Արեւելից Կողմանց պաշտպանական հզոր համակարգ ունեցող բերդերի շարքում Հանդաբերդը առանձնահատուկ տեղ է գրավում: Այն գտնվում է ներկայիս Չափնի եւ Ղանլիքյանդ գյուղերի միջեւ, Լեւ գետի աջ ափին, գետից 600 մ հարավ, անտառածածկ ու խիստ զառիթափերով առանձնացած լեռան գագաթին: Գետափից բերդը բարձր է շուրջ 280 մ եւ գտնվում է 1665 մ-ի վրա: Չորս բոլորից ուղղահայաց քարափներով առանձնացած բերդասարին մոտենալու հնարավոր միակ ուղին ձգվում է հարավ-արեւմտյան կողմի պարսպապատի տակով եւ ժայռակերտ նեղ արահետներով բերդի գլխավոր դարպասին է մոտենում հյուսիսային կողմից:

Փառավոր պատմական անցյալ ունեցող Հանդաբերդը բազմիցս հիշատակվում է հայ պատմիչների գործերում: Ինչպես վկայում է Կաղանկատվացին՝ Արցախի հյուսիսային գավառների տեր, հայոց Առանշահիկ տոհմի իշխան Սահլ Սմբատյանի որդին՝ Ատրներսեհը IX դարի երկրորդ քառորդում «շինէ զբերդն Հանդու»:[76]

Ատրներսեհը մահացել է 870-ական թթ., իսկ 854-ին հակաարաբական շարժումներին մասնակցելու պատճառով Բուղա զորապետի կողմից գերեվարվել է խալիֆի նստավայր՝ Սամառա: Հետեւաբար, բերդը կառուցել էր մինչ 854 թ.: Հարկ է նշել, որ բերդի պարսպապատերի շարվածքի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ սկզբնապես Հանդաբերդը մի փոքրիկ ամրություն էր անկանոն շրջապարսպով, արեւելյան կողմից միակ մուտքով եւ 19x16 մ ներքին մակերեսով: Հետազայում միջնաբերդի վերածված բերդի այդ հատվածը ակնհայտորեն ավելի վաղ շրջանում էր կառուցված եղել, հավանաբար V դարում, իսկ իշխանը ավելի ընդարձակել, ամրացրել ու հզորացրել էր բերդը, այն համալրելով հուսալի ու երկարատեւ պաշտպանության համար բոլոր անհրաժեշտ միջոցներով (ջրի պաշարների կուտակման համար ժայռափոր հորեր, ռազմավարական նկատառումով՝ կեղծ դարպաս, շրջապարսպի հզորացման նպատակով՝ 8 կիսաբուրգեր եւ այլն):





ՀԱՆԴԱԲԵՐԴ. հատակագիծը եւ հյուսիսային ճակատը

Համաձայն Դադի վանքում պահպանված մի խաչքարի արձանագրության՝ 1142-1182 թթ. Հանդաբերդը պատկանել է Վերին Խաչենի իշխան Հասան Վախտանգյանին: Մոտ 1250-ին բերդը միեւնույն անվամբ հիշատակվում է Գանձակեցու պատմության մեջ:[77]

1312 թ. Հանդաբերդը, որպես Դոփյանների իշ-

---

75. *Ս. Կարապետյան, Քարվաճառի միակ մզկիթի դյասմությունը. «Ազատամարտ», 1994, N 47 (192), էջ 13:*

76. *Մովսէս Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից Աշխարհի, Երեւան, 1983, էջ 340:*

77. *Կիրակոս Գանձակեցի, Պատմություն հայոց, Երեւան, 1961, էջ 322:*









*ՀԱՆԴԱԲԵՐԴ. բերդասարի տեսքը հյուսիս-արեւելքից եւ հարավ-արեւմուտքից, հատված արեւելակողմի պարսպաշարից, արեւմտակողմի պարսպապատի բուրգը*

խանության սահմաններում գտնվող ամրություններից մեկը հիշվում է Խաչակապի Թարգմանչաց վանքի «Աւետարան»-ի հիշատակարանում:[78]

Ապրներսեհի շինարարական համալրումներից հետո Հանդաբերդը (փոքրիկ միջնաբերդի հետ միասին) անհամեմատ ավելի ընդարձակ չափեր ընդունեց, քան մինչ այդ էր: Հատակագծում անկանոն ուղղանկյան տեսքով պարսպված արեւելահայաց թեքությամբ բերդի ներքին մակերեսն արդեն զբաղեցնում էր 92x60 մ փարածություն: Պարսպապատերի միջին հաստությունը 1,30 մ է, իսկ պահպանված առավելագույն բարձրությունը՝ մինչեւ 8 մ: Բերդի տարածքում բացի 5-6 վիմափոր հորերից (որոնց խորությունը, փլվածքներով լցված լինելով հանդերձ, այսօր էլ մինչեւ 5 մ է) կիսավեր վիճակում պահպանվում են նաեւ ուղղանկյուն հատակագծով մի շինության մնացորդները: Ինչպես այդ փոքրիկ կառույցը, այնպես էլ բերդի ողջ համալիրը շարված են անմշակ տեղական քարերով, կրաշաղախով: Հյուսիս-արեւմտյան կողմի աշտարակի տակ, բերդ բարձրացող ժայռակերտ նեղ արահետի եզրին, ուղղահայաց եւ արեւմըտահայաց ժայռի մեջ փորված է մի փոքրիկ, հարթ հատակով եւ կիսաշրջանաձեւ հատակագծով «սենյակ», որը, թվում է, թե ծառայել է որպես պահակատուն: Չի բացառվում, որ դա նաեւ աղոթատեղի լիներ, քանի որ շատ նման է եկեղեցու խորանի:

---

*78. «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Երեւան, 1950, էջ 84:*



ՅԱՆԴԱԲԵՐԴ. «կեղծ» դարպասի տեսքը հարավից



ՊԱՅԱԿ ԼԵՌ. դիտակետ-աշտարակը








ՊԱՅԱԿ ԼԵՌ. դիտակետ-աշտարակի հատակագիծը






ՅԱՆԴԱԲԵՐԴ. անանուն վանքի հատակագիծը



ՅԱՆԴԱԲԵՐԴ. տեսքը արեւելքից

Դարասկզբին լեռնային ինժեներ Աղաբաբյանը բերդի ներսում մի խաչքար էր գտել, որի արձանագրությունը հրատարակել է Մ. Տեր-Մովսիսյանը: Արձանագրությունը փորագրված է եղել խաչքարի թեւերի փակ եւ հյուսիսային կողքին, 17 տողով:

ԹՎ(ԻՆ): ՌԽԵ: (1196) ԵՍ Կ... |ՐԱԳ| ԼՍ ... | (ԿԱ)ՆԳՆ|(ԵՑ)Ի | ՁԽԱՉ(Ս) | ԲԱՐԵ|ԽԱՒՍՈՒ|ԹԵՆ ՈՐ|ԴՈ ԻՄ|Ո ԽՈՍՏ|ՐՈՎԻԿԱ|, ՈՐ ՎԱԽՃ|ԱՆԵՑԱՒ | Ի ՄԷՋ Ա(Յ)|ԼԱՋ(ԳԵԱՑ)|, ՈՐՔ Կ(ԱՐ)ԴԱՅ(Ք)...:[79]

Ցավոք, հնավայրում գտնված միակ արձանագրությունը կրող այս խաչքարը այժմ տեղում չէ:

Հանդաբերդը, որպես պաշտպանական մտածված ու հզոր համակարգ, իր շրջապատում գտնվող բարձրադիր ու տեսարանավոր որոշ լեռնագագաթներին ուներ դիտակետ-պահակակետ կամ այսպես կոչված «արբանյակ» բերդեր: Դրանցից մեկը, որտեղից լավ երեւում է բերդի հյուսիս-արեւելյան կողմի աշտարակը, գտնվում է Պահակ (թուրք. Ղարաու) լեռան գագաթին, ծովի մակերեւույթից 2018 մ բարձրության վրա: Հանդաբերդի եւ այս դիտակետի միջեւ եղած հեռավորությունը ուղիղ գծով 2,4 կմ է: Հատակագծում ուղղանկյունաձեւ դիտակետը կառուցված է նույն ոճով (անմշակ քար ու կրաշաղախ) եւ ունի 4,30x3,30 մ արտաքին չափեր: Պատերի հաստությունը 70 սմ է, իսկ պահպանված առավելագույն բարձրությունը՝ 3 մ:

Պահակ լեռան գագաթի դիտակետ-աշտարակից դեպի հարավ-արեւելք երեւում են Ծաղիկանց լեռը (2267 մ) եւ Ջոմարդ բերդը՝ համանուն լեռան գագաթին (1876 մ):

Հանդաբերդից ընդամենը 0,8 կմ արեւելք, Լեւ գետի աջ ափից 0,5 կմ հարավ, անտառածածկ սարերով շրջապատված գեղատեսիլ հովտի կենտրոնում պահպանվել են մի ավերակ վանքի մնացորդները: Դեռեւս 1985 թ. այս հնավայրն առաջին անգամ այցելել եւ հուշարձանախումբը չափագրել է ճարտարապետ Մուրադ Հասրաթյանը: Նա ընդօրինակել է նաեւ տեղում գտնված արձանագրություններից երկուսը:

Համալիրը բաղկացած է գմբեթավոր եկեղեցուց, կից՝ թաղակապ մատուռից եւ հյուսիսային կողմում գտնվող ժամատնից: Վերջինս իր ճարտարապետական հորինվածքով նման է Կիչանի Անապատի հին եկեղեցուն (ներքուստ խաչաձեւ է, բայց ոչ գմբեթավոր): Առանձնապես ուշագրավ լուծում ունի եկեղեցու ծածկը, որի կենտրոնում վեր խոյացած (ութանիստ) այսպես կոչված «կեղծգմբեթից» (նույն հորինվածքն ունեն Խաթրավանքը, Դադի վանքի ժամատան եւ «տաճար»-ի գմբեթները) պահպանվել են չնչին մնացորդներ: Եկեղեցու ներսում նկատվում են որմնանկարների հետքերը, իսկ տլատակների մեջ թափված կղմինդրի բեկորները վկայում են երբեմնի ծածկի կղմինդրապատ լինելը: Հուշարձանախումբը կառուցված է անմշակ եւ կիսամշակ քարով, կրաշաղախով: Տարածքում պահպանվել են մի քանի արձանագրություններ, որոնք լույս են սփռում ոչ միայն բուն վանքի, այլեւ ողջ Արցախի պատմության շատ խնդիրներին:

Չափազանց կարեւոր է ժամատան արեւմտյան կողմում մի քանի մետրի վրա ընկած յոթ տող արձանագիր կրող բարավորը (168x76x16 սմ).

ՉԻԵ(1276) Թ(ՎԻՆ) | Ա(ՍՏՈՒԾՈ(Վ) ՇԻՆԵՑԱՒ ԺԱՄԱ|ՏՈՒՆՍ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՔՍ Դ(ԱՒԻ)Թ Վ(ԱՐԴԱ)Պ(ԵՏ)Ի | ՁԵՌԱՒՔ. ԱՋԱՏԵՑԻՆ ՋՍ|Ա ՀԱԹԵՐՔԵՑԻՔՆ Յ..(՞) ՉԱՐԷ | Ա(ՍՏՈՒԱ)Ծ ԱՒՐՀՆԷ ՋՆՈՍԱ, ՈՎ | ԽԱՓԱՆԷ ԴԱՏԻ:



Շինարարական բովանդակությամբ մեկ այլ արձանագրության բեկոր էլ (49x73x9,5 սմ) պահպանվել է եկեղեցու ներսում.

ՅԱՆՈՒ(Ն)... | ԵՍ ՍԱՄՆ ... | .. ՄԻԱԲԱՆ ԵՂԷ



Դ..|Ք: ԱՄԷՆ ԵԿԵՂԵՑԻՔՍ ... | ԱՅՆ ՊԱՏԱՐԱԳԵՆ Ջ...|..ԱՀՈՒ ԻՆՁ Ս(ՈՒՐ)Բ ԳՐԻԳՈ ՐԻ ...:[80]

Զարդաքանդակների եւ պատկերաքանդակների սակավադեպ մտահղացումներով եւ առատությամբ մի գեղաքանդակ խաչքարի (158x110x14 սմ) ստորին մասում ընթերցվում է.

79. *Մ. Տէր-Մովսիսեան, նշվ. աշխ., էջ 93: Տես նաեւ «Դիվան հայ վիմագրության» պրակ 5, էջ 225:*

80. *Նաեւ. Մ. Հասրաթյանի վկայությամբ 1985 թ. հուշարձանախմբի արձանագրության մի մասը քարմ ջարդվածքի հետ էր կրում:*

ԵՍ ՎԱՍԱԿ ԹՈ|ՌՆ ՀԱՐԲԻ ԿԱ|(Ն)ԳՆԵՑԻ ՔԽ|(Ա)⸢Չ⸣Ս. ԵՍ ԵՒ ՄԱՅՐ | Հ[Ո]ԱՒՐ ԻՄՈՅ |...ՐԱՅ,| ՈՐՔ ԵՐԿԻՐՊԱ|ԳԱՅՔ ՅԱՂԱՒ|ԹՍ ՅԻՇԵՑ|ԷՔ, ԹՎ(ԻՆ)...:

Եկեղեցուց քիչ արեւմուտք, գրեթե ամբողջական մի գեղաքանդակ խաչքարի (106x62x14 սմ) վերին մասում երկտող արձանագրված է.

.... ԱՄՆ ԵՒ ⸢Մ⸣ ԱՄՔԱՆ | ՅԻՇԵՑԷՔ Ի Ք(ՐԻՍՏՈ)Ս. ԳՐԻԳ(ՈՐ):

Վանքի հյուսիս-արեւմտյան կողմում, շուրջ 20 մ հեռու, բեկորված խաչքարի (86x58x11,5 սմ) ստորին կես մասին 7 տողով ընթերցվում է.

ԵՍ ՋԱԼԱԲ ԿԱ(Ն)|ԳՆԵՑԻ ՔԽԱՉՍ (Ի) ՓՐԿՈ(Ւ)|ԹԻ(Ւ)Ն ՀՈ[Ւ]ԳՈՅ ԱՂԲՈ[Ւ]|Ր ԻՄՈՅ ԽԱՓԼԱՅ, ՈՐ (Ե)ՐԿԻՐՊԱԳԷՔ ՅԱՂ ԱՒ |ԹՍ ՅԻՇԵՑԷՔ, | ԹԻՒՆ ՈԽ Գ (1194):

1197 թ. հողմնահար արձանագրությամբ մեկ այլ խաչքար (ամբողջական) կրում է հետեւյալ բազմատող արձանագրությունը.

ԵՍ ԱՐ ... ⸢ԿԱՆԳՆԵՑԻ⸣| ՔԽԱՉՍ .... | ՈՐՔ | ԵՐ|ԿԻՐՊԱԳԱՆ|ԷՔ Յ(ԱՂԱՒԹ)Ս.| ԹՎ(ԻՆ) ՈԽՋ(1197):

Հնավայրի փարածքում պահպանված վիմագրերի թվում պատմական առանձնակի արժեք ու կարեւորություն ունի վանքի հյուսիսային կողմում, տեղահան, բայց ամբողջական տեսքով, ձորապռնկին պահպանված մի տապանաքար (132x54x15 սմ), որի հնգատող անթվակիր արձանագրությունը փաստում է, որ տեղում հանգչում է Աղվանից Ստեփանոս կաթողիկոսի մարմինը.

ԱՅՍ Է ՀԱՆԳԻ|ՍՏ Տ(Է)Ր ՍՏԵՓ|ԱՆՈՍԻ՝ ԱՂՈՒ|ԱՆԻՑ ԿԱԹՈՂ|ԻԿՈՍԻ:

Հարկ է լրացնել, որ Հայոց Եկեղեցու Աղվանից կաթողիկոսության պատմության ընթացքում Ստե-




փանոս անվամբ 5 կաթողիկոսներ են հայտնի (Ստեփանոս Ա. մինչեւ 1079 թ., Ստեփանոս Բ. 1129-1131 թթ., Ստեփանոս Գ. 1155-1195 թթ., Ստեփանոս Դ. 1262-1323 թթ., Ստեփանոս Ե. հիշ. 1476 թ.): Հաշվի առնելով պապանագրի գրչության առանձնահատկությունները, կարծում ենք, որ տվյալ շիրմաքարը պատկանում է 1262-1323 թթ. գահակալած Ստեփանոս Դ-ին:



*«Բոզլու» գյուղատեղիի ժայռակերտ խաչաքանդակները*

Հանդաբերդից արեւելք եւ հյուսիս-արեւելք, Լեւ գետի հովտում կամ ձորալանջերին կան մի քանի հին գյուղատեղի, որոնց տեղում XIX դարի վերջերին կամ XX դարի սկզբներին գոյացել են քրդաբնակ կամ թրքաբնակ փոքրիկ գյուղեր: Դրանցից են ներկայիս՝ Ղանլիքյանդ (թարգմ. Արնագյուղ), Էյլասալիլար կամ Էյլա Ջալլար, Մարալդամ, Բաբաշլար, Թաքյադամ կամ Թաքյաղայա եւ Բոզլու գյուղերը: Այս վայրերում եւս առկա են երբեմնի հայաբնակ այդ գյուղերի բնիկ բնակիչների՝ դարերի ընթացքում արարած մշակույթի հետքերը: Մասնավորապես՝ Բոզլու գյուղատեղիի կենտրոնում հողի մեջ թաղված հարթ ու լերկ ժայռազանգվածի արեւմտահայաց երեսին քանդակված են զույգ խաչեր: Ըստ կատարման ձեւի ու ոճական առանձնահատկությունների՝ այն XII-XIII դարերի գործ է:

Բոզլուից 2 կմ հարավ-արեւելք, ծովի մակերեւույթից 1950 մ բարձրության վրա, հարավահայաց լեռնալանջին տարածված է Բաբաշլար գյուղատեղին, իսկ վերջինից 1,5 կմ հարավ-արեւմուտք՝





*ՀԱՆԴԱԲԵՐԴ. անանուն վանքի ժամատան հյուսիսային պատի մեջ ագուցված խաչքար եւ հատված խաչքարի ստորին մասից (XII-XIII դդ.)*








*ՀԱՆԴԱԲԵՐԴ. անանուն վանքի տեսքը հարավից, տեսքը հյուսիս-արեւելքից, ավագ խորանը, ութանիստ գմբեթատակի հյուսիս-արեւելյան պահպանված հատվածը, ժամատան տեսքը հարավից եւ խաչքար եկեղեցու ներսում (XIII դ.)*











ՀԱՆԴԱԲԵՐԴ. խաչքարեր անանուն վանքի տարածքում, ժամատան տեսքը արեւմուտքից, հատված եկեղեցու ներսում գտնվող խաչքարի վարդյակից եւ Ստեփանոս կաթողիկոսի տապանաքարը







*«Թաքյաղայա» գյուղատեղիի եկեղեցու արեւմտյան ճակատը, տեսքը՝ հյուսիս-արեւմուտքից եւ հատված արեւմտյան ճակատից*

Մարալդամ (հավանաբար պատմական Եղջերուենիքն է) գյուղատեղին: Այս երկուսի միջեւ, ձորի պոնկին մեջքի վրա ընկած վիճակում, պահպանվել է մի մենավոր խաչքար, անարձանագիր ու զուսպ հարդարանքով, բնորոշ XI-XII դարերին:

Հանդաբերդի մերձակա հնավայրերի շարքում առանձնանում է Թաքյաղայա գյուղատեղիի հյուսիսային ծայրին, Լեւ գետի ձախ ափին, ժայռի ստորոտում պահպանված եկեղեցին:[81] Այս գողտրիկ, կառուցողական բարձր ճաշակով արված եկեղեցին՝ Ասփծո տունը, իրավամբ կարելի է լեռնային երկրամասի ճարտարապետական ու քանդակագործական մտքի ամենաբնորոշ ու հատկանշական օրի-

81. *Այդ մասին տես՝* ***Մ. Կարապետյան****, Նորահայտ հայկական հուշարձաններ Քարվաճառի շրջանում, «Հայրենիքի ձայն», 1993, NN 19-20:*












Խաչքարեր «Թաքյաղայա» գյուղատեղիի եկեղեցու շուրջ տարածված գերեզմանոցում եւ հատակագիծը

նակներից մեկը համարել:[82] Թեեւ թաղակապ բազիլիկի հորինվածքով եկեղեցու ծածկն ամբողջապես փլված է, բայց նրա բազում խաչաքանդակներով զարդարված արեւմտյան ճակատն իրոք տպավորիչ է: Եկեղեցին կառուցված է անմշակ եւ կիսամշակ քարով, կրաշաղախով: Արտաքին չափերն են՝ 7,46x5,58 մ: Պատերը սովորականից ավելի հաստ են (արեւմտյան ճակատում՝ 117 սմ): Կարեւոր առանձնահատկությունն է ուղղանկյունաձեւ խորանը: Ուշագրավ է հատկապես բարավորին քանդակված խաչը, որն իրոք իսկական արվեստի գործ է: Թեեւ եկեղեցու որմերի պահպանված հատվածներին որեւէ արձանագրություն չկա, այնուամենայնիվ խաչաքանդակների ոճական ու գեղարվեստական առանձնահատկությունները բնորոշ են XIII-XIV դարերին: Կառույցի թվագրումն էլ ավելի որոշակի է դառնում շնորհիվ եկեղեցու հյուսիսային կողմում պահպանված մի գեղաքանդակ ու արձանագիր խաչքարի բեկորի, որի հիմնախաչը ճշտորեն կրկնում է եկեղեցու բարավորին քանդակված խաչի մոտիվները եւ առիթ տալիս կարծելու, որ այդ խաչքարը նույն վարպետի աշխատանքն է: Կարեւոր է վերջինիս արձանագրությունը (փորագրված է նեղ կողին եւ խաչաթեւերի միջեւ).

ԿԱՆԿՆԵ(Ա)Լ | ԿԱՌՈ(Ի)Ց|ԱՒ Ս(ՈՒՐ)Բ ՆՇ-|ԱՆ Ի ԲԱՐ|ԷԽԱՒ(Ս)ՈՒԹ(ԻՒՆ)| ԱՆԱՑ|ԻՆ, ՈՔ ԵՐ(ԿԻՐՊԱԳԱՆԷՔ ՅԱՂԱՒԹՍ ՅԻՇԵՑԷՔ):| Ի ԹՈՒԻ(Ն) Չ⌈Ձ⌉... (1330-ական թթ.):

Խաչքարից պահպանվել է միայն վերին կես մասը (չափերն են՝ 69x71x21 սմ): Մյուս կեսը գտնելու հույսով մեր որոնումներն արդյունք չտվեցին: Խաչքարի թվագրումը որոշակի է դարձնում եկեղեցու թվագրման ժամանակաշրջանը՝ XIII դարի վերջ կամ XIV դարի սկիզբ:

Եկեղեցուն հյուսիսից եւ արեւմուտքից հարող տարածքը հնամենի գերեզմանոցն է, ուր պահպանվել են ուշագրավ զարդաքանդակներով 5-6 խաչքարեր՝ բոլորն էլ անարձանագիր:

Լեւ գետի ափին գտնված մի հին գյուղատեղի էլ տեղագիր հեղինակները հիշատակում են Քեշիշքյանդ անվամբ: Հնավայրի մասին գրավոր առաջին հիշատակությունը թողել է պր. Հայկունին (Եղիշե ավագ քահանա Գեղամյանց): 1885 թ. նրա հրապարակած մի նյութի մեջ կարդում ենք. «Տեսանք նոյնպէս «Քէշիշ-քէնդ» կոչուած գիւղի պատմական

---

*82. Ի դեպ, այս հնավայրի մանրամասն նկարագրությունը՝ լուսանկարով եւ վիմագրի վերծանությամբ հանդերձ առաջին անգամ հրատարակել ենք «Հայրենիքի ձայն» շաբաթաթերթում (NN 19-20, 1993): Մեկ տարի անց «Երկիր» օրաթերթում (N166, 1994) հնագետ Վ. Գայսերյանը Թաքյաղայայի (չգիտես ինչու՝ Թեքտակայա) եկեղեցին հիշում է, իբր իր՝ եւ իր ընկերների կողմից «հայտնագործված»: Կարծում ենք՝ տվյալ դեպքում Վ. Գայսերյանը պարզապես թյուրիմացության մեջ է:*









*Յուշարձանախմբի գլխավոր եկեղեցու տեսքը հարավից եւ հարավ-արեւմուտքից: Դամբարան-մահարձանի տեսքը հարավ-արեւմուտքից եւ հատակագիծը, տեսքը հյուսիս-արեւելքից, մահարձանի խաչքարը արեւմտյան եւ արեւելյան կողմերից, արձանագրություններ հուշարձանախմբի տարածքում*

աւերակներն, որոց վերայ (ասացին) շատ արձանագրութիւնք կան...»:[83] Երկրորդ հեղինակը, որը, ցավոք, հնավայր չի այցելել եւ նրա մասին դարձյալ միայն հպանցիկ տեղեկություն է տալիս, Մ. Տեր-Մովսիսյանն է. «Քէշիշքենդ. Այդ անուամբ յայտնի աւերակ գիւղը դարձեալ Լեւոնագետի ափին է, որտեղ ի մի է խառնւում գետակի ճիւղերից մէկը, մեծ թեքութեամբ ձորակի միջով փրփրալից ներքեւ գլորւելով: Ընդամենը երեք տուն այրումներ են ապրում այդտեղում եւ փակւին կանգուն է հին եկեղեցին: Շինութիւնը դիտեցի հեռուից, երեկոյացած ժամանակի պատճառով կանգ առնել եւ արձանագրութիւնը կարդալ չկարողացայ, մանաւանդ որ հասարակ քարերից աննշան շէնքը, անտանելի ճանապարհներից յոգնած, առանձին գրաւչութիւն չէր ներկայացնում: Գիւղական հասարակ եկեղեցի էր, որի նմաններին յետոյ ուրիշ տեղերում պատահեցի»:[84]

Հասպատապես դժվարանում ենք պնդել, բայց տեղանքի նկարագրությունը հաշվի առնելով, կարծում ենք, խոսքը նույն Թաքյաղայա անունով հայտնի գյուղատեղիի ու եկեղեցու մասին է:

Հանդաբերդից 2,5 կմ հյուսիս-արեւելք, Լեւ գետի ձախ ափին պահպանվում են միջնադարյան հուշարձաններով բավականին հարուստ **Չափնի** գյուղի ավերակները: Այն բաղկացած է եղել համանուն՝ մեծ եւ փոքր թաղամասերից: Մեծ Չափնիի

*83. «Մեղու Հայաստանի», 1885, N 80, էջ 3:*

*84. «Ազգագրական Հանդէս», 1913, գիրք XXV, N2, էջ 76: Տես նաեւ՝ **Մեսրոպ Տէր-Մովսիսեան**, նշվ. աշխ., էջ 93–94:*

հյուսիսային եզրին, երկու վտակների միջեւ տարածված փոքր թեքություն ունեցող հարավահայաց հարթակի վերին ծայրին ցայսօր պահպանվում են եկեղեցու, մատուռի, մահարձանի եւ ընդարձակ, խաչքարերով հարուստ գերեզմանոցի մնացորդները: Հնավայրը գտնվում է ծովի մակերեւույթից 1430-1440 մ բարձրության վրա:

Չափնիի հուշարձանախումբը մեկն է գավառի այն սակավաթիվ հնավայրերից, որը դեռեւս XIX դարի կեսին ունեցել է իր ուսումնասիրող այցելուն՝ ի դեմս Ս. Ջալալյանցի. «Ողբալի աւերակք սորա ցուցանեն զառաջին սխրալի վիճակ եւ վկայ մի միայն իւրեանց նախանձելի փառաց»:[85] Համառոտ նկարագրելով հնավայրում գտնված կառույցները՝ Ջալալյանցը նաեւ ընդօրինակել է երկու վիմագիր, մեկն արված մահարձանի պատին, մյուսը՝ նույն մահարձանի վրա կանգնեցված խաչքարի թիկունքին:

Հնավայրի հետագա հետազոտողները, ինչպես՝ Մ. Տեր-Մովսիսյանը[86] դարասկզբին, այնպես էլ Ս. Բարխուդարյանը[87] 1960-ականներին, այդ ուղղությամբ գրեթե ոչինչ չեն ավելացրել: Ի դեպ, վերջինս, կարծում ենք առանց այցելելու հնավայր, սոսկ ենթադրաբար, գրել է. «նախկինում հայաբնակ այս մեծ գյուղատեղիում այժմ գրեթե ոչինչ չի մնացել...»:[88] Իսկ իրականում ի՞նչ էր պահպանվել 1984 եւ 1993 թ. մեր այցելությունների ժամանակ:

Նախ, համալիրի հարավ-արեւմտյան ծայրում պահպանված կիսավեր եկեղեցու մասին: Այն ուղղանկյուն խորանով, հյուսիսային կողմում զույգ ավանդատներով, անմշակ քարերով ու կրաշաղախով թաղածածկ շինություն է, որից կանգուն կամ կիսավեր է միայն հյուսիսային կեսը, իսկ հարավային կեսը գրեթե հիմնահատակ է: Պատերի կանգուն մասերում արձանագրություններ չեն պահպանվել: Եկեղեցու երկարությունը 5,50 մ է, պատերի հաստությունը՝ 80 սմ: Հատակագծով ճշտությամբ կրկնում է Օծկա վանքի հորինվածքը (Պտրեցիք գյուղի մոտ)[89] եւ անկասկած XIII դարի կառույց է:

Եկեղեցուց շուրջ 24 մ հյուսիս-արեւելք, դեռեւս կանգուն խաչքարով մահարձանի թաղակապ շենքն է: Բարեբախտաբար նախկին ուսումնասիրողները (Ջալալյանց եւ Մ. Տեր-Մովսիսյան) ժամանակին նկարագրել են այս մահարձանը, եւ դրա շնորհիվ այսօր գոնե մոտավոր կերպով ի վիճակի ենք ներկայացնելու մահարձանի նախնական տեսքը. «... երկհարկանի մի դամբարան, միջում պահւած խաչարձանը: Սրա ներքեւի յարկը քառանկիւնանի է, երկու












*Մահարձանի արեւմտյան ճակատն ու հատակագիծը, տեսքը (1960(?)-ականներին) ըստ Դ. Ախունդովի հրատարակած լուսանկարի, վերակազմությունը՝ ըստ Մ. Տեր-Մովսիսյանի նկարագրության եւ Դ. Ախունդովի հրատարակած լուսանկարի:*

---

85. **Ս. Ջալալեանց**, *նշվ. աշխ., էջ 215:*
86. **Մ. Տէր-Մովսիսեան**, *նշվ. աշխ., էջ 93:*
87. *«Դիվան...», էջ 225:*
88. *Նույն տեղում:*
89. *Տես՝* **Ս. Կարապետյան**, *Պտրեցիք գետահովտի պատմաճարտարապետական հուշարձանները՝ ըստ նորահայտ արձանագրությունների, «ԼՀԳ», 1984, N 8 (հատակագիծը տես՝ էջ 84):*










*ՉԱՓՆԻ. տաղանաքար մահարձանի արեւելյան կողմում, խաչքարեր XIII-XIV դդ. հուշարձանախմբի տարածքում, բեկորված խաչքարեր XIII-XIV դդ.*

ու կէս մետր բարձրութեամբ, մի ճակատը բաց, իսկ երեք կողմերը կառուցւած մաքուր սրբատաշ քարերով: Երկրորդ յարկը կառուցւած է չորս միակտոր քարերի սիւներից, վրան փոքր գմբէթ հատպապած: Այդ գմբէթի տակ, սիւների արանքում կանգնեցրած է գեղեցիկ քանդակներով զարդարւած խաչարձանը, կիսատ թողնւած արձանագրութեամբ»:[90] Մահարձանի հավանաբար 1960-ականնների վիճակը պատկերող մի լուսանկար էլ տպագրել է Դ. Ախունդովը:[91] Այժմ բացի քառայուն զանգակատնից, որի տակ կանգնեցված էր խաչքարը, մահարձանի մնացած մասերը գրեթե ամբողջապես կանգուն են, բայց քայքայված վիճակում: Զարմանալի է, որ փլված զանգակատունը չի վնասել խաչքարին:

Գեղաքանդակ խաչքարի (չափերը՝ 190x90x18 սմ) թիկունքին 7 տողով փորագրված է.

ԹԻՒՆ: Չ. Ի. Դ (1275)| ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ | ԵՍ ՍՈՒՔՄԱՆ ԵՒ | ՈՒՔԱՆ ԿԱՆԳՆԵՑ|ԱՔ ՔԽԱՉՍ ՀԱՒՐ | ՄԵՐՈՑ՝ ԱՇՈՏԱՅ | ԵՒ ՄԱՒՐ, ՅԱՂԱՒԹՍ:[92]

Մահարձանից 3-4 մ հյուսիս, պահպանվել է արդեն մեծ մասով հողի մեջ թաղված, բայց դեռեւ կանգուն մի փոքրիկ թաղակապ մատուռ: Այն նույնպես կառուցված է անմշակ քարով ու կրաշաղախով: Մյուսների պես, սա էլ կրում է XIII դարին բնորոշ կառուցողական ու ոճական առանձնահատկությունները:

Բացի վերը նկարագրված կառույցներից, հնավայրի տարածքում պահպանվել են նաեւ մի քանի այլ շինությունների մնացորդներն ու հետքերը: Տարածքում՝ ամբողջական կամ բեկորված դրությամբ, պահպանվել են ավելի քան երկու տասնյակ գեղաքանդակ, մի քանիսը նաեւ արձանագիր, խաչքարեր: Փլատակների մեջ են նաեւ երեսապատի մի քանի արձանագիր սրբատաշ քարեր:

Մահարձանից 15 մ հարավ-արեւելք, մեջքի վրա ընկած խաչքարին (չափերը՝ 143x66x17 սմ) փորագրված է.

ԹՎ(ԻՆ)| ՈՂԸ (1249):

Եկեղեցուց 5-6 մ հարավ, զգալի մասով հողի մեջ խրված, իր նախնական տեղում (երեսով դեպի արեւմուտք) կանգնած խաչքարի (135x74x27 սմ) վարդյակի երկու կողմերում չորս տողով փորագրված է.

ՀԱՍԱՆ | ՄԱՆԷՐՆՍ(?)| ՅԱՂԱՒԹՍ |ՅԻՇԵՑԷՔ:

Եկեղեցուց շուրջ 50 մ հարավ մեջքի վրա ընկած գեղաքանդակ խաչքարի (200x90 սմ) կողին (16 տող) եւ ստորին խաչաթեւերի աջ ու ձախ կողմերում

90. **Մ. Տէր-Մովսիսեան**, *նշվ. աշխ., էջ 93:*

91. **Д. А. Ахундов**, *Архитектура древнего и ранне-средневекового Азербайджана, Баку, 1986, էջ 227, նկ. 263:*

92. *Նախորդ հրատարակիչների մոտ կան մանր վրիպումներ, սխալ են տեղադրված տողաբաժանման նշանները:*







*ՉԱՓՆԻ. խաչքար՝ հուշարձանախմբի արեւելյան կողմում տարածված գերեզմանոցում, խաչքար (Նախորդի մոտ) 1289 թ., մահարձանի արեւմտյան ճակատում ագուցված խաչքար XIII դ., խաչքար 1249 թ. մահարձանից*





(1 տող) փորագրված է.

ՄԽԻ|ԹԱՐ:| ԵՍ ՍԱ|ԴՈՒԻ|Ն ՈՒ | ԴՈՒ|ԴԻ Կ|ԱՆԳ(Ն)|ԵՑԱՔ | ԽԱՉՍ | ՍՐԱՀ|ԱՆԳԻ|Ն ՅԱՂ|ԱԻԹ|Ս ՅԻՇ|ԵՅԷՔ | ԹՎ(ԻՆ) ՉԹ (1260):

Մահարձանից շուրջ 35 մ արեւելք, բլրի վրա փռված գերեզմանոցում, մեջքի վրա ընկած գեղաքանդակ խաչքարի (190x61x22 սմ) կողին փորագրված է.

ԹՎ(ԻՆ) ՈՁՁ (1237)| ԵՍ ՌՆ| Ա...ՎԱ| Դ...Տ| ՈՒՆԱՅՐԿ(?)| ԴԵՂ ԿԱՆ(ԳՆ)|ԵՑԱՔ ՋԽ|ԱՉՍ ՀԱՒՐ| ԵՒ ՄԱՒՐ Ե|Ւ ԵՂԲԱՒՐ | ՄԵՐՈՑ Մ|Ո...| ...ԻՆ| ...ՋԳ|ԵՑ...ԱՇԽ|Ո...ՈՐԵՑ| ...ՈՐՔ Ե|ՐԿՐՊԱԳ|ԷՔ ՅԱՂԱԻ|ԹՍ ՅԻՇԵ|ՑԷՔ:

Մահարձանից արեւելք, բլրի գագաթին կանգնած խաչքարի (130x63x25 սմ) կողին 11 տողով փորագրված է.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ Ա(ՒՐ)Հ(ՆՈՒԱԾ),| ԹՎ(ԻՆ) ՉԼԸ(1289)| Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐ|ՄԻ ԳԱԳ|ԻԿԱ ԵՒ ՆՆՋԵՑ(ԵԼՈՑ) ԻՒ|ՐՈՑ, ԱՄ|ԷՆ: Ս(ՈՒՐ)Բ | ՅՈՎԱ|ՆՆԵՍԻՆ | ԱՄԷՆ:

Մի բեկորված խաչքարի (40x38x9 սմ) երկու կտորներին (մահարձանի արեւմտյան կողմում) մեկ տողով փորագրված է.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԷ...

Անկանոն եզրագծով երեսապատի բեկորին (55x30x22 սմ) չորս տողով փորագրված է.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ | ՈՂՈՐՄԻ ԱՋԱՏԻՆ | ՄԻԱԿԵՑ...

Մահարձանի եւ եկեղեցու միջեւ ընկած մեկ այլ երեսապատի սրբատաշ քարին (չափ. 61x48 սմ) 9 տողով փորագրված է.

ԵՍ ԽՈՇԱՒՐՈՐ(?)ՈՐԴԻՔ | ԳՐ(Ի)ԳՈՐ Ք(Ա)Հ(ԱՆԱՅԻՆ) ՄԻԱԲԱՆ|ԵՑԱՔ Ս(ՈՒՐ)Բ ԿԱՐԱՊԵՏԻՍ | ՍՊԱՍԱՒՈՐՔ ՍՈՐԱ ԽՈ|ՍՏԱՑԱՆ: Բ: (2) ՊԱՏԱՐԱԳ ՋՍ(ՈՒՐ)Բ | ԳՐ(Ի)ԳՈՐ(Ի) ՏԱՒՆԻՆ, ՈՐ Ա|ՂՈՒՀԱՅՔԻՆ: Ա: (1) ԳՐԻԳՈՐԱ: Ա:(1)...| ... ԽԱԹՈՒՆ, ԱՌԱՋՆՈՐ| ...⌈Տ⌉ԱՐԻՉՔ...| ...

Մահարձանի հյուսիս-արեւմտյան անկյան մոտ, փլատակների մեջ ընկած սրբատաշ երեսապատի (63x47x12 սմ) քարին 5 տողով փորագրված է.

(ԿԱՄԱ)ՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ, ԻՇԽԱՆՈՒԹԵ(ԱՄԲ)| ՊԱՊԱՔԻՆ, ԵՍ ՎԱՐԴԱՆ Տ...| ՏԵՐՈՒՆԵՍ ԿՈՒՏՐԱԿ...| ՊԵՏԻՆ ԵՒ ՄԻԱԲԱՆՔՍ ԽՈՍ(ՏԱՑԱՆ)...| Ս(ՈՒՐ)Բ ԳՐԻԳՈՐԻՆ:...

Ի դեպ, Ս. Ջալալյանցը մի արձանագրություն էլ է հրապարակել հնավայրից (մահարձանի պատից), որը հետագայում անփոփոխ վերահրապարակել են Մ. Տէր-Մովսիսյանն ու Ս. Բարխուդարյանը.

ՅՈՒՍՈՎՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՍ ՀԱՍԱՆ ԵՒ ՋՈՂԲԷԳ ԵՒ ԻՆԱՆԿ ԽԱԹՈՒՆ ՋԻՆՉ ԱՐԹՈՒՐԱՅ ՈՐԴԻՈՒՅՆ ԿԱՅՐ ԾԱԽԵՑԱՔ ՀԱՍԱՆԱՅ ՀՈՂՈՎ ԵՒ ՄԱՐԳՈՎ ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏԻՆ. ԵՏՈՒՆ ԱՄԵՆԱՅՆ ԵԿԵՂԵՑԻՔ ՀԱՍԱՆԱՅ. ԿԱՏԱՐԻՉՔ ԱՒՐՀՆԻՆ ՅԱՍՏՈՒԾՈՅ:

## ԼԵՎ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ

Լեւ գետի ամենավերին՝ ալպիական գոտու շրջանում է գտնվում համանուն գյուղը: Պատմական գյուղատեղին, որի տարածքում XX դարի սկզբներից հաստատվել էին խաշնարած ցեղերը, փռված է Լեւի ձախափնյա հարավահայաց ձորալանջին, ծովի մակերեւույթից 1730-1840 մ բարձրության վրա: 1960-80-ական թթ. Լեւ գետի աջ ափին գոյացել է գյուղի մի նոր թաղամաս:

1908 թ. Լեւն ուներ ընդամենը 46 քուրդ բնա-

կիչ,[93] 1952-ին՝ 45 տուն,[94] 1972-ին՝ 65 տուն,[95] իսկ 1981-ին 496 բնակիչ:[96] Ասել է թե՝ 1908-1981 թթ. ընթացքում գյուղի ծագումով քուրդ բնակչության թվաքանակը ավելի քան տասնապատկվել է: Այսուհանդերձ՝ նրանք չէին կարողացել պահպանել ցեղային նկարագիրը:

Չնայած, որ Լեւը հայաբնակ է եղել առնվազն միջնադարից, այնուամենայնիվ նրա մասին գրավոր առաջին հիշատակությանը հանդիպում ենք միայն 1763 թ. Դադի վանքի կալվածացուցակում:[97] Ի դեպ, գյուղը վանքապատկան կալված էր համարվում նաեւ 1913 թ.,[98] հավանական է՝ ընդհուպ խորհրդային կարգերի հաստատումը:

Գյուղամիջում մի ժայռազանգվածի արեւմտահայաց երեսին քանդակված են մի քանի պարզ խաչեր, իսկ գյուղից 1,6 կմ հյուսիս-արեւելք, 15 մ բարձրությամբ առանձնացած ժայռի սրտորոտում մեջքի



ԼԵՎ. խաչքար գյուղի մոտ (XIII դ.)

վրա ընկած է գեղաքանդակ, բայց անարձանագիր խաչքար: Վերջինս ամբողջական է եւ ունի 180x93x20 սմ չափեր:

Լեւ գյուղի շրջակայքում պահպանվել են մի քանի հին գյուղատեղիներ, ուր XIX դարի վերջերից հանգրվանել են քուրդ եւ թուրք խաշնարած ցեղեր: Ցավոք, այդ գյուղերի պատմական-հայկական անունները մեծ մասամբ մոռացության են մատնվել եւ այժմ առավելապես հայտնի են օտարահունչ պարբերակով: Դրանք են՝ Թախդամն ու Քյուրդդամը, որոնք գտնվում են Լեւ գյուղից 2-3 կմ համանուն գետի՝ հոսանքով վեր, ձախ ափին: Այնուհետեւ՝ Ջամիլլու եւ Դամրչիդամ (հայկական տարբերակը՝ Դարբնոց) գյուղատեղիները, որոնք գտնվում են Լեւից 4-6 կմ հարավ-արեւմուտք եւ ուր հաստատվել էին այրում եւ ղամշլու ցեղերից թուրքեր:[99] Ոտիջուր եւ Ջամիլլու վտակների միախառնման տեղում է գտնվում (Լեւից 3,5 կմ հարավ) Բաշդամ կամ Սեյդլար գյուղատեղին, իսկ ընդամենը 1-2 կմ հարավ՝ Չուփուրլու եւ Էյյասալիլար կամ Էլլա Ջալլար գյուղատեղիները:

## ՅԱՆՇԱՂ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ



ԳՈՐՏԱԳԱՐԱԿ. խաչքար լճափի արեւմտյան կողմում

Յանշաղը շրջանի հինավուրց բնակավայրերից է: Գտնվում է Լեւ գետի աջակողմյան ամենաջրառատ՝ Մեյդան վտակի ձախափնյա ձորալանջին, 1700-1750 մ բարձրության վրա:

Գյուղը միեւնույն Յանշաղ անվամբ առաջին անգամ հիշատակվում է 1662 թ. մի գրչագիր «Մաշտոցի» հիշատակարանում. «Յիշատակ է բարեմիտ Յուրին, որ կողակից էր Ավզակին ի երկրէն Ծարայ ի գեղջէն Եանշաղէն, յիշատակ է այս սուրբ Մաշտոցս հոգոյ իմոյ փվի իմ ձեռովս Դաւիթ քահանային, օվ որ կարդայ, ասպուած ողորմի ասէ, ամէն»:[100]

93. Տես "Кавказский Календарь на 1910 г." Тифлис, 1909:

94. Տես «Հայրենիքի ձայն» շաբաթաթերթ, 1993, N 20, էջ 5:

95. Տես նույն տեղում:

96. Տես՝ «Ադրբեջանի խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր 6, Բաքու, 1982, էջ 176:

97. «Ջամբռ», էջ 283:

98. «Արձագանք», Թիֆլիս, 1886, N44, էջ 577: ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 57, ցուցակ 1, գործ 400, թերթ 1: Տես՝ նաեւ «Ազատամարտ» 1992, N 15, էջ 14 (**Սամվել Կարապետյան**, Դադի վանքի կալվածները):

99. **Լէօ**, Պատմութիւն Ղարաբաղի հայոց թեմական հոգեւոր դպրոցի 1838-1913, Թիֆլիս, 1914, էջ 677:

100. «Արցախ»., էջ 221:

Շուրջ 100 տարի անց (1763-ին) գյուղը հիշվում է որպես Դադի վանքի կալվածների մեջ մտնող բնակավայր:[101]

XIX դարի վերջերին այստեղ հաստատվել են քոլանեցի խաշնարած քրդերի սակավաթիվ ընտանիքներ,[102] որոնք անցնող տասնամյակների ընթացքում ու հատկապես խորհրդային տարիներին իսպառ թուրքացան:

Ինչ վերաբերում է գյուղի բնիկներին, ապա նրանք, գավառի հայաբնակ շատ այլ գյուղերի բնակիչների պես, իրենց հազարամյա բնօրրանը լքել էին XVIII դարի կեսերին: Բարեբախտաբար հայտնի է յանշաղցիների՝ ուր հաստատված լինելը: Պարզվում է, որ շատերի պես նրանք էլ վերաբնակվել են Վրաստանի տարածքում: Մայրաքաղաք Տփղիսից (Թբիլիսի) մի քանի կիլոմետր արեւմուտք գտնվող Տաբախմելա (Տաբախմելիք) գյուղում այժմ մեծ թիվ են կազմում արդեն գրեթե ամբողջությամբ վրացախոս ծագումով Յանշաղ գյուղացի եւ Յանշաղյանց ազգանունը կրող հայերը (այժմ մեծ մասը կրում է Յանշաղով կամ Յանշաղիշվիլի ազգանունները):[103]

Յանշաղ գյուղի տարածքում պահպանվել են միայն մի քանի խաչքարեր, իսկ երբեմնի եկեղեցու (որն անշուշտ եղել է) հետքերն իսկ չեն մնացել: Այսպես՝ գյուղից 4 կմ արեւելք, դեպի Գորտգազարակ լիճը (թուրք. Ղանլիգյոլ) տանող ճանապարհի եզրին, լճից 1 կմ արեւմուտք պահպանվում է մի խիստ հողմնահարված խաչքար, որը ստորին մասում ունի եռատող կիսաեղծ արձանագրություն.

ԵՍ... ԻՆ ԳԻՆԵ(՞) Ջ⌜Խ⌝|ԱՉՍ... ԻՆ ՀՈԳՈ⌜Յ⌝|
...ՈՒՂ ⌜ՈՐՍ⌝...

Խաչքարը քանդակված է սպիտակավուն անորակ մարմարե ժայռաբեկորի հարթեցված երեսին: Վերին խաչաթեւի աջ ու ձախ կողմերում քանդակված են խաղողի ողկույզներ: Ժայռաբեկորի խաչաքանդակ երեսի չափերն են 160x120 սմ:

Հին գյուղատեղիի հետքեր են նշմարվում Գորտգազարակ լճի հարավային եւ արեւմտյան ափերին: Ի դեպ, հավանական է, որ հենց այս է Գորտգազարակ կամ Ուղտապան գյուղատեղին, որի մասին հիշատակել է Սարգիս Ջալալյանցը. «Բարձրացեալ մեր անտի ելաք ի բազուկ մեծի լերինն Մռաւայ ի տեղին, որ ի հնումն կոչիւր Գորտգազարակ, իսկ այժմ անուանի Ուղտապան: Աւերակս այս անկանի ի վերնակողմն Դադի վանից ի մէջ ամրապինդ լերանց Մռաւայ, զոր տաճիկք անուանեն Ղանլիգեօլ, յաղագս սպանութեան իրիք եղելոյ մերձ նմին լճի եւ արկանելոյ դիոյն ի նոյն լիճ: Վայրս այս երբեմն ապաստարան էր բազմաց քրիստոնէից յերեսաց կապուղի կովկասականաց...»:[104]

Յանշաղից 5 կմ հյուսիս-արեւելք Մեյդան գետակի ափին պահպանվում են համանուն գյուղի ավերակները: Ի դեպ, սա եւս հիշվում է 1763 թ. վանքապատկան գյուղերի ցուցակում:[105] Այս գյուղատեղիից մինչեւ Օմարի հայտնի լեռնանցքը 4 կմ է (ուղիղ գծով): Հենց այս գյուղատեղիի տարածքում սեւանցի ազատամարտիկ Մանվել Ղազարյանն ու իր ընկերները հայտնաբերել են երկու խաչքար. «Նրանցից մեկն ընկած է, մյուսը՝ կանգուն, խաչքարի կենտրոնում գտնվող մեծ խաչապատկերների կողքին քանդակված են փոքրերը, խաչերի վահանները զարդարված են ոճավորված լուսապատկերներով: Կանգուն խաչքարի վերեւի մասը ջարդված է»:[106]

Յանշաղի շրջակայքում են գտնվում եւս երկու գյուղատեղիներ, ուր հաստատված խաշնարածներից դրանք կոչվել են Ղասըմբինասի եւ Յանշաղբինա անուններով:

Ի դեպ, 1977թ. Հայաստանի Հուշարձանների պահպանության գլխավոր վարչությունը ստացել էր Յանշաղ գյուղից ուղարկված մի նամակ-ահազանգ, որի հեղինակը (իր անունը վերապահել էր) տեղեկացրել էր, թե իրենց գյուղից 5 կմ հյուսիս, Սեյդանլու վայրում գտնվող գյուղատեղիի գերեզմանոցն ավերվել էր:

Ահազանգի հետքերով հնավայր այցելած պատ-

---

*101. «Զամբո», էջ 283:*

*102. Տես՝ **Լէօ**, նշվ. աշխ., էջ 676:*

*103. 1840-ական թվականներին Տաբախմելայում կառուցված հայոց Սբ. Գեւորգ եկեղեցու խորանի վեմ քարին փորագրված արձանագրությունից պարզվում է, որ ինչպես հիմնադիրները, այնպես էլ 1877-ին եկեղեցին նորոգողները միեւնույն՝ Յանշաղյանց տոհմից էին.*

*1877 ԱՄԻ*
*ԱՅՍ ՍԲ ԳԷՈՐԳԱՅ ԵԿԵ-*
*ՂԵՑԻՆ, ՈՐ ՀԻՄՆԱՐԿԱԾ Է*
*ԵԱՆՇԱՂԵԱՆՑԻ, ԿՐԿԻՆ*
*ՆՈՐՈԳ(Ե)ՑԻՆ ՆՈՐԱ ՈՐԴԻՔ ԴԱ-*
*ԻԻԹ, ԿՕՆԻ, ՊԵՏՐՈՍ, ՍԱՐ-*
*ԳԻՍ, ԳՈԳԻ, ՅԱՐՈՒԹԻՒՆ,*
*ԳԷՈՐԳԻ, ԳՈԴԼԱՅ ԵԱՆ-*
*ՇԱՂԵԱՆՑՆԵՐԸ:*
*ՅԻՇԱՏԱԿ Է ԱՅՍ ՄԲ ԳԷ-*
*ՈՐԳԱՅ ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻՆ*
*ԿՐԿԻՆ ԱՆԳԱՄ ՆՈՐՈ-*
*ԳԵՑԻՆ ԵԱՆՇԱՂԵԱՆՑԻ*
*ՈՐԴԻՔԸ:*

*Եկեղեցու շուրջ կան Յանշաղյանցներին պատկանող մի քանի վրացագիր տապանաքարեր:*

*Ի դեպ, Թիֆլիսի եւ մանավանդ նրան մերձակա գյուղերի հայ բնակչության թվում զգալի մաս են կազմում XVIII դարի 2-րդ կեսին Արցախից գաղթածները: Օրինակ՝ Հավլաբարում հաստատվել էին Շամքորեցիք ու Գանձակեցիք, Լիս գյուղում՝ Բռաջուրի եւ Ոսկանապատի հայերը, Տաբախմելայում՝ Յանշաղցիները եւ այլն: Կարծում ենք, որ թիֆլիսեցի հայտնի Չիրքինյանցներն (Չիրքինովներ) էլ Քարվաճառի Չիրքին գյուղից գաղթածներ են:*

---

*104. **Ս. Ջալալեանց**, նշվ. աշխ, էջ 221:*

*105. «Զամբո», էջ 283:*

*106. «Երկիր» օրաթերթ, N 107 (701), 8 հունիս, 1994, էջ 6 (Այս հնավայրը մեզ դեռեւս չի հաջողվել այցելել):*

մաքան Սուրեն Սաղումյանը ականատեսն է եղել բուլդոզերների աշխատանքից հետո՝ խաչքարերից եւ տապանաքարերից գոյացված մի բլուրի, որտեղ մի սպիտակավուն տապանաքարի բեկորին կարդացել է.

ԱՅՍ Է ՏԱՆ[Գ]|ԻՍՏ ԵԳԱՆ[Ի]Ն[], ԹՎԻՆ ՌՃԾԳ (1704) ԷՐ:[107]

## ԻԳԱՁՈՐ ԵՎ ԵՐԻՑՈՒՇԵՆ

Գորտագարակի լճից սկիզբ առնող վտակը (Իրիցաջուրը), հոսելով խոր ձորի միջով, անցնում է նախ՝ Երիցուշեն, ապա նաեւ Իգաձոր գյուղատեղիների ձախ կողմով: Երկու գյուղատեղիներն էլ շրջապատված են թավ անտառներով եւ փռված են մի քանի վտակներով կտրտված ձորակների մեջ (մանավանդ՝ Իգաձորը):



ԻԳԱՁՈՐ

Իգաձորի մասին մատենագրական վկայություններ չեն պահպանվել, բայց գյուղատեղիից 4 կմ հարավ-արեւմուտք, Տրտու եւ Իգաձոր վտակների միախառնման վայրին մոտ գտնվող Սբ. Աստվածածնա վանքի նվիրատվական արձանագրություններից մեկում՝ երբեմնի ծաղկուն այս գյուղի մի թաղամասը հիշված է որպես վանքի սեփականություն: Ի դեպ, Իգաձորը մի քանի թաղամասերի է բաժանված եղել նաեւ միջնադարում, որի ապացույցն է Սբ. Աստվածածնի վանքի մի արձանագրություն, որը թեեւ անթվակիր է, այստիանդերձ գրչությամբ բնորոշ է XII-XIII դարերին:[108]

Իգաձորի հարավային թաղամասում պահպանվել են երբեմնի հայկական գերեզմանոցից մնացած երկու ջարդված խաչքարեր: Բեկորներից մեկի վրա մնացել է արձանագրության սկզբնամասը.

ԵՍ ԳՐԻԳՈ|Ր ԵՒ ԱՅԵԼ| [Յ]Ա ԵՂԲԱՅՐ|[Ն] Ի[] Մ ՏՈՆԱՆ| ԿԱՆԳՆ(ԵՑԻ ԶԽԱՉ)...

Խաչքարի բեկորը (չափերն են՝ 46x58x11 սմ) գեղաքանդակ է՝ կերտված մանուշակագույն կարծր ավազաքարից:

Երկրորդ բեկորը (չափերը 77x31x16 սմ) ուղղահայաց դիրքով, մեջտեղից կիսված մեկ այլ խաչքարի ձախակողմյան մասն է: Եզրագոտին հյուսածո է, խաչաքանդակն ու մնացած զարդելը՝ զուսպ:





*ԵՐԻՑՈՒՇԵՆ. եկեղեցի գյուղատեղիում XVII դ., (հատակագիծ, կտրվածք դեպի հյուսիս եւ արեւելք)*

Կարծում ենք՝ XIX դարի վերջերին այստեղ հաստատված թուրքերը գյուղը, համարյա թարգմանաբար, կոչել են՝ Բաղրլու:

Երիցուշենն Իգաձորից հեռու է հազիվ 1 կմ՝ դեպի հյուսիս-արեւելք: Այն գտնվում է ծովի մակերեւույթից 1550-1600 մ բարձրության վրա եւ շուրջ 50-60 մ ավելի բարձր է, քան Իգաձորը: Գյուղի մասին միակ գրավոր վկայությունը 1763 թվականից է:[109] Հետագայում այստեղ եւս հաստատվել են խաշնարածներ, որոնք էլ գյուղի հայկական անվանումը պարզապես թարգմանել են թուրքերեն՝ Քեշիշքյանդ:

Երիցուշենի վերին ծայրում, Գորտագարակ լճից սկիզբ առնող վտակի աջ ափին ցայսօր կիսավեր դրությամբ պահպանվում է միանավ թաղածածկ հորինվածքով եկեղեցին (արտաքին չափերն են 14,2x7,6

*107. Օգտվելով առիթից՝ մեր խորին շնորհակալությունն ենք հայտնում պատմաբան-վիմագրագետ Սուրեն Սաղումյանին՝ այս տեղեկությունն ու վիմագրի վերծանությունը մեզ տրամադրելու համար:*

*108. Այս արձանագրության վերծանությունը տես նույն աշխ. էջ 77:*

*109. «Ջամբռ», էջ 283:*









*ԻԳԱԶՈՐ. խաչքարերի բեկորներ (XII-XIII դդ.)*
*ԵՐԻՑՈՒՇԵՆ. եկեղեցու տեսքը հարավ-արեւմուտքից եւ ներքին տեսքը դեպի արեւմուտք*

մ):[110] Վերջինիս երկթեք ծածկի փակ առնված փանիքը ներքուստ պահում են երկու զույգ որմնասյուներին հենված թաղակիր կամարները: Խորանի երկու կողմերում կան ավանդատներ: Միակ մուտքը հարավային ճակատից է: Կառուցված է կրաշաղախով, անմշակ քարով, բացառությամբ՝ թաղակիր կամարների, որոնք իրականացված են սրբատաշ քարերից: Շինության պատերը ներսից ամբողջապես սվաղված են եղել, բայց սվաղն այժմ մեծ մասամբ քայքայված ու թափված է: Ուշագրավ են եկեղեցու որմերում ագուցված երեք խաչքարերը: Դրանցից երկուսը՝ գեղաքանդակ, մեծաչափ ու նույնաոճ խաչքարեր են, հավանաբար միեւնույն քանդակագործի ձեռքի աշխատանք: Երկու խաչքարերը ներքուստ ագուցված են եկեղեցու հյուսիսային եւ հարավային պատերի մեջ, ավանդատների մուտքերի մոտ: Հյուսիսային պատի մեջ, ինչպես նաեւ նրա մոտ՝ որմնասյան հարավահայաց երեսին ագուցված խաչքարերն արձանագիր են եւ բարեբախտաբար նաեւ թվագրված: Ըստ ժամանակագրության՝ առավել հինը որմնասյան մեջ ագուցված խաչքարն է (չափերն են՝ 68x46 սմ): Այն ունի բավականին պարզ լուծումներ: Կենտրոնում ռճավորված կենաց ծառից սկիզբ առնող խաչն է, որի վերին խաչաթեւի երկու կողմերում քանդակված են մեկական խաղողի ողկույզներ, իսկ ստորին թեւի երկու կողմերում՝ հորիզոնական խաչաթեւերի

*110. Այս եկեղեցու գոյության մասին տեղեկացել եմ մաթեմատիկոս Վոլոդյա Հարությունյանից, որը դեռեւս 1986-ին եղել էր հնավայրում, իսկ 1987-ին ինձ եւս հնավայր առաջնորդեց:*

պակ, միապող փորագրված է.

ԹԻՒ ՈԽԵ (1196):

Երկրորդ արձանագիր խաչքարը (չափերն են՝ 2,40x1,20 սմ), որը նույնպես ագուցված է եկեղեցու







ԵՐԻՑՈՒՇԵՆ. խաչքարեր ագուցված եկեղեցու ներսում.
1. 1196 թ., 2. 1222 թ., 3. XII-XIII դդ.

հյուսիսային պատի մեջ, մկրտարանից ներքեւ ունի բավականին ուշագրավ լուծում: Նրա ստորին մասում հյուսածո երկրաչափական նախշերով իրար կողք քանդակված են զույգ վարդյակներ: Դրանցից սկիզբ են առնում երեք կողմ ձգվող հյուսածո, զարդագոտիներով իրարից բաժանված, գեղաքանդակ զույգ խաչերը: Սրանց թեւերի շուրջ խաղողի ողկույզների ու այլ խորհրդանշական քանդակներ են: Արձանագրությունը փորագրված է բազմատող՝ խաչքարի վերնամասում (4 տող) եւ ստորին մասում (5 կարճ տող).

Թ(ՎԻՆ) Ո⸢ՀԱ⸣ (1222) ⸢ԷՐ⸣| ԵՍ ԱՌԱՏՍ ԿԱՆԳՆԵՑԻ | ԶԽԱՉՍ ԻՆՁ ԵՒ ՄԱՒՐ ԻՄՈՅ Ա...| ՄԻԿԱՅ, ԱՒԳՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԱՆՈՒՆԱՅ| ԵՒ ՀԱ|ՄԱՆ|ԱՅ Յ|ԱՂԱՒ|ԹՍ ԻՇԵՑԷՔ ԶԳՈՐԾՈՂՍ:

Թեեւ անարձանագիր, սակայն ուշագրավ է նաեւ հարավային պատի մեջ ագուցված գեղաքանդակ խաչքարը (չափերն են 2.00x90 սմ): Սրա հատկանշական առանձնահատկություններից է խաչքարի ստորին մասում պատկերված զրահավորված հեծյալի քանդակը: Ըստ կատարման ոճական ու գեղարվեստական լուծումների՝ խաչքարը հար եւ նման է Խաչենի գավառի շատ հնավայրերում (Կոշիկ Անապատ, Գանձասար, Օխտը Եղցի եւ այլն) պահպանված հեծյալների պատկերներ ունեցող համանման բազմաթիվ այլ խաչքարերին: Ըստ համեմատական ուսումնասիրության՝ այս խաչքարը կարելի է վերագրել XIII դարի սկզբներին, իսկ բուն եկեղեցին՝ XVII դարին: Ասել կուզի՝ Երիցուշենում հայ կյանքը շարունակվել է առնվազն XII դարից մինչեւ XVIII դարի կեսերը:

## ԲԱՐՍՂԻՇԵՆ ԵՎ ՄԵՐՋԱԿԱՅՔ

Բարսղիշենը գտնվում է Ցանշաղից 2 կմ հարավ-արեւմուտք, Լեւ գետի ձախակողմյան մի փոքրիկ վտակի հարավահայաց ձորալանջին, ծովի մակերեւույթից 1650-1740 մ բարձրության վրա:

Գյուղի մասին միակ գրավոր հիշատակությանը



ԲԱՐՍՂԻՇԵՆ

հանդիպում ենք Դադի վանքի կալվածագրացուցակում, որն կազմված է 1763 թ.:[111]

XIX դարի վերջերին այստեղ հաստատված քրդական ցեղի քրդերը, ըստ էության ընդամենը աղավաղելով պատմական տեղանունը, այն վերանվանել են՝ Բաղրսաղ:

111. «Ջամբռ», էջ 283:






*Արձանագրությունների եւ խաչքարերի բեկորներ «Ղամշլի» գյուղատեղիում*

Բարսղիշենի փարածքում պահպանվել են Թալա եւ Ղամշլի գյուղատեղիները. առաջինը՝ 2 կմ հարավ, արեւելահայաց անտառածածկ լեռնալանջին, իսկ երկրորդը՝ Լեւ գետի հովտում, նրա աջ ափին: Ղամշլի գյուղատեղիի տարածքում մի քանի բնակելի ավերակ շենքերի պատերի մեջ ագուցված են բազմաթիվ խաչքարեր, սրբապաշ երեսպատի քարեր, մինչեւ անգամ եկեղեցու բարավորի արձանագիր քար: Հասկանալի է, որ տեղում հաստատված խաշնարածները, ավերելով հայոց գերեզմանոցն ու եկեղեցին, դրանց բեկորներն օգտագործել են իրենց համար բնակարաններ կառուցելիս: Խաչքարերից մեկն ունի հետեւյալ արձանագրությունը.

ԵՍ ԴԱՒ|ԻԹ ԿԱՆԳՆԵՑԻ ՔԽ(ԱՉ)Ս | ՔԱՊ... ՄԱ|ՒՐ ԻՄՈՅ Ի... ՅԻ|ՇԵ|Յ|ԷՔ, ԹԻ|ՒՆ...:

Ավելի հավանական է թվում, որ ինչպես այս, այնպես էլ 5-6 անարձանագիր ուրիշ խաչքարեր (բոլորն էլ ունեն պարզագույն լուծումներ) ի սկզբանե պատկանել են միեւնույն եկեղեցուն եւ եղել են երեսպատի քարեր:

Խիստ ուշագրավ եւ արժեքավոր է մի քանի մասերի կոտրատված բարավորը, որի պահպանված երկու բեկորներին կարդացվում է հետեւյալը.

ՐԵ͞Ս ԱՐԶՈՒ[112] ԽԱ|(ԹՈՒՆՍ Ա)ՄՈՒՍԻՆ ՎԱԽ|(ՏԱՆԳԱ) ԵՒ ՄԱՄԱ ԽԱ|(ԹՈՒՆ ՔՈ)ՅՐ ԻՄ ՇԻՆԵ|(ՑԻՆՔ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՍ) ՅԱ|(ՂԱՒԹՍ ՅԻՇԵՑԷՔ)...[113]

*112. Արզու խաթունը Վերին Խաչենի (Ծարի) իշխան Վախտանգի կինն էր եւ 1214 թ. Դադի վանքի կաթողիկե եկեղեցու կառուցողը: Արձանագրության շնորհիվ պարզվում է, որ իշխանուհին՝ քրոջ հետ միասին, ներկայում Ղամշլի անվամբ հայտնի հին գյուղատեղիում XIII դարի սկզբներին եւս մի եկեղեցի է կառուցել: Ի դեպ, Արզու խաթունը շինարարական գործունեություն է ծավալել նաեւ Օձկա վանքում (Պտրեցիք գյուղի մոտ):*














*Բարսղիշենի եւ «Ղամշլի» գյուղատեղիների միջեւ գտնվող եկեղեցու տեսքը հարավ-արեւմուտքից: Արձանագրություն եկեղեցու արեւմտյան պատին: Խաչաքանդակներ եկեղեցու արեւմտյան ճակատին: Բարսղիշենի եւ «Ղամշլի» գյուղատեղիների միջեւ գտնվող եկեղեցու հատակագիծը եւ կտրվածքը:*

Ղամշլիից 1,5 կմ Լեւ գետի հոսանքն ի վեր պահպանվում է բազմիցս նորոգված, բայց ակնհայտորեն հին՝ «Շահի» կոչված կամուրջը, իսկ գյուղատեղիի հարավային ծայրում (գետի ձախ ափին) եղած հին ու մեծ կամրջի հսկա խելը գոյություն ուներ մինչեւ 1980-ական թթ. սկզբները, որից հետո այն քանդվեց գետի սովորական վարարումների հետեւանքով:

Բարսղիշենի եւ Ղամշլիի միջեւ, ավելի մոտ վերջինիս (ընդամենը 0,6 կմ արեւելք), մի գեղատեսիլ բլրի վրա դեռեւս կանգուն են փոքրիկ եկեղեցու պատերը: Թաղածածկ հորինվածքով շենքի ծածկն ու պատերի վերնամասերը ամբողջությամբ քանդված են: Միակ մուտքը բացված է արեւմտյան ճակատից: Կառուցված է անմշակ քարով եւ կրաշաղախով:

Երեսապատի շատ քարերի վրա քանդակված են փոքրիկ նվիրատվական խաչեր: Պահպանվել են նաեւ նույն բովանդակությամբ երկու հակիրճ արձանագրություններ, մեկը՝ արեւմտյան, մյուսը՝ հարավային ճակատներին: Առաջինի բովանդակությունը հետեւյալն է.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂ|ՈՐՄԻ ԳԱԳ(ԻԿԻՆ):

Երկրորդինը.

ԳՐ(Ի)ԳՈՐԻ...| Ի..ՈՅԱ ՈՂՈ|ՐՄԻ Ա(ՍՏՈՒԱ)Ծ:

Եկեղեցին ներսից սվաղված է: Խորանը ուղղանկյունաձեւ է, իսկ արտաքին չափերն են՝ 5,68x4,22 մ:

Շուրջը տարածված է փոքրիկ գերեզմանոցը, ուր պահպանվել են մշակված, ուղղանկյունաձեւ, անարձանագիր մի քանի տապանաքարեր: Եկեղեցու

*113. Բարավորի արձանագիր բեկորները հնագետ Հ. Սիմոնյանի նախաձեռնությամբ ներկայում պահպանման նպատակով փոխադրված են Բերձոր (Լաչին) քաղաքի պատմական թանգարան:*

հորինվածքային ու գեղարվեստական առանձնահատկությունները հաշվի առնելով՝ այն կարելի է թվագրել XIII-XIV դարերով:

Միանավ թաղածածկ հորինվածքով մեկ այլ կիսավեր փոքրիկ եկեղեցի էլ (կանգուն են միայն պատերը) պահպանվել է վերոհիշյալ հնավայրից շուրջ 1 կմ հարավ-արեւելք, Ծաղիկանց լեռան հյուսիսային անտառապատ լանջին: Այդտեղ պահպանվել են նաեւ մի քանի գեղաքանդակ խաչքարեր: Եկեղեցու երեսապատի խաչազարդ քարերից մեկը (XIII-XIV դդ.) այժմ փոխադրված է «Ղամշլի» գյուղատեղի:

## ՋԵՐՄԱՂԲՅՈՒՐ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ

Ջերմաղբյուր գյուղատեղին գտնվում է Տրտուի ձախ վտակներից մեկի ակունքի շրջանում, դեպի Ռմբոսդյան լեռնանցք տանող ճանապարհին: Սա հայտնի է նաեւ թուրք.՝ Իսսիբուլաղ (տաք աղբյուր) անունով:

Ջերմաղբյուր-Իսսիբուլաղից 1,5 կմ հարավ-արեւելք նույն վտակի ձախ ափի ձորալանջին գտնվում է պատմական անունը կորցրած եւ թուրքերից Քիլիսա (թուրք. եկեղեցի) կոչված գյուղատեղին:

Այստեղ ցայսօր կանգուն է անմշակ քարերով ու կրաշաղախով XVII դարում կառուցված թաղածածկ միանավ եկեղեցին (արտաքին չափերն են 14,15x7,80մ): Հարավային ճակատից բացված միակ մուտքի մեջ, իբրեւ անկյունաքարեր եւ բարավոր, ագուցված են երեք գեղաքանդակ խաչքարեր: Դրանցից երկուսի վրա պահպանվել են արձանագրություններ, ընդ որում, մեկի պատվանդանին՝ երկ-









*«Քիլիսա» եւ «Միշնի» գյուղերը, «Քիլիսա» գյուղում գտնվող եկեղեցու ներքին տեսքը դեպի արեւմուտք, եկեղեցու մուտքի մեջ ագուցված խաչքարերը (XIII դ.)*

պող, իսկ մյուսի ստորին մասում, հիմնախաչի փակ՝ քառապող: Առաջինի բովանդակությունն է.

ԵՍ ՀԱՍԱՆ ՍԱԿ(Ր)ՈՒՈՐ ԿԱՆ(ԳՆԵՑԻ Ս(ՈՒՐ)Բ ՆՇ)|ԱՆՍ ԲԱՐԵԽԱՒՍ Ի(Ն)Ձ ԵՒ ԻՄ Ն(Ն)ՋԵՑԵԼ(ՈՑՆ):

Երկրորդինը.

Ի ԹՎԻՍ ՀԱՅՈՑ: Ո: Ղ: Ե: (1246)| ԷՐ: ԵՍ ԳՐԻԳՈՐ ԴԱՐԲ|ՈՅՆ ԿԱ(Ն)ԳՆԵՑԻ ՋԽԱՉՍ| ԻՆՁ ՟ԵՒ...Ի՟ՄՈՑ...[114]

Եկեղեցու հարավային կողմում, այժմ՝ ավերակ, երբեմնի գերեզմանոցի տարածքում պահպանվել է անկանոն եզրագծով, սալաձեւ, կիսամշակ՝ հարթեցված երեսին 7 եղծված տող արձանագրությամբ, մի տապանաքար:

Ի դեպ, այս եկեղեցու եւ խաչքարերի նկարագրությամբ «Աղվանական եկեղեցի Քյալբաջարում» վերնագրով Բաքվում մի հոդված է տպագրել ոմն Թոֆիկ Աբդուլլաեւ,[115] որի միակ նպատակն է եղել ընթերցողին համոզել, թե եկեղեցին իբր կառուցել են ներկայիս ադրբեջանցիների քրիստոնյա նախնիները՝ ալբանները (աղվանները):[116]

Ջերմաղբյուրի վտակի ավազանում, նրա աջ կողմում են գտնվում եւս երկու գյուղատեղի, որոնք հայտնի են Միշնի եւ Ներքին (Աշաղա) Խաչ անուններով: Առաջինն իր անունը ստացել է խորհրդային տարիներին, Լաչինի շրջանի համանուն գյուղից գաղթած ու այստեղ հաստատված քրդերից, իսկ երկրորդը՝ շրջակայքում պահպանված խաչքարերից: Դրանցից հաջողվեց գտնել միայն մեկը: Այն XII- XIII դարերին բնորոշ, զուսպ լուծումներով, անարձանագիր մենավոր խաչքար է, որը, ըստ երեւույթին, ունեցել է սահմանաքարի նշանակություն: Գտնվում է Ներքին Խաչ գյուղատեղիից 1 կմ հարավ-արեւելք, ծ. մ. 1711 մ բարձրությամբ բլրի գագաթին: Խաչքարի վերնամասից մի կտոր ջարդված է: Չափերն են 155x78x17 սմ:

Նույն վտակի ձախ ափին են գտնվում Գյոյդարա եւ Աղդաշ գյուղերը, իսկ Տրտուի հովտով ավելի ներքեւ (մինչեւ Լեւ գետի հետ միախառնվելը)՝ Ալչալի, Սարիդաշ, Քենդյերի, Քյավշան, Գյունեյփայա, Նադրխանլի (Տրտուից ձախ), Ղուզեչիրքին, Սնըխքիլիսա, Բաշքյանդ, Միլլի 1, 2, 3-ը (Տրտուից աջ) եւ գետափնյա Չայքյանդ ու Ղլըչլի գյուղերը ուղղակի Տրտու գետի ափին:

Այս վայրերը դեռեւս կարոտ են մանրազնին հետազոտման: Հայոց երբեմնի գերեզմանատան եւ եկեղեցու հետքեր գտել ենք միայն Չայքյանդ գյուղի կենտրոնական մասում: Այստեղ մի քանի բնակելի









*Եկեղեցու խաչազարդ երեսապատի քար «Չայքյանդ» գյուղատեղիում: Մենավոր խաչքար (XIII-XVI դդ.) Ներքին Խաչ եւ «Չայքյանդ» գյուղերի միջեւ: «Քիլիսա» գյուղի եկեղեցու հատակագիծը*

*114. Այս երկու արձանագրությունները մի շարք վրիպումներով ու սխալներով ընթերցել է Մ. Տեր-Մովսիսյանը (նշվ. աշխ., էջ 99), որն էլ անփոփոխ վերահրատարակվել է «Դիվան»-ում (հ. 5, էջ 226): Այստեղ առկա է հետեւյալ շփոթը: «Դիվան»-ում նշված՝ Քիլիսալու գյուղի 4 արձանագրություններից հնավայրում առկա են միայն երկուսը: Մյուս երկուսը՝ դասմական Հաճավ (Օկտյաբրքյանդ) գյուղի աղբյուրի եւ խաչքարի արձանագրություններն են, այնինչ «Դիվան»-ում դրանք նույնպես ցույց են տրված Քիլիսա գյուղի տարածքում:*

*115. «Էլմ վե հայաթ» (Գիտություն եւ կյանք), 1987, N 3, էջ 20-21:*

*116. Տես նաեւ մեր՝ «Քիլիսա գյուղի եկեղեցին» հոդվածը («Հայրենիքի ձայն», 1993, N 26, էջ 5):*

տների եւ հացի փռի շենքի պատերի մեջ ագուցված են ավերված գերեզմանատան կոփրատված տապանաքարեր ու եկեղեցու խաչազարդ քարեր: Ի դեպ, փռի պատի միջից է հանվել եւ ազատամարտիկների ձեռքով ԼՂՀ Չարեքտար գյուղ փոխադրվել եկեղեցու երեսպատի խաչազարդ մի քար: Տեղում պահպանվածներից ոչ մեկի վրա արձանագրություն չգտնվեց, բայց ըստ ոճական ու գեղարվեստական առանձնահատկությունների՝ դրանք կարելի է թվագրել XII-XIV դարերով:

### ՀԱՃԱՎ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ

Քարվաճառ շրջկենտրոնից 3,5 կմ հյուսիս, խոր ձորով հոսող վտակի ձախակողմյան ամֆիթատրոնաձեւ տեղանքի վրա, ծովի մակերեւույթից 1690-1820 մ բարձրությամբ անտառազուրկ ձորալանջին փռված է գավառի պատմական նշանավոր գյուղերից մեկը՝ Հաճավը: 1950-ական թվականներից թրքացած քրդերի հանգրվան այս գյուղը հայտնի էր նախ՝ Մոլոտով, ապա՝ Օկտյաբրքյանդ անուններով:



ՀԱՃԱՎ. տեսքը հարավից

Հաճավը մեկն է գավառի այն հին բնակավայրերից, որն առ այսօր պահպանել է դեռեւս միջնադարում կազմավորված իր հատակագծային առանձնահատկությունները (ինչպես օրինակ՝ Ծար, Մոս, Ճրագ եւ այլ գյուղերում): Աչքի են զարնում լերկ ժայռազանգվածների վրա խիտ կառուցապատումը, փողոցների երկայնքով, հսկա քարերով շարված երկար հենապատերը եւ հայկական հին գյուղերին բնորոշ այլ հատկանշական մանրամասներ:

Թեեւ գյուղի մասին մեզ հայտնի գրավոր առաջին հիշատակությունը XIII դարից է, իսկ երկրորդ հիշատակությունը՝ միայն 1661 թվականից,[117] այնուամենայնիվ տեղում պահպանված XII-XIII դարերի շուրջ մեկ տասնյակ խաչքարերը վկայում են, որ գյուղն առնվազն միջնադարից եղել է գավառի առավել մարդաշատ ու ծաղկուն բնակավայրերից մեկը: Գյուղամիջի աղբյուրը 1677 թ. կառույց է: Այդ է վկայում քարե գոտի (չափերն են 236x86x58 սմ) ճակատին երեք տողով փորագրված շինարարական արձանագրությունը.

ՅԻՇԱՏԱԿ Է ՆՈՎՍ ԱՄԻՐ|ՃԱՆԻՆ, ԱՄԻՐԽԱՆԻՆ, ԱԽԻՃԱՆԻՆ, | Հ (Ա) Ճ (Ա) Ի Գ(Ե)ՂՍ ԹՎ(ԻՆ) ՌՃԻԶ (1677):[118]

Դեռեւս XVII դարում կառուցված աղբյուրի կառուցման ժամանակ նրա հիմքում եւ պատերի մեջ ագուցվել են միջնադարյան եկեղեցուն պատկանող լուսամուտների երկու պսակաքարերը եւ երկու խաչքարեր: Աղբյուրի մերձակայքում ցրված են պեղահան արված մի քանի տապանաքարեր, խաչքարերի պատվանդաններ եւ մոտ 10 գեղաքանդակ խաչքարեր, որոնց մեծ մասը բեկորված վիճակում է: Սրանցից միայն մեկն ունի անթվակիր արձանագրություն (խաչքարն ընկած է գյուղամիջյան ճանապարհի եզրին): Վեց տողանոց բովանդակությունը հետեւյալն է.

ՅԱՆՈՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՍ ՍԱՐԳ|ԻՍ ՏՈՒԻ ՋԱՆԻԲՈՒՅ ՀՈՂՆ Ի ՀԱՃԱՒԱ | ԵԿԵՂԵՑԻՆ: Ա: (1) ԺԱՄ ԻՄ ՀԱՒՐՆ ԳԱՆԳԱՑ, ՈՎ ԽԱՓԱՆԷ | ՄԵՐ ՄԵՂԱՅՆ ՏԷՐ Է:[119]

Խաչքարի զարդաձեւերի եւ վիմագրի գրչության ուսումնասիրությունը թույլ է տալիս այն թվագրել XII-XIII դարերով, որով եւ գործ ունենք Հաճավ գյուղանվան ամենահին հիշատակման հետ:

Հաճավ գյուղատեղիի շրջակայքում գտնվում են մի քանի հին գյուղատեղիներ, որոնք հայտնի են միայն հետագայում խաշնարած ցեղերից ստացած անվանումներով: Դրանցից են Վերին եւ Ներքին Այ-

---

117. ՀՀՊՊԿԱ, ֆ. 57, ց. 1, գ. 4, թ. 4:

118. Այս արձանագրությունը մի շարք վրիպումներով առաջին անգամ հրատարակել է Ս. Բարխուդարյանը («Դիվան...», էջ 226), բայց եւ նշել, թե իբր աղբյուրը գտնվելիս է եղել Քիլիսալու գյուղի եկեղեցու մոտ (ակնհայտ շփոթ է): Առկա անորոշությունն է՛լ ավելի խճճվել է հնագետ Հ. Սիմոնյանի մի հաղորդման պատճառով (տես՝ «Նորատակ», 1995, N1, էջ 1, նաեւ «Հայկական համաշխարհային համագումար», 1995, N1), որը աղբյուրի գտնվելու վայրն է համարում Օթախլի գյուղատեղին, իսկ թվագրումը՝ XV դար (այն դեպքում, երբ նովի ճակատին կա ստույգ թվականը՝ 1677): Հարցի պարզաբանման առթիվ ավելի մանրամասն տես մեր «Հաճավ գյուղի «դեգերումները» վերջ ունե՞ն» հոդվածը, («Առավոտ» օրաթերթ, 1995, 2 մարտի, N23, էջ 6):

119. Այս արձանագրության մինչ այժմ միակ հրատարակիչը նույնպես Ս. Բարխուդարյանն է, որը նշում է, որ այն գտնվում է Քիլիսալու գյուղում («Դիվան», նույն տեղում): Հաճավ գյուղանունը կարդացել են Հաժավ, բայց նշել, որ հնարավոր է կարդալ նաեւ՝ Հաճավ:










*ՀԱՃԱՎ. գյուղատեղիում պահպանված աղբյուրը (1677 թ.): Երբեմնի եկեղեցու լուսամուտների պսակները՝ օգտագործված աղբյուրի շինության մեջ: Խաչքարեր, որոնք տեղի թուրքերը իբրեւ սալահատակ տեղադրել են աղբյուրի առջեւ: Խաչքարի բեկոր (XIII դ.) Հաճավ գյուղատեղիում: Խաչքարի պատվանդան եւ բեկորված խաչքար Հաճավի ավերված գերեզմանատանը: Տեղահան խաչքար մի տնամերձ այգում: Աղբյուրի շինարարական արձանագրության գրչանկարը:*

րումները, Ալչալի, Ալլիքյանդ, Սարիգյունեյ եւ Օթախլի գյուղատեղիները:

## ՔԱՐՎԱՃԱՌ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ

Ծար գավառի կարեւոր ու պատմական գյուղերից է Քարվաճառը: Այն գտնվում է խոր ձորով հոսող Տրտու գետի ձախակողմյան բարձրադիր սարահարթին: Վերջինս գետափից բարձր է համարյա 180 մ (Քարվաճառի՝ ծովի մակերեւույթից միջին բարձրությունը 1600 մ է):

Քարվաճառը հայ մատենագրության մեջ (որպես գրչօջախ) առաջին անգամ հիշատակվում է 1402 թվականին: Այստեղ Թումա Սյունեցու ձեռքով ստեղծվել է «Մեկնութիւն Աւետարանին Մատթէոսի, Գրիգորի Տաթեւացւոյ» աշխատությունը:[120] Այդ ձեռագրում Քարվաճառը հիշված է Քարավաճառ ձեւով: 1661 թվականի մի վավերագրում ի թիվս՝ Հաճավ, Բորու, Գումեր եւ Ջվար գյուղերի հիշված է նաեւ Քարվաճառը (առանց՝ *ա* հոդակապի):[121]

Քարվաճառ տեղանվան ստուգաբանության խնդրով զբաղված Հ. Կարագյոզյանը միանգամայն տեղին նկատել է տվել, որ Քարվաճառը՝ քար վաճառելու տեղով բացատրելը ավելի նման է ժողովրդական ստուգաբանության: Գիտնականը տեղանվան ծագումը առավել հավանական է համարել. «Հին Երեւելքում տարածված **քար** («գաղութ», «ավան») բառից, որը հանդիպում է Միջագետքում եւ նրա շրջակայքում: Այսպես օրինակ, **Քար-Դունիաշ** (Բաբելոնի քասիտերեն անվանումը), **Քար-Բաշշի** (քասիական բնակավայր Մեդիայում), **Քար-Նինլիլ** (քաղաք Ասորեստանում),

*120. «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», հատոր Ա, Երեւան, 1955, էջ 24 (ձեռագիր N 3578):*

*121. ՀՀՊՊԿԱ. ֆ. 57, ց. 1, գ. 4, թ. 4:*

**Քար-Թո֊քուլթի-Նինուլթա** (նույնպես Ասորեստանում), **Քար-Շամաշնասիր** (բնակավայր Ասորեստանում), **Քար-Նուրի** (նույնպես Ասորեստանում), **Քար-Շուրմանուաշարեդ** (Թիլ-Բարսիբ քաղաքի վերանվանված ձեւը ասուրերենում), **Քար-Ռբիգալլի** (Մեդիայի Քիշասա քաղաքի ասուրերեն անվանումը), **Քար-Սիպպուր** (ամրոց եւ մարզ Մեծ Զաբ գետի ավազանում) եւ այլն»:[122]

Այնուամենայնիվ, մենք կարծում ենք, որ Քարվաճառ տեղանվան ձեւավորումն ունի միանգամայն այլ բովանդակություն: Մասնավորապես՝ Հայկական լեռնաշխարհում հայտնի են բազմաթիվ բերդեր, որոնց անվան բաղկացուցիչ մասն է **քար** բաղադրիչը, իսկ վերջինս բոլոր այդ դեպքերում փոխարինում է (համարժեք է) **բերդ** բառին, ըստ որում, **քար** կամ **բերդ (ամրոց)** բառերը նույնիմաստ են: Իբրեւ օրինակ կարող ենք նշել՝ **Քարիբերդը** (բերդ Ջակամում), Քար Ամյուկ («Քար Ամկոյ») եւ Քար





*ՔԱՐՎԱՃԱՌ. բնակավայրը հարավից եւ արեւելքից երիզող ժայռաշարը*

Մանակերտ բերդերը Վասպուրականում, Քարն Սարվանդին եւ Դենքարը (Կիլիկիայում) եւ այլն, ուստի Քարվաճառ տեղանվան (ի դեպ, նրա տեղանքն ունի միջնադարյան բերդերին բնորոշ բոլոր ամենաէական հատկանիշները՝ տեղանքի դժվարամատչելիություն, ջրի առկայություն, կարեւոր անցքի վրա՝ ծոր-ճանապարհ. հսկողություն, ծագումը մեր համոզմամբ պայմանավորված է եղել հատկապես նրա՝ բերդ լինելու հանգամանքով:

Ամենայն հավանականությամբ Քարվաճառ գյուղը շարունակել է հայաբնակ մնալ մինչեւ 1730-ական թվականները եւ ամայացել գավառի շատ գյուղերի հետ միաժամանակ: XIX դարի կեսերին այստեղ հաստատվել են խաշնարած քրդեր, որոնք, փոքր-ինչ աղավաղելով կամ ավելի ճիշտ իրենց լեզվաhնչյունական յուրահատկություններին համապատասխանեցնելով Քարվաճառ անվանումը, այն սկսել են կոչել Քյարվաջար կամ Քյալբաջար:

Ուշագրավ է, որ 1873 թ. մի գրության մեջ բնակավայրը դարձյալ հիշված է իր անվան անաղարտ տարբերակով. «Վանքապատկան Թութխու եւ Քարվաճառ կալուածների մասին մենք հոգով չափ աշխատել ենք. որ ինչպէս յառաջաց եղեալ է էլ էնպէս լինի, որ վանքն չի զրկվի իւրեան սեփականութիւնիցն...»:[123]

1930 թվից Քարվաճառ-Քյալբաջարը վերածվեց նորաստեղծ շրջանի կենտրոնի: 1960-ին աննշան գյուղակ Քյալբաջարը քաղաքական նպատակներ հետապնդող Ադրբեջանի իշխանությունների կողմից ստացավ քաղաքատիպ ավանի, իսկ 1980-ից՝ քաղաքի կարգավիճակ:[124] 1960-ականներից սկսած զգալի ներդրումների շնորհիվ արհեստականորեն սկսվեց երբեմնի գյուղակի աննախադեպ չափերով ընդարձակումը: Կառուցապատման բուռն աշխատանքներն արտառոց չափեր են ընդունել հատկապես 1980-92 թթ. ընթացքում: Այդ ժամանակ Հայաստանը ԼՂԻՄ-ից բաժանող թուրքացված Քարվաճառի շրջանի շրջկենտրոնն ամրացնելու եւ ընդարձակելու համար Ադրբեջանի կառավարությունը ոչինչ չի խնայել: Արդյունքում՝ շրջկենտրոնը վերջին 20-25 տարվա մեջ աճել էր 6-7 անգամ թե՛ տարածքով եւ թե՛ բնակչությամբ:[125]

Ինչպես Քարվաճառի եկեղեցին, այնպես էլ հայոց գերեզմանոցը ամբողջապես զոհ են գնացել տեղի թուրքերի ու թրքացած քրդերի, յուրաքանչյուր հայկականի հետքը ամենուր ջնջելու մոլուցքին: Այսուհանդերձ, քաղաքի պատմագավառագիտական թանգարանում մինչեւ 1993 թ. ապրիլը պահվում էր մի խաչքար, որ խոր հնության մի ուշագրավ նմուշ է:[126]

121. ՀՀՊՊԿԱ, ֆ. 57, ց. 1, գ. 4, թ. 4:
122. *Հովհաննես Կարագյոզյան, Հակահայկական սեղը եւ նրա չորս շրջկենտրոնները, «Երկիր», 1994, N131, էջ 5:*

123. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 468, ց.2, գ. 73, թ. 1:*
124. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան», հատոր V, Բաքու, 1981, էջ 334:*
125. *Ս. Կարապետյան, Ինչո՞ւ էին խլացնում հայկական հողերը (Քարվաճառ քաղաքի օրինակով), «Ազատամարտ», 1994, N 40, էջ 13:*









*ՔԱՐՎԱՃԱՌ. տապանաքարի բեկոր XVI-XVII դդ (երկայնական եւ նեղ կողերը),
տապանաքարի բեկոր XVI-XVII դդ (երկայնական երկու երեսները)*

Այն կերպված է սպիտակ կրաքարից եւ ունի 28,5x19,0x4,5 սմ չափեր: Եպնակողմին ունի վեց փողանոց թվակիր արձանագրություն: Խաչքարը շրջկենտրոնի թանգարան է փոխադրվել 1965 թվականի նոյեմբերի 4-ին: Ցավոք, հնարավոր չեղավ պարզել՝ թե շրջանի ո՞ր հնավայրից: Թանգարանում այն պահվել է 28 տարի՝ այցելուներին ադրբեջաներեն եւ ռուսերեն մակագրությամբ ներկայացվելով իբրեւ «աղվանական խաչդաշ»: Արձանագրության բովանդակությունը հետեւյալն է.

ՅԿԷ (365+551=916) ԹՎԻԱԿԱՆՈ|ԻԹԵԱՆՍ ՀԱ(Յ)ՈՑ, ՈՐ | ԵՂԵԻ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՇՆԱՀԱԻՈՐ| Ա-ՐԱ(Մ)ՑԵ ՅԻՇԵՑԱՆԷ | ԼԻՆԷ ՈՐ ՄԻՆ ԱՅԼ ԽԱՉ Մ | ԻԻԵԼԱՆԵՄ (՞), ԹԵ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ԿԱՄԻ:

Վերջին երկու փողերի իմաստը գրեթե անհասկանալի է: Հարկ է հիշեցնել, որ առ այսօր հայտնի թվակիր ամենահին խաչքարը 876 թվականից է,[127] ուստի քարվաճառյան այս խաչքարը նրանից կրտսեր է

*126. **Ս. Կարապետյան**, Քարվաճառյան խաչքար կանգնեցված 916 թվականին, «Ազգ» օրաթերթ, 1995, N2, էջ 6: Տես նաեւ նույնի՝ «Հնագույն խաչքար Քարվաճառում», «ՀՀ», 1995, 28 օգոստոսի, N216, էջ 1:*

*127. **Ս. Կարապետյան**, Ամենահին թվագրությամբ նորահայտ խաչքարը, «Էջմիածին» ամսագիր, 1987, Ե-Զ, էջ 80-81:*




*ՔԱՐՎԱՃԱՌ. խաչքար, 916 թ.*

ընդամենը 40 փարով: Ներկայում խաչքարը ապահովության նկատառումներով փոխադրված է Գանձասարի վանք:

Քարվաճառի թանգարանում գտնված մի պայանաքարի բեկորին կարդացվում է. ՊԱՅԻԾԱՆԻՆ, իսկ երբեմնի եկեղեցու երեսապատ սալաքարի արձանագիր բեկորին (37x26x13 սմ) ... Ս(ՈՒՐ)Բ ՊՌԱԻ...|...ԿԱԻՊԻՈ ...|...⌜ՋՄԵԾ Տ(Է)Ր⌝...

Քարվաճառի արեւելյան եզրով ձգվող վիհահերձի մեջ կան մի քանի բնական քարայրեր, որոնց թվում մեկը՝ հնում, ակնհայտորեն օգտագործվել է իբրեւ կացարան-բնակատեղի:

Շրջակայքում պահպանվել են մի քանի գյուղատեղիներ, որոնք ներկայում հայտնի են անվանումների միայն թուրքական տարբերակներով: Դրանք են՝ Դարաղշլաղ, Ղըլչլի, Ալոլար, Օթղշլաղ, Բորմախբինա (արդյո՞ք պատմական՝ Բորուն է), Ելիջա, Թաքդամ, Արմուդլու, Բոյախլի, Ղարախանբինա, Շափլար, Մամեդուշաղի, Թաթլար, Իմամբինասի, Քեյշթաղ կամ Քեշդեկ (արդյո՞ք պատմական՝ Դաշտակն է) եւ Ղարաշանլի (վերին, միջին եւ գլխավոր) գյուղատեղիները, որոնցում առայժմ հայկական ուշագրավ հնություններ չեն հայտնաբերվել:

## ՅՐՏՆՈՏ ԵՎ ԽՈԼՈԶԱՆՑ

Քարվաճառից 9 եւ 11 կմ հարավ, Տրտուի աջակողմյան փոքրիկ վտակների ափին, ձորերի մեջ, իրարից ընդամենը 2,2 կմ հեռու գտնվում են երկու գյուղատեղիներ, որոնք, վերջին շրջանում տրված թուրքական անվանումներից զատ, հայտնի են նաեւ իրենց պատմական՝ հայկական անվանումներով: Դրանցից առաջինը, որ գտնվում է ծովի մակերեւույթից 1950-2070 մ բարձրության վրա, անտառազուրկ տեղանքում եւ քուրդ վերաբնակիչներն անվանել են Սոյուղբուլաղ (բառացի՝ սառը աղբյուր) ամենայն հավանականությամբ հին Յրտնոտն է (տվյալ դեպքում խաշնարածները կատարել են տեղանվան իմաստային թարգմանություն), իսկ երկրորդը, որ ներկայում հայտնի է Խոլազեյ-Ալխասլի անունով, անկասկած պատմական Խոլոզանցն է, որն այս դեպքում խաշնարածների կողմից աղավաղվել է:

Յրտնոտ տեղանունը հիշվում է Դոփյան տոհմի ներկայացուցիչների՝ գավառի վանքերին իբրեւ սեփականություն տալու մասին մի վավերագրում (հավանաբար XIV դար),[128] իսկ Խոլոզանց գյուղը հիշատակվում է Դադի վանքի 1763 թվականին կազմ-

*128. «Դիվան...». հ. 5, էջ 216:*

ված կալվածացուցակում:[129]

Երկու գյուղատեղիներն էլ խիտ կառուցապատում են ունեցել: Հայաթափ գյուղատեղիներում հաստատված խաշնարած քրդերը հարմարվել են արդեն գոյություն ունեցող գյուղի կառուցապատման առանձնահատկություններին եւ անգամ խորհրդային տարիներին այն գրեթե որեւէ փոփոխության չեն ենթարկել: Մինչեւ անգամ նոր կառուցված բնակարաններն էլ հին տների հիմքերի վրա են հաստատել:



ՑՐՏՆՈՏ. Տրտու գետի վրայի կամուրջը (XII-XIII դդ.)

Ցրտնոտ եւ Խոլոզանց գյուղատեղիների միջեւ՝ Տրտու գետի վրա, կանգուն է գավառի միջնադարյան կամուրջներից մեկը: Այն միաթռիչք է, կառուցված անմշակ քարով (գլխավորապես՝գետաքար) եւ կրաշաղախով: Կամրջի անցուղու լայնությունը 2,05 մ է, իսկ թռիչքի հեռավորությունը՝7,10 մ: Ըստ վերջինիս կառուցողական առանձնահատկությունների եւ համանման այլ կամուրջների հետ համեմատական ուսումնասիրության՝այն կարելի է թվագրել XIII-XVI դարերով: Ի դեպ, 1980-ականների կեսերին սոյուզբուլաղցի թրքացած քրդերն իրականացրել են իրենց եւ արտաքին աշխարհին իրար կապող հիմնական միջոցի՝ այս կամրջի «նորոգումը». բետոնի շերտով ծածկել են կամրջի անցուղու ամբողջ հատվածը՝ փաստորեն ավելացնելով թաղի ծանրությունը: Բարեբախտաբար, ամրակուռ այս շինությունը դիմացել է «հոգածության» այսօրինակ դրսեւորմանը:

## ԾԱՐ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ

«Յաստուածապահ յամուրն Ծար»՝ այսպես են բնորոշել միջնադարյան հեղինակները հարյուրամյակներ շարունակ իշխանանիստ կամ մելիքանիստ Ծար բերդագյուղը: Այն գտնվում է Տրտու գետի վերին հոսանքի շրջանում, վերջինիս՝ եւ ձախից նրան միախառնվող համանուն վտակի միջեւ գոյացած սուրանկյուն եռանկյան տեսքով հրվանդանաձեւ սարահարթի հարավ-արեւմտյան առավել բարձրադիր մասում, ծովի մակերեւույթից՝ 2030-2050 մ բարձրության վրա: Սարահարթը համարյա բոլոր կողմերից բնականից առանձնացած է անդնդախոր ձորերով, ըստ որում՝ արեւելյան եւ հարավ-արեւելյան կողմերով հոսող Տրտու գետի համեմատ սարահարթը բարձր է 300-310 մ, իսկ հյուսիսային կողմով հոսող Ծարագետի համեմատ՝ 120-130 մ: Միայն հարավ-արեւմտյան անկյունում, մի կարճ հատվածով սարահարթը նեղ պարանոցով միացած է մոտակա լեռնաճյուղի հետ: Հենց այս մասն էլ, որն ունի մոտ 250 մ երկարություն, հնուց ի վեր պարսպված է եղել, որի շնորհիվ Ծար գյուղն ու նկարագրված հրվանդանը հարկ եղած դեպքում վերածվել են անառիկ ամրոցի:




ԾԱՐ. գյուղի եւ մերձակայքի սխեմատիկ հատակագիծը

Մատենագրության մեջ Ծարի մասին հիշատակություններ են պահպանվել միջնադարից սկսած: Ճիշտ է, ավելի հաճախ հիշվում է ոչ թե իշխանանիստ գյուղը, այլ համանուն գավառը, (ինչպես օրինակ՝ Ստեփանոս Օրբելյանի մոտ),[130] բայց, կարծում ենք, գավառն իր անունն առած պետք է լինի իշխանական նստավայր եւ վարչական կենտրոն Ծար գյուղից: Ուստի, կարելի է համարել, որ Ծար գավառի առնըվազն առաջին հիշատակումներին համաժամանակ՝ Ծար գյուղն էլ (հավանաբար՝գյուղաքաղաք կամ ավան) արդեն գոյություն ուներ: Հին հիշատակություններից մեկը 1289 թվականից է «գեղս, որ կոչի Ծար»:[131] Ուշագրավ է, որ թեեւ գավառում Ծար ա-

129. «Ջամբռ», էջ 283:

130. **Ստեփանոս Օրբելյան**, Սյունիքի պատմություն, Երեւան, 1986, էջ 263:

131. «Դիվան...», էջ 222:







*ԾԱՐ. հարավից երիզող ժայռապարը, գյուղի տեսքն արեւմուտքից եւ Սբ. Գրիգոր ու Սբ. Սարգիս եկեղեցիները հյուսիսից*




*ԾԱՐ. Սբ. Սարգիս (հյուսիս-արեւելքից) եւ Սբ. Գրիգոր (հյուսիսից) եկեղեցիները*






*ԾԱՐ. Սբ. Սարգիս եւ Սբ. Գրիգոր եկեղեցիների հատակագծերը*

նունով ուրիշ բնակավայր չկար, բայց 1763 թ. կալվածացուցակում այն հիշված է «Մեծ Ծար»[132] ձեւով:

Հիրավի, Ծարը «մեծ» էր անգամ ամայի վիճակով: Գյուղատեղի, ուր գոյություն ունեին չորս եկեղեցիներ ու խաչքարերով գերեզմանոցներ, իսկ մոտակայքում՝ երկու վանք: Այն պահից սկսած, երբ հարյուրամյակներ շարունակ իշխանանիստ կամ մելիքանիստ Ծարը դադարեց հայաբնակ լինելուց, այնտեղ գտնվող մշակույթի մեծարժեք հուշարձանները հայտնվեցին անխնամ վիճակում: Ճիշտ է, հայաթափ գյուղատեղիում հաստատված Փարախկանլու ցեղի խաշնարածները սկզբնական շրջանում զբաղված էին բնիկներից մնացած կառույցների սոսկ օգտագործմամբ (հարմարեցմամբ՝ անասնագոմերի եւ կացարանների), սակայն նստակեցության անցնելու պահից իսկ նրանք եռանդուն կերպով սկսեցին ոչնչացնել այն, ինչ «ժառանգված էր» քրիստոնյա բնիկներից: Ականատես Մակար եպիսկոպոսը նշել է, որ դեռեւս 1880-ականների վերջերին գյուղի հարավային եզրի գերեզմանոցում կային շատ խաչքարեր ու տապանաքարեր, որոնք սակայն «անիրաւ քրդերն որը կոտրած են եւ որի գրերը ջնջած»:[133] Հայկական հուշարձանների ավերումը հրեշավոր չափեր ընդունեց խորհրդային կարգերի հաստատումից հետո եւ մանավանդ 1940-50-ական թվականներին: Այդ տարիներին հիմնահատակ ավերվեցին գյուղամիջի չորս եկեղեցիներից երկուսը եւ գյուղի մոտակայքում պահպանված երկու վանքերը, գերեզմանոցները: Դրանց քարերն օգտագործվել են Ծար եւ Չրաղ թրքացած քրդերի գյուղերում դպրոցական եւ այլ բնույթի շենքերի կառուցման ժամանակ:

Մայր կամ Մեծ եկեղեցին[134] գտնվում էր գյուղի կենտրոնում, գրեթե կից ցայսօր կանգուն Սբ. Սարգիս եկեղեցուն (հյուսիսային կողմից): Ըստ ամենայնի, այն բավական ընդարձակ (արտաքին չափերը՝ 26,10x11,55 մ) թաղածածկ բազիլիկ էր:

Դեռեւս անցյալ դարավերջին սրա ծածկը փլված էր, բայց պատերը, հավանական է, դեռ կանգուն էին, քանի որ հարավային մուտքի վրա ագուցված խաչքարիստորին մասում կարդացվել է.

Ի ԹՈՒԻՆ ՌՀԴ (1225) ԵՍ ՄԵԼՔ ՀՈԳԵԻՈՐԴԻ ԻՄ ԱԿՈՒՏԻՆ ՈՒ ՄԽԻԹԱՐ ԵՂԲԱՅՐ ԿԱՆԳՆԵՑԱՔ ԶԽԱՉՍ:[135]

Հաջորդը՝ Սբ. Գրիգոր եկեղեցին է, որը Ծարի ցայսօր կանգուն երկու եկեղեցիներից մեկն է: Սա միանավ, երկթեք ծածկի տակ առնված թաղակապ շենք է՝ կառուցված 1274 թ. սրբատաշ քարով (արտաքին չափերն են 6,38x4,40 մ): Ակնհայտ են XVII

132. «Զանգը», էջ 283: Ըստ ամենայնի տարբերակվելու համար հարեւան Սոդք գավառի համանուն գյուղից:

133. «Արցախ», էջ 405:

134. Ծարի հնությունները ներկայացնում ենք ըստ դրանց ստեղծման ժամանակագրության:

135. «Արցախ», էջ 407: «Դիվան...», էջ 223:









*ԾԱՐ. Սբ. Սարգիս եկեղեցու տեսքը հարավ-արեւմուտքից եւ արեւելյան ճակատից բացված լուսամուտի պսակը, խաչքարի բեկոր Սբ. Սարգիս եկեղեցու մոտ եւ տապանաքար եկեղեցու հարավային կողմում կառուցված բնակելի տան պատի մեջ*

դարում անմշակ քարերով կապարված նորոգումների հետքերը:

Մինչեւ ազատագրումն այս եկեղեցին տեղի թրքացած քրդերից մի ընտանիք օգտագործում էր որպես իր տան օժանդակ մաս եւ սվաղով ու կցորդումներով ծածկել էր արեւմտյան ու հարավային ճակատները: Սրտոբեւ ներկայացվող արձանագրությունների առաջին հրատարակիչը եղել է եպիսկոպոս Բարխուտարյանցը:

Արեւմտյան ճակատին բացված միակ մուտքի բարավորին 5 տողով կարդացվում է հետեւյալ արձանագրությունը.

ԽՈՐԲ Տ(Է)Ր ՇԻՆԵՑԻ| Ս(ՈՒՐ)Բ ԳՐԻԳՈՐ ԻՄ ՀԱԼԱԼ Ա|ՐԴԵԱՄԲ ԻՆՁ, ԱՄՈՒՍ(Ն)ՈՅ ԻՄ, ՈՐԴՈ ՄԱՐԳԱՐԷԻ, ՅԻՇԵՑԵ [Ք ]Ի Տ(Է)Ր, ԹՎ(ԻՆ) ՉԻԳ (1274):[136]

Նույն ճակատին, մուտքից հյուսիս Մ. Բարխուտարյանցը ընթերցել է.

ՅԱՆՈՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԿՈՒԿՍ ՄԻԱԲԱՆԵՑԱՅ ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻՍ (ՏՎԻ) ԻՄ ՀՈՂՆ ՍՈՍԹԱՆԻՍԻ, ՏԻՒՆ ԱՅՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԱԹ ԱՒՐ ԺԱՄՆ...[137]

Սբ. Գրիգորի հարավային ճակատին եղել է.

ԱՍՏՈՒԾՈՎ ՄԵՔ ՏԱԲԸԲԻ ՈՐԴԻՔՍ ՏՎԱՔ ՋՄԵՐ ԿԱՊԻՆ ՀՈՂՆ Ի ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻՍ. ՍՈՍԹԱՆԷՍ ԵՏ ՂԱՋԱՐՈՒ ՏԱՒՆԻՆ: Ա: (1) ԺԱՄ...:[138]

---

*136. «Արցախ», էջ 407: «Դիվան...», էջ 223:*

*137. «Արցախ», նույն տեղում: «Դիվան...», նույն տեղում:*

*138. «Արցախ», էջ 407 («Դիվան...»-ում՝ Տաբըբի-ն՝ Հաբըբի ձեւով):*





*ԾԱՐ. որպես շինանյութ օգտագործված պատկերաքանդակ տապանաքար (XVI դ.) եւ բեկորված խաչքար (XIII դ.)*

Նույն ճակատի մեջ ագուցված խաչքարի վրա եղել է արձանագրություն.

ԳՐԻԳՈՐ ՋԱՋՈՒՌ ԿԱՆԳՆԵՑԱՔ ԽԱՉՍ ՄԵՋ ԵՒ ԾՆՈՂԱՑ ՄԵՐՈՑ. ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ: Շ: (1051):[139]

Սբ. Գրիգոր եկեղեցուց շուրջ 60 մ հյուսիս, գյուղամիջում ընկած մի խաչքարի թիկունքին 2 տողով արձանագրված է.



*ԾԱՐ. խաչքար Սբ. Գրիգոր եկեղեցուց 60 մ հյուսիս (XIVդ.)*

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՀԱՍԱՆԻՆ ԵՒ ԿԵՆԱ/ԿՑԻՆ ԻՒՐՈՑ ՆԵՐԿԻՉԻՆ ՑԻՇԵ(ՑԷՔ):

Ծարի հարավային եզրին նույն՝ 1274 թ. կառուցվել է նաեւ մինչեւ 1940-ական թվականները գոյատեւած Սբ. Սարգիս եկեղեցին: Ըստ նկարագրության սա եւս եղել է թաղակապ, միանավ շենք (արտաքին չափերն են 7,15x4,75 մ): Մուտքից վեր ագուցված խաչքարին փորագրված է եղել.

ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ: ՔՐԻՍՏՈՍ ՈՐԴԻ ԴԱՒԹԻ ԱՒԳՆԷ ՎԱՄՆ ՀԱՍԱՆԱՑ ԱՆԱՐԺԱՆ ԾԱՌԱՅԻՍ ՅԱՒՈՒՐՆ ԱՏԵՆԻ...ԱՄԷՆ. ԹՎ. ՉԻԳ (1274):[140]

Ի դեպ, Ծարի 1950-ական թվականներին կառուցված դպրոցի շենքի հյուսիս-արեւմտյան անկյան վերնամասում ագուցված է այս արձանագրության վերջնամասը պարունակող սրբատաշ (50x25 սմ) քարը:[141]

Բացի այդ վերոհիշյալ դպրոցի արեւմտյան ճակատի հարավային ծայրի լուսամուտի մեջ ագուցված է այս խաչքարի մի բեկորը (68x21 սմ), որի վրա պահպանվել է միայն արձանագրության վերջին տառը:[142]



*ԾԱՐ. թռչնապատկերներով զարդարված խաչքարի բեկոր (XIII դ.)*

Երբեմնի եկեղեցու շուրջ տարածվում էր հնամենի գերեզմանոցը (ներկայում՝ նույնպես հիմնավեր), ուր անցյալ դարի վերջերին դեռեւս պահպանվել էին մի քանի գեղաքանդակ խաչքարեր: Դրանցից մեկը, որ գտնվելիս է եղել եկեղեցու մուտքից քիչ հարավ, աստիճանավոր պատվանդանին (2,60x1,10 սմ) ուներ

*139. Նույն տեղում:*

*140. «Արցախ», էջ 405: «Դիվան...», էջ 222:*

*141. Դպրոցի հատակագծի վրա բեկորի տեղը նշված է պայմանական 115 համարով, իսկ լուսանկարը տես սույն գրքի 62-րդ էջում (2-րդ շարքի 3-րդ նկարը):*

*142. Դպրոցի հատակագծի վրա բեկորի տեղը նշված է պայմանական 69 համարով:*

ԾԱՐ (ՋԱՌ) ԳՅՈՒՂԻ
ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑԻ ՀԱՏԱԿԱԳԻԾԸ
(կառուցված 1950-ական թթ.)




հետեւյալ արձանագրությունը.

ԹՎԻՍ ՀԱՅՈՑ ՉԼԸ (1289)։ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՍ ԳՐԻԳՈՐ ՈՐԴԻ ՀԱՍԱՆԱՅ, ՔԱՋ ԵՒ ՅԱՂԹՈՂ ՁԱՒՐԱՎԱՐԻՆ ԵՒ ՄԵԾԻ ԻՇԽԱՆԻՆ՝ ԱԿԱՆՈՅ, ՀԱՆԴԱԲԵՐԴՈՅ, ՍՈԹԻՑ, ՇՈՂԳԱՀՈ ԵՒ ԱՅԼ ԲԱԶՈՒՄ ԳԱՒԱՌԱՑ, ԿԱՆԳՆԵՑԻ ՁԽԱՉՍ Ի ԳԵՂՍ, ՈՐ ԿՈՉԻ ԾԱՐ, ՍԻՐԵՑԵԼՈՅՆ ՀԱՒՐՆ ԻՄՈՅ ՀԱՅՐԵՆԻՔ ԵՒ ՊԱՐԳԵՒ ՔԱՋՈՒԹԵԱՆ։[143]

Այս խիստ կարեւոր արձանագրությամբ մեծաչափ խաչքարից մեր այցելության ժամանակ միայն մի փշրանք գտնվեց (24x19 սմ), ագուցված վերոհիշյալ դպրոցի լուսամուտի մեջ։ Դրա վրա կարդացվում են միայն... ՇՈՂԳ... տառերը։[144]

Ոչնչացված այս խաչքարին ինչպես գեղարվեստական, այնպես էլ պատմական առումով շատ մոտ եղել է նաեւ ոչ պակաս արժեքավոր մեկ ուրիշ խաչքար. «... խաչարձանի ճակատի վերի կողմում քանդակված է սուրբ Աստուածածնայ պատկերն, որ գրկած է մանկացեալ Յիսուս Քրիստոսը։ Տէրունական պատկերիս շուրջն պատած են քառակերպեան կենդանիք, սուրբ Հոգին, արեգակն եւ մի թռչուն։ Խաչարձանիս ստորոտում».

ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՔՐԻՍՏՈՍ ԱՍՏՈՒԱԾ... ԵՍ ՄԱՄՔԱՆ ԴՈՒՍՏՐ ՔՐԴԻՆ ՈՒ ԽՈՐԻՇԱՀԻ, ԱՄՈՒՍԻՆ՝ ՀԱՍԱՆԱՅ ԿԱՆԳՆԵՑԻ ՁԽԱՉՍ։[145]

Նույն դպրոցի լուսամուտի եւ դասասենյակի պատերի մեջ ագուցված են այս արձանագրության երկու փոքրիկ բեկորները (50x31 եւ 41x18 սմ)։[146] Յուրաքանչյուրի վրա պահպանվել են երեքական տողերից առանձին տառեր միայն.

ԵՍ ՄԱ(Մ)|ՔԱՆ (Դ)|ՈՒՍՏ(Ր)
(ՔՐ)ԴԻ(Ն) ՈՒ Խ(ՈՐ)|ԻՇ(ԱՀԻ)...

Ըստ պահպանված այս մնացորդների՝ երբեմնի արձանագրությունը եղել է խիստ բազմատող եւ հավանաբար փորագրված է եղել խաչքարի նեղ կողին՝ ամբողջ երկարությամբ։

Իշխանուհի Մամքանի կանգնեցրած խաչքարից մի քանի քայլ դեպի արեւմուտք գտնված մեկ այլ խաչքարի վրա, ըստ Մ. Բարխուդարյանցի, եղել է հետեւյալ արձանագրությունը.

ՔՐԻՍՏՈՍ ԱՍՏՈՒԱԾ. ՆՇԱՆՍ ԲԱՐԵԽԱՒՍ ԴԱՒԼԱԹԻՆ. ԱՍՏՈՒԾՈՎ ԵՍ ԴԱՒԼԱԹՍ ԱՄՈՒՍԻՆ ԻՄ ՄԵԾ ԻՇԽԱՆ ՄԻՐՋԱՋԱՆ, ԽԻԿԱՐ, ՈՐԴԻՔՍ ԻՄ ՏԱՒԻՏ ԲԵԿ, ՄԷԼԻՔ ՊԵԿԻ ԳԱՆԳՆԵՑԻՆ ՁԽԱՉՍ ՓՐԿՈՒԹԻՒՆ ՀՈԳՈՅ Ի ՏԱՆԷՆ ԳԵՂԱՄԱՑ. ԴՈՒՍՏՐ ՄԷԼԻՔ ՂՈՒԿԱՍԻՆ Թ. ՋՂԸ (1549)։[147]

Մեր այցելության ժամանակ դպրոցի պատերի

*143. «Արցախ», էջ 405։ «Դիվան...», էջ 222։*

*144. Դպրոցի հատակագծի վրա բեկորի տեղը նշված է դրայմանական 73 համարով։*

*145. Նույն տեղում։ «Դիվան...» էջ 222։*

*146. Դպրոցի հատակագծի վրա բեկորի տեղը նշված է պայմանական 67, 71 համարներով։*

*147. «Արցախ», էջ 406։ «Դիվան...», էջ 222։ Ի դեպ, «Դիվան»-ի հեղինակը ենթադրել է, թե եղիսկոպոսը շփոթել է տողերի տեղադրությունը եւ վերադասավորելով հրատարակել է այսպես.*

*ՔՐԻՍՏՈՍ ԱՍՏՈՒԱԾ. ՆՇԱՆՍ ԲԱՐԵԽԱՒՍ ԴԱՒԼԱԹԻՆ. ԱՍՏՈՒԾՈՎ ԵՍ ԴԱՒԼԱԹՍ, Ի ՏԱՆԷՆ ԳԵՂԱՄԱՑ, ԴՈՒՍՏՐ ՄԷԼԻՔ ՂՈՒԿԱՍԻՆ, ԱՄՈՒՍԻՆ ԻՄ ՄԵԾ ԻՇԽԱՆ ՄԻՐՋԱՋԱՆ, ՈՐԴԻՔՍ ԻՄ ՏԱՒԻՏ ԲԵԿ, ՄԷԼԻՔ ՊԵԿԻ ԳԱՆԳՆԵՑԻՆ(Ք) ՁԽԱՉՍ ՓՐԿՈՒԹԻՒՆ ՀՈԳՈՅ ԹՎ(ԻՆ)։ ՋՂԸ (1549)։*



*ԾԱՐ. ջարդոտված խաչքարերի, տապանաքարերի եւ արձանագրությունների բեկորներ, որոնք սոսկ իբրեւ շինաքար օգտագործված են 1950-ական թվականներին կառուցված դպրոցի պատերի մեջ:*



*ԾԱՐ. ջարդոտված խաչքարերի, տապանաքարերի եւ արձանագրությունների բեկորներ, որոնք սոսկ իբրեւ շինաքար օգտագործված են 1950-ական թվականներին կառուցված դպրոցի պատերի մեջ:*



*ԾԱՐ. ջարդոտված խաչքարերի, տապանաքարերի եւ արձանագրությունների բեկորներ, որոնք սոսկ իբրեւ շինանյութ օգտագործված են 1950-ական թվականներին կառուցված դպրոցի պատերի մեջ*

մեջ այս արձանագրության մասերը կազմող միայն երեք բեկոր հայտնաբերվեց:[148]

Այդ բեկորների վրա պահպանվել է 12 տող արձանագրություն: Ակնհայտ է, որ այս արձանագրությունն էլ փորագրված է եղել բազմաթիվ կարճ տողերով, ըստ երեւույթին նույնպես խաչքարի նեղ կողի ամբողջ երկարությամբ:

Իրար մոտ երկու տապանաքարերին փորագրված է եղել.

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՊԱՐՈՆ ՃՀԱՆԿԻՐ ԲԷԿԻՆ, ԹՎ. ՌՃԻԵ (1676):[149]

Թվում է, թե այս տապանաքարի մասն է դպրոցի պատի մեջ ագուցված մի բեկորը:[150]

Մյուս շիրմաքարի արձանագրությունը եղել է.

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՄԷԼԻՔ ՊԷԿԻՆ ԿՈՂԱԿԻՑ ՇԱՅԱՄԻՆ, ՈՐ ՀԱՆԳՈՒՅԱՒ ՏԱՊԱՆՍ ԹՎ(ԻՆ) ՌՃԿԶ (1717):[151]

Դպրոցի պատի մեջ այս տապանագրի մաս կազմող մի բեկոր հայտնաբերվեց միայն՝ քառատող արձանագրության մնացորդներով:[152]

---

*148. Դպրոցի հատակագծի վրա բեկորների տեղերը նշված են պայմանական 11, 35 եւ 109 համարներով:*

*149. «Արցախ», էջ 406: «Դիվան...», էջ 222:*

*150. Դպրոցի հատակագծի վրա բեկորի տեղը նշված է պայմանական 70 համարով:*

*151. Նույն տեղում:*

*152. Նույն տեղում:*











*ԾԱՐ. բեկորված պատկերաքանդակ դպրոցի պատի մեջ,
խաչքար դպրոցից արեւմուտք,
Սբ. Գրիգոր եկեղեցու տեսքը արեւմուտքից,
հազարաշեն տան արձանագիր խոյակն ու խարիսխը*

Սբ. Սարգիս մատրոի հյուսիսային կողմում մի խաչքարի արձանագրված է եղել.

...ՄԻՐՁԱ ՃՀԱՆ ԿԱՆԳՆԵՑԱՔ ԶԽԱՉՍ ԲԱ-ՐԵԽԱՒՍ ԵՂԲԱՐՆ ԻՄ ՊԱՐՈՆ ՃՀԱՆ ԲՆՈՒՐ (՞) ՇԱՀԻՃԱՆԻՆ ... ԹՎ(ԻՆ) ՋԿ (1511):[153]

Ամենայն հավանականությամբ այս արձանագրության մնացորդներից են դպրոցի պատերում ագուցված մի խաչքարի երկու բեկորները:[154]

Ծարի 4-րդ եկեղեցին եւս կոչվում է Սբ. Սարգիս: Այն ամբողջապես կանգուն է շնորհիվ XVII դարում իրականացված հիմնավոր նորոգման: Դրա հետքերն ակնհայտ են եկեղեցու ճակատների վերնամասերում: Ըստ արեւմտյան ճակատից բացված միակ մուտքի բարավորին 6 տողով փորագրված (թերի բովանդակությամբ) արձանագրության՝ այն կառուցվել է 1279 թվականին:

Թ(ՎԻՆ) ՉԻԸ (1279): | Ի ՀԱՑՐԱՊԵՏՈՒԹԻ-(ԱՆ) Տ(Է)Ր ԱԹ|ԱՆԱՍԻ, Ի ՊԱՐՈՆՈՒԹԻ(ԱՆ) ԴՈՒՓԻՆ ՈՐԴ|ՈՅՆ: ՈՀԱՆ ԵՐԷՑ ՈՒ ՈՀԱՆԷՍ ՇԻՆԵ|ՑԱՔ ՔՍ(ՈՒՐ)Բ ՍԱՐԳԻՍՍ. ԿԵՆԱՑ ԲԱ-ՐԷԽ|ԱՒՍ ՀՈԳՈՑ ՓՐԿՈՒԹԻ(ԻՆ), ՈՎ ԿԱՐԴ...[155]

Սբ. Սարգսի որմերին պահպանվել են եւս 7 վիմագրեր, մեծ մասամբ՝ նվիրատվական բովանդակությամբ (թվակիրները՝ 1285 եւ 1311 թվականներից):[156] Եկեղեցին միանավ թաղածածկ շենք է: Արտաքին չափերն են 6,70x4,60 մ: Եկեղեցու շրջակայքում հնում տարածված գերեզմանոցից այժմ քիչ բան է պահպանվել: Մասնավորապես հարավային կողմում մի բնակելի տան հիմքի մասում, իբրեւ անկյունաքար, ագուցված է XVI-XVII դարերին բնորոշ խաչքանդակներով ու գրչությամբ մի տապանաքար (ԱԾ ՈՂՈՐՄԻ ՆԻԿԱՐԻՆ, ԻՒՐ ՈՐԴՈՑՆ ՃՀԱՆԿԻՐԻՆ, ԳԱՍՊԱՐԻՆ), որի չափերն են 105x85 սմ: Քիչ արեւելք, մի հին տան մուտքի առջեւ երկու մասի բաժանված վիճակում պահպանվում է անարձանագիր, ուշագրավ թռչնաքանդակներով մի խաչքար՝ բնորոշ XIII դարին:

Ծարում ուշագրավ ու հազվագյուտ նմուշ է 1658 թ. ոմն Ավանեսի կառուցած հազարաշեն տունը, որի չորս սյուները սովորական գերանների փոխարեն քարից են:[157] Այստեղ, սյան խարիսխներից մեկի վրա փորագրված է.

ԹՎ(ԻՆ): ՌՃԷ: (1658) ԷՐ Տ(Է)Ր...




*ԾԱՐ. 1658 թ. գլխատան հատակագիծը եւ կտրվածքը*







*ԾԱՐ. բնակարանային համալիրների (գլխատուն, գոմ, մարագ, ամբար եւ օժանդակ շինություններ) հատակագծեր (չափագրությունը՝ ճարտ. Սամվել Սարգսյանի)*

Ս, ՇԻՆՕՂ ԴԱՆՍ:

Հանդիպակաց սյան խոյակին փորագրված է.

ԵՍ ԱՎԱՆ|ՆԷՍ ՇԻ|ՆԵՑԻ:

*153. Նույն տեղում:*

*154. Դպրոցի հատակագծի վրա բեկորների տեղը նշված է պայմանական 12 եւ 40 համարներով:*

*155. Վիմագրի առաջին հրատարակիչն է Մ. Բարխուտարյանցը («Արցախ», էջ 406): Այն վերահրատարակել են նաեւ «Դիվան...»-ի կազմողները (էջ 218):*

*156. Տե՛ս «Դիվան...»-ի N 767-773 վերծանությունները (էջ 218-219):*

*157. Տան շինարարական արձանագրությունը, որ փորագրված է մի սյան խարսխին եւ մյուսի խոյակի վրա նստած սըրբասար կամարին, առաջին անգամ ընդօրինակել եւ «Նոր-Դար» լրագրում հրատարակել է Ջրաբերդի Մեծ Շեն գյուղի տանուտեր Բախխիշ-բեկը, ինչը սակայն, հաշվի չեն առել «Դիվան...»-ի հեղինակն ու կազմողները (տես «Նոր-Դար» 1890, N 158, էջ 3-4) եւ վիմագրի իրենց վերծանությունը ներկայացրել են իբրեւ առաջին հրատարակություն:*








*Տրտու եւ Ջերմաջուր գետերի միախառնման վայրը, որտեղ 1950-ականներին քանդված Գետամիջո Սբ. Աստվածածին վանքի շուրջ գոյացել էր Վանք գյուղը: Գետամիջո վանքին պատկանող ճարտարապետական բեկորներ եւ երեսապատի սրբատաշ քարեր՝ ագուցված Վանք գյուղում կառուցված բնակելի տների պատերի մեջ*









*Ճարտարապետական եւ գերեզմանական կոթողներ Վանք գյուղում: Խաչքար XII-XIII դդ. Վանք գյուղում: Խաչքարի բեկոր՝ ագուցված բնակելի տան պատի մեջ (1493 թ.): Գետամիջո վանքի հարավային ճակատի 5 տողանոց արձանագրության վերակազմությունը՝ համաձայն Չրաղ գյուղի դպրոցի պատերի մեջ հայտնաբերված 22 արձանագիր բեկորների*



*Գետամիջո վանքի հարավային ճակատի շինարարական արձանագրությունից մնացած բեկորները ագուցված Չրաղ գյուղի 1950-ական թթ. կառուցված դպրոցի պատերի մեջ*

Ի դեպ, դեռեւս XIX դարում այս փունը հայտնի էր Ջրաբերդ գավառի բնակիչներին, որոնց կարծիքով դա «արքայական պալատ էր»:[158]

Անշուշտ Ծարում, իբրեւ իշխանանիստ բնակավայր, գոյություն են ունեցել պալատական շենքեր, իսկ ուշ միջնադարում՝ մելիքական փներ, ապարանքներ: Հանձին այս հազարաշեն փան՝ մենք հավանաբար գործ ունենք Ծարա մելիքների մի ինքնատիպ բնակարանի հետ: Տեղի խիստ բնակլիմայական պայմաններից ելնելով՝ այն չունի ուրիշ մելիքական փներին բնորոշ ճարտարապետական լուծումներ (թաղակապ, կրկնահարկ, հաճախ փայտաշեն պատշգամբներով զարդարված), այլ սահմանափակվել է շրջանին հարազատ հազարաշեն փան համեստ հորինվածքով, միայն սովորականից ավելի ընդարձակ է, ու փայտյա սյուները փոխարինված են քարե սյուներով:

Ծարը նաեւ գրչության կենտրոն էր: Մաշտոցի անվան Մատենադարանում, 2067 համարի ներքո պահպանվում է 1684 թ. Ծարում ստեղծված մի ձեռագիր Քարոզգիրք (գրիչ՝ Վառվառե, ծաղկող՝ Տեր Բարսեղ, ստացող՝ Պետրոս վարդապետ):[159]

Գավառի այլ բնակավայրերի նման Ծարում եւս հայ կյանքը գոյատեւել է մինչեւ XVIII դարի 2-րդ քառորդի սկզբները:

XVIII դարի կեսերից Ծարի տարածքում հայտնվեցին փարախկանլի (փարիկյան) ցեղի քրդեր,[160] որոնք սակայն շուրջ 100 տարի անց միայն անցան նստակեցության ու վերջնականապես հաստատվեցին հայաթափ Ծարում: Ծարը, որ աղավաղվելով սկսեց կոչվել Զառ, ողջ գավառի ամենամարդաշատ բնակավայրն էր եւ, օրինակ, 1908 թ. խաշնարածների թիվն այդտեղ հասել էր 383 շնչի:[161] Հետագա տարիներին եւ խորհրդային շրջանում նույնպես Զառը շարունակեց պահպանել առաջնությունը. բնակչության թվի քանակով այն զիջում էր միայն շրջկենտրոն Քարվաճառին (1979 թ. թրքախոս քրդերը Զառում կազմում էին 1002 բնակիչ):[162]

Խորհրդային տարիները Զառում նախ եւ առաջ «նշանավորվեցին» բնիկներից մնացած մշակույթի հուշարձանների միտումնավոր ու մասսայական բնաջնջման գործընթացով: Գյուղի հիշյալ երկու եկեղեցիներից ու ընդարձակ գերեզմանատներից բացի, հիմնահատակ ավերվեցին նաեւ Ծարի հարավակողմյան վիմահերձի տակ եւ հյուսիս-արեւելյան ծայրին (նույնպես ձորի մեջ) գտնվող վանական համալիրները: Ընդ որում, դրանցից առաջինը հռչակավոր Գետամիջո Սբ. Աստվածածնա վանքն էր՝ հիմնադրված 1301 թ.: Փոխարենը խաշնարած քրդերը գյուղում կառուցեցին բավականին ընդարձակ դպրոց՝ պատերի մեջ իբրեւ սովորական շինաքար ագուցելով եկեղեցիների, խաչքարերի, տապանաքարերի ու արձանագրությունների ջարդոտված բեկորները: Այդ դպրոցի պատերի մեջ մենք հաշվառել ենք 133 բեկոր, որոնցից 37-ը՝ արձանագիր:[163] Ինչ վերաբերում է Գետամիջո վանքին, ապա սրա քարերը գլխավորապես փոխադրվել են մոտակա Չրաղ գյուղը, ուր դարձյալ օգտագործվել են գլխավորապես տեղի դպրոցի շինարարության համար: Այստեղ, բազմաթիվ խաչազարդ ու քանդակազարդ բեկորներից զատ, սվաղի շերտը մաքրելուց հետո ի հայտ եկան Գետամիջո վանքի շինարարական ընդարձակ արձանագրության տարբեր մասերը կազմող արձանագիր 22 բեկորներ, որոնց միջոցով հնարավոր եղավ նորովի վերծանել արձանագրության բնագիրը:[164]

Չրաղ[165] գյուղի տարածքում եւ գյուղամիջում պահպանվել են նաեւ պարզ ու զույգ ոճավորմամբ մի քանի խաչքարեր:

Այնտեղ, ուր գտնվում էր հռչակավոր Գետամիջո Սբ. Աստվածածնա վանքը, խորհրդային տարիներին գոյացել էր եւս մի փոքրիկ քրդաբնակ գյուղ՝ Վանք անունով: Սրա շատ փների ու գոմերի պատերի մեջ եւս ագուցված են բարբարոսաբար կոտրատված խաչքարեր, վանքի սրբատաշ երեսապատի քարեր եւ այլն: Վերջիններիս թվում մի խաչքարի բեկորին (83x30 սմ), որ ագուցված է մի փան լուսամուտի ստորին մասում, փորագրված է.

ՋԽԲ (1493) ...(ԿԱՆԳՆԵ)ՑԻ ԶԽԱՉՍ ՑԻՇԱՏԱԿ ՀՈԳՈՑ...

Մի սրբատաշ երեսապատի քարին (51x34x13 սմ)՝ 3 պարզ խաչեր են եւ, հավանորեն, նվիրատվական արձանագրությունից մնացած մի քանի տառ.

(Ե)Ի ԱՅԼ Մ(ԻԱԲԱՆՔՍ)...

Ծար գյուղի մոտակայքում պահպանվել են եւս մի քանի այլ՝ Զագլիկ, Բեգիրխանա, Շեհնլի, Խոփուրլի, Կույուղյայասի, Ջիվիլ (պատմական Ջվար), Մամադսափի, Իսփիսու, Բաղրսաղ, Վերին, Ներքին եւ Միջին Շորրթան գյուղերը:

158. Տես «Նոր-Դար», նույն տեղում:

159. «Ցուցակ Ձեռագրաց», հ. Ա, Երեւան, 1965, էջ 712:

160. **Լէօ**, նշվ. աշխ., էջ 677: «Արցախ», էջ 409:

161. "Кавказский Календарь на 1910 г." Тифлис, 1909:

162. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր IV, Բաքու, 1980, էջ 299:

163. **Ս. Կարապետյան**, Թուրքական դպրոց... հայկական խաչքարերից, «ՀՀ», 1995, 10 մարտի, N 49, էջ 2:

164. Այդ մասին տես նաեւ՝ **Ս. Կարապետյան**, Մի արձանագրության հետքերով, «Ազատամարտ» շաբաթաթերթ, 1994, N 44, էջ 14:

165. Գուցե՞ ճրագ, ինչպես՝ Ճրագիձորը Գետաշենի մոտ աղավաղվելով դարձել է Չրաղիձոր (Չիրագիձոր):















*Տեսարան Չրաղ գյուղից, 1950-ականներին կառուցված դպրոցի շենքը Չրաղում: Արձանագիր եւ քանդակազարդ բեկորներ ագուցված 1950-ական թվականներին Չրաղ գյուղում կառուցված դպրոցական շենքի պատերի մեջ (ի սկզբանե բեկորները պատկանելիս են եղել Գետամիջո վանքին): Դպրոցի մուտքի աջ ու ձախ կողմերում ագուցված առյուծի գլխաքանդակներ (թվում է, որ դրանք Գետամիջո վանքում էլ գտնվելիս են եղել մուտքի երկու կողմերում), խաչքար Չրաղ գյուղում, տեսարան Չրաղ-Իստիսու ճանապարհահատվածից (հեռվում Իստիսու առողջարանային ավանը), քանդակազարդ ու արձանագիր բեկորներ դպրոցի պատերի մեջ*

## ԱՊԱՀԵՆ ԵՎ ԵԶՆԱՐԱԾԱՆՑ

Պատմական այս երկու գյուղերը առաջին անգամ հիշատակվում են 1214 թ. Դադի վանքի շինարարական արձանագրության մեջ որպես վանքին հատկացված ու այդուհետ նրա սեփականությունը համարվող գյուղեր. «... եւ սահմանեցաք ծառանկութիւն եկեղեցոյս գիւղս եւ ագարակս իւրեանց սահմանաւքն՝ զԱպահէն եւ զԵզնարածանց...»:[166] Դարձյալ որպես վանքապատկան գյուղեր՝ Ապահենն ու Եզնարածանցը հիշատակվում են XIV դարի մի փաստաթղթում:[167] Հետագա դարերում, ի տարբերություն Եզնարածանցի, որի մասին աղբյուրներում այլեւս որեւէ հիշատակության չենք հանդիպում, Ապահենը շարունակում է հիշատակվել տարբեր աղբյուրներում: Մասնավորապես, 1652 թ. այս գյուղի եկեղեցում՝ գրիչ, ծաղկող եւ կազմող Մովսեսը ստեղծել է ձեռագիր «Շարակնոց», որի հիշատակարանում որպես գրչության վայր կարդում ենք. «...ի յերկիրն Ծարայ, ի գեօղն որ կոչի Ապահէն»:[168] 1659 թ. մեկ այլ ձեռագրում կարդում ենք. «... Յոհաննէս



ԱՊԱՀԵՆ

իրիցուկս, որ եմ ի գեղջէն Ապահինու...»:[169] Ապահենը միեւնույն անփոփոխ անվամբ հիշատակվում է նաեւ Դադի վանքի 1763 թ. կազմված կալվածների հայտնի ցուցակում:[170] Հետագայում, հայությունից պարպվելուց հետո, Ապահենը մոռացության է մատնվել, այն աստիճան, որ նույնիսկ հարցական է դարձել նրա աշխարհագրական տեղադրության վայրը: Սակայն, Դուտխու գետի վերին հոսանքի շրջանում գտնվող Բաշլիբել գյուղի անվան ստուգաբանությունը պարզություն է մտցնում հարցի մեջ (տես՝ ներկա աշխատության «Վարչաքաղաքական կացությունը» բաժնում այդ գյուղանվան ստուգաբանությունը, էջ 13):

Ի դեպ, Բաշլիբել գյուղում հանգրվանած մոլլամամատլու ցեղից քրդերի թիվը 1908 թ. հասել էր 240 մարդու,[171] իսկ 1976-ին արդեն թրքացած բնակչության թիվը 1065 շունչ էր:[172]

Մի ուսումնասիրության[173] համաձայն Բաշլիբելը (նախկինում՝ Բաշտուբել) նույնացվել է պատմական Տղեկի հետ, որը որպես գավառանուն վկայված է XVII դարի սկզբի դեպքերի կապակցությամբ: Թվում է, թե գավառակի գլխավոր բնակավայր Ապահենը ուշ միջնադարում զուգահեռաբար հանդես է եկել նաեւ Տղեկ անվամբ՝ իր վրա տեղայնացնելով գավառանունը:

Ապահենը գտնվում է ծովի մակերեւույթից 1900 մ միջին բարձրության վրա եւ փռված է (հատկապես հին թաղամասը) Դուտխու գետի ձախ, հարավահայաց ձորալանջին: Հակառակ գյուղի պատմական հարուստ անցյալին՝ այստեղ հայկական հետքեր գրեթե չեն պահպանվել: Գյուղից 4,5 կմ հյուսիս-արեւմուտք, մի նորոգված աղբյուրի պատի մեջ ագուցված է ակնհայտորեն որեւէ քանդված եկեղեցուց մնացած սրբատաշ երեսապատի անկյունաքար:

Ինչ վերաբերում է Եզնարածանց գյուղին, ապա Դադի վանքի 1214 թ. արձանագրության հիշատակման ձեւակերպումից կարելի է ենթադրել, որ վերջինս Ապահենին հարեւան բնակավայրերից էր. համենայն դեպս պետք է գտնվեր նրանից ոչ շատ հեռու: Իրոք, Ապահենից 4 կմ հարավ-արեւելք, Դուտխու գետի աջ ջրառատ վտակներից մեկի ձախ ափին, այնտեղ, ուր վերջանում են նոսր անտառներն ու սկսվում են ալպիական հարուստ արոտավայրերը, գտնվում է մի փոքրիկ գյուղ Չովդար անվամբ: Համոզված ենք, որ հենց սա է պատմական Եզնարածանցը, որի անունը տվյալ դեպքում պարզապես ենթարկվել է բառացի իմաստային թարգմանության (Եզնարածանց=եզներ արածացնելու տեղ կամ արածեցնող, չովդար=անասնապահ):

Ապահենի ու Եզնարածանցի շրջակայքում պահպանվել են մի քանի գյուղեր, որոնց պատմական անվանումները, գոնե առայժմ մեզ հայտնի չեն: Դրանք են՝ Շահքյարամ, Ալիրզալար, Ղարախանչալի, Խալանլի (Դադի վանքի կալվածացուցակում՝

166. «Դիվան...», էջ 199:
167. «Դիվան...», էջ 216:
168. «ԺԷ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», հ. Գ, Երեւան, 1984, էջ 488-489 (այսուհետ՝ ԺԷԳ):
169. ԺԷԳ, էջ 865:
170. «Ջամբռ», էջ 283:
171. "Кавказский Календарь на 1910 г.", Тифлис, 1909:
172. «Ադրբեջանի խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր II, Բաքու, 1978, էջ 53:
173. **Հակոբյան Ա. Հ., Սիմոնյան Հ. Ե.**, Դադիվանքի նորահայտ արձանագրությունը եւ Տղեկի տեղադրության հարցը, «ՊԲՀ», 1998, N 1-2, էջ 227-231:

Դավաչխուր), Թուրքիշավանդ, Ղալաֆալըր, Ղալաբոյուն եւ Ղազիխանլի գյուղերը:

## ԿՈՏՈՐ (ԿՈԴՈՒՐ) ԳՅՈՒՂ ԵՎ ԲԵՐԴ

Ծնունդով կոդրեցի էր Դադի վանքի նվիրապետներից մեկը՝ Հովհաննես երեցը: Այդ մասին է վկայում Դադի վանքի 1259 թվագրությամբ արձանագրությունը:[174] Ցայսօր պատմական անունը պահպանած Կոդուր գյուղը (փոքր-ինչ աղավաղված՝ հայտնի է Կոթուր կամ Ղոթուրլի անուններով) գտնըվում է Դուտխուի աջակողմյան գլխավոր վտակներից մեկի ափին խոր ձորում, ծովի մակերեւույթից 1780 մ բարձրության վրա:

Գյուղից 0,7 կմ դեպի հյուսիս-արեւելք, շրջապատի նկատմամբ առանձնացած, լեռան գագաթին (ծ. մ. 2149 մ) գտնվում է համանուն բերդը: Բերդասարի հարթ գագաթն արեւելյան ու հարավային կողմերից շրջապատված է գահավեժ ժայռերով, իսկ արեւմըտյան կողմի ժայռերի տակ կան փոքրիկ քարայրներ:

Պարսպապատերի մնացորդների շարվածքային առանձնահատկությունները բնորոշ են միջնադարի ծաղկուն շրջանին (XII-XIII դդ.)

Ավելորդ չէ հիշատակել, որ միեւնույն անվամբ բերդ կար նաեւ Վասպուրականի Անձախաձոր գավառում:[175]

## ՄՈՍ ԵՎ ԿԱՐՄԻՐՎԱՆՔ

Մոսը գավառի հայաթափ այն գյուղերից է, որը ցայսօր հայտնի է իր պատմական անունով (փոքր-ինչ աղավաղված կոչվում է Մոզքյանդ): Ապահենի նման Մոսն էլ հայտնի է որպես գրչօջախ: Այստեղ 1653-54 թթ. գրիչ Մարտիրոս Խնձորեկցու եւ ծաղկող-կազմող Մովսես երեցի համատեղ աշխատանքով ստեղծվել է մի ձեռագիր ավետարան (ստացող՝ Թադեոս Րախիշեցի):[176] Մոսը կրկին հիշվում է XVIII դարի կեսին Դադի վանքի կալվածացուցակում:[177]

Մոսը գտնվում է Դուտխու գետի ձախակողմյան ջրառատ վտակներից մեկի վերին հոսանքի շրջանում, ծովի մակերեւույթից 1800 մ միջին բարձրության վրա, ալպիական մարգագետինների գոտում:

Գյուղի հատակագծային առանձնահատկությունները հատկապես խիտ կառուցապատումն ու ակնհայտորեն հնամենի փողոցների առկայությունը վկայում են, որ այն հին բնակավայր է՝ ձեւավորված միջնադարում: Երբեմնի բնիկներից, սակայն, ներկայում միայն 4-5 հողմնահար խաչքարեր են պահպանվել՝ զետեղված գյուղի հարավ-արեւմտյան կողմի անասնագոմերի հատակին եւ դռների առջեւ:








*Տեսարան Մոս գյուղից եւ Կարմիր վանքի հատակագիծը*

Մոսից հարավ-արեւմտյան ուղղությամբ 1 կմ հեռու, քրդական փոքրիկ գերեզմանոցում կանգուն է անմշակ քարով, բոլորաձեւ հատակագծով XIX դարի վերջին կառուցված մի քրդական տապանատուն (քյումբազ):

Մոսից 1,5 կմ արեւելք, համանուն վտակի աջ ափին, փոքրիկ բլրակի վրա պահպանվում են ինչպես կիսամշակ, այնպես էլ սրբատաշ քարով կառուցված մի բազիլիկ եկեղեցու պատերը: Արեւմըտյան ճակատից բացված միակ մուտքի բարավորը, որն ընկած է եկեղեցուց քիչ ներքեւ, թեք լանջի վրա, անարձանագիր է: Այս կառույցի ոճական եւ կառուցողական առանձնահատկությունները բնորոշ են XII-XIII դարերին: Պատերի հաստությունը կազմում է 78-80 սմ, իսկ արտաքին չափերն են 6,90x4,83 մ:

1911 թ. ռուսական ռազմական գլխավոր շտաբի կազմած քարտեզում այս եկեղեցին նշված է Կարմիրվանք անվամբ (թուրքերեն՝ Ղզըլվանք):[178]

---

*174. «Դիվան...», էջ 204:*

*175. Հ. Ս. Էփրիկեան, Բնաշխարհիկ բառարան, Վենետիկ, 1900, էջ 213:*

*176. «Ցուցակ Ձեռագրաց», հատոր Ա, Երեւան, 1965, N3647:*

*177. «Ջամբռ», նույն տեղում:*

*178. Изд. Воен. Топ. Отдела Генерального Штаба, 1911 г.*






ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ. տեսքը՝ հյուսիսից, արեւմուտքից, հարավ-արեւմուտքից եւ խորանը՝ ներսում

## ԽՆՁՈՐԵԿ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ

Գյուղի անվան առաջին հիշատակությանը հանդիպում ենք գրիչ Մարտիրոս Խնձորեկցու ձեռագիր ավետարանում (1653-54 թթ.):[179] Խնձորեկը մեկն է 1763 թ. դրությամբ Դադիի կալվածքի վանքապատկան գյուղերից:[180] Այն փռված է Դուտխու գետի աջ ափին՝ մրգավետ հովտում, եւ պատահական չէ, որ այնտեղ հաստատված խաշնարած ցեղերը գյուղանունը թարգմանաբար կոչել են՝ Ալմալու (Խնձորուտ):

179. «Ցուցակ Ձեռագրաց», հատոր Ա, Երեւան, 1965, N3647:

180. «Ջամբռ», նույն տեղում: Տարիներ առաջ վաղուհանգի մի ուսուցչից լսել էինք, որ Ալմալու եւ Ղուշյուվասի գյուղերի շրջանում՝ խիտ անտառի մեջ երկու տեղ, պահպանվել են եկեղեցիներ: Դրանք գտնելու հույսով, մեր դեգերումները, սակայն, արդյունք չտվեցին:

Խնձորեկի շրջակայքում պահպանվել են հետեւյալ գյուղերը. Ղուշյուվասի, Օթախլար, Քիլսալի, Ալչալի, Ջոմարդ, Ղարագյունեյ, Գյոզդի Բուլաղ, Նաջաֆալիլար եւ Լաչին:

Ջոմարդ գյուղից 1,5 կմ հյուսիս, համանուն լեռան գագաթին, ծովի մակերեւույթից 1876 մ բարձրության վրա պահպանվում են փոքրիկ ամրոցի ավերակները: Ստորոտից հաշված բերդասարն ունի շուրջ 700 մ բացարձակ բարձրություն:

## ՄՐՋՄԱՆ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ

Պատմական Մրջման գյուղը գտնվում է Տրտուի աջ վտակ Արագջրի ակունքի շրջանում, աղբյուրաշատ եւ անտառապատ վայրում, Դադի վանքից 9,5 կմ հարավ-արեւելք: Թեեւ գյուղի տարածքում բազ-









*ՄՐՋՄԱՆ. տեսարան գյուղից, գյուղամերձ հիմնավեր եկեղեցի, խաչքար ագուցված բնակելի տան պատի մեջ, խաչքար հիմնավեր եկեղեցու ավերակներում*

մաթիվ են նրա՝ առնվազն XII-XIII դարերից շեն լինելը վկայող պատմական հուշարձանները, այնուամենայնիվ գրավոր առաջին հիշատակությունը մեզ է հասել միայն 1729 թվից: XIX դարի վերջին Ջրաբերդի Մաղավուզ գյուղում պահվող ձեռագիր Մաշտոցի հիշատակարանից Մակար եպիսկոպոսը արտագրել է հետեւյալը. «Ես Մրչմանցի տէր Մէլիքսեթի որդի Մարկոսըս... թվն ՌՃՀԸ էր»:[181]

Հետեւաբար ներկայիս Քարվաճառի շրջանի արեւելյան ծայրի գյուղերը՝ հանձինս Մրջմանի, շարունակում էին հայաբնակ մնալ նաեւ XVIII դարի 2-րդ քառորդի սկզբներին:

Թեեւ XVIII դարի կեսին Սիմեոն կաթողիկոսի կազմած Դադի վանքի կալվածացուցակում Մրջմանը չի նշված, բայց 1905 թ. մեկ այլ վավերագրից իմանում ենք, որ այն (հիշված է Մարջումակ անվանաձեւով) նույնպես վանքապատկան էր:[182]

Հայտնի է, որ 1906 թ. հայաթափ Մրջման-Մարջումակը ուներ 89 շունչ քուրդ բնակիչ, որոնք խորհրդային տարիներին իսպառ թրքացան:

Մինչեւ 1970-ական թթ. վերջերն այս գյուղում եւ նրանից 1 կմ արեւելք կանգուն էին մեկական թաղակապ եկեղեցիներ, որոնցից վերջինի որմին 9 տողով փորագրված է եղել 1304 թ. շինարարական արձանագրություն:[183]

Ինչպես եկեղեցիները, այնպես էլ գյուղամիջի հայոց գերեզմանատունն այժմ հիմնավեր են: Փոխարենը՝ գյուղի շատ տների ու գոմերի պատերի մեջ կարելի է հանդիպել խաչազարդ ու քանդակազարդ քարերի, բեկորների:

Մրջմանից 3 կմ հյուսիս, Աղդայա գյուղատեղիի տարածքում դեռեւս պահպանվում են ավերված հայոց գերեզմանատան մնացորդները՝ մի քանի տեղահան ու կոտրատված խաչքարերով:

## ԺԱՅՌԱՊԱՏԿԵՐՆԵՐ ՍԵՎ ԵՎ ՁԱԼԽԱ ԼՃԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Չրաղ գյուղից հարավ, Սեւլիճ (Ղարագյոլ) եւ Ջալխա լճերի մերձակայքում, ծովի մակերեւույթից 3000 եւ ավելի մետր բարձրության վրա բավական ըն-

---

*181. «Արցախ», էջ 221:*

*182. ՀՀՊԿԱ, ֆոնդ 56, ցուցակ 1, գործ 10403, թերթ 166:*

*183. Տեղում արձանագրության միակ ընդօրինակողն է եղել **Մեսրոպ Տեր-Մովսիսյանը** (տես՝ նշվ. աշխ., էջ 99բ), որը հնավայր է այցելել 1911 թ.: Արձանագրությունը անփոփոխ վերահրատարակել է **Ս. Բարխուդարյանը** (տես՝ «Դիվան...», էջ 226): Արդեն երրորդ անգամ արձանագրության վերահրատարակումը անիմաստ ենք համարում:*

դարձակ տարածություն զբաղեցնող բազալտե ժայռաբեկորներին պահպանվել են մ.թ.ա. IV-III հազարամյակներին վերաբերող մեծաքանակ ու բազմաբնույթ ժայռապատկերներ: Դրանք, կարծում ենք, հար եւ նման են Գեղամա, Վարդենիսի եւ Զանգեզուրի լեռներում հայտնաբերված ժայռապատկերներին, բայց, գտնվելով Ադրբեջանի կազմում՝ Քարվաճառի շրջանում, դուրս են մնացել հայ հետազոտողների տեսադաշտից: Սկսած 1976 թ-ից հնավայրերի ուսումնասիրությամբ զբաղվել է բաքվեցի հնագետ Գուդրաթ Իսմայիլովը, այնուհետ նաեւ՝ Նասիր Ռզաեւը:[184]

## ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ

XII-XVII դարերում կառուցապատված ու անընդհատ համալրված վանքը գտնվում է Տրտու գետի աջ ափին, այնտեղ, ուր Իրիցաջուրը Իգաձորի նեղ կիրճով հոսելուց հետո խառնվում է Տրտուին: Վանքի զբաղեցրած տարածքն անմիջապես աջ գետափին տարածված մի հարթակ է՝ շրջապատված խիստ զառիթափ անտառածածկ լեռներով:

Դեռեւս 1982 թ. ամեն հայկականը աղվանական ներկայացնելու տենդով տառապող ադրբեջանցի «գիտնականներից» մեկը՝ Թ. Ա. Աբդուլլաեւը հանդես էր եկել իր մի զեկուցմամբ, ուր վանական համալիրը բնականաբար առանց որեւէ փաստարկի միտումնավոր կերպով հայտարարել էր աղվանական:[185] 1987-ին տեղում կատարված մեր ուսումնասիրությունները հրապարակվեցին 1989-ին:[186] Ներկայացվեցին հնավայրում հայտնաբերված բոլոր 13 վիմագրերը՝ իրենց գրչանկարներով հանդերձ: Տարիներ անցան: Հասկանալի պատճառներով մինչեւ 1993 թ. ապրիլ ամիսը շրջանի տարածք եւ, մասնավորապես, Սբ. Աստվածածնա վանք այցելելու հնարավորություն այլեւս չկար, իսկ այն, ինչ տեսանք շրջանի ազատագրումից հետո՝ 1993-ի հունիսին, դժվար է բառերով նկարագրել: Փաստորեն վանքի հայկականությունը անվիճելիորեն ապացուցող մեր պատասխան հոդվածից գազազած ադրբեջանցի «գիտնականները», այլեւս անհույս համարելով աղվանականացնելու ճանապարհով վանքին տիրանալը, գազանաբար հարձակվել էին վանքի բազմաթիվ շինությունների վրա եւ ջարդոտել ու փոշիացրել գրեթե բոլոր վիմագրերը, որոնք ընդամենը 5-6 տարի առաջ











*ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ. համալիրի հատակագիծը եւ XVII դարում կառուցված եկեղեցու կտրվածքը դեպի արեւելք*

պահպանվում էին եկեղեցիների որմերին, սվաղի շերտի ու երեսապատի քարերի, ինչպես նաեւ խաչքարերի վրա: Այդպիսով ոչնչացվել են պատմական մեծարժեք մի քանի արձանագրություններ, որոնց թվում՝ շինարարական, նորոգչական ու նվիրատվական բովանդակություն եւ պատմական առանձնակի կարեւորություն ունեցող վիմագրեր:[187]

Հուշարձանախմբի ամենավաղ կառուցված հատվածը արեւելք-արեւմուտք ուղղությամբ ձգված իրար կից մի քանի շինություններ են: Դրանցից 2-ը բավականին փոքր չափերի եկեղեցիներ են (4,50x3,60մ եւ 6,60x4,70 մ արտաքին չափերով), 1-ը սյունասրահ է (5,0x4,80 մ), իսկ վերջինը նախորդին կից գավիթ է:

Բացառությամբ վերջինի, առաջին երեք կառույցները, թեկուզ քայքայված, դեռեւս կանգուն են: Անխտիր բոլոր շենքերը կառուցված են անմշակ քարով, կրաշաղախով, ներքուստ սվաղված են:

---

184. **Նասիր Ռզաեւ**, *Ժայռերն են խոսում (ադրբեջաներեն), Բաքու, 1985, էջ 43-45:*

185. **Т. А. Абдуллаев**, *Албанский монастырь у слияния рек Буланлыг-су, Тертерчай (Тезисы докладов республиканской научной конференции-Проблемы развития архитектуры и градостроения в Азербайджанской ССР), Баку, 1982:*

186. **В. А. Арутюнян, С. Г. Карапетян, Н. М. Саркисян**, *Монастырский комплекс Сурб Аствацацин в гаваре Цар, «ԼՀԳ», 1989, N 7, էջ 82-92 (տես սույն գրքի «Ուսումնասիրություններ մինչեւ Քարվաճառի ազատագրումը» բաժինը):*

187. *Վանական համալիրի տարածքում հայտնաբերված վիմագրերից 5-ը թվագրված են 1174, 1175, 1178, 1195, 1248, 1261 թթ.:*




ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ. հին հուշարձանախմբի (XII դ.) հարավային ճակատը եւ կտրվածքը դեպի հյուսիս

Հուշարձանախմբի հնագույն եկեղեցին կառուցվել է 1174 թ.: Այդ մասին պատմում է նրա արեւմըտյան պատին (արտաքուստ), սվաղի շերտի վրա 6 տողով փորագրված արձանագրությունը.

ՌԻԳ(1174) ԹՌՒ(ԻՆ) | ԵՍ ԹԱԳՈՒՀԻՄ ԴՈՒՍ(ՏՐ) | (Կ)ԻՒՐԻԿԷԻ ԹԱԳՈՒՈՐԻ | (ՇԻՆԵ)ՑԻ ԶԵԿԵՂԵՑԻՍ ՎԱՄՆ ԻՄ Ե(Ւ) | (Ի)Մ ԾՆՈՂԱՑՆ ՅԱՂԱԻԹՍ | ՑԻՇԵՑԷՔ:

Շինարարական 2-րդ արձանագրությունը, որը պեղահան ու բեկորված վիճակում է, ըստ ամենայնի պատկանելիս է եղել հիշյալ եկեղեցու հարավ-արեւելյան կողմի 2-րդ՝ ավելի փոքր եկեղեցուն. այն ավելի մաքուրի նմանություն եւ բնորոշ չափեր ունի: Արձանագրությունը փորագրված է եղել 5 տողով: Դրանից ընթերցվում է հետեւյալը.

Ի Թ(ՎԻՆ) Հ(ԱՅՈՑ) ՌԻԷ(1178) ԵՍ ՄԱՄԱ ԹԱԳ|ՈՒԻ ԴՈՒՍՏՐ ԿԻՒՐԻ(ԿԷԻ) (ՇԻՆԵ)ՑԻ | ԶԵԿԵՂԵՑԻՍ ԵՒ ... Ս,| ՈՐՔ ԸՆԹԵՌՆ(ՈՅՔ) (ՅԻ)Շ|(ԵՑԷՔ Ի ՔՐԻՍՏՈՍ):

Հիշյալ երկու եկեղեցիներից մեկի նորոգման մասին է պատմում մի բեկորի վրա պահպանված հետեւյալ արձանագրությունը (քարն անհայտացվել է 1989-1992 թթ.. ընթացքում).

ԵՍ ՄԱՄԱՅ | ԹԱԳՈՒՀԻ ՆՈՐՈԳԵ(ՑԻ) (ԶԵԿ)|ԵՂԵՑԻՍ ԽԱԽՏԵԱ(Լ) (ՀԱՍՏ)|ԱՏ ՇԻՆՒԱԾՈՎ | (Ի) ՆԵՂ ԵՒ ՅԻ...

Մինչեւ 1989 թ. արեւելյան՝ փոքր եկեղեցու առջեւ, մուտքի հարեւանությամբ, կողք-կողքի, իրենց նախնական տեղում (երեսով դեպի արեւմուտք) պահպանվում էին երկու գեղաքանդակ ու արձանագիր խաչքարեր: Ցավոք, 1993 թ. դրանց հետքն իսկ չկար: Վերջիններիս արձանագիրը հետեւյալն էր.

ԵՍ ԳՈՐ|ԱՆԴՈՒԽ|Տ ԴԱՅԵԿ Թ|ԱԳՈՒՀՈՅՍ | ԿԱՆԳՆԵ|[Ա]ՑԻ ԶՍՈՒՐԲ ՆՇԱՆ|Ս ՀՈԳՈՅ ԻՄՈՅ ՅԻՇԱ|ՏԱԿ, ՈՐՔ ԸՆԹԵՌՆԱՅ|Ք ՅԱՂԱԻԹՍ ՅԻՇԷՔ, ԹԻՒՆ ՈՂԷ(1248):

Մյուսի վրա.

Թ(ՎԻՆ) ՌԽԴ(1195) | ԵՍ ՍԱՓԻ ՈՐԴԻ ԹԻՐՔԻ ՅԱՂԱՔ|ԻՍ ՏՈՒԻՆ ԾԱՌԱ ԹԱԳ(ՈՒ)Հ(Ո)ԻՆ: | ՅԱՂԱԻԹՍ ԻՇԵՑԷՔ:

Պատմական մեծարժեք եւս մի քանի արձանագրություններ, որոնք նույնպես ոչնչացվել են 1989-92 թթ. ընթացքում, ունեին նվիրատվական բովանդակություն: Դրանք էին.

ԵՍ ՇԱՏԲԱՐԻ :Դ:(4) ՀԱՄԱԴ|ԻԿԻ ՀՈՂ Ի ՀԱՒԱՐ ԵՏՈ(Ւ) Ա(ՍՏՈՒԱ)Ծ|ԱԾԻՆՍ, ՏՈՒ(ԻՆ) Ի ՏԱՐՈՒՄ(Ն)...:

:Զ:(6) ԱՒՐ ԺԱՄ | (Ի)ՆՁ ԿԱՐԳԵՑԻ(Ն)|, (Ո)Վ ՈՐ ԽԱՓ|(Ա)ՆԷ ԻՄ ՄԵՂ(Ա)|ՑՍ ՏԷՐ Է:

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ՏԻՐԱՒԱԳ ՔԱՀ(ԱՆԱՅ) | ԳՆԵՑԻ ԶԻԳԱՅԶՈՐԻՆ ՆԵՐՔԻ ԲԱԺ|ԻՆ ԵՒ ԵՏՈՒ Ի Ս(ՈՒՐ)Բ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾՆԻՍ, | ՏԷՐ ԳՐ(ԻԳ)ՈՐ:

Հուշարձանախմբի փարածքում ցրված, կոտրատված ու պեղահան մի քանի խաչքարեր եւս արձանագիր էին: Ահա դրանց արձանագրությունները.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՍԱՐԳՍԻ(Ն):

Թ(ՎԻՆ) | ՌԻԴ(1174) | (Է)Ր | ԶՎԱՐ|ԱՄ



ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ. տարածքում հայտնաբերված արձանագրությունների գրչանկարներ

Յ|ԱՂ|ԱՒԹ|Ս ՅԻՇ|ԵՑԷ|Ք:

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐ(Մ)|Ի ԳՐ(Ի)ԳՈՐԻՆ, | ԱԿՈԲԱ ՈՐԴ|ՈՅ:

ԹՈՒ(ԻՆ) ՉԺ(1261) | Ա(ՍՏՈՒԱ)Ծ Ո|ՂՈՐՄԻ | ԹՈՄ|Ա ՔԱ|ՀԱՆԱ|(ՅԻՆ) | ...

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈ|ՐՄԻ ՎԱՐ|ԴԱՆ|Ա, ՈՐ | ՋԽԱ|(Չ)Ս ԿԱՆ|(ԳՆԵՑ):

Սբ. Աստվածածին վանքի հին եկեղեցիներից ու նրանց կից կառույցներից 12-13 մ հարավ կանգուն են համալիրի ավելի ուշ ժամանակների կառույցները: Սրանց մեջ կենտրոնական տեղ է զբաղեցնում եռա-



Սբ. Աստվածածին վանքի հանդեպ, Տրտուի ձախ կողմում գտնվող անանուն վանքի հատակագիծը

նավ թաղածածկ եկեղեցին (17,0x11,60 մ), որի երկթեք ծածկի տակ առնված տանիքը ներքուստ պահում են մեկ զույգ հաստահեղույս սյուները: Ի տարբերություն հուշարձանախմբի հին եկեղեցիների՝ սա խորանի երկու կողմերում ունի մեկական ավանդատներ, իսկ հյուսիսային պատի մեջ պահպանվում է մկրտարանի ավազանը: Արեւմուտքից եկեղեցուն կից են փոքր գավիթ-սրահի (8,40x7,40 մ) եւ օժանդակ մեկ այլ սենյակի ավերակները: Բոլոր այս շինությունների որմերին արձանագրեր չեն պահպանվել, բայց ըստ կառուցողական եւ հորինվածքային առանձնահատկությունների՝ որոշակիորեն կարելի է թվագրել XVII դարով: Հուշարձանախմբի հարավ-արեւմտյան հատվածում պահպանվում է XII-XIII դարերի շինություն՝ մի մատուռ եւս, իսկ հարավային եզրով ձըգվում են միաբանության շինությունների ավերակները:

Սբ. Աստվածածնա վանքից մոտ 400 մ հյուսիս-արեւմուտք, Տրտուի հակառակ ափի եզրով վեր խո-



Սբ. Աստվածածին վանքի հանդեպ, Տրտուի ձախ կողմում գտնվող անանուն վանքի տեսքը հարավ-արեւմուտքից













*ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ. հին հուշարձանախմբի տեսքը հարավ-արեւելքից։ Սրահի տեսքը հարավից։ Հին գավթի (XII դ.) տեսքը արեւմուտքից։ Եկեղեցու (XII դ.) տեսքը հարավ-արեւմուտքից։ Խաչքար վանքի ավերված գերեզմանատանը։ 1989-92 թթ. ընթացքում ոչնչացված խաչքարեր (նկ. 1987 թ.)*













*ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ. Մատուռ (XII դ.) համալիրի հարավ-արեւմտյան կողմում (տեսքը հյուսիս-արեւմուտքից եւ հյուսիս-արեւելքից)։ Վանքի նոր եկեղեցին, տեսքը հարավ-արեւելքից եւ արեւմուտքից։ Հին եկեղեցու (1174 թ.) խորանը։ Նոր եկեղեցու ներքին տեսքը դեպի արեւելք*

յացող ժայռերին կից՝ պահպանվում է արեւմուտքից կից գավթով եւս մեկ թաղածածկ եկեղեցի (ընդհանուր չափերն են 14,30x5,0 մ): Այստեղ արձանագրություններ չեն պահպանվել, բայց հուշարձանը անվրեպ, XII-XIII դարերի գործ է:

## ԱՂԴԱԲԱՆ

Թրքաբնակ Աղդաբանը հարեւան Չայղովուշան գյուղի հետ միասին գոյացել է XIX դարի վերջին: Խորհրդային տարիներին Մարտակերտի շրջանի մեջ գտնվող նշված երկու գյուղերը որպես մեկուսատարածք (անկլավ) միացվեցին Քարվաճառի շրջանին:

Դեռեւս 1894 թ. Աղդաբան գյուղի մերձակայքն ուսումնասիրած Խաչիկ վարդապետ Դադյանը նկարագրել է երկու տարբեր տեղերում գտնված խաչքարեր: Իրենց ուշագրավ վիմագրերի շնորհիվ, պատմական մեծ արժեք ներկայացնող այդ խաչքարերն ունեին, անշուշտ, նաեւ գեղարվեստական արժեք: Խաչիկ վարդապետ Դադյանը վկայում է. «Քարամլու թրքաբնակ գիւղի եւ քիմբագի մօտով Աղաք, Ղարակեօզլու Ղշլաղի մօտով Կարաքին գետ կամ Աղտաբանի ջուրը անցայ: Ակի վրայի խաչքարի գիրը. ՈԾԲ(1203) Է|Ր ԹՈՒ|ԱԿԱՆՆ ԵՍ ԳԵՐԳԱ | ՀԱՍԱՆ ՈՐ|ԴԻՔ ՆԱ Ե|ԱՒՐՈՎԻՆ | ԿԱՆԳՆԵՑԱՔ | ԽԱՉՍ ՄԵՐ | ԱՂԲԱՅՐ Ա|ՂԲԱՍՐԱ, | ՅԱՂԱՒԹՍ ՅԻՇԵՑԷՔ (նկարագիր խաչի՝ ծիատր-նիզակատր եւ թրատր, գլխին խոյր՝ թասակածեւ): Հիսէյինբէկ Թէմուրխանբէկի Աղդաբանի բլուրի խաչի գիրը (կոտրված երեսի վերայ քցած, գիրը ծածկած). ...ԸՆ ՇԱՀԻ Ի ԺԱՄԱՆԱԿՍ ԵՏՈՒՆ ... ԱՆՈԹԻ ԳԱՒԱՌԻՍ Ի ՁԵՌՍ ԻՄ ՉԽԱՉԻՆՈՅՍ, ԳԵՂԱ|ՔՈՆՈՑ ԵՒ ԱՒԳՆԱԿԱՆՈՒԹ(ԵԱՄ)Բ ԱՅԼ ԵՒ ԱՂԱՒԹԻՒՔ | ԱՄԵՆԱՅՆ ՍՐԲՈՑ ՄԱՆԱՒԱՆԴ Ս(ՈՒՐ)Բ ԾՆՈՂԻՆ ԻՄՈ | Ա(ՍՏՈՒԱ)ԾԱՍԷՐ ԵՒ ՍԱԴԱՎԱԼ ԴՈՓԻՆԻՆ ԵՂԵՒ Ի ՀՈՐԲ Ժ|ԱՄԱՆԱԿԻՍ ԱՅԺՄ ՋԱՒՐԱՑԱՆ ՉԱՐՔՆ ԱՐԵՒԵԼՔԻՑ ԼԱՒՍԻ | ՋՏՓԻՍ ԵՒ ԱՄԵՆ ... ԿԱՆԳՆԵՑ ԽԱՉՍ | ՏԵՐՈՒՆԱԿԱՆ ՏԱՄՐԱԿԱՊԻՍ ՅԻՇԱՏԱԿ ՀԱՒՐ ԻՄ ՀԱՍԱՆԱ, ԲԱՐԵԽԱՒՍ ԱՆՁԱՆՑ ԻՄ ԵՒ ՀՈԳՈՑ ՆՈՐԱՅ ԱՌ Ք(ՐԻՍՏՈ)Ս, ԱՐԴ Ա...»:[188]

## ԴԱԴԻ ՎԱՆՔ

XIX դարի կեսերից սկսած Դադի վանքն իր վրա է բեւեռել մի շարք հետազոտողների ուշադրությունը: Առաջին ուսումնասիրողները (Հովհ. Շահխաթունյանց, Ս. Ջալալյանց) զբաղվել են հնավայրում պահպանված վիմագրերի վերծանումներով: Ավելի ուշ՝ քննության առարկա են դարձել նաեւ վանքի պատմության ու ճարտարապետության ոլորտներին առնչվող հարցեր (Մ. եպիս. Բարխուդարյանց, Մ. արքեպիս. Տեր-Մովսիսյան): Խորհրդային տարիներին վիմագրերի հետազոտությունները նորովի ի մի է բերել Ս. Բարխուդարյանը, առաջին չափագրումներն է իրականացրել ճարտ. Մ. Հասրաթյանը, որոշ սկզբնաղբյուրների հետազոտմամբ վանքի պատմությունն են շարադրել Բ. Ուլուբաբյանն ու Շ. Մկրտչյանը, իսկ պահպանված որմնանկարներն ուսումնասիրել է Լ. Դուռնովոն: 1980-ականներին այդ ասպարեզում իրենց «ներդրումն» են արել նաեւ ադրբեջանցի «գիտնականները» (Ռ. Գեյուշեւ, Դ. Ախունդով):

Համակողմանի հետազոտական աշխատանքների նոր փուլն սկսվեց 1993 թվականից, սկսած այն պահից, երբ ազատագրվեց Քարվաճառի շրջանն ու մասնավորապես՝ Դադի վանքի տարածքը (1993 թ., մարտի 31): Հնավայրում երկու տարվա ուսումնասիրություններից պարզ դարձավ, որ ցայսօր կատարված աշխատանքների բոլոր 3 կարեւոր բնագավառներն էլ (արձանագրությունների վերծանում, պատմագրություն, ճարտարապետական քննություն) առանձին առումներով թերի են: Մասնավորապես վիմագրերի վերծանությամբ զբաղվողների տեսադաշտից վրիպել են շատ արձանագրություններ, վերծանությունների մեջ տեղ են գտել բազմաթիվ սխալներ, անվերծանելի են համարվել ու շրջանցվել են տարբեր վիմագրեր կամ դրանց առանձին հատվածներ եւ այլն: Վանքի պատմությունը շարադրողների աշխատություններում նույնպես առկա են մի շարք սկզբնաղբյուրների (մասնավորապես՝ արխիվային վավերագրերի եւ նախախորհրդային պարբերական մամուլի նյութերի) անտեսման փաստեր:

Ինչ վերաբերում է ճարտարապետության բնագավառին, ապա Մ. Հասրաթյանի, Ռ. Գեյուշեւի եւ Դ. Ախունդովի հեղինակած սխեմատիկ չափագրություններից զատ (հատակագիծ, գլխավոր հուշարձանախմբի հարավային ճակատ եւ գմբեթավոր 2-րդ եկեղեցու արեւմտյան ճակատը), այդ ուղղությամբ այլեւս ոչինչ չի ձեռնարկվել:

Ներկա աշխատության մեջ փորձ ենք արել մեզ հայտնի լրացուցիչ աղբյուրագիտական տվյալների հիման վրա տալ Դադի վանքի՝ըստ կարելվույն ամբողջական, պատմա-ճարտարապետական նկարագիրը եւ վիմագրերը:

***Տեղագրություն:*** Դադի վանքը գտնվում է Արցախի Վերին Խաչեն կամ Ծար գավառի (այժմ՝ Քարվաճառի շրջան) արեւելյան մասում, Տըրտու (Թարթառ) գետի ձախ ափից 0,5 կմ հյուսիս, ԼՂՀ Մարտակերտի շրջանի սահմանին խիստ մոտ՝

---

*188. ՀՀՊՊԿԱ, ֆ. 319, ց. 1, գ. 155, թ. 1*




*ԴԱԴԻ ՎԱՆՔ. շրջակա մատուռների դիրքն ու տեղադրությունը Տրտու (Թարթառ) գետի հովտում*

հազիվ 200 մ հեռավորության վրա, անտառածածկ լեռան հարավահայաց փեշին: Վայրը ծովի մակերեւույթից բարձր է 1100 մ, Տրտուի ափից՝ 75: Գետի եւ վանքի միջեւ՝ Տրտուի փոքրիկ վտակի հովտում, փռված են պատմական Խութ կամ Խութավան գյուղի ավերակները. խորհրդային փարիներին այն բնակեցվել էր քրդերով եւ հայտնի էր Քյոլանլու կամ ուղղակի Վանք անուններով:

Դադի վանքի հիմնական հուշարձանախմբից զատ, ոչ շատ հեռու, շրջակա բլուրների վրա գոյություն ունեն մի քանի մատուռներ եւս: Մասնավորապես, վանքից 300 մ արեւմուտք, մի ժայռոտ բլրի գագաթին կանգնած մատուռը բարձր է 155 մետրով (ծովի մակերեւույթից՝ 1255 մ), իսկ վանքից նույնքան հեռավորությամբ դեպի հարավ-արեւելք, հրրվանդանաձեւ ձգված անտառածածկ լեռնաճյուղի ծայրում գտնվող մատուռը հիմնական հուշարձանախմբից բարձր է 30 մետրով: Ինչ վերաբերում է գլխավոր կառույցներից հյուսիս եւ հյուսիս-արեւելք գտնվող մատուռներին, ապա դրանք բարձր են միայն 5-10 մ: Այն բլրալանջը, որի վրա փարածված են վանական համալիրի կառույցները, արեւելյան եւ արեւմտյան կողմերից եզրափակված են փոքրիկ ձորակներով: Քիչ ներքեւ իրար միանալով՝ դրանք ավելի են ընդգծում համալիրի զբաղեցրած տարածքի ամֆիթատրոնաձեւ տեղադրությունը: Ժամանակի ընթացքում այդ հարթակը ծայրեծայր զբաղեցվել է, ինչպես՝ պաշտամունքային, այնպես էլ աշխարհիկ նշանակության զանազան կառույցներով:

***Պատմություն:*** Մատենագրական աղբյուրները վկայում են, որ Դադի վանքը հիմնադրվել է դեռեւս առաջին դարում քրիստոնեական քարոզչություն ծավալելու համար նախատակված Դադիի գերեզմանի տեղում.[189] «Թադէոս, մի յեւթանասնիցն, որ գնաց հրամանաւ Թադէի ի մեծն Հայք եւ ի կողմանս հիւսիսոյ եւ լուեալ զմահն Աբգարու, դարձաւ եւ եմուտ ի Փոքր Սիւնիք եւ կրօնաւորեալ անդէն ծածկաբար՝ վախճանեցաւ եւ տեղին շինեցաւ վանք եւ յանուն նորա կոչեցաւ»:[190] Այս պատճառով է, որ աղբյուրներում վանքը հաճախ Առաքելոց է կոչվում, իսկ Մխիթար Գոշը ուղղակի կոչում է «Առա-

*189. Արդյո՞ք այս եւ Միջագետքում արքացված Դադը նույն անձնավորությունն է եղել, դժվար է որոշել: Համենայն դեպս, ըստ Սերովբե Կարենցու, Բաղդադ քաղաքն էլ իր անունն առել է Դադ անձնանունից. «Այս հռչակավոր քաղաքը տեղավորված է Տիգրիսի արեւելյան ափին, կառուցվել է մեր թվարկության 762 թվականին՝ Աբուլջաֆար Ալմանսուր խալիֆի կողմից, այնպիսի մի վայրում, որտեղ ապրելիս է եղել ենթադրյալ մի սուրբ անձնավորություն՝ Դադ անունով, որից եւ առաջացել է «Այգեստան Դադի» կամ «Բաղդադ» հատուկ անունը» (**Սերովբե Կարենցի**, Ուղեգրություն Բաղդադից Էջմիածին, Երեւան, 1968, էջ 45):*

*190. Ժամանակագրութիւն տեառն **Միխայէլի Ասորւոց** պատրիարքի, Երուսաղէմ, 1871, էջ 33: Տես նաեւ՝ **Ղ. Ալիշան**, Արցախ, Երեւան, 1993, էջ 52:*

քելադիր»:[191] Թերեւս ներկա վանքի տեղում նախապակ քարոզչի գերեզմանի վրա արդեն I դարում կառուցվել է մի մատուռ (ըստ երեւույթին՝ փայտաշեն), որի տեղում քրիստոնեության ընդունումից հետո, հավանաբար հենց IV դարում, կառուցվել է վանքի առաջին ու հնագույն եկեղեցին:

Մատենագրական աղբյուրներում առաջին անգամ Դադի վանք անվան մի թռուցիկ հիշատակությունը հանդիպում ենք միայն IX դարի սկզբին, Ներսես Փիլիպյանի կողից Աղվանից գահերեց պայազատների սպանության տեղի նկարագրության կապակցությամբ. «...ի Խորաձորն, որ կոչի Դադոյի վանք»:[192]

1145-46 թթ. պարսից Չոլի զորապետը, որը 1142-ին նվաճել էր Գանձակ քաղաքը, ի թիվս Խաչենի իշխանության տարածքում գտնվող շատ բերդերի ու վանքերի ավերեց նաեւ Դադի վանքը. Պատմագրի վկայությամբ նա «...այրեաց եւ զառաքելադիր ուխտ սրբութեանն, որ կոչի Դադուի վանք»:[193] Սակայն, նույն դարի 70-ական թվականներից, ինչպես վկայում են տեղում պահպանված վիմագրերը, վանքում սկսվում են նորոգվել հին եւ կառուցվել նոր պաշտամունքային ու աշխարհիկ բնույթի շենքեր: Դադի վանքը շարունակում է հանդես գալ իբրեւ առաջնորդանիստ (եպիսկոպոսանիստ) կենտրոն: Դադի վանքի առաջնորդներից հայտնի են, օրինակ՝ Վախտանգի որդի Տեր Գրիգորիսը (հիշ. 1182, 1190 թթ.), Վասակ նահապետի որդի Տեր Գրիգորիսը (հիշ. 1224, 1233, 1241, 1253 թթ.), Հասանի որդի Տեր Աթանասը (հիշ. 1263, 1265, 1283, 1291 թթ.), Տեր Սարգիսը (հիշ. 1309, 1312, 1340 թթ.),[194] Զաքարիա արքեպիսկոպոսը (հիշ. 1402, 1411 թթ.),[195] Տեր Գրիգորիսը (հիշ. 1558 թ.),[196] «մեծ եւ երանաշնորհ վարդապետ» Հովհաննեսը (հիշ. 1583 թ.) որ էր. «ի յերկրէն Ծարայ, Փոքր Սիւնիս կոչեցելոյ, ի վանիցն Դադիու սուրբ Ցառաքելոյն...»,[197] արքեպիսկոպոս Ստեփանոսը (հիշ. 1652, 1653 թթ.),[198] Տեր Պետրոսը. «Պետրոս վարդապետ առաջնորդ Խօթավանից...» (հիշ. 1721թ.)[199] եւ այլն:

Հիշատակման է արժանի, որ 1684-ին այստեղ՝ «ի սուրբ եւ ի գերահռչակ Դադէի վանս» գրիչ Վառվառեի եւ ծաղկող Տեր Բարսեղի ջանքերով, (ստացող՝ Պետրոս վարդապետ) ստեղծվել է «Գրիգոր Տաթեւացի, Քարոզգիրք» ձեռագիրը:[200]

Հետագա հարյուրամյակների ընթացքում Դադի վանքը շարունակաբար տիրապետել է ընդարձակ կալվածների: Նրա գոյության, եթե կարելի է այսպես ասել, ամենադժնդակ ժամանակաշրջանում անգամ կալվածների սահմանները խիստ ընդարձակ էին եւ ընդգրկում էին ներկայիս Քարվաճառի, Վարդենիսի շրջանների մեծագույն մասերը եւ Մարտակերտի շրջանի արեւմտյան հատվածը (միջնադարում դրանք ավելի ընդարձակ էին, արեւմուտքում հասնում էին մինչեւ ներկայիս Երանոս գյուղը, իսկ արեւելքում մինչեւ Ականա գյուղը):[201]

Հայտնի է, որ XVIII դարի վերջին եւ XIX դարի սկզբին վանքը միաժամանակ թափուր էր. այնտեղ չկային ոչ միայն միաբանության կրոնավորները, այլեւ անգամ որեւէ աշխարհական սպասավոր:[202] 1760-ականներից մեծ մասամբ արդեն հայաթափ թեմական կալվածքին նոր դժբախտություններ բաժին հասան:[203] Նույն դարի վերջին նախ Աղա Մահմատ խանի արշավանքի (1795 եւ 1797 թթ.), ապա՝ սոսկալի ժանտախտի ու սովի (1798 թ.) հետեւանքով վանքապատկան գյուղերը համարյա ամբողջովին ամայացան: Շուշիում հաստատված Իբրահիմ խանի հրավերով ու հովանավորությամբ 1760-ականներից սկսած վանքապատկան հողերի վրա բնակություն հաստատեցին Երեւանի խանության տարածքից դուրս եկած քոչան ցեղի քրդերը:[204] Մի քանի տասնամյակների ընթացքում կալվածքի սահմաններ թափանցեցին նաեւ այլ քրդական ցեղեր,[205] ինչպես նաեւ այրումներ (վերջիններս ծագումով նախ հունադավանություն, ապա՝ մահմեդականություն ընդունած հայեր էին):[206]

1813 թ., երբ Գյուլիստանի դաշնագրով Ղարա-

---

191. Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 386:

192. Մովսէս Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Երեւան, 1983, էջ 340:

193. Մ. Կաղանկատուացի, նշվ. աշխ., հավելված, էջ 353: Տես նաեւ՝ Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր 3, Երեւան, 1952, էջ 101: Ղ. Ալիշան, Արցախ, Երեւան, 1993, էջ 53: Սամուէլ Անեցի, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 132: Մխիթար Գոշ, Կաթողիկոսք եւ դէպք Աղվանից աշխարհին ի մէջ ԺԲ դարու (տես՝ Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 386)

194. Տես սույն գրքի վիմագրերի բաժնի N 31 (էջ113) եւ 39 (էջ 114) արձանագրությունները:

195. «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մասն Ա, Երեւան, 1955, էջ 24, 122: «Ցուցակ Ձեռագրաց», հ. Ա., Երեւան, 1965, ձեռ. N 3578:

196. Տես՝ Ղ. Ալիշան, Արցախ, էջ 59:

197. Տես՝ «Մանր ժամանակագրություններ», կազմեց՝ Վ. Ա. Հակոբյան, հատոր Բ, Երեւան, 1956, էջ 244:

198. Տես՝ «ԺԷ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», հատոր Գ, Երեւան, 1984, էջ 489, 601:

199. Տես՝ "Армяно-русские отношения в первой трети XVIII века", հատոր II, մաս I, Երեւան, 1964, էջ 383:

200. «Ազգագրական հանդէս», գիրք ԺԲ, Թիֆլիս, 1905, էջ 168: Հ. Ոսկեան, Արցախի վանքերը, Վիեննա, 1953, էջ 95-112: «Ցուցակ Ձեռագրաց» հ. Ա, Եր., 1965, էջ 712, ձեռ. N 2067:

201. ՀՀՊԴԿԱ, ֆոնդ 57, ցուցակ 1, գործ 4, թերթ 1, 4: «Զանգու», էջ 283-284 (կալվածագրի այդ հատվածն ամբողջական տե՛ս սույն գրքի «Կալվածագրեր» բաժնում:

202. Ս. Քամալեանց, Խօքայ վանքի Ս. Նշանը, «Արձագանք», 1892, N 111, էջ 1-2:

203. Այդ մասին տես՝ Ս. Կարապետյան, Արդյո՞ք խոպան հայաթափ էր Ծար գավառը խաշնարած ցեղերի ներթափանցման պահին, «Ար», 1995, N 9, 12 ապրիլ, էջ 5:

204. «Մշակ», 1888, N122, էջ 2: Լեո, Հայոց պատմություն, հատոր 3, գիրք երկրորդ, Երեւան, 1973, էջ 303:

205. Լէօ, Պատմութիւն Ղարաբաղի հայոց թեմական դըպրոցի 1838-1913, Թիֆլիզ, 1914, էջ 674-676:

206. Յ. Վարդանեան, Մի քանի խօսք այրումների մասին, «Մշակ», 1914, N154, էջ 2-3: Սամվել Կարապետյան, Այրումներ, «Գարդմանք», N 3, 1996, էջ 5:

բաղի խանության տարածքը միացվեց Ռուսաստանին, Դադի վանքը, փաստորեն ոչ միայն զրկված էր նախկին ընդարձակ կալվածներից, այլեւ բուն աթոռանիստն էլ անբնակ էր ու ամայի:

Ռուսաց տիրապետության սկզբնական շրջանում, մինչեւ 1820-ական թվականների վերջերը, երբ քաղաքական իրավիճակը դեռեւս խիստ անկայուն էր (Աբբաս Միրզայի արշավանքը 1826-ի ամռանը), Արցախի հոգեւոր առաջնորդներին հնարավորություն չէր ընձեռվում լրջորեն զբաղվել ամայացած վանքերով, բայց արդեն 1830-ականներին այդ գործի գլուխ էր կանգնել մետրոպոլիտ Բաղդասար Հասան-Ջալալյանը:[207] Ջանազան խաների կամ ցեղերի տնօրինության ներքո հայտնված նախկին վանքապատկան կալվածները ետ վերադարձնելու նպատակով՝ մետրոպոլիտ Բաղդասարը ձեռք էր զարկել ոչ միայն խիստ բարդ ու դժվարին, այլեւ վտանգավոր ու տեւական պայքարի: Չնայած իրենք՝ քոչանեցի քրդերն էլ չէին թաքցնում, որ իրենց հանգրվանները վանքապատկան էին (օրինակ՝ «1833-ին Ամիր Ասլան բէկը վկայում է, որ Քօլանեցոց տեղերը վանքինն է»),[208] բայց ժամանակակիցներից շատերն այդ ուղղությամբ մետրոպոլիտի ջանքերը համարում էին իզուր ու անօգուտ. «... այս ձեռնարկութեան ելքը շատերուն անյուսալի էր երեւում, բայց նորա բնական երկայնմտութիւնը եւ մանաւանդ անձանձիր աշխատութիւնը ոչինչ արգելքներից ու դժուարութիւններից չյաղթուեցաւ»:[209] Այսուհանդերձ, մետրոպոլիտը «Չը խնայելով ոչ մի ջանք եւ նիւթական զոհաբերութիւն, Մեհտի Ղուլի խանի աղջկանից եւ ուրիշ բէգերից խլում է իր իշխանական կալուածները, որ ընդհանուր առմամբ Դուտխու Քեալբաջար է կոչւում եւ որը տարածւում է հարիւր քառասուն հազար դեսեատին մի շարք գիւղեր, կուսական անտառներ, հանքեր, վարելահողեր, մարգեր, արօտատեղեր, լի հանքային զանազան ջրերով»:[210] Ի վերջո, մետրոպոլիտի առաջարկությամբ եւ Ամենայն Հայոց Կաթողիկոս Ներսես Ե-ի միջնորդությամբ Կովկասի փոխարքա Մ. Վորոնցովի կարգադրությամբ նշանակվում է քննություն, եւ Դադի վանքի պատկանելությանն է հանձնվում 196.438 դեսյատին մակերեսով մի ընդարձակ կալվածք:[211] Սակայն, մի բան էր կառավարության հրամանն ու որոշումը, մի այլ բան էր՝ այդ լայնատարած կալվածում հաստատված ցեղերին ստիպել վանքապատկան հողից օգտվելու համար տասանորդ վճարել: Ընդ որում, ստիպել այն ցեղերին, որոնք ամենուր հայտնի էին իրենց ավազակային բարքերով: Անցնող տարիների հետ վանքապատկան կալվածներում ավելի ու ավելի բազմացան «յայլաղներն ու ղշլաղները»: Զուգահեռաբար ծնունդ առան վանքապատկան կալվածների «վիճելի» հատվածներ: Արդեն 1896 թ. վանքապատկան կալվածների կազմում մնացել էր միայն 98.438 դեսյատին, որից էլ միայն 50.000-ը՝ անվեճ:[212] 1909 թ. այդ թիվն ավելի եւս կրճատվել էր ու հասել 45.997 դեսյատինի:[213] Ուշագրավ է, որ խաշնարածների թվաքանակի ավելացման համեմատ վանքին տրվող հարկերն ու եկամուտներն էլ ավելանալու փոխարեն՝ տարեցտարի նվազում էին: Փաստարկելու համար վերոհիշյալը՝ ստորեւ ներկայացնում ենք Դադի վանքի տարեկան եկամուտների չափը.

1851-1873 թթ.՝ տարեկան ավելի քան 1500 ռուբլի,[214]

1874-1880 թթ.՝ տարեկան 600 ռ.,[215]

1891 թ. 450 ռ.,[216]

1892 թ. 396 ռ.:[217]

Հատկանշական մի փաստ. օգտվելով վանքում վանահոր ժամանակավոր բացակայությունից 1890 թ.՝ համալիրի շինություններն իր ոչխարներով էր լցրել մի քոլանեցի սեհդ մոլլա: Նրան վռնդել ու վանքն էլ մաքրել էր Ջրաբերդի Մեծշեն գյուղի տանուտեր Բախիշ-բեկը:[218]

Հոգեւոր իշխանությունները 1891-ին նոր վանահայր նշանակեցին (տեր Աստվածատուր քահանային),[219] բայց վիճակը բարելավվեց միայն 1910-ական թվականների սկզբներին, երբ վանքապատկան կալվածների կառավարիչ նշանակվեց տփղիսաբընակ Լեւոն Միքայելի Տեր-Ավետիքյանը:[220] Նրա ծավալած գործունեությունը ժամանակակիցները համարում էին անհույս եւ անիրագործելի, բայց նվիրվածությունն ու համառությունը տվեցին իրենց արդյունքը:

207. **Գրիգոր Տէր-Յովհաննիսեանց**, *Բաղդասար մետրապոլիտ Հասան-Ջալալեանցի համառօտ կենսագրութիւնը, «Փորձ», 1880, մայիս, էջ 131-164:*

208. **Յակոբ Յ. Թօփճեան**, *Ցուցակ ձողովածուաց Դադեան Խաչիկ վարդապետի, մասն Բ, Վաղարշապատ, 1900, էջ 25:*

209. **Գրիգոր Տէր-Յովհաննիսեանց**, *նշվ. հոդվածը, էջ 159:*

*210. «Տարազ», 1913, N7-8, էջ 90: «Մշակ», 1913, N171, էջ 3:*

*211. Տեղեկագիր Շուշու կալուածական խնդրի եւ հոգաբարձութեան 27-ամեայ գործունէութեան, «Մշակ», 1888, N94, էջ 1:*

*212. Համառօտ տեղեկագիր Արցախի թեմի վանքերի, «Արարատ», 1896, յունուար, էջ 42: Այլ աղբյուրի համաձայն վանքի անվեճ հողատարածքը միայն 42.000 դեսյատին էր («Մշակ», 1896, N107, էջ 3):*

*213. ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 57, ցուցակ 2, գործ 1851, թ. 2:*

*214. «Փորձ», 1880, մայիս, էջ 160:*

*215. Նույն տեղում:*

*216. «Նոր-Դար», 1891, N123, էջ 3:*

*217. «Արարատ», 1896, յունվար, էջ 45:*

*218. «Նոր-Դար», 1890, N158, էջ 3-4:*

*219. «Նոր-Դար», 1891, N123, էջ 3: Ի դեպ, երբ 1891 թ. ապրիլի 30-ին վիճակային կոնսիստորիայի կարգադրությամբ Աստվածատուր վանահոր օգնականի պաշտոնով Դադի վանք էր մեկնել Վահան սարկավագ Դադյանցը (նույն ինքը հետագայում՝ Խաչիկ վրդ. Դադյանց) տիրող կացությունը նկարագրել է այսպես. «...գտի զվանսն յամայացեալ դրութեան եւ վանահայր քահանայն ի վերջին յուսահատութեան, մատնեալ ի քաղց եւ ծարաւ, շրջապատեալ արիւնարբու աւազակօք եւ որպէս բու աւերակի մին միայնակ կայր ի վանսն առանց ծառայի եւ ապրուստի, ունէր միայն սակաւ ալտուճ հաց վասն քանի մի աւուրց, յորմէ պատառ մի իբրեւ նմուշ մատուցանեմ կոնսիստորեայիդ ի տես...» (ՀՀՊՊԿԱ, ֆ. 319, ց. 1, գ. 165, թ. 9): Ինքը՝ վանահայրն այսպես էր բնութագրել իր վիճակը. «շրջապատեալ արիւնարբու թուրք ազգաբնակութեամբ օրվա հացի կարօտ» (նշվ. գործը, թ. 7): Վերջին վանահայրերի թվում հիշվում է 1902 թ. Ամարասի վանքից Դադի վանք փոխադրված Վահան վարդապետը («Արարատ», 1902, էջ 761):*

*220. «Արարատ», 1911, օգոստոս, էջ 624:*

Խաղաղ միջոցներով Լ. Տեր-Ավետիքյանը ձեռնամուխ եղավ այնպիսի մի գործի իրականացմանը, որպիսիք առհասարակ լուծվում են ուժի միջոցով: Նախ, վարձելով հմուտ մի փաստաբանի, Տեր-Ավետիքյանը պարզեց, որ գործող օրենքների համեմատ կալվածատեր վանքը կամ հոգեւոր իշխանությունը կարող է դատ բացել վանքապատկան հողերին տիրացած խաշնարածների դեմ: Դրանից հետո, ամբողջացնելով անհրաժեշտ փաստաթղթերը, նա լծվեց պետական ու նաեւ ոչ անվտանգ պայքարի (նմանօրինակ մի դատ բացելու համար 1895 թ. ապրիլի 24-ին թուրքերի ձեռքով սպանվել էր Մարալյան-Սարով գյուղի բնակիչ Շամիր Ջփիղարյանը):[221]

Դատաստանական քննությունը հանգեց վանքի զատագրել բազմաթիվ ամառանոցներ եւ Դադի վանքին ամրագրել վանքապատկան տարածքները:

Լեւոն Տեր-Ավետիքյանի այդ արգասաբեր գործունեությունը ըստ արժանվույն են գնահատել ժամանակակիցները: Մասնավորապես, «Մշակ»-ի թղթակիցը նրան բնութագրում է որպես մի անձնավորություն, որը «... հեռու, հեռու անձնական շահերից, միտումներից, ինտրիգներից, խաղաղասէր մորմոքներով, կարեկցաբար ցաւում է եւ մտածում հայ ժողովրդի կամ վանքի շահերի համար»:[224] Հավանաբար հենց Լեւոն Տեր-Ավետիքյանի ձեռքով էլ կազմվել էր (1913 թ.) Դադի վանքի կալվածների այն քարտեզը, որն այժմ պահպանվում է կենտրոնական արխիվում (տես՝ սույն գիրքը, էջ 17):[225]



*Վանական համալիրի հատակագիծը*

համար դրական որոշման, բայց գործնականում այն դժվար իրագործելի էր: Բանն այն է, որ խաշնարածները ոչ մի կերպ չէին ուզում հեռանալ կալվածի սահմաններից եւ ամեն կերպ ընդդիմանում էին կառավարչի պահանջներին ու դատարանի որոշմանը:

Հեռատես կառավարիչն ազատագրված ամառանոցները օգտագործելիս, թուրքերի հնարավոր վրեժխնդրությունից խուսափելու միտումով, երբեմն դրանք կապալով տալիս էր հեռավոր վայրերի (օրինակ՝ Խանքարվենդ գյուղի) թուրք գյուղացիներին,[222] քանի որ նման դեպքերում հայերի համար կալվածից օգտվելը խիստ վտանգավոր էր:[223] Ի վերջո, մինչեւ 1917 թվականը կառավարիչ Տեր-Ավետիքյանին հաջողվում է թուրքերից ու քրդերից ազատագրել... 

Խորհրդային կարգերի հաստատմամբ, բնականաբար, Դադի վանքից խլվեցին վանքապատկան տարածքները:[226]

*221 «Նոր-Դար», 1895, N77, էջ 2-3:*

*222. Այդ մասին տես՝ ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 18, գ. 1127, թ. 4:*

*223. Դրա վկայությունն է՝ 1896 թ. մի խումբ հայերի հետ կալվածքի սահմաններում կատարված հետեւյալ դեպքը. «Հին-Նախիջեւանի կողմից 5 հայ գալիս են Ղարաբաղի Խութա վանքի կալուածները ուսումնասիրելու եւ մի յարմար հող գտնելու, որտեղ կարելի լինի գիւղ գցել եւ երկրագործութեամբ պարապվել: Խութավանքի արօտատեղիներում ապրող քուրդ «ֆօլանի» կոչված թափառական ցեղերը վտանգ զգալով իրանց համար, ուղարկում են 10 աւազակ, որոնք բռնելով այդ հայերին մի անտառում, կտոր կտոր են անում, յետոյ նաւթ ածելով դիակների վրա՝ այրում...» («Մշակ», 1896, N86, 27 յուլիսի, էջ 3):*

*224. «Մշակ», 1914, N39, էջ 3:*

*225. Տես մեր՝ «Դադի (Խութա) վանքի կալվածքները» («Ազատամարտ», 1992, N15, էջ 14) եւ «Քարվաճառի ազատագրումը սկսվել է 1913 թվականին» («Հայաստանի Հանրապետություն», N 52, 13, մարտ, 1995, էջ 2):*

*226. ՀՀՊՊԿԱ, ֆ. 57, ց. 1, գ. 400, թ. 1: Մեր՝ նշվ. հոդվածները: Նաեւ մեր՝ «The Liberation of Karvachar Began in 1913» («NT», 1995, 5 ապրիլ, էջ 9):*

***Ճարտարապետությունը:*** Դադի վանքը միջնադարյան Հայաստանի վանական խոշորագույն համալիրներից մեկն է: Գրեթե երկու հազարամյակ այստեղ պարբերաբար կառուցումներ կամ նորոգումներ են իրականացվել, եւ, չնայած բազմիցս կրկնված թշնամական արշավանքներին ու ժամանակի ավերիչ ներգործությանը, ցայսօր հնավայրում պահպանվել են զանազան նշանակության շուրջ 30 կառույցներ՝ կանգուն, կիսավեր, վթարային կամ իսպառ ավերակ վիճակում:

Հուշարձանախումբն իր ճարտարապետական բարձր արժանիքներով վաղուց ի վեր իր վրա է բեւեռել մասնագետների ուշադրությունը: Արդեն անցյալ դարի վերջերին որոշ հետազոտողների կողմից փորձվել են առանձին շենքերի ճարտարապետական նկարագրությունները:[227] Նմանօրինակ աշխատություններ են հրապարակվել նաեւ XX դարի սկզբներին՝ նախախորհրդային փարիներին:[228] Այնուհետեւ՝ մինչ 1960-ականների վերջերն այդ ուղղությամբ միայն թռուցիկ նյութեր են հրապարակվել,[229] իսկ 1970-ականներին, հանձինս ճարտարապետ Մուրադ Հասրաթյանի, Դադի վանքն առաջին անգամ ենթարկվեց առավել հանգամանալից հետազոտության:[230] Նրա կատարած համալիրի սխեմատիկ հատակագիծն ու ուսումնասիրությունները սկզբնաղբյուրի դեր կատարեցին այլ հետազոտողների համար եւս:[231] 1980-ականներին հրապարակ հանվեցին նաեւ Բաքվի «գիտնականների» աշխատությունները:[232]

Վանքի ազատագրումից հետո (31.III.1993) աննախադեպ ազատ ու անկաշկանդ պայմաններ ընձեռվեցին տեղում մանրազնին ու երկարատեւ չափագրական եւ հետազոտական աշխատանքների համար: 1993-95 թթ. ընթացքում մի քանի ամիս շարունակ RAA (Հայկական Ճարտարապետությունն Ուսումնասիրող) կազմակերպության նախաձեռնությամբ՝ առաջին անգամ իրականացվեցին համալիրի բոլոր կառույցների ճարտարապետական չափագրումները:[233]



*Սբ. Դադիի հուսասյան տապանաքարը*

***Սբ. Դադիի գերեզմանը:*** Հայտնի է, որ քրիստոնեության առաջին գաղափարակիր-քարոզիչների նահատակության վայրերը սրբացվել են: Միայն Հայոց Արեւելից կողմանքում հայտնի են քարոզիչների նահատակության մի շարք վայրեր: Հիշենք, թեկուզ, նահատակված Եղիշե Առաքյալի գերեզմանը Հոմենք կամ Բոմեն (այժմ՝ Բում գյուղը Կուտկաշենի շրջանում) գյուղի մոտ, նրա աշակերտներ՝ Քահալցիցիկի գերեզմանը Վարդաշենի մոտ, Գյումրափայինը՝ Ծերիկ գյուղում, Վլասինը՝ Նիժում, իսկ Գրիգոր Լուսավորչի թոռ Սբ. Գրիգորիսինը՝ Վատնյան դաշտում (այժմ՝ Բիլիջի շրջան) եւ այլն: Բոլոր այս քարոզիչ-նահատակների գերեզմանների տեղում հետագայում կանգնեցվել են կոթող-հուշասյու-

227. **Հայկունի**, «Մեղու Հայաստանի», 1885, N 78, էջ 2-3: **Ն. Թանգեան**, Գանձասար եւ Խութա վանքերը, «Նոր-Դար», 1891, N 123: **Յ. Իւզբաշեանց**, Մի քանի խօսք Խութա վանքի մասին, «Նոր-Դար», 1892, N 15, էջ 1-2: **Մ. Սմբատ.**, Համառոտ նկարագիր մի քանի վանքերի, «Նոր-Դար», 1893, N 17, էջ 3: **Մ. Բարխուտարեանց**, Արցախ, Բագու, 1895, էջ 203-209:

228. **Հ. Մ. Էփրիկեան**, Պատկերազարդ բնաշխարհիկ բառարան, հատոր Ա, Վենետիկ-Ս. Ղազար, 1903-5, էջ 572-573: **Մ. արքեպիս. Տէր-Մովսիսեան**, Հայկական երեք մեծ վանքերի՝ Տաթեւի, Հաղարծնի եւ Դադի եկեղեցիները եւ վանական շինութիւնները..., Երուսաղէմ, 1938, էջ 83-91, 94-97 (ուսումնասիրութիւնները կատարվել են 1911 թվականին):

229. **Թ. Թորամանյան**, Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, Երեւան, 1948, էջ 131: **Հ. Ոսկեան**, Արցախի վանքերը, Վիեննա, 1953, էջ 95-112:

230. Տես՝ **Բ. Ուլուբաբյան**, **Մ. Հասրաթյան**, Դադիվանք «Հայկազեան Հայագիտական Հանդէս», հ. Ը, Պէյրութ, 1980, էջ 7-54: **М. Асратян,** Архитектура дворцового зала хаченских князей в Дадиванке, "IV республиканская научная конференция по проблемам культуры и искусства Армении. Тезисы докладов», Երեւան, 1979: Նույնի՝ Դադի վանք, «Գիտություն եւ տեխնիկա», 1981, էջ 21: **J. M. Thierry, M. Hasratyan,** Dadivank en Arçax, "Revue des Etudes Arméniennes", XVI, Paris, 1982, էջ 259-287: Տես նաեւ՝ **Բ. Ուլուբաբյան**, Դադի կամ Խութա վանք, «Էջմիածին», 1971, Է-Ը: Նույնի՝ Խաչենի իշխանական տոհմավանքերը, «ԲԵՀ», 1972, N 2:

231. **Շ. Մկրտչյան**, Թարթառի հովտի պատմական հուշարձանները, «Բանբեր Հայաստանի արխիվների», 1975, N 3, էջ 136: Նույնի՝ Լեռնային Ղարաբաղի պատմա-ճարտարապետական հուշարձանները, Երեւան, 1980, էջ 33-44: Նաեւ՝ նշվ. աշխատության երկրորդ լրացված հրատարակությունը, Երեւան, 1985, էջ 38-46: Նույնի՝ Историко-архитектурные памятники Нагорного Карабаха, Երեւան, 1988, էջ 34-39: Նշվ. աշխատության երկրորդ հրատարակությունը, Երեւան, 1989, էջ 34-39:

232. **Р. Б. Геюшев,** Христианство в Кавказской Албании, Баку, էջ 86, 174: **Д. Ахундов,** Архитектура древнего и раннесредневекового Азербайджана, Баку, 1986, էջ 224-229:

233. Չափագրական տեւական աշխատանքներին իրենց մասնակցությամբ էապես աջակցել են Հայկ եւ Նաիրա Թորոսյանները:











*ՍԲ. ԴԱԴԻ ԵԿԵՂԵՑԻ. խորանի տեսքը, արեւելյան ճակատը արտաքուստ եւ որմնախորշերը*

ներ, մատուռներ կամ, ավելի ուշ, եկեղեցիներ: Հիշենք Կաղանկատվացու հիշատակումն այն մասին, որ օրինակ՝ Եղիշեի նահատակության վայրում VII դարում հուշասյուն է կանգնեցվել. «... յետ բազում ժամանակաց բարեպաշտն Վաչագան՝ Աղուանից արքայ, կանգնեաց սիւն ի գբի նահատակութեանն Եղիշայի...»:[234]

Դադի վանքի համալիրում, կաթողիկե եկեղեցու հյուսիս-արեւմտյան կողմում, մեծ մասով հողածածկ, բայց դեռեւս ավելի քան 2 մ բարձրությամբ (95x65 սմ լայնությամբ եւ հաստությամբ), կանգուն մի կոթող կա: Եթե չլիներ քարոզիչ Դադիի այստեղ նահատակված լինելու փաստը, այդպիսի մի կոթողի գոյությունը կարող էր վերագրվել երբեմնի հեթանոսական մեհյանից մնացած զոհասեղանի, բայց ներկա պարագայում համոզված ենք, որ դա այն կոթողն է, որը ժամանակի սովորության համաձայն կանգնեցվել է ի հիշատակ նահատակ քարոզչի: Ե՞րբ է այն կանգնեցվել, արդյո՞ք հենց I դարում, թե՞ Քրիստոնեության ճանաչումից հետո: Սբ. Եղիշեի դեպքում, ըստ Կաղանկատվացու վկայության, հուշասյունը կանգնեցվել է դարեր անց, բայց պարզ է նաեւ, որ տեղում մինչեւ կոթողի կանգնեցումն էլ մի հիշատակ եղել է, այլապես տեղն էլ կարող էր կորչել եւ մոռացվել: Դադի վանքի դեպքում՝ մենք հակված ենք կարծելու, որ հուշասյունը քարոզչի գերեզմանին է կանգնեցվել IV-VII դարերում:

***Սբ. Դադի եկեղեցի:*** Հուշարձանախմբի հնագույն եկեղեցին, որը գոյություն ուներ արդեն մինչեւ IX դ., հիմնվել է ճիշտ այս կոթողի վրա, այնպես, որ հուշասյունը հայտնվել է եկեղեցու խորանի կենտրոնում: Այդպիսով, կոթողը վանքի առաջին եկեղեցու համար ծառայել է իբրեւ սեղանի վեմ, որը հայոց եկեղեցիների հիմնական ճարտարապետական դրվագն է: Կարծում ենք, եկեղեցին իր անունն էլ առել է հենց այս կոթողից: Եկեղեցին, ակնհայտորեն, բազմիցս վերակառուցվել է, բայց դրանից հորինվածքն ու հատակագիծը էական փոփոխության չեն ենթարկվել: Ներքին չափերն են 20,70x9,40 մ: Պատի հաստությունը հարավում 1,16 մ է, իսկ արեւմուտքում՝ ժամատանը հպված մասում՝ 0,55 մ: Երեք մուտքերից երկուսը՝ ժամատան եւ հարավից կից թաղակապ գավթի

---

234. ***Մովսէս Կաղանկատուացի***, *Պատմութիւն Աղուանից Աշխարհի, Երեւան, 1983, էջ 12:*

մեջ բացվածները, ունեն սրբատաշ, քանդակազարդ բավականին շքեղ լուծումներ: Պահպանված պատերի առավելագույն բարձրությունն է 5 մ:

Բ. Ուլուբաբյանն ու Մ. Հասրաթյանը իրենց համատեղ հոդվածում այս եկեղեցին թվագրել են IX-X դարերով,[235] բայց տարիներ անց Մ. Հասրաթյանն այլ եզրակացության է հանգել՝ այն թվագրելով XIII դ.:[236] Այս եզրակացությանը, թերեւս, հիմք է ծառայել խորանի հյուսիսային կողմի ավանդատան ներսում, թաղի սվաղի շերտի վրա առաջին անգամ իր կողմից նկատված Տեր Աթանասի արձանագրությունը:[237]

Կարծում ենք, որ վանահայր Աթանասի օրոք եկեղեցին կարող էր վերանորոգված կամ վերակառուցված լինել, բայց ինչ վերաբերում է նրա կառուցման խնդրին, ապա այն վստահաբար հիմնադրված պետք է լիներ շատ ավելի վաղ ժամանակներում (ոչ ուշ քան IX դարը): Ի դեպ, եկեղեցին Աթանասի օրոք կառուցված չէր կարող լինել թեկուզ միայն այն պատճառով, որ հետագայում արեւմուտքից նրան կցված ժամատունը կառուցվել էր 1224 թ.:

Սբ. Դադի եկեղեցին մասնակի նորոգումների է ենթարկվել նաեւ ուշ միջնադարում: Պատերի մեջ բացված խորշերից մի քանիսը նորոգվել կամ գոյացվել են XVI-XVII դարերում: Թաղի եւ պատերի վերնամասերի քայքայման հետեւանքով ներկայում այս եկեղեցու հատակի մակարդակը փլվածքների պատճառով բավական բարձրացած է կից կառույցների համեմատ (շուրջ 1,6 մ):



ԴԱԴԻ ՎԱՆՔ. համալիրի գլխավոր կառույցների կտրվածքը դեպի արեւելif

***Գմբեթավոր փոքր եկեղեցի:*** Այս գողտրիկ կառույցի ճարտարապետական հանգամանալի նկարագրությունն արդեն տրվել է Մ. Հասրաթյանը:[238] Կարող ենք, թերեւս ավելացնել, որ եկեղեցին 10,40 մ բարձրություն ունի, ընդ որում՝ արտաքուստ 1 մ բարձրությամբ թաղված է փլվածքների ու դարերի ընթացքում կուտակված հողի շերտի տակ: Ինչ վերաբերում է եկեղեցու կառուցման ժամանակին, ապա այն 1180-ականներով թվագրելն ու իշխան Հասան Վախտանգյանին վերագրելը[239] այնքան էլ համոզիչ չէ, թեկուզ միայն այն պատճառով, որ եկեղեցու կառուցման ժամանակ նրա պատերի մեջ ագուցված թվակիր խաչքարերի շարքում կա նաեւ 1190 թ. արձանագրություն ունեցողը:[240] Հետեւում է, որ եկեղեցին կարող էր կառուցված լինել ամենավաղը՝ 1190-ականներին: Մ. Հասրաթյանը եկեղեցին թվագրում է XIII դարով,[241] բայց այդ կարծիքը հիմնավորելու փաստարկներ չի բերում:

Տեղում կատարված ուսումնասիրություններն ու չափագրական նյութը մեզ նկատել տվեցին, որ մինչեւ 1211 թ., երբ կառուցվել է «Տաճարը» (տեղադրված հիշյալ եկեղեցուց ընդամենը 1,5 մ հարավ, հատակի մակարդակը՝ 4 մետրով ցած եկեղեցու հատակից), տեղանքն ունեցել է բավական մեծ թեքություն, որը, փաստորեն, վերացել է եւ դարավանդավորվել շնորհիվ «Տաճարի»:

Վերջինիս հյուսիսային պատը առ այսօր հենապատի նշանակություն ունի, եւ դրա շնորհիվ է ար-

*235. «Հայկազեան Հայագիտական Հանդէս», նշվ. հոդվածը, էջ 40:*

*236. **Մուրաղ Հասրաթյան**, Հայկական ճարտարապետության Արցախի դպրոցը, Երեւան, 1992, էջ 50:*

*237. Հիշեցնենք, որ այս վանահայրը վանքի տարբեր արձանագրություններում բազմիցս հիշվում է 1263-1291 թթ. ընթացքում:*

*238. Նշվ. աշխ., էջ 52-53:*

*239. Տես՝ «ՀՀՀ», նշվ. հոդվածը, էջ 11:*

*240. Տես՝ N 44 վիմագիրը:*

*241. Նշվ. աշխ., էջ 52:*






*ԳՄԲԵԹԱՎՈՐ ՓՈՔՐ ԵԿԵՂԵՑԻ. տանիքի մաքրման աշխատանքների ժամանակ (1997 թ.) հայտնաբերված կղմինդրածածկը, տեսքը հյուսիս-արեւելքից, թմբուկը հյուսիսից եւ ներքուստ*

փաքուսփ (նույն կողմից) գոյացել այն հարթ փեղանքը, որի կենտրոնում կանգնած է գմբեթավոր փոքր եկեղեցին: Հեփեւում է, որ եկեղեցին կարող էր կառուցվել միայն 1211 թ. հեփո, երբ ավարփվել էին «Տաճարի» կառուցման առնչությամբ փեղանքի կրած փոփոխությունները: Նաեւ գփնում ենք, որ եկեղեցու պափերում գոյացած զգալի ճաքերը, պափերի առանձին հափվածների միմյանցից մինչեւ 15-20 սմ հեռացումները (շենքը վթարային վիճակում է) արդյունք են ժամանակին մարդու միջամփությամբ հիմնահողի կրած փոփոխության:

***Տաճար:*** Իր իսկ շինարարական արձանագրության մեջ (1211 թ.) «Տաճար» անվամբ հիշվող քառայուն, «կեղծ գմբեթավոր» հորինվածքով, 10,00x10,10 մ ներքին չափերով, պափի 1մ հասփությամբ եւ 11.00 մ բարձրությամբ գրեթե քառա-

ԳՄԲԵԹԱՎՈՐ ՓՈՔՐ ԵԿԵՂԵՑԻ. *խաչքարեր ագուցված եկեղեցու որմերում*



ԳՄԲԵԹԱՎՈՐ ՓՈՔՐ ԵԿԵՂԵՑԻ. *արեւմտյան ճակատի արձանագրությունների գրչանկարներ*

կուսի հատակագծով շինությունը գտնվում է գմբեթավոր փոքր եկեղեցուց 1-2 մետր հարավ: Կառույցի ճարտարապետական նկարագրությունը տվել է Մ. Հասրաթյանը,[242] ուստի այստեղ բավարարվում ենք չափագրական նյութի մատուցմամբ, ընդգծելով միաժամանակ այն հանգամանքը, որ փաճարը համալիրի եւ ոչ մի շենքի նկատմամբ չունի զուգահեռ եւ սիմետրիկ տեղադրություն, որպիսին ներկայացված է բազմիցս հրատարակված ու վերահրատարակված սխեմատիկ հատակագծում (տես՝ համալիրի հատակագիծը, էջ 85):

***Կաթողիկե եկեղեցի:*** Համալիրի զարդը հանդիսացող կաթողիկեն ճարտարապետական ուշագ-

242. *Նշվ. աշխ., էջ 55:*









*ԳՄԲԵԹԱՎՈՐ ՓՈՔՐ ԵԿԵՂԵՑԻ. արեւմտյան եւ հարավային ճակատները, կտրվածք դեպի հյուսիս եւ արեւելք (չափագրություն եւ վերակազմություն՝ ճարտ. Սամվել Այվազյանի)*

ԳՄԲԵԹԱՎՈՐ ՓՈՔՐ ԵԿԵՂԵՑԻ. *որմերում ագուցված արձանագիր խաչքարերի գրչանկարներ*

րավ եւ մեծարժեք կառույց է: Այն ունի միջնադարյան հայ պաշտամունքային ճարտարապետության մեջ բավական մշակված եւ լայն տարածում գտած (բայց ոչ թերեւս՝ Արցախում) չորս անկյուններում ավանդատներով գմբեթավոր սրահի հորինվածք: Արտաքին չափերն են 12,30x10,60 մ, իսկ բարձրությունը՝ 18,50 մ: Բացի հյուսիսային ճակատից, մնացած կողմերում եւ ներսում պատերի զգալի հատվածները ծածկված են արձանագրություններով (ինչպես քարի՝ արտաքուստ, այնպես էլ սվաղի շերտի վրա՝ ներքուստ): Դրանց մեծ մասը փորագիր են, բայց կան նաեւ կարմիր եւ սպիտակ ներկով արձանագրվածներ: Շինարարության մասին պատմող վիմագիր արձանագրությունը ամենաընդարձակն է: Այն գտնըվում է հարավային ճակատին եւ կրում է 1214 թվագրումը: Դրանից հետեւում է, որ կաթողիկեի կառուցման ժամանակ համալիրում արդեն կային նշանակալի կառույցներ: Եկեղեցու ճարտարապետության ու հարդարանքի նկարագրությանը բավա-



*ՏԱՃԱՐ. տեսքը հարավ-արեւմուտքից*




*ՏԱՃԱՐ. շինարարական արձանագրությունը եւ ներքին տեսքը (հատված)*

կանաչափ անդրադարձել են նախկին հետազոտողները (առավել սպառիչ ու ամբողջական է Մ. Հասրաթյանի շարադրանքը):[243] Գիտական շրջանառության մեջ արդեն առկա նյութին, կարծում ենք, կարեւոր լրացում կլինեն կաթողիկե եկեղեցուն վերաբերող մեր չափագրությունները:



*Ձանգակատան, սյունասրահի եւ կաթողիկե եկեղեցու կտրվածքը դեպի հյուսիս*

***Ժամատուն:*** Ժամատունը, որն ունի գրեթե նույն հորինվածքն, ինչ 1211-ին կառուցված «Տաճարը», համալիրի սպրոյգ թվագրված շենքերից է: Այն կառուցվել է կաթողիկե եկեղեցուց հետո՝ 10 տարի անց, 1224-ին, կից՝ Սբ. Դադի եկեղեցուն արեւմտյան կողմից, որպես փապանատուն:[244] Ժամատան (ներքին չափերն են 14.00x9.50 մ) ներսում, արեւելյան պատի ամբողջ երկարությամբ տեղադրվել կամ ագուցվել են խաչքարեր: Ինչպես հետագայում, այնպես էլ նախկինում կերտված խաչքարերին

*243. Նշվ. աշխ., էջ 44-49:*

*244 Անհասկանալի է, թե ժամատանը վերաբերող իր նկարագրականում ճարտ. Մ. Հասրաթյանը ինչո՞ւ է անտեսել շենքի հարավային ճակատից բացված զույգ լուսամուտների առկայությունը. «Շենքը լուսամուտներ չունի եւ լուսավորության միակ աղբյուրը գմբեթի երդիկն է: Կիսախավարը համապատասխանում է շենքի հիմնական նշանակությանը՝ այն եղել է Հաթերքի իշխանական տան տապանատունը» (նշվ. աշխ., էջ 52):*













*ԿԱԹՈՂԻԿԵ ԵԿԵՂԵՑԻ. տեսքը հյուսիս-արեւմուտքից եւ հյուսիս-արեւելքից, երեք մանրամասներ թմբուկից եւ արեւմտյան մուտքի բարավորը*













*ԿԱԹՈՂԻԿԵ ԵԿԵՂԵՑԻ. հյուսիսային մուտքը եւ 3 մանրամասներ նրան հարող հատվածներից, տեղահան ու բեկորված խաչքարի վարդյակ եկեղեցու ներսում, հողային աշխատանքների ընթացքում (1997) հյուսիսային պատի տակ հայտնաբերված խաչքար (XII-XIII դդ.)*











*ԿԱԹՈՂԻԿԵ ԵԿԵՂԵՑԻ. հարավային եւ արեւելյան ճակատներում կտիտորների ճանդակները, հատվածներ արեւմտյան, հարավային եւ հյուսիսային ճակատներից*

պահպանվել են 1199, 1233, 1291 թվագրումները:[245]

Ժամատան ներսում պահպանված տապանաքարերից արձանագրվածները վերաբերում են 1305, 1306, 1333 թթ.:[246]

***Զանգակատուն:*** Ըստ մեզ՝ համալիրում ժամանակագրորեն հաջորդ կառույցը զանգակատունն է: Ի սկզբանե այն առանձին կանգնած շենք է եղել: Տեղում կատարված ուսումնասիրությունները մեզ բերել են այն համոզման, որ զանգակատան խիստ ինքնատիպ (խոսքը վերաբերում է 1-ին հարկին) հորինվածքը բխել է զույգ խաչքարերը ներսում տեղադրե-

*245. Տես՝ վիմագրերի բաժնի N61, 64, 66 արձանագրությունները:*

*246. Տես՝ վիմագրերի բաժնի N62, 63, 65 արձանագրությունները:*











ԿԱԹՈՂԻԿԵ ԵԿԵՂԵՑԻ. արեւելյան, արեւմտյան, հյուսիսային եւ հարավային ճակատները



ԿԱԹՈՂԻԿԵ ԵԿԵՂԵՑԻ. թմբուկի փոկածքը, թմբուկի հատակագիծը, կարմիր ներկով արձանագրություն եկեղեցու հյուսիսային պատին ներսուս (վերծանությունը էջ 109-ում) եւ եկեղեցու հարավային ճակատը (վերակազմություն)

լու գաղափարից, իսկ երկու խաչքարերը կերտվել են միաժամանակ՝ 1283 թ.: Հետեւաբար՝ զանգակատան շենքն էլ այդ թվականին պետք է կառուցված լիներ: Այն տեսակետը, թե խաչքարերն ի սկզբանե զանգակատան մեջ չեն եղել,[247] այլ հետագայում XIX-XX դդ. սահմանագլխին (մինչեւ 1910 թ.) են այնտեղ փոխադրվել,[248] այն է՝ Ջալալյանցից բացի որեւէ այլ ականատեսի վկայությամբ չի հաստատվում: Ընդհակառակը՝ այդ խաչքարերը ժամանակի բոլոր այցելուները տեսել են զանգակատան ներսում:[249] Ջալալյանցի հաղորդումը շփոթության արդյունք է, եւ այդ հավաստում է թեկուզ այն հանգամանքը, որ զանգակատանը մոտ ու նրանից արեւելք գտնվող մատուռներ, որպիսիք նկարագրում է Ջալալյանցը, չկան ու չեն էլ եղել:

Զանգակատան բարձրությունը 14,6 մ է, որից 6 մետրը երկրորդ հարկն է, ռոտոնդան՝ սրածայր վե-

247. Դրան հիմք է ծառայել Ս. Ջալալյանցի հետեւյալ հաղորդումը. «Մեծ զանգակատան դէտ յարեւելս գոն երկու մատուռնք, յորոց միջի երկու վսեմ քանդակագործ խաչքարեր» (նշվ. աշխ., հ. Բ, էջ 223):

248. «ՀՀՀ», նշվ. հոդվածը, էջ 15-16:

249. Տես՝ Հայկունու, Թանգյանի, Սմբատյանցի եւ այլոց հրապարակումները:







ԺԱՄԱՏՈՒՆ. տեսքը հարավ-արեւմուտքից, թմբուկը հարավ-արեւելքից եւ խաչքարեր ներսում



ԺԱՄԱՏՈՒՆ. թմբուկի ներքին տեսքը

ղարով հանդերձ: Առաջին հարկում, արեւելյան պատին կցված են դեպի արեւմտակողմ կամարաձեւ բացվածքը նայող զույգ խաչքարերը, որոնք զանգակատան առաջին հարկը, ինչպես իրավացիորեն նշում է Մ. Հասրաթյանը. «փաստորեն մի փոքրիկ թանգարանի են վերածում...»:[250] Խաչքարերի առաջին նկարագրությունը տրվել է միայն 1980-ին:[251] Նախորդ հեղինակները բավարարվել են սոսկ հիացական արտահայտություններով: Այս զույգ խաչքարերը համալիրի ամենաուշագրավ դրըվագը կարող են համարվել, եւ պատահական չէ, որ օտարազգի այցելուները դրանք տեսնելով միտք են հղացել՝ գնել եւ Եվրոպա փոխադրել: Հայտնի է, օրինակ, որ 1880-ականների սկզբներին երկու անգլիացի Ղարաբաղի հոգեւոր իշխանություններին 10.000 ռուբլի են առաջարկել խաչքարերի դիմաց, որը բարեբախտաբար մերժվել է:[252] 1887-90 թվականներին էլ երկու ֆրանսիացի էին դիմել առաջնորդին, «... որ վերջինս փողով ծախէ քարերը. ասում են՝ նրանք մտադիր էին Ֆրանսիա ուղարկել, բայց սրբազանը մերժել է նրանց...»:[253] Ավելի ուշ նորից մի ֆրանսիացի նույն փորձն է արել եւ կրկին ապարդյուն:[254]

Երախտագիտությամբ նշենք, որ մեր եկեղեցու պատասխանատուները ազգային արժեքները գնահատել են ըստ արժանվույն ու չեն գայթակղվել՝ դրանով իսկ նպաստելով ազգային մշակութային արժեքների հարատեւմանը պատմական հողին,

250. **Մ. Հասրաթյան**, նշվ. աշխ., էջ 54:
251. «ՀՀՀ», նշվ. հոդվածը, էջ 16-19:
252. «Մեղու Հայաստանի», 1885, N 78, էջ 2-3: Ի դեպ, տարօրինակ կերպով այդ առթիվ Հայկունին հակառակ կարծիքն էր հայտնել՝ բարվոք համարելով վաճառված խաչքարերի գումարով վանքի վերանորոգումն իրականացնելը:
253. «Նոր-Դար», 1892, N 15, էջ 2:
254. «Բիւզանդիոն», 1901, N 1492:









*ԺԱՄԱՏՈՒՆ. խաչքարեր ներսում արեւելյան պատին կից, հատվածներ դեպի Սբ. Դադի եկեղեցի բացված շքամուտից*











*ՁԱՆԳԱԿԱՏՈՒՆ. տեսքը հարավ-արեւմուտքից,*
*ներսում գտնվող զույգ խաչքարերը եւ հատվածներ*

հարազատ միջավայրում:

***Միանավ եկեղեցի եւ գավիթ:*** Սրանք կառուցվել են այն ժամանակ, երբ արդեն գոյություն ունեին Սբ. Դադի եւ Կաթողիկե (1214) եկեղեցիները: Կարելի է ենթադրել, թե արդեն իսկ կար նաեւ զանգակատունը, երբ Սբ. Դադի եկեղեցու հարավային պատի ամբողջ երկարությամբ իրար կից կառուցվել են այդ միանավ եկեղեցին ու գավիթը:

Եկեղեցին, հակառակ իր ոչ մեծ լայնությանը (3,75 մ), ունի զգալի բարձրություն (մինչեւ թաղի գագաթը 7.30 մ է):

Գավթի մեջ գտնված 1293 թ. մի փապանաքարի առկայության հանգամանքը[255] հիմք է տալիս կարծելու, որ մինչ այդ թվականը գավիթն արդեն կար: Ուրեմն միանավ եկեղեցին եւ նրան արեւմուտքից կից թաղակապ գավիթը կառուցվել են 1283-1293 թթ. ընկած ժամանակահատվածում:

***«Սրահ եւ տներ» (գրատո՞ւն):*** 1211 թ. կառուցված «Տաճարին» արեւելքից հարում են մեկ ընդարձակ եւ 3 փոքր սենյակներ: Վերջիններից երկուսը, որ կառույցների շարքը եզրափակում են արեւելքից, կրկնահարկ են: Գրականության մեջ այս կառույցների խմբի մեջ գլխավորը համարվել է գրատունը, իսկ օժանդակ սենյակները եղել են գրիչների աշխատասենյակներ կամ բնակարաններ:[256] Որքան էլ տարօրինակ է, մինչեւ վերջերս անուշադրության էր մատնվել գլխավոր կամ մեծ սենյակի հարավային մուտքի բարավորի շինարարական արձանագրությունը,[257] որտեղ նշված է, որ այդ շենքերի խումբը կառուցողներն են Հասան պարոնի որդիներ Տեր Գրիգորեսն ու Տեր Աթանասը, իսկ շինությունները հիշված են պարզապես. «... շինեցաք զտներս եւ զսրահս...»:

Անշուշտ, այս արձանագրությունը բնավ չի հակասում արդեն եղած այն կարծիքին, թե կառույցն ունեցել է գրատան նշանակություն: Ինչ վերաբերում է «Սրահի եւ տների» կառուցման ժամանակին, ապա այն որոշակի է դառնում վանքում Տեր Աթանասի անվան այլ հիշատակումների շնորհիվ (արդեն նշել ենք, որ բազմաթիվ վիմագրերում վանահայր Աթանասը հիշվում է 1263-1291 թթ.):

***Սեղանատուն եւ խոհանոց:*** 1211 թ. կառուցված «Տաճարին» արեւմուտքից կից այս շինությունները, որ նույնպես XIII դ. կառույցներ են (բնականաբար՝ 1211-ից հետո), գտնվում են կիսավեր վիճակում: Դրանք նույնպես մանրամասնաբար նկարագրված են Մ. Հասրաթյանի կողմից: Հարկ ենք համարում ավելացնել միայն, որ խոհանոցն ունէր նաեւ երկրորդ հարկ՝ իրար կից թաղակապ միա-





«ՍՐԱՀ ԵՎ ՏՆԵՐ», արեւմտյան մուտքը եւ տեսարան արեւելքից

255. ***Ս. Ջալալեանց,*** *հ. Բ, էջ 223:*
256. ***Մ. Հասրաթյան,*** *նշվ. աշխ., էջ 57-58:*
257. *Տես՝ ներկա հրատարակության վիմագրերի բաժնի N59 արձանագրությունը:*













*ՍԵՂԱՆԱՏՈՒՆ. տեսքը հարավից*
*ԻՇԽԱՆԱԿԱՆ ԱՊԱՐԱՆՔ. հյուսիսային եւ արեւելյան որմերը ներսից*

*ՅՈՒՆԱՍՐԱՀ. արտաքին տեսքը հարավ-արեւելքից, ներքին տեսքը դեպի արեւմուտք եւ արեւելք*

բանական սենյակները: Դրանց մուտքերը հյուսիսից են եւ թեք փեղանքի շնորհիվ այդ կողմից հավասար են բակի մակարդակին: Սենյակները ներսում ունեն բազմաթիվ խորշեր եւ բուխարի:

***Հյուրատուն, հնձան, մառան, իշխանական ապարանք եւ մատուռ:*** Համալիրի հարավ-արեւմտյան կողմում, միմյանց կից, բայց հիմնական կառույցներից քիչ առանձնացած դիրքով պահպանվել են առնվազն 5 տարբեր նշանակության կառույցներ: Կրկնահարկ շինությունների առաջին հարկում հյուրանոցն է, հնձանն ու մառանը, իսկ երկրորդ հարկում՝ առաջնորդարանը (հյուրատան վրա) եւ իշխանական ապարանքը (հնձանի ու մառանի վրա): Վերջինիս հյուսիսային ծայրում դեռեւս կանգուն է նաեւ մատուռի պարզ հորինվածքով կառույցը, որը, փաստորեն, իշխանի տան բաղկացուցիչ մասն է կազմել, ասել կուզի՝ իշխանի տունը վանքի կազմում գտնվելով հանդերձ, իր բնակարանի մեջ էլ ուներ մասնավոր մի աղոթասենյակ: Ցավոք, ներկայում, բացի մատուռի հատվածից, իշխանի ապարանքից քիչ բան է պահպանվել: Նրա հարավային ճակատի լայն ու կամարակապ լուսա-


1997թ. հողային աշխատանքների ընթացքում հայտնաբերված սրահ ժամատան արեւմտյան կողմում




ԴԱՐՊԱՍՆԵՐ. համալիրի արեւմտյան եւ արեւելյան կողմերում

մուտները պարզ երեւում են Մեսրոպ մագիստրոսի 1911 թ. կատարած լուսանկարի վրա:

Բոլոր այս շինությունները կառուցվել են XII-XIII դդ. ընթացքում. ցավոք, դրանց ավելի ստույգ թվագրման համար բավարար փաստեր չունենք:

***Սյունասրահ:*** Սյունասրահը, որը «... անարվեստ մի շինություն է, անհամաչափ լայն...»[258] իրենով լրացրել է բակի այն հատվածը, որ գոյացել էր 1214-ին կառուցված Կաթողիկե եկեղեցու, 1283-ին կառուցված զանգակատան եւ մինչեւ 1293 թ. կառուցված միանավ եկեղեցու եւ գավթի միջեւ: Հիշյալ բոլոր կառույցներն էլ, իրոք, ճարտարապետության ու արվեստի տեսանկյունից անհամեմատ բարձր են սյունասրահից, եւ կարելի է կարծել՝ սյունասրահը կառուցել են թերեւս, ավելի դժնդակ ժամանակներում՝ XIV դարում:[259]

***Այլ սենյակներ:*** Համալիրի կազմում պահպանվել են մի քանի թաղակապ շենքեր եւս, որոնցից մեկը հուշարձանախմբի արեւմտյան ծայրում է, իսկ երկուսը կից են ժամատան արեւմտյան ճակատին: Կարծում ենք՝ սրանք էլ XIII-XIV դդ. սահմանագլխին կառուցված շենքեր են՝ բնակելի կամ տնտեսական նշանակությամբ:

***Շրջապարիսպ եւ դարպասներ:*** Գլխավոր կամ մեծ դարպասը գտնվում է վանքի միջնամասում (դա ցույց է տալիս, որ բոլոր կառույցները չէ, որ ի սկզբանե ամփոփված են եղել շրջապարիսպի մեջ եւ կամ՝ այլ շինությունները կառուցվել են ավելի ուշ): Կաթողիկե եկեղեցու արեւելյան կողմում պահպանվել է երկրորդ կամ փոքր դարպասը, որտեղից դուրս եկող կածանը բարձրանում է դեպի քիչ հեռու, հյուսիս-արեւելքում գտնվող մատուռները: Դարպասների կառուցման ստույգ ժամանակն անհայտ է, բայց շրջապարսպի մեջ ագուցված 1181 եւ 1200 թթ. արձանագրություններով խաչքարերի առկայությունը հուշում է, որ դրանք (հավանաբար նաեւ շրջապարիսպը) պետք է կառուցված լինեին 1200 թվականից հետո:











Յուշարձանախմբի մերձակայքում գտնվող մատուռների հատակագծերը

***Մատուռներ:*** Դադի վանքի շուրջ գտնվում են թվով հինգ միանման թաղակապ մատուռներ: Դրանցից կանգուն են երկուսը (Կաթողիկե եկեղեցուց հյուսիս-արեւելք), իսկ մյուս երեքը (մեկը՝ վանքից հյուսիս, մյուսը՝ արեւմուտք, ժայռոտ բլրի գագաթին եւ երրորդը՝ վանքից հարավ-արեւելք) կիսավեր վիճակում են: Մատուռներն ունեն միանման պարզ լուծումներ, միակ մուտքը բացված

258. *Մ. Հասրաթյան, նշվ. աշխ., էջ 49:*

259. *Ավելորդ է նշել, որ սյունասրահը մինչեւ 1241 թ. կառուցված լինել չէր կարող, որովհետեւ կարծիք է հայտնվել իբր դա մի քարի վրա. «ՌՂ թվ» փորագիրը եղած լինելու դատճառով, որն անշուշտ կամ սխալ վերծանման եւ կամ արձանագրի տեղը շփոթելու արդյունք է («Էջմիածին», 1971, Զ-Է, էջ 69):*











*ՄԱՏՈՒՌՆԵՐ. վանքի արեւմտյան կողմում ժայռաբլրի գագաթին գտնվող մատուռը արեւմուտքից եւ ներքին տեսքը դեպի արեւելք, նույն մատուռի ներսում հարավային պատին սվաղի շերտի վրա պահպանված արձանագրությունը (գրված է սեւ ներկով), վանքին ամենամոտ (հյուսիս-արեւելքում) գտնվող մատուռը հյուսիս-արեւմուտքից եւ հյուսիս-արեւելքից*









*ՀՆՁԱՆ. տեսքը հարավից եւ մուտքը*

*ՇՐՋԱՊԱՐԻՍՊ. խաչքարեր ագուցված վանքի արեւելյան կողմով ձգվող շրջապարսպի մեջ*







ՄԱՏՈՒՌՆԵՐ. վանքի հյուսիս-արեւելյան կողմում գտնվող մատուռը արեւմուտքից եւ ներքին տեսքը դեպի արեւելք



ՄԱՏՈՒՌՆԵՐ. վանքից հյուսիս գտնվող կիսավեր մատուռը՝ արեւմուտքից, վանքից հարավ-արեւելք անտառածածկ լեռնաճյուղին գտնվող ավերակ մատուռը հարավ-արեւմուտքից

արեւմուտքից: Կառուցված են անմշակ քարով ու կրաշաղախով, ներքուստ սվաղված են:

***Վիմագրեր:***[260] Դադի վանքում պահպանված վիմագրերի առաջին հեպագորողը եղել է Եսայի

260. Սույն ներկայացնում ենք համալիրի տարածքում պահպանված վիմագրերի միայն առավել կարեւոր մասը, որոնց ամբողջական հավաքածուն լույս կընծայվի առաջիկայում «Արցախի վիմագրեր» աշխատությամբ (ավելի քան 4800 միավոր ընդգրկումով):

Հասան-Ջալալյան Աղվանից կաթողիկոսը (1702-1728 թթ.): Նրա 1718 թ. կազմած ձեռագիր հավաքածուից հետագայում օգտվել է Շահխաթունյանց եպիսկոպոսը, որն այս հետազոտությանը հետամուտ է եղել 1830-ականներին: Միաժամանակ խնդրին առնչվել է նաեւ Սարգիս վարդապետը: Նրանց ընթերցումները հրապարակվել են 1842 թ.:[261] Այնուհետեւ երկու արձանագրություն է հրապարակել Մ. Սմբատյանցը:[262] Դարավերջին այդ աշխատանքները շարունակվել են Մակար եպիսկոպոսի ջանքերով,[263] իսկ 1911 թ. տեղում կատարած իր ուսումնասիրությունները՝ 2 տարի անց հրապարակել է Մ. Տեր-Մովսիսյանը:[264] Հարկ է նշել, որ բավական մեծ ծավալի աշխատանք է կատարել նաեւ Խաչիկ վարդապետ Դադյանցը, որի հավաքածուն, սակայն, առ այսօր մնում է անտիպ:[265] Դրանով Դադի վանքից ընդօրինակված ու հրապարակված արձանագրությունների թիվը հասցվել է 40-ի:

Այնուհետեւ մի քանի տասնամյակ, ցավոք, այս ասպարեզը, կարծես մոռացության է մատնվել: Վերջապես՝ 1960-64 թթ. Դադի վանքում իրենց տեւական ու նախորդների հետ համեմատած առավել հիմնավոր ուսումնասիրություններն են իրականացրել վիմագրագետ Սեդրակ Բարխուդարյանի գլխավորությամբ գործող արձանագրագիտական հապուկ գիտարշավի մասնագետները: Ցավոք, ինչ-ինչ պատճառներով, հավաքված նյութի տպագրությունն իրականացավ դաշտային աշխատանքների ավարտից շուրջ 18 տարի անց՝ 1982-ին, երբ արդեն վախճանվել էր (1970 թ.) աշխատանքների ղեկավարը՝ Ս. Բարխուդարյանը:[266] Այս աշխատության համապատասխան բաժնում Դադի վանքից ներկայացվել են 58՝ միավոր վիմագրերի վերծանություններ, այսինքն՝ նախկինում հրապարակվածներին գումարվել է գիտարշավների ընթացքում ժողոված եւս 18 միավոր նորահայտ արձանագրություն:

Այս է Դադի վանքի վիմագիր արձանագրությունների ընդօրինակման, վերծանման ու հրապարակման ասպարեզում մեզ նախորդած աշխատանքների համառոտ պատմությունը:

Ստորեւ ներկայացնում ենք տեղում պահպանված եւ մեր կողմից վերստին ստուգված 75 միավոր արձանագրությունների վերծանությունները (24-ը՝ նորահայտ):[267]

**Կաթողիկե եկեղեցու հարավային ճակատի արձանագրությունները**

1. Հարավային ճակատի կենտրոնում, լուսամուտի տակ, որմնասյուների միջեւ, 19 տողով փորագրված է.

ՇՆՈՐՀԻՒ ԱՄԵՆԱԿԱԼԻՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ՀԱՒՐ ԵՒ ՄԻԱԾՆԻ ՈՐԴՈ ՆՈՐԱ Յ(ԻՍՈՒՍ)Ի Ք(ՐԻՍՏՈՍ)Ի ԵՒ ՊԱՐԳԵՒԱՒՔ ԱՄԵՆԱՍ(ՈՒՐ)Բ ՀՈԳՈ | ԵՍ ԱՐԶՈՒ ԽԱԹՈՒՆՍ ՆՈՒԱՍՏ ԱՂԱԽԻՆ Ք(ՐԻՍՏՈՍ)Ի, ԴՈՒՍՏՐ ՄԵԾԻ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆԻՆ՝ ՔՐԴԻՆ ԵՒ ԱՄՈ|ՒՍԻՆ ՎԱԽՏԱՆԿԱՅ ԹԱԳԱՒՈՐԱԶՆՈ Տ(ԵԱՌ)Ն ՀԱԹԵՐՔՈ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ՎԵՐԻՆ ԽԱՉԵՆՈ, ՅՈՒՍՈՎ ՄԵԾԱՒ ՇԻՆ|ԵՑԻ ԶՍ(ՈՒՐ)Բ ԿԱԹՈՂԻԿԷՍ Ի ՏԵՂՈՋ ՀԱՆԳՍՏԱՐԱՆԻ ԱՌՆ ԻՄՈ ԵՒ ԶԱՒԱԿԱՑ ԻՄՈՑ. ՀԱՍԱՆԱ ԱՆԴՐԱՆԻԿԻ|Ս ԻՄՈ ԵՒ ԳՐԻՔՈՐ, ՈՐՆ Ի ՏԵՐՆ ԿԻՍԱՒՐԵԱ ՎԱԽՃԱՆԵԼՈՑ, ԶԻ ՎԱՍՆ ԻՄՈ ՄԵՂԱՑ ԽՐԱՏԵԱՑ ԶԻՍ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ԵՒ ԵԲԱՌՆ | Ի ԳԼԽՈ ԻՄՈ ԶԵՐԿՈՍԵԱՆ ՊՍԱԿՍ ՎԱՅԵԼՈՒՉ ԶԻ ԱՆԴՐԱՆԻԿՆ ԻՄ՝ ՀԱՍԱՆ ՍՊԱՆԱՒ Ի ԹՈՒՐՔԱՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ | ՎԱՍՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՀԱՒԱՏՈՅՍ ԵՒ ԶԿՆԻ ԵՐԻՑ ԱՄՍՈՑ ԵՒ ԿՐՏՍԵՐ ՈՐԴԻՆ ԻՄ ԳՐԻԳՈՐ ՏԵՐՆ ԿՈՉԵՑԵԱԼ Զ | ՊԱՐՏ ԲՆՈՒԹԵԱՆՍ ՀԱՏՈՒՑԱՆԵԼՈՎ ՎՃԱՐԵԱՑ ԶԿԵՆՑԱՂՍ ԵՒ ՓՈԽԵՑԱՆ ԱՌ Ք(ՐԻՍՏՈ)Ս, ՍՈՒԳ, ԱՆՄԽԻԹԱՐ | ԹՈՂԼՈՎ ԹՇՈՒԱՌԱՑԵԼՈ ՄԱՒՐՍ ԻՒՐԵԱՆՑ. ԱՅԼ ԶԻ Ի ԿԵՆԴԱՆՈՒԹԵԱՆ ԻՒՐԵԱՆՑ ՅՈՅՍ ⌈ԻՄ ՏԷՐ ԴՆԵ⌉| .....Ա ՇԻՆԵԼ ԵԿԵՂԵՑԻ ՅԱՅՍՄ ՏԵՂՈՋ ԵՒ ՈՉ ԺԱՄԱՆԵՑԻՆ ՎԱՍՆ ԱՐԱԳԱՀԱՍ ԼԻՆԵԼՈ Ի ՎԵՐԱ ՆՈՑ | Ա ՄԱՀՈՒՆ. ԻՆՉ ԱՒԱՆԴԵՑԻՆ ԱՆԴԱՐՁԻՒ ԿԱՏԱՐԵԼ ԶՓԱՓԱԳ ՍՐՏԻՑ ՆՈՅԱ. ԵՒ ԻՄ ՅԱՆՁՆԱՌԵԱԼ ՄԵԾ | ՅՈՒՍՈՎ ԵՒ ԱՇԽԱՏՈՒԹ(ԵԱՄ)Բ ՇԻՆԵՑԻ ԶՔԱՒԱՐԱՆՍ ՎԱՍՆ ՓՐԿՈՒԹԵ(ԱՆ) ՈԳՈՑ ՆՈՅԱ ԵՒ ԻՄՈ ԵՒ ԴՍՏԵՐԱ|Ց ԻՄՈՑ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԶԱՐՄԻՑ. ԱՐԴ ԱՂԵՐՍԻՒ ՀԱՅՑԵՄ ՈՐՔ ԵՐԿՐՊԱԳԵՔ ՍՐԲՈ ԽՈՐԱՆԻՍ ՅԻՇԵԼ ՅԱ|ՂԱՒԹՍ ԶՎԵՐԱԳՐԵԱԼՍՆ Ի ՍՄԱ ԿԱՏԱՐԵՑԱՒ Ս(ՈՒՐ)Բ ՔԱՒԱՐԱՆՍ Ի ԹՎԱԿԱՆՈՒԹԵ(ԱՆ)Ս ՀԱՅՈՑ: Ո: | Կ: Գ: (1214) Ի ՓԱՌՍ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՒ Ի ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ Ս(ՈՒՐ)Բ

261. *Յովհաննու եպիսկոպոսի Շահխաթունեանց ստորագրութիւն կաթողիկէ Էջմիածնի եւ հինգ գաւառաց Արարատայ, հ. Բ, Էջմիածին, 1842, էջ 356-362:* ***Սարգիս վարդապետ Ջալալեանց**, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Ա, Տփխիս, 1842, էջ 204-205, մասն Բ, Տփխիս, 1858, էջ 222-228:*

262. ***Մ. Սմբատեանց**, «Նոր-Դար», 1893, N 17, էջ 3:*

263. ***Մակար եպիսկոպոս Բարխուդարեանց**, Արցախ, Բաքու, 1895, էջ 203-209:*

264. *«Ազգագրական հանդէս», գիրք ԻԷ, Ա, էջ 80-88, Բ, էջ 75-84, Թիֆլիս, 1913: Ավելի ուշ այդ նյութերն ամփոփվեցին առանձին աշխատության մեջ.* ***Մեսրոպ արքեպիսկոպոս Տէր-Մովսիսեան**, Հայկական երեք մեծ վանքերի՝ Տաթեւի, Հաղարծնի եւ Դադիի եկեղեցիները եւ վանական շինութիւնները, Երուսաղէմ, 1938, էջ 83-90:*

265. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 319, ց.1, գ. 5, թ. 23-28; Ֆ. 319, ց. 1, գ. 95, թ. 28:*

266. *«Դիվան Հայ վիմագրության», պրակ 5, կազմող՝* ***Ս. Գ. Բարխուդարյան**, Երեւան, 1982, էջ 197-217:*

267. *Քանի որ նախկինում հրատարակված բոլոր արձանագրությունները քննաբար ամբողջացվել են «Դիվան»-ի նշված հատորում, հղելիս եւ ծանոթագրելիս մենք կանգ կառնենք միայն նրանում տեղ գտած անճշտություններին ու բացթողումներին:*



*ԴԱԴԻ ՎԱՆՔ. Կաթողիկե եկեղեցու հարավային ճակատի արձանագրություններ պարունակող հատվածի գծանկարը*

ՈՒԽՏԻՍ ԵՒ ՍԱՀՄԱՆԵՑԱՔ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑՈՅՍ ԳԵՒՂՍ Ե|Ւ ԱԳԱՐԱԿՍ ԻՒՐԵԱՆՑ ՍԱՀՄԱՆՕՔՆ՝ ՋԱՊԱՀԷՆ ԵՒ ՋԵՋՆԱՐԱԾԱՆՑ ԵՒ ՋԲԾԱՆՑ ԵՒ ՋԿԱՆԱՉԱՒՈՐՆ, ՈՐ Ի ՎԱՅՈՁՈՐ | ԵՒ ԵՐԿՈՒ ՏՈՒՆ ՅԱՐՓԱ ԵՒ ՀԱՍՏԱՏԵՑԱՔ ԿԱՄԱԿՑՈՒԹԵ(ԱՄ)Բ ԵՂԲԱՐՑՍ ՋԱՒԱԳ ԽՈՐԱՆԻ ՋՊԱՏԱՐԱԳՆ ՅԱՆՈՒՆ ՎԵՐԱԳՐԵԼՈՑՍ ԿԱ|ՏԱՐԵԼ ԱՆԽԱՓԱՆ, ԵԹԵ ՈՔ ԱՅՍՄ ՎՃՌԻ ՀԱՍՏԱՏՆՈ ԽԱՓԱՆՈՒՄՆ ԱՌՆԷ ՅԻՇԽԱՆԱՑ ԿԱՄ ՅԱՌԱՋՆՈՐԴԱՑ ՏԵՂՈՅՍ ԿԱՄ[Ո] ՈՔ ԵՒ Ի|ՑԷ ԽԱՓԱՆԵՍՑԻ ՅՈՅՍ ՆՈՐԱ ՈՐ ԱՌ Ք(ՐԻՍՏՈ)Ս ԵՒ ԴԱՏԱՊԱՐՏԵՍՑԻ ՅԱ(ՍՏՈՒԾՈ)Յ:

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 198-199:*

***Ծանոթ.*** *Վերծանությունը ներկայացվում է մի շարք մանր վրիպակների, կամայական հավելումների ճշգրտումամբ: Աղավաղված է ներկայացված նաև գրչանկարը:*

2\. Նախորդ վիմագրից քիչ ներքեւ, 5 տողով փորագրված է.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ՎԱՂՏԱՆԳ ՈՐԴԻ ՍՄՊԱՏԱ ԾԱՌԱ Յ(ԻՍՈՒՍ)Ի ԵՒ ԱՄՈՒՍԻՆ ԻՄ ՆԱՆԱ՝ ԱՂԱԽԻՆ Ք(ՐԻՍՏՈՍ)Ի ՄԻԱԲԱՆԵՑԱ Ջ|ԴԱԴԷ ՎԱՆԱՑ ԵՒ ՏՈՒԱՔ Ի ՀԱՅՐԵՆԵԱՑ ՄԵՐՈՅ ՋՃԵՉԱՉՈՐԵՅՆ ԵՒ ԱՅԳԻ ՄԻ Ի ԽՈՋԵՆԵԿՍ, ՋՄԱՆԱՆԱՄԱՐԳ | ԵՒ ՄԵԾԱԾԱԽ ՄԱՍԱՄԲ ԽԱՉ ՄԻ ՄԵԾԱՒ ՅՈՒՍՈՎ ԵՒ ԲՆԱԿԻՉՔՍ Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԻՍ ԵՒ ՄԻԱԲԱՆՔՍ ՍԱՀՄԱՆԵՑ|ԻՆ ՄԵԶ: Բ: (2) ԱՒՐ ԺԱՄ ՋԱՄԵՆԱՅՆ ԵԿԵՂԵՑԻՔՍ ՋՏԱՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ՝ ՆԱՆԱՒՆ ԵՒ ՋՏԱՒՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ՝ ՎԱՂՏԱՆ|ԳԱ: ՈՎ ԽԱՓԱՆԷ ՋԺԱՄՍ ԿԱՄ ԽԼԷ ՋՄԵՐ ՏՈՒԱԾՍ ՄԵՐ ԵՒ ՄԵՐ ԱԶԳԻ ՄԵՂԱՑ ՏԷՐ Է: Ի ԹՈՒ(ԻՆ) ՈՂ (1241) ԷՐ:

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 202-203:*

***Ծանոթ.*** *«զՄանանամարգ» տեղանունը հրատարակվել է «ի...... կնամարգ»: Կան նաև այլ վրիպակներ:*

3\. Փոքր-ինչ ներքեւ, դարձյալ 5 տողով.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՄ՝ ԳՈՆՑԷՍ ՈՒ ՈՐԴԻՔՄ՝ ՀԱՍԱՆ ՈՒ ՎԱՐՀԱՄ, ԹՈՌՆ՝ ԴԱՒՓԱՆՑ, ՏՎԱՔ | Ի ԴԱԴԻ ՎԱՆՍ ՋՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔՆ ՋԽՈՒԴ՝ ԻՒՐ ՍԱՀՄԱՆՈՎՆ, ԽԱՍՈՎՆ, ՎԵՐԻՆ ՄԱՐԳ |ՈՎ, Վ(Ա)Ս(Ն) ՍԻՐԱԿԱՆ ՀԱՐՍԻՆ ԵՒ ՄԵՐ ԹԱԹՈՒՆԻՆ, ԴՍՏԵՐՆ՝ ՔՐԴԻՆ ԱՆԲԵՐԴԵՑԻ, ԱՄՈՒՄՆՈ | ՀԱՍԱՆԱ ԵՒ ՄԻԱԲԱՆՔՍ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ :Ը: (8) ԱՒՐԵՅՆ :Ը: (8) ՊԱՏԱՐԱԳ ԱՆԽԱՓԱՆ Վ(Ա)Ս(Ն) Լ|ՈՒՆԻՆ, ԱՐԴ՝ ՈՎ ՋԽՈՒԴԻ ԴԱԴԻ ՎԱՆԱՑ ՀԱՆԷ ԿԱՄ ՋԺԱՄՆ ԽԱՓԱՆԷ: ՅԺԸ: (318) ՀԱՅՐ(ԱՊԵՏԱՅՆ ՆԶՈՎԱԾ Է):

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 203:*

***Ծանոթ.*** *Հրատարակության մեջ աղավաղված է ներկայացված գրչանկարը:*

4\. Նախորդի համեմատ փոքր-ինչ աջ ու ավելի ներքեւ 5 տողով արձանագրված է.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ՍԱՄՆԱ ՉԵՌՆԱՒՈՐ ՄԻԱԲԱՆԵՑԱ Ս(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ | ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹ(ԵԱՄ)Բ Տ(Է)Ր ԱԹԱՆԱՍԻ, ԵՏՈՒ ՋՍԱՐՈՒՏԱՆՑ ՀՈՂՆ :Դ: (4) | ԵՋՆ ԵՒ ԱՅԼ ԱՐԴԻՒՆՔ Ի Ս(ՈՒՐ)Բ ԿԱԹՈՂԻԿԷՍ ԵՒ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ ԻՆՁ | :Բ: (2) ԱՒՐ ԺԱՄ ՋԱՄԷՆ ԵԿԵՂԵՑԻՔՍ (Ի) ՏԱՒՆ ՍԱՀԱԿԱ ԵՒ ԿԻՐԱԿԷՆ, ՈՎ Զ| ՀՈՂՆ ԽԼԷ ԿԱՄ ՋԻՄ ԺԱՄՆ ԽԱՓԱՆԷ ԻՄ ՄԵՂԱՑՍ ՊԱՐՏԱԿԱՆ Է: Չ:Ժ: (1261):

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 204-205:*

***Ծանոթ.*** *Հրատարակության մեջ առկա են բազմաթիվ վրիպակներ, աղավաղված է գրչանկարը:*

5\. Ճակատի 2-րդ շարք քարերի աջ անկյունում 4 տողով փորագրված է.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ՍԵՐՈԲ ՋՐՎՃ| ՏԿԵՑԻ ՄԻԱԲԱՆԵՑԱ Ս(ՈՒՐ)Բ ԽԱՉԻ: Ը: (8) ԱՒՐԱ|ՅՔՆ ՄԻ ԱՒՐ ՊԱՏԱՐԱԳ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ Ի Տ|ԱՐԻՆ ԿԱՏԱՐԻՉՔՆ ԱՒՐՀՆԻՆ ՅԱ(ՍՏՈՒԾՈ)Յ:

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 209:*

***Ծանոթ.*** *Հրատարակության մեջ «:Ը: (8) աւրայքն մի աւր»-ի փոխարեն՝ ունենք «ութ աւրայքն աւր»: Գրչանկարում առկա են աղավաղումներ:*

6\. Ճակատի 2-րդ եւ 3-րդ շարք քարերի վրա, ձախ կողմում 5 տողով փորագրված է.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ԳՐԻԳՈՐ ՏՆՏԵՍ ՀՐԱՄԱՆԱՒ Տ(ԵԱՌ)Ն ԱԹԱՆԱՍԻ ԵՒ ԿԱՄԱԿՑՈՒԹԵ(ԱՄ)Բ ԱՅ|Լ ԵՂԲԱՐՑՍ ԳՆԵՑԻ ԻՄ ԸՆՉԻՒՔ ՋԱԽՈՌԱԿԱԼՆ ԵՒ ԵՏՈՒ ՅԵԿԵՂԵՑԻՍ ԵՒ ԽԱՌՆԵՑԱ ԸՆԴ ԵՂ|ԲԱՅՐՈՒԹԻ(ՒՆ) ՍՈՑԱ ԵՒ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ ԻՆՁ Ի ՏԱՒՆԻ ԵՐԵՒՄԱՆ Ս(Ր)ԲՈ ԽԱՉԻՆ :Գ: (3) ԱՒՐ ՊԱՏԱՐԱԳ. ԱՐ|Դ, ԵԹԵ ՈՔ ՋԱՅՆ ՀՈՂՆ ՅԱՅՍ ԵԿԵՂԵՑՈՅՍ ՀԱՆԷ ԿԱՄ ՋԺԱՄՆ ԽԱՓԱՆԷ՝ ԽԱՓԱՆԵՍՑԻ ՅՈՅ|Ս ՆՈՐԱ ԱՌ Ք(ՐԻՍՏՈ)Ս ԵՒ ՄԱՍ ՆՈՐԱՅ ԸՆԴ ՈՒԴԷԻ ՈՒ ԸՆԴ ԱՅԼ ԽԱՉԱՀԱ(Ն)ՄՆ ԵՂ(ԻՑԻ):

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 203-204:*

7\. Հարավային ճակատի արեւմտյան որմնախորշի եւ որմնակամարի միջեւ, պատի առաջին եւ երկրորդ շարքերի վրա 7 տողով (վերջին տողը հորմնահար է) փորագրված է.

Ք(ՐԻՍՏՈ)Ս Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՍԱՐ|ԿԱՒԱԳՆ, ՈՐ ԵՏ ԸՆԾԱ ԵԿ|ԵՂԵՑՈՅՍ Տ(Է)Ր Ս(ԱՐ)ԳԻՍ ԵՒ ՄԻԱ|ԲԱՆՔՍ ԵՏՈՒՆ: Բ: (2) ՊԱՏԱՐ|ԱԳ Ի ՏԱՐՈՒՄ Ի ՏԱՒՆԻ Ս(ՈՒՐ)Բ ԹԷ|ՈԴՈՐՈՍԻ ԿԱՏԱՐԻՉՔՆ | ԱՒՐՀՆԻՆ ՅԱ(ՍՏՈՒԾՈ)Յ: ՉԾԸ: (1309):

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 205:*

***Ծանոթ.*** *Հրատարակության գրչանկարում առկա են մի շարք անճշտություններ:*

8\. Ճակատի չորրորդ շարք քարերի կենտրոնական մասում, մի խաչաքանդակի կողքին 8 կարճ տողերով արձանագրված է.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ | ՈՂ(ՈՐ)Մ|Ի Տ(Է)Ր | ԵՂԷ|ԻՆ Հ|ՈԳՈ|ՅՆ, | ՋԾԷ (1508):

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 208:*

*Ծանոթ. Հրապարակության մեջ սխալ է թվագրումը (ՋԺ=1461):*

9. Երրորդ շարք քարերի ձախ մասում, N 6 արձանագրությանը կից՝ վերեւում 5 տողով.

Ա(ՍՏՈՒԾՈ)Յ. ԱՅՍ Է | ՄԱՀԻՆ ԹԻ[Վ]|ՎՆ ՌՃՁՁ (1737) ԷՐ, | ԵՍ ԱՆԱՐԺԱՆ | ԱՍԼԻՍ ԳՐԵՑԻ:

*Հրատ. «Դիվան...», էջ 209*

*Ծանոթ. Հրապարակության մեջ գրչանկարը՝ պհնհայր աղավաղումներով)*

10. Հարավային ճակատի արեւմտյան որմնախորշի մեջ, պատի 3-րդ եւ 4-րդ շարք քարերի վրա կիսաեղծ արձանագրության 7 տողերի միայն սկզբնամասերն են պահպանվել.

ՈՒԹ.... | ՍԻՆ Յ.... | ՏԷ..... | ԱՐԴ Ս.... | ՋՄԵՐ ԴՎ.(ԱԾ).... | Ն ՍՈՔԱ..... (Տ)|ԱՐԻՆ: Բ:(2)

*Հրատ. Առաջին անգամ:*

11. Որմնակամարի եւ արեւելյան որմնախորշի միջեւ, պատի ներքեւից 6-րդ շարքի սկզբում 8 տողով փորագրված է.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂ|ՈՐՄԻ ԿԻՐ|ԱԿՈՍԻՆ, | ԱՄՈՒՄՆ|ԻՆ ԻՐ. ԱՄԷՆ, | ԹՎ (ԻՆ) | ՋԻ|Ը (1479):

*Հրատ. «Դիվան...», էջ 208*

*Ծանոթ. Հրապարակված գրչանկարը խիստ աղավաղված է:*

12. Նախորդից երկու շարք ներքեւ, 5 կարճ տողերով փորագրված է.

ԵՍ | ՆԵՐՍ|ԷՍՍ | ԳՐԷ(ՑԻ) Ի | ԹՎ:

*Հրատ. Առաջին անգամ:*

*Ծանոթ. Թվականը փորագրված չէ:*

13. Նախորդի (N12) պակ, նույն քարի վերջում 1 տողով.

ԵՍ ԳՈՐԻՍ Տ(Է)Ր ՍԸ(Հ)ԱԹ(ԻՆ):

*Հրատ. Առաջին անգամ*

*Ծանոթ. Բնագրում «Սրաթ»-ը որոշ վերապահումով վերծանել ենք «Սրհաթի», որը պարսից տիրապետության շրջանում, ինչպես հայտնի է, Սուրմալու գավառի անունն էր (Սրհաթա երկիր):*

14 Նախորդի պակ 3 տողով, կիսաեղծ.

ԿԱՄԱՒ (ԱՍՏՈՒԾՈՅ) ԵՍ ՀԱԱՂՎՆԻՍ(՞) ՅԻՋԱ ՀՈՂՆ ԽՐՍԱՀԱ|ԵՏՆ:

*Հրատ. Առաջին անգամ:*

### Կաթողիկե եկեղեցու արեւելյան ճակատի արձանագրությունները

15. Ճակատի կենտրոնական մասում, հիմքից հաշված 6-րդ եւ 7-րդ շարք քարերին 5 տողով փորագրված է.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ՍԵՒԱԴԱ ԻՇԽԱՆ, ՈՐԴԻ՝ ՍՄՊԱՏԱ ԵՒ ԱՄՈՒՍԻՆ ԻՄ՝ ԹԱԾԵՐՆ, ՏՈՒԱՔ Ի ՀԱՅ⌈ՐԵՆԵԱՅ⌉ | ՄԵՐՈՅ Ի ԴԱԴԻ ՎԱՆՍ ՋԿԱՐՄՆՋԱՏԱՓԱ ԱՅԳԵՆՆ, Ի ԽՈՋԵՆԵԿՈՒՅ, Ի ՆՇԽԱՐԱՏՈՒՆՆ. ՄԵԾ ՅՈՒՍ|ՈՎ: Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԻՍ ԵՒ ՄԻԱԲԱՆՔՍ ԵՏՈՒՆ ՄԵԶ: Բ: (2) ԺԱՄ ՋԱՄԵՆ ԵԿԵՂԵՑԻՔՍ ՋՏԱՒՆ(ԻՆ) Տ(ԵԱՌ)ՆԸՆԴԱՌԱՋ(Ի)Ն՝ ԻՆՁ, | ՋԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԱԹ ԱՒՐՆ՝ ԹԱԾԵՐԻՆ: ՈՎ ՋԱՅՆ ԱՅԳԵՆՆ ՅԱՅՍ ՎԱՆԱՅՍ ՀԱՆԷ Ի ՓԱՌԱՑ ՈՐԴՈՅՆ ՈՐ|ՈՇԵԼ ԵՂԻՑԻ: ՅԺԸ: ՀԱՅՐԱՊԵՏԱՅՆ ԱՆԻԾԱԾ Է ԵՒ ՅՈՒԴԱՒ ՄԱՄՆԱԿԻՑ ԵՂԻՑԻ ԱՄԷՆ: ԹԻՒՆ ՈՂ (1241):

*Հրատ. «Դիվան...», էջ 202:*

16. Նախորդից ներքեւ, շարվածքի 3-րդ եւ 4-րդ շարք քարերի վրա 4 տողով փորագրված է.

ԿԱՄԱՒ ԱՄԵՆԱԿԱԼԻՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ




*Կաթողիկե եկեղեցու արեւելյան ճակատի արձանագրություններ պարունակող հատվածի գրչանկարը*

Տ(Է)Ր ՆԵՐՍԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՉԱՐԱ|ԲԵՐԴՈՑ ՄԻԱԲԱՆԵՑԱ ԴԱԴԻ ՎԱՆԱՑՍ, ՄԻՆ ԱՅԳԻ (Ե-ՏՈՒ) ՀԻՐԱՏԱՆՆ | Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԻՍ ԵՒ ՄԻԱ-ԲԱՆՔՍ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ ԻՆՁ Ի ՏԱՐՆԻ Տ(ԵԱՌ)Ն ԲԱՐՍՂԻ: Բ: (2) ԱՒ|Ր ՊԱՏԱՐԱԳ: ՈՎ ԽԱՓԱՆԷ ԻՄ ՄԵՂԱՑՍ ՏԷՐ Է ԱՌԱՋԻ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ, Թ(ՎԻՆ) ՉԲ (1253):

*Հրատ. «Դիվան...», էջ 204:*

17. Ճակատի մեծ արձանագրության փակ, 5-րդ շարքի աջ կողմում, 3 տողով փորագրված է.

ԽՈՆԴՔԱՐ ՓԱՇԷՍ ԴՈՒՍՏՐ | Պ(Ա)Ր(ՈՆ) ԱՂՊՈՒՂԵՆ ԵԴՈՒ ԿԱՋՄԵԼ | Ս(ՈՒՐ)Բ ՆՇԱ-ՆԵՐՍ ԱՂ(ԱՒԹՍ ՅԻՇԵՑԷ)Ք:

*Հրատ. «Դիվան...», էջ 209:*

18. Նախորդի փակ նույն շարքում՝ մեկ տող.

ԹՎ(ԻՆ) ՌԾԴ (1605), ԹՈՒՂՈՆ ՈՐՓ ԱՐԵՐ ԵՐ (՞):

*Հրատ. «Դիվան...», էջ 209:*

19. Նախորդի փակ, հիմքից վերեւ երրորդ շարքում եռատող փորագրված է.

ԵՍ ՅՈՎԱՆԷՍ ԵՐԷՑ ԿՈԴՐԷՅԻ ԻՄ ՀԱԼԱԼ ԱՐԴԵԱՄԲՔ ՄԻԱԲԱ|ՆԵՑԱ Ս(ՈՒ)ՐԲ ՈՒԽՏԻՍ ԵՒ ՍԱՀՄԱՆԵՑ(ԻՆ) ԻՆՁ Ի ՅԱՅՏՆՈՒԹԵ(ԱՆ) ԾՐԱԳԱԼՈՒ|ՅԻՆ: Ա: (1) ՊԱՏԱՐԱԳ: ՈՎ ԽԱՓԱ-ՆԷ ԻՄ ՄԵՂԱՑՍ ՏԷՐ (Է) ԱՌԱՋԻ Ք(ՐԻՍՏՈՍ)Ի. ՉԸ (1259):

*Հրատ. «Դիվան...», էջ 204:*

20. Նախորդի փակ, նույն շարքի քարերին՝ մեկ տողով.

ԹՎ(ԻՆ) ՌԾԴ (1655), Ա(ՍՏՈՒԱԾ Ո)-ՂՈՐ(ՄԻ) ՏԱՐԷԼ(ԻՆ):

*Հրատ. Առաջին անգամ:*

21. Արեւելյան ճակատի հյուսիսակողմի որմնախորշից ձախ.

Տ(Է)Ր ՈՀ[Ն]ԱՆ | Ի Ս(ՈՒՐ)Բ ՆՇ(ԱՆՍ):

*Հրատ. Առաջին անգամ:*

*Ծանոթ. Թերի է թողնված:*

22. Նախորդի (N21) մոտ.

ԵՍ ԸՍՏ(Ե)Պ(Ա)|ՆՈՍ ՇԱՐՎ(Ա)ՆԷ|ՅԻ:

*Հրատ. Առաջին անգամ*

*Ծանոթ. Շարվան=Շիրվան:*

23. Փակագիր.

ՈՎԱՆԷՍ:

*Հրատ. Առաջին անգամ:*

24. Արեւելյան ճակատի հարավային կողմի որմնախորշից աջ փորագրված է մի թերի թողնված կարճ հիշատակագիր եւ մեկ փակագիր.

ՅԻՇԱՏԱԿ | ՎԱՐ(ՀԱՄԻՆ):

*Հրատ. Առաջին անգամ:*

25. Երկմաս փակագիր.

ԹՈՄԱ ՎԱՐԴԱՊԵՏ

*Հրատ. «Դիվան...», էջ 209:*

*Ծանոթ. Վերծանված է «ԹՈՄԱ ՎԱՐՊԵՏ»:*

**Կաթողիկե եկեղեցու արեւմտյան ճակատի արձանագրությունները**

26. Մուտքի բարավորին 6 տողով փորագրված է.

ԵՍ ՄԱՄԱ ԴՈՒՍՏՐ | ՎԱՂՏԱՆԿԱ Տ(ԵԱՌ)Ն ՀԱԹԵՐՔՈՑ ԵՏՈՒ ՔԻ|Մ ՀԱՅՐԵՆԻ ՊԱՉՈՅԳԱ-ՐԱԿ ԵՒ ՍՊԱՍՔ ԵԿԵՂԵՑՈՅՍ | ՅՈՍԿՈ ԵՒ ՅԱՐԾԱԹՈՒ Ս(ՈՒՐ)Բ ԿԱԹՈՂԻԿԷՍ, ՅԱՌԱՋ-ՆՈՐԴՈՒ|ԹԵ(ԱՆ) Տ(ԵԱՌ)Ն ԳՐԻԳՈՐԻՍԻ ԵՒ Ս(ՈՒՐ)Բ ԵՂԲԱՐՔՍ: ՍԱՀՄԱՆԵՑԻՆ ՔՏԱՐՆ-(ԻՆ) Ս(ՈՒՐ)Բ | ՅԱԿՈԲԱ ԵՒ ՔԿԻՐԱԿԷՆ ՔԱ-ՄԵՆ ԵԿԵՂԵՑԻՔՍ ԱՆԽԱՓԱՆ: ՈՂ(1241) ԹՎ-(ԻՆ):

*Հրատ. «Դիվան...», էջ 199-200:*

27. Նույն (N26) բարավորից դուրս, վերին աջ անկյունում 5 կարճ տողով փորագրված է.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ | ԽՈՐԻՇ|ԱՀ|Ի ՀՈԳ|ՈՅՆ:

*Հրատ. «Դիվան...», էջ 201-202:*

28. Որմնասյան եւ որմնախորշի միջեւ 20 տողով փորագրված է.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ Ե Մ ՄԱ ... |ՄՔԱՆ ԴՈՒՍՏՐ............ | ...........ԱՆՑ...... | ....Ա ԴԱ-ԴԷ........... | ....Ի ՄՀԱՅՐԵՆԻՔՆ Ջ...... | ..... ԻՄ ԵՂԲԱՐՔՆ Ե..ԻՆ ԻՆՁ... | ԿԱՄԱՒՔ ՏՈՒԻ Ս(ՈՒՐ)Բ ԿԱԹՈՒՂԻԿԷՍ: Ա: (1) | ՉՈՐԵՑԱՅ ՀՈՂ:Ի: (20) ՇԻՆԱԿԱՆ ՏՈՒՆ, :Ա: (1) | ՔԱՂԱՑ Ս... ԱՆԱ ԳԱՒՏԻ(՞) ԱՐԾԱԹԻ Տ|ՈՒՓ ԵՒ ՏԱՌԱ-ՇՈՒՐՋԱՌ ՊԱՏՈՒԱԿԱՆ, | ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵ-(ԱՄԲ)Ս Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԻՍԻ, ՈՐԴ|ԻՈ՝ ՎԱՍԱԿԱ ԵՒ ՍՈՔԱ ԵՏՈՒՆ ԻՆՁ | Գ(3) ԱՒՐ ՔԱՄԵՆԱՅՆ ԵԿԵՂԵՑԻՔՍ ՔՆՈՐ | ԿԻՐԱԿԷՆ ԵՒ ՔՀԵՏ .....ՐՄՆ ԿԱՏ|ԱՐԻՉՔՆ ԳՐՈՑՍ ԱՒՐՀՆԵԱԼ ԵՂԻ-ՅԻՆ ՅԱ(ՍՏՈՒԾՈ)Յ | ԵՒ ՈՎ ԽԱՓԱՆԷ ՅԱՒՏԱ-ՐԱՑ ԿԱՄ Ի Ծ|ԱՆԱՒԹԻՑ ՆՁՈՎԵԱԼ ԵՂԻՑԻՆ | :ՅԺԸ: (319) ՀԱՅՐԱՊԵՏԱՅՆ, ՄԱՄՆ ԵՒ ԲԱԺԻՆ ԸՆԴ ԿԱՅԵՆԻ ԵՒ ԸՆԴ ՅՈՒԴԱՒ ԵՂԻՑԻ: | Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՍԱՐԳՍԻ:

*Հրատ. «Դիվան...», էջ 200:*

29. Նախորդից (N28) ցած, 13 տողով փորագրված է.

ԱՆՈՒԱՄԲՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ԳՐԻԳՈՐ ՈՐ-ԴԻ Վ|ԱՍԱԿԱ, ՈՐ ՄԵԾ ՅՈՒՍՈՎ ՏՈՒԻ Ի | ԴԱԴԻ ԳԵՐԵՁՄԱՆՍ: Դ: (4) ՏՈՒՆ ՇԻ|ՆԱԿԱՆ Վ(ԱՍ)Ն ՀՈԳՈ ԻՄՈ ՅԱՌԱՋՆՈՐԴ|ՈՒԹ(ԵԱ)Ն Տ(ԵԱՌ)Ն ԳՐԻԳՈՐԻՍԻ ԵՒ ՍՈՔԱ | ՏՈՒԻՆ ԻՆՁ ՔՏԱՐՆ ՍՐԲՈՅՆ ԳՐ|ԻԳՈՐԻ ՔԱՄԵՆԱՅՆ ԵԿԵՂԵ-ՑԻՔՍ: | ԱՐԴ՝ ՈՎ ԽԱՓԱՆԻ ՅԱՌԱՋՆՈՐ|ԴԱՑ ՔԻՄ ԺԱՄՆ ԿԱՄ ՅԱՒԱԳԱ|Ց ՅԻՄՈՑ ԿԱՄ ՅԱՒ-ՏԱՐԱՑ ՔՇ|ԻՆԱԿԱՆ ՅԵՏ ԱՌՆ(Ե)ԼՈՎ ԻՄ ՄԵՂ|ԱՑՍ ՊԱՐՏԱԿԱՆ Է ԵՒ ՄԱՄՆ ՆՈՐԱ | ԸՆԴ ՅՈՒԴԱՅԻ ԵՂԻՑԻ: ՈՀԳ (1224):



Կաթողիկե եկեղեցու արեւմտյան ճակատի արձանագրություններ պարունակող հատվածի գծանկարը

*Հրատ. «Դիվան...», էջ 201:*
*Ծանոթ. Գրչանկարը աղավաղված է:*

30. Նախորդից (N28) ցած, 9 տողով, որն արդեն կիսաեղծ փորագրված է.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ՀԱՍԱՆ ՈՐԴԻ ԳՐԻԳՈՐԱ | ...... ՈՒՏՆ ԻՒՐ ՍԱՀՄԱՆՈՎՆ | ....... ՀԱՒՐ ՀՈԳՈՅՆ ԵՒ ԲՆԱԿԻՉՔ | .......ՂԵՅԻ ՊԱՏԱՐԱԳ ԻՄ ՀԱՒ|ՐՆ......ՅԻՆ ՅԵՏ Ս(ՈՒՐ)Բ ԳՐԻԳՈՐԻՆ | ......... ՍԱՀՄԱՆ | ........... ԻՄ ՀԱՒՐ ՀՈԳ | ....... ԱՅՍ .... ՈՒԹ | ....... Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՒ Յ...... | ......Գ

*Հրատ. «Դիվան...», էջ 201:*
*Ծանոթ. Գրչությամբ եւ ժամանակով մոտ է նախորդներին:*

31. Մուտքի աջ եզրում, կիսաշրջան ելուստով որմնասյան վրա՝ 21, 6 եւ 8 կարճ տողով հաջորդաբար փորագրված են երեք արձանագրություն: I արձանագրություն (21 տողով).

ՋԵՉՈ... | ՅԱՅՍ Կ|ԱԹՈՂ(Ի)Կ(Ե)ՈՒ|ՄՍ Ք(ՐԻՍՏՈ)Ս ՊԱՏ|ԱՐԱԳԻ...Ն | Ո ՄԱՄՆԱԿ|ԻՑ ԵՂԻՅԻ | Տ(Է)Ր Ս(ԱՐ)Գ(ԻՍ), ՈՐ ԵՏ | Վ(Ա)Ս(Ն) ԻՒՐ ՀՈԳ|ՈՅ ՓՐԿՈՒ|ԹԵ(ԱՆ) ՋԾ(Ա)ՀԱՆ|Ա ՈՐԴԻ|ՔՆ ԻՒՐ ՀԱՅՐ|ԵՆԱՒՔՆ ՅԻՒ|Ր ՀԱԼԱԼՆ | ՋԾԻՆԵԱՑ | ՈՎ ՋՅԻԾԱՏԱ|ԿԵՍ ԽԱՓԱՆԷ | ԴԱՏԻ ՅԱ(ՍՏՈՒԾՈ)Յ | :ԹՎ(ԻՆ): Չ:|Ձ:Թ: (1340):

*Հրատ. «Դիվան...», էջ 207:*

32. II արձանագրություն (6 տողով).

Ի ՏԱՐՈՒ|ՄՆ :Ա: (1) ԺԱ|Մ ԱՒԱԳ Ե | ԿԱՏԱՐԻ(՞) | ՋՐԱ(ԻՐ)ՀԵՑ | Ա(ՍՏՈՒ)Ծ(ՈՎ) ՉՂԸ (1349):

*Հրատ. «Դիվան...», էջ 207:*

33. III արձանագրություն (8 տողով).

ՋՄԽԻԹԱՐ|Ա ԱՆՑԱՆԱՔՆ | ԹՈՂՈՒ | ԱՒԱԳ Հ(ԻՆ)ԳԾ(ԱԲ)Թ(Ի)|Ն Ա(1) ԺԱՄ՝ Մ|ԱՄՔԱՆԻՆ, ԱՄ|ՈՒՄՆՈ՝| Ս(Մ)ՊԱՏԱ:

*Հրատ. «Դիվան...», էջ 207:*
*Ծանոթ. Հրապարակվել է առանց վերջին 3 տողի:*

34. Մուտքից վեր, ձախ անկյունում 3 տողով փորագրված է.

ՋՈՒՍՏԱ ՎԱՐԴ(Ա)ՆԻ ՈՐԴԻ | ԳՐԻԳ(Ո)Ր ԿԱՋՄՈՂ Ս(ՈՒՐ)Բ ՆԾ|ԱՆԻՍ Յ(Ի)ՇԵԼ ԱՂ(Ա)Չ(Ե)Մ Ի Ք(ՐԻՍՏՈ)Ս

*Հրատ. «Դիվան...», էջ 210:*

35. Նախորդից (N34) ներքեւ, նույն մուտքի ձախ անկյունաքարի արեւմտահայաց երեսին եւս 3

պողով արձանագրված է եղել.

ՆԿ(Ա)ՐՈՂ Մ(ՈՒՐ)Բ | ՆՇԱՆԱՑՍ | ՋՊՕՂ-(Ո)Ս Յ(Ի)Շ(ԵՑԷ)Ք:

*Աղբյ. «Դիվան...», էջ 210:*

*Ծանոթ. Ներկայում արձանագիր քարերը տեղում չեն:*

### Կաթողիկե եկեղեցու ներսի արձանագրությունները

36. Հյուսիս-արեւելյան ավանդատան արեւմըտահայաց երեսին, սվաղի շերտի վրա, 12 տողով փորագրված է.

ՇՆՈՐՀԻՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ԷԱՉԻ ՈՐԴԻ ԱՄ|ԻՐ ՀԱ......ՈՒ ՄԵԾ ԻՇԽԱՆԻՆ ՊՌՈՇԱ ԵՒ ՄԱ|ՅՐՍ ԻՄ ԹԱ ՃԵ(Ր)Ն ՄԻԱԲԱՆԵՑԱՔ Մ(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ ԵՒ ՏՎ|ԱՔ ՋՀ ԱՐ ԳՆ..... ՀՈՂՆ Ի ԽԱՉԵՆԱԳԵՏԻ, ԶԼ|ճՈՑ ԿԱ........... Մ(ՈՒՐ)Բ ԿԱԹՈՂԻԿԷՍ Տ(Է)Ր Ա|Թ ԱՆԱՍ ԵՒ ՄԻԱԲԱՆՔՍ ՏՎԻՆ: Բ: (2) ԱԻՐ ՊԱՏԱՐԱԳ ԶԱ-ՄԷՆ | ԵԿԵՂԵՑԻՔՍ ԶՏԱՒՆԻՆ ԶԱԻՐԱՎԱՐԻՆ ԵՒ ՏՂԷՍ ԻՄ ԱՄԻՐ Վ|ԱՍԱՆ ԵՒ ԿՈՂԱԿՑԻՆ՝ ԹԱԾԵՐԻՆ, ԱՐԴ՝ ՈՔ ԶՄԵՐ ՏՎԱԾՆ | ԽԼԷ ԿԱՄ ԺԱՄՆ ԽԱՓԱՆԷ ՅԺԸ (318) ՀԱՅՐԱՊԵ|ՏԱՅՆ ՆԶՈՎԱԾ Է , ՄԱՄՆ ԸՆԴ ՅՈՒԴԱԻՆ ԵՒ ԿԱՄ Յ-.... ԸՆԴ ԱՐԻՈՍԻ ԵՂԻՑԻ, Ի ԹՎ(ԻՆ) ՉԽ (1291):

*Աղբյ. «Դիվան...», էջ 214:*

*Ծանոթ. Հրատարակումը թերի է:*

37. Նախորդ արձանագրությունից ներքեւ, դարձյալ սվաղի վրա, 11 տողով փորագրված է.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ՍՄՊԱՏ ԻՇԽԱՆ | ՈՐԴԻ ՄԵԾԻՆ՝ ԼԻՊԱՐՏԻ ՄԻԱԲԱՆԵՑ|Ա Մ(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ՝ ԴԱԴՈՒ ՎԱՆԱՑ, ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹ(ԵԱՄ)Բ Տ(Է)Ր ԱԹԱՆԱՍ|Ի ԵՒ ԳՆԵՑԻ ՋԽՌՆՏԱՇԱՆՑ ԱՅԳԻՆ ԵՒ ՅԵՂԵԳԻՍ ՋԻՄ ԳՆԱԾ | ՋԻԹԱՀԱՆՔՆ ԵՒ ԱՅԼ ԱՐԴԻՒՆՔ ԸՍՏ ԿԱՐԻ ԵՒ ՋԿԱՆԱՆՉԱԻՈՐ | [ԱՆ] ԳԵՂՆ, ԱՅԼՆ ՈՐ ՀԱՍՏԱՏԵՑԻ ԱՄԵՆ ԽԱՐՋՈՎՆ ԱՆՉԱՐ ԵՒ ԵՏ|ՈՒ Մ(ՈՒՐ)Բ ԿԱԹՈՂԻԿԷՍ Տ(Է)Ր ԱԹԱՆԱՍ ԵՒ ԱՅԼ ՄԻԱԲԱՆ|ՔՍ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ ՄԵՋ ՋԱՏԿԻՆ ՅԱՐՈՒԹԵԱՆ | ԿԻՐԱԿԻ ԱԻՐՆ ՋԱՄԷՆ ԵԿԵՂԵՑԻՔՍ: ԱՐԴ ՈՎ ԽԼ|Է ԶՄԵՐ ՏՈՒԱԾՆ ԿԱՄ ԶԺԱՄՆ ԽԱՓԱՆԷ: ՅԺԸ: (318) | ՀԱՅՐԱՊԵՏԱՅՆ ՆԶՈՎԱԾ ԵՂԻՑԻ: ԹԻՒՆ: ՉԺԴ(1265):

*Աղբյ. «Դիվան...», էջ 206:*

*Ծանոթ. Վերջին տողը, բացի «հայրապետացն» բառից, ոչ թե փորագրված է, այլ կարմիր ներկով է գրված:*

38. Եկեղեցու ներսում, հյուսիսային պատին, սվաղի շերտի վրա, կարմիր ներկով 7 տողով գրված է.

.... ՉԺԲ (1263) | ՅԱՆՈՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ՆԵՐՍ... | ՄԻԱՅԲԱՆԵՑԱ Մ(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ | Տ(Է)Ր ԱԹԱՆԱՍ ԵՒ ՄԻԱԲԱՆՔՍ ՀԱՍ|ՏԱՏԵՑԱՆ ՋՏԱՒՆ Մ(ՈՒՐ)Բ ՔԱՀԱՆԱՅԻ|ՑՆ ՄԻ ԱԻՐ ՊԱՏԱՐԱԳ ՅՈՎԱՆԻՍԻ՝ Յ|ԵԼԻՑ ԻՄՈՑ, ԻՆՉ, ԿԱՏԱՐԻՉՔՆ Ա(ԻՐ)ՀՆԻՆ ՅԱ(ՍՏՈՒԾՈ)Յ:

*Աղբյ. «Դիվան...», էջ 205:*

*Ծանոթ. Արձանագրությունը մեզ հուշում է, որ եկեղեցու հյուսիսային մուտքն առնվազն ՉԺԲ (1263) թվին փակված է եղել, քանի որ ներկա արձանագրության սվաղի շերտը շարունակվում է նաեւ մուտքի փակված մակերեսին (գրչանկարը տես գրքի 98-րդ էջում):*

39. Կաթողիկե եկեղեցու ավագ խորանի ներսում, հյուսիս-արեւմտահայաց կորության մեջ, սվաղի շերտի վրա, 9 տողով փորագրված է.

ԱԻԳՆՈՒԹ(ԵԱՄ)Բ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ ՄԱՄՔԱՆ, ԱՄՈՒՍԻՆ՝ ԱՐԻԱԿԱՆ|ԻՆ ՀԱՍԱՆԱ ԵՒ ՈՐԴԻ ՄԵՐ ԳՐ(Ի)Գ(Ո)Ր ՏԵՐՔ ԳՈԼՈՎ ՏԵՂՈՅՍ Վ|ԱՅՐԵՆԱԻՔ ԵՒ ՄԵՐ ՊԱՐՈՆԷՔՆ ՀԱՍՏԱՏԵՑԻՆ Ի ՉԺԶ (1267) ԹՎԻՆ. | ՏՎԱՔ Ի Մ(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ ՋԾՈՎԱՏԵՂ, ՋՋԱՋՈՒՌԱՆՑ, ՋՋՈԼԲԷԿ|ԱՆՑ ԵՒ ԳՐ(Ի)Գ(Ո)Ր ՏՎԻ ՋՋԱԳՈՒՆԱՆՑ ՀՈՂԵՐՆ ԶՄԵՐ ԲԱԺԻՆ ԻՒՐ | ՈՐԵՑՈՎՆ, ՈՐԴԻ ԻՄ Տ(Է)Ր Մ(ԱՐ)Գ(ԻՍ) ԵՒ ՄԻԱԲԱՆՔ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ Մ(ՈՒՐ)Բ ԸՍՏ|ԵՓԱՆՈՍԻ ՏԱՒՆԻՆ ԺԱՄՆ ՈՐ ԼԻՆԻ ԻՄ ՄԱՒՐՆ ԵՒ ԱՄՈՒՍՆՈ ԻՄ ԱՍՓ|ԻՆ, ԹԷ ՈՔ Զ[Ժ]ԺԱՄՆ ԽԱՓԱՆԷ ԿԱՄ ՋԸՆԾԷՄՆ ԵՏ ՈՒՆԷ ԴԱՏԻ ՅԱ(ՍՏՈՒԾՈ)Յ: | ՄՈԽՐԱԲԱՔՍ ՄԵՐ ԲԱԺԻՆ ՏՎԱՔ Թ(ԻՆ) ՉԿԱ (1312):

*Աղբյ. «Դիվան...», էջ 206-207:*

*Ծանոթ. Թույլ են տրվել էական անճշտություններ: Թվականն ընթերցվել է ՉԾԶ (1307), պետք է լինի ՉԺԶ(1267): 9-րդ՝ վերջին տողը միանգամայն այլ արձանագրություն է, որն առանձնանում է ինչպես բովանդակությամբ, այնպես էլ թվականով:*

40. Եկեղեցու հարավ-արեւմտյան ավանդատան հյուսիսային պատի հյուսիսահայաց ճակատի սվաղի շերտի վրա, 8 տողով գրված է.

............ ԻՄ ԵՂ|ԻՍԱՑ ......... Մ(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ ՅԻՇԽ|ԱՆՈՒԹ(ԵԱՄԲ) ............ ՈՒԹԵ ՈՐԴՈՑ | ....................Զ|ԱՅԳԻՆ...............ԾՔ | ԻՄ ԵՒ Մ........ԱԻԹ...ԵՏ | ՋԱՏ............ ԽԱՓ(Ա)ՆԷ ԴԱՏԻ Ի ՏԷ | ..........: Ե:

*Աղբյ. Առաջին անգամ:*

*Ծանոթ. Վերջին տողի՝Ե տառը թվականի միավորն է, կնքադրյալ հատվածները եղծված են:*

41. Կաթողիկե եկեղեցու հարավային պատին պահպանված որմնանկարների վերնամասում, սվաղի շերտի վրա ճիշտ լուսամուտի փակ եւ սպիտակ ներկով, 3 տողով գրված է.

ԵՍ ՄԱՄԱՑ ...... ԻՄ | ՋՔԵԶ ԵՒ ԳՈՐԾԱԿԻՑ ԵՏ ՔԵԶ | Ի ՄԱՆԿՈՒԹԵՆԷ: Ի ԹՎ(ԻՆ): ՉԽԶ: (1297):

*Աղբյ. Առաջին անգամ:*

42. Նախորդից (N41) ոչ հեռու, համեմատաբար լավ պահպանված որմնանկարի գլխավերեւում 2 տողով արձանագրված է.

Մ(ՈՒՐ)Բ ՆԻԿՈՂԱՅՈՍ ՀԱ|ՅՐԱՊԵՏՆ:

*Աղբյ. Առաջին անգամ:*

**Գմբեթավոր փոքր եկեղեցու արձանագրությունները**

43. Խաչքար (155x74 սմ), ագուցված է եկեղեցու արեւմտյան ճակատում, գեղաքանդակ է, ունի 5 տող արձանագրություն.

Թ(ՎԻՆ) ՈԼ (1181), | ԵՍ ԳՐԻԳՈՐ ՔՈՒԷՐՈՐԴԻ ԿԱ|ՆԳՆԵՑԻ ՋԽԱՉՍ ԵՂԲԱՒՐ ԻՄՈ ԳԻՈ|ՐԳԱ, ՈՐՔ ԵՐԿՐՊԱԳԷՔ ՅԱՂԱԻԹՍ | ՅԻՇԵՍՋԻՔ:

*Հրատ. «Դիվան...», էջ 211:*

*Ծանոթ. Գրչանկարը աղավաղված է:*

44. Խաչքար. ագուցված է եկեղեցու արեւմտյան ճակատում, մուտքի հյուսիսային կողմում, ճակատամասով դեպի արեւմուտք, ունի 6 տող արձանագրություն.

Թ(ՎԻՆ) ՈԼԹ (1190), ԵՍ Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԷՍ | ԱՌԱՋՆՈՐԴ Մ(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ | ԿԱՆԳՆԵՑԻ ՋԽԱՉՍ ԵՂԲ|ԱՒՐ ԻՄՈ՝ ՍՄՊԱՏԱ, ՈՐԴՈ՝| ՎԱԽՏԱՆԳԱ, ՈՐՔ ԵՐԿՐՊԱԳ|ԷՔ, ՅԱՂԱԻԹՍ ՅԻՇԵՑԷՔ:

*Հրատ. Առաջին անգամ:*

45. Խաչքար (115x57 սմ). ագուցված է եկեղեցու արեւմտյան ճակատում, մուտքի հարավային կողմում, գեղաքանդակ է, ունի 8 տող արձանագրություն.

ԹԻՒՆ: ՈՒԲ: (1173) ԷՐ. ԵՍ ՀԱՍԱՆ՝ ՈՒՔԱՆԱՆՑ ԹՈՌՆՍ | ԿԱՆԳՆԵՑԻ ՋՍՈՒՐԲ ՆՇ|ԱՆՍ ԻՄ ԿԵՆԱՑՍ ԲԱՐԷԽ|ԱԻՍ ԵՒ ԻՄ ՀԱՒՐՆ ՀՈԳՈ|ՅՆ ՅԻՇԱՏԱԿ, ՈՐՔ | ԵՐԿՐՊԱԳԷՔ ՅԱՂԱԻ|ԹՍ ՅԻՇԵՍՑԷՔ:

*Հրատ. Առաջին անգամ:*

46. Խաչքար (105x59 սմ). նախորդից քիչ հարավ, նույն ճակատում, գեղաքանդակ, ունի 6 տող կիսաեղծ արձանագրություն.

ԹԻՒՆ : ՈՒԱ: (1172) Է|Ր. ԵՍ ԱՂԲԱՑՐ ԿԱՆԳՆ|ԵՑԻ ՋԽԱՉՍ ՀԱՒՐ ԻՄ | ՎԱԽՏԱՆԳԱ ... ՈՐՔ ԵՐ.. | ....ՅԱՂԱԻԹՍ | ՅԻՇԵՑԷՔ :

*Հրատ. Առաջին անգամ:*

47. Խաչաքանդակ. գմբեթավոր փոքր եկեղեցու արեւմտյան ճակատում, խաչի շուրջ, 5 կարճ տողերով փորագրված է.

[Է] ԿԱ(Ն)ԳՆԵՑԱՒ | Մ(ՈՒՐ)Բ ԽԱՉՍ ԲԱՐԷԽԱ(Ի)Ս | ՅՈՀ|ԱՆԻՍԻ:

*Հրատ. «Դիվան...», էջ 212:*

48. Խաչաքանդակ. նախորդից (N47) ոչ հեռու.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՅԻՇԵԱՑ | ՋԼԻՊԱՐԻ|Տ(Ն) ԱՄԷՆ:

*Հրատ. Առաջին անգամ:*

49. Խաչաքանդակ, որից վեր եռատող փորագրված է.

ՍԱՐԳԻՍ|Ա Է ԽԱ|ՉՍ:

*Հրատ. «Դիվան...», էջ 212:*

50. Խաչաքանդակ, ստորին մասում ունի եռատող փորագրություն.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄ|Ի ՇԱՏԲԱ|ՐՈՑ ԱՄ(ԷՆ):

*Հրատ. «Դիվան...», էջ 211:*

51. Խաչքար (118x56 սմ). ագուցված է եկեղեցու արեւմտյան ճակատում, գեղաքանդակ է, ունի քառատող կիսաեղծ արձանագրություն.

Ի Թ(ՎԻՆ) ՈՒԸ(1179), | ԵՍ ԴԱՒԻԹ ՈՐ ԴԻ ... ԿԱՆԳՆԵ|ՑԻ ՋԽ|ԱՉՍ ԻՄ ՀԱՒՐ....

*Հրատ. Առաջին անգամ:*

52. Խաչաքանդակ. եկեղեցու արեւմտյան ճակատի ձախ եզրին 7 կարճ տողով.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ | ՈՂ|ՈՐ|ՄԻ | Վ|ԱՐՀ|ԱՄԱ:

*Հրատ. «Դիվան...», էջ 212:*

53. Խաչաքանդակ. նույն ճակատին. շուրջը 5 տողով փորագրված է.

ԿԱ(Ն)ԳՆ|ԵՑԱՒ | Մ(ՈՒՐ)Բ ԽԱՉ|Ս Շ(Ի)Ր(ՈՒ)|ԱՆԱ:

*Հրատ. «Դիվան...», էջ 212:*

54. Խաչաքանդակ. գմբեթավոր փոքր եկեղեցու հյուսիսային ճակատի արեւմտյան անկյան մոտ (բեկոր է): Նվիրատվական արձանագրությունից պահպանվել են 2 տողերը.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ| ԱՐ.......

*Հրատ. Առաջին անգամ:*

55. Խաչաքանդակ, գմբեթավոր փոքր եկեղեցու արեւմտյան ճակատին: Կից ունի եռատող արձանագրություն.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂ|ՈՐՄԻ ԽՈՅԱ|ԴԵՂԱ:

*Հրատ. «Դիվան...», էջ 211, N 743:*

56. Խաչքար. ագուցված է գմբեթավոր փոքր եկեղեցու հյուսիսային ճակատում (արտաքուստ): Ունի 7 տող արձանագրություն.

ԹԻՒ: ՈԼ (1181), | ԵՍ ՍԱՐԳԻՍ ՈՐԴ|Ի ԱՇՈՏԱ ԿԱՆ|ԳՆԵՑԻ ՋԽԱՉՍ Ի ՓՐԿՈՒԹԻ(ՒՆ) ՀՈԳՈ | ՀԱՆԿԱՆ ԻՄՈ, ՈՐՔ ԵՐԿՐՊԱԳԷՔ | ՅԱՂԱԻԹՍ ՅԻՇԵՍՋԻՔ ԵՒ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՋՋ|ԵՋ ՅԻՇԵԱ, ԱՄԷՆ:

*Հրատ. «Դիվան...», էջ 215:*

*Ծանոթ. Արձանագրության միակ ընթերցողն է եղել Մ. Տեր-Մովսիսյանը (էջ 96բ), իսկ «Դիվանի» կազմողներն այն դրել են «կորած, անվերծանելի...» բաժնում եւ բավարարվել վերջինիս անփոփոխ վերահրատարակմամբ (գրչանկարը՝ էջ 92):*

57. Խաչքար. ագուցված է գմբեթավոր փոքր եկեղեցու հյուսիսակողմի ավանդատան մեջ, արեւելյան ճակատից բացված լուսամուտի փակ, երեսով դեպի արեւմուտք: Սրա վրա 6 տողով փորագրված արձանագրության մեծ մասն արդեն խսպառ հողմնահար է ու անընթեռնելի:

Թ(ՎԻՆ) ՈԼ|Ա (1182), | ԵՍ ՀԱՍԱՆ ....ԿԱ | ՆԳՆԵՑ......Ր ԻՄՈՑ | ............ | ......Ս ՅԻՇԵՑԷՔ:

*Հրատ. Առաջին անգամ:*

*Ծանոթ. Կարծում ենք սա Մ. Տեր-Մովսիսյանի հրատարակած մի արձանագրությունն է (էջ 96բ), վերահրատարակված «Դիվան...»-ում (էջ 215): Միայն թե սպասանագիր չէ եւ գավթի մեջ չէ, ինչպես նշել է հրատարակիչը (Թ. ՈԼԱ, ՅԻՇԵՑԷՔ: ԵՍՀԱՍԱՆ ԿԱՆԳՆԵՑԻ ՋԽԱՉ ԵՂԲԱՒՐ ԻՄՈ ՎԱՐՀԱՄԱ, ՅԱՂԱԻԹՍ): Գրչանկարը՝ էջ 92:*

### Տաճարի, «Սրահ ու փներ»-ի եւ ժամատան արձանագրությունները

58. Տաճարի (իշխանական դահլիճ) շինարարական 6 տողանոց արձանագրությունը փորագրված է անկանոն եզրագծով, բայց հղկված մակերեսով քարին, ագուցված շենքի հարավային ճակատում.

Թ(ՎԻՆ) ՈԿ(1211), ԵՍ ԳՐԻԳՈՐ|ԷՍ ՈՐԴԻ ՀԱՍԱՆ | ՇԻՆԵՑԻ ՋՏԱԾ|ԱՐՍ ՅԻՇԱՏԱԿ | ՀՈԳՈ ԻՄՈ ՅԱՂ|ԱԻԹՍ ՅԻՇԵՑԷՔ:

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 212:*

***Ծանոթ.*** *Արձանագրությունը առաջինը հրատարակել է Մ. Տեր-Մովսիսյանը (ձեռ. աշխ., էջ 90ա), այնուհետեւ աղավաղված գրչանկարով վերահրատարակել են «Դիվան...»-ի կազմողները:*

59. Սրահի եւ փների (գրատո՞ն) շինարարական արձանագրությունը փորագրված է կամարաձեւ, 5 տողով՝ մուտքի բարավորին.

ՅՈՒՍՈՎՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԷՍ ԵՒ Տ(Է)Ր ԱԹԱՆԱՍ ԵՂԲԷՐ ԻՄ, ՈՐԴԻՔ՝ ՀԱՍԱՆ ՊԱՐՈՆԻ, ՇԻՆԵՑԱՔ ՋՏՆԵՐ | ԵՍ ԵՒ ՋՍՐԱՀՍ ԵՒ ԱՐԴ՝ ԱՂԵՐՍԻՒ ՀԱՅՑԵՄ, ՈՐ ՋԿՆԻ ՄԵՐ ՏԱՂԱԻԱՐ Ի ԱՍՏ ՅԻՇԵՍՅԷ ՋՄԵՋ ՅՈՂՈՐՄԱԾ|Ն Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԸՆԴ ՆՄԻՆ ՀԱՒՐԵՂԲԱՅՐՆ ՄԵՐ Տ(Է)Ր Գ(ՐԻԳՈ)Ր ՆԱԵՒ ՋԵՂԲԱՐՄՆ ՄԵՐ ԵՒ ՋԺԱՌԱՆԳՈՐՔ ԱՅՍՄ ՏԱ|ՆՄ՝ ՋՏՊԷԼՆ ԵՒ ՋՇԱԼՈՒԱՅՆ ԵՒ ՋԳՐԻԳ(ՈՐՆ) ՊԱՀԵՍՅԷ Ք(ՐԻՍՏՈ)Ս ԸՆԴ ԵՐԿԱՅՆ ԱՒՈՒՐ|Ս ԵՒ ՈՎ ՋՄԵՋ ՅԻՇԷ, ԻՆՔՆ ԼԻՑԻ ՅԻՇԵԼ ԱՌԱՋ Ի Ք(ՐԻՍՏՈՍ)Ի:



***Հրատ.*** *Հակոբյան Ա. Հ., Սիմոնյան Հ. Ե., Դադի վանքի նորահայտ արձանագրությունը եւ Ծակերի տեղադրության հարցը, «ՊԲՀ» 1998, N1-2, էջ 227-231:*

60. Տապանաքար. ժամատան ներսում, ուղղանկյունաձեւ (210x67x17սմ): Աջ եզրը ամբողջ երկարությամբ փշրված է, սկզբի 2 տողերն արդեն գրեթե եղծված: Արձանագրությունը փորագրված է 15 տողով:

ԱՅՍ Է ՀԱՆ(Գ)... | ԵՒ .... ԵՐԱՆ|ԵԱԼՆ ՀԱՂԲԱՏ|Ա ԵՒ ԴԱԴԷԻ ԵՒ Խ|ԱԴԱԻ ԱԹՈՌԱ|ԿԱԼՆ Տ(Է)Ր ՅՈՀԱ|ՆԷՍ, ԵՂԲԱՅՐ Ք|ԱՋ ՋԱԻՐԱԿԱ|ՆԻՆ ՀԱՍԱՆԱ՛ | ԱՐՔԱՅՆՈՐՀ Ի|ՇԽԱՆԻՆ, ՀԱԻՐՆ՝ | ՋԻՆՎՈՐԻՆ ԳՐԻ|ԳՈՐՈ, ԱՂԱՉԵՄ | ՅԻՇԵՔ Ի ԲԱՐ ԻՆ , | ԹՎ(ԻՆ) ՉԾԴ (1305):

***Ծանոթ.*** *Արձանագրությունը հրատարակել են Մ. Բարխուդարյանցը (ձեռ. աշխ. էջ 206) եւ Մ. Տեր-Մովսիսյանը (ձեռ. աշխ. էջ 96բ): «Դիվան...»-ի կազմողները այն դրել են «կորած, անվերծանելի եւ ծածկված ավերակների ու աղբակույտերի տակ» բաժնում (էջ 214) եւ բավարարվել նախկին ընթերցման վերահրատարակմամբ: Հրատարակիչները բաց են թողել «Հաղբատա» տեղանունը:*

61. Ժամատան հարավային ճակատում, մուտքի մոտ, հղկված, բայց անկանոն եզրերով քարին 8 տող.

Թ(ՎԻՆ) ՈՀԳ (1224), | ԵՍ Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԻՍ ԱՌԱՋՆՈՐԴ Ս(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ, ՈՐԴԻ | ՆԱՀԱՏԱԿԻՆ ՎԱՍ|ԱԿԱՅ ՇԻՆԵՑԻ Ջ|ԺԱՄԱՏՈՒՆՍ ՅԻ|ՇԱՏԱԿ ՀՈԳՈՅ | ԻՄՈՅ, ՅԱՂԱԻ(ԹՍ):



***Հրատ.*** *«Դիվան...», էջ 210:*

***Ծանոթ.*** *Արձանագրության վերջնամասի հայրենի բանաձեւի փորագրությունը թերի է թողնված:*

62. Խաչքար. ագուցված է ժամատան ներսում, երեսով դեպի արեւմուտք: Արձանագրությունը փորագրված է խաչաթեւերի շուրջ 11 տողով.

Թ(ՎԻՆ) ՈԽԸ (1199), | ԵՍ ՅՈՎԱ|ՆՆԵՍ ԵՋ|ՆԱՐ|ԱԾ ՈՐԴԻ ԿԱ|ՆԳՆԵՑԻ | ՋԽԱՉՍ Փ|ՐԿՈՒ|ԹԻՒ|Ն ՀՈԳՈՅ ՅԱՂԱԻԹ|Ս ՅԻՇԵՑԷՔ:

***Հրատ.*** *«Դիվան», էջ 211:*

63. Ժամատան ներսում, արեւելյան պատի տակ, երեսով դեպի արեւմուտք ագուցված խաչքարի վրա՝ 10 տող արձանագրություն.

ԹԻ(ՎՆ) | ՈՁԲ (1233), | ԵՍ Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԻՍ ՈՐԴԻ ՆԱ|ՀԱՏԱԿԻՆ ՎԱՍԱԿԱՅ ՅԱ|ՌԱՋՆՈՐԴ Ս(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ ԴԱԴՈՒԻ ՎԱՆԱՅ ԿԱ(Ն)ԳՆԵՅ|Ի ՋԽԱՉՍ ՄԱՀԱՆԻՆ, ՈՐՔ | ԸՆԹԵՌՆՈՅՔ ՅԱՂԱԻԹՍ Յ|(Ի)ՇԵՑԷՔ | Ի Ք(ՐԻՍՏՈ)Ս:

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 210:*

***Ծանոթ.*** *Բաց են թողնված 1-2 եւ 10-րդ տողերը, գրչանկարի աղավաղումներն ակնհայտ են:*



64. Տապանաքար. ժամատան ներսում, ուղղանկյունաձեւ (222x70 սմ) մեջտեղից ճաքված է, ունի 9 տող արձանագրություն.

ԱՅՍ Է ՀԱՆԳԻ|ՍՏ ՄԱՄՔԱՆԻ|Ն, ԱՄՈՒՄՆՈ՝ Հ|ԱՍՄՆԱ, ԴՍՏԵ|Ր՝ ՔՐԴԻՆ ԵՒ ԽՈՐ|ԻՇԱՀԻ, ՄԱՒՐՆ՝ | ԳՐ(Ի)ԳՈՐՈ, ԱՂԱ|ՉԵՄ ՅԻՇԵՑ(Է)Ք | ԱՌ ԹՎ(ԻՆ) ՉԾԵ (1306):

**Հրատ.** *«Դիվան...», էջ 214-219:*

**Ծանոթ.** *Տապանագրի նախկին հրատարակիչներն են Մ. Բարխուդարյանցը (էջ 206) եւ Մ. Տէր-Մովսիսյանը (նշվ. աշխ. էջ 96ա): «Դիվան...»-ի կազմողներն այն դրել են «կորած, անվերծանելի ..» բաժնում ու բավարարվել վերահրատարակմամբ (էջ 214-215):*

65. Տապանաքար (125x90 սմ). ժամատան ներսում, կենտրոնական մասում, ունի քառատող, փոքր-ինչ հողմնահար արձանագրություն.

ՋՍ(ՈՒՐ)Բ ՍԱՐԳՍԻՍ ԸՆԴ|ԱՅԿԻՑՆ Զ..Ա-ՇԱՏԵ | ՎԱ..ՋԿՈՒՍԱԿԻՐ ՋՐԱՀ|ԱՆԻՆ, Զ...ՔՍ ՅԻՇԵՑ|ԷՔ Ի... ԹՎ(ԻՆ) ՉՁԲ (1333):

**Հրատ.** *«Դիվան...», էջ 215:*

**Ծանոթ.** *Նախկին հրատարակիչներն են եղել Մ. Բարխուդարյանցը (նշվ. աշխ. էջ 206) ու Մ. Տէր-Մովսիսյանը (նշվ. աշխ. էջ 97ա): Հրատարակված է վրիպումներով. «ՋՏԷՐ ՍԱՐԳԻՍ... ՅԻՇԵՑԷՔ Ի ԲԱՐԻ. ԹՎ. ՉՁԲ: 1333: «Դիվան...»-ի կազմողներն այն դրել են «կորած, անվերծանելի...» բաժնում եւ բավարարվել նախկին ընթերցումը վերահրատարակելով:*

66. Խաչքար. ագուցված է ժամատան ներսում, երեսով դեպի արեւմուտք, կից մեր՝ N 64 արձանագիր խաչքարին: Խաչաթեւերի միջեւ եւ ստորին մասում արդեն գրեթե իսպառ եղծված 13 տողով փորագրված է.

.... | .... | .... | .... | .... | ...ՑԱՔ ՋՍ(ՈՒՐ)Բ | ՆՇԱՆՍ.... | ..... | ..... | ..... | Ք(ՐԻՍՏՈ)Ս, | ԹՎ(ԻՆ) | ՉԽ (1291):

**Հրատ.** *Առաջին անգամ:*

67. Սբ. Դադի եկեղեցու հյուսիսային ավանդատան ներսում, կամարաձեւ առաստաղի մակերեսին մեկ տողով խոշոր եւ ուռուցիկ տառերով.

Տ(Է)Ր ԱԹԱՆԷՍ

**Հրատ.** *Առաջին անգամ:*

**Ծանոթ.** *Այլ վիմագրերում, 1263-1291 թթ. ընթացքում, վանահայր Աթանեսը (Աթանաս) բազմիցս հիշվում է:*

### Վանքի շրջապարսպի մեջ եւ պարածքում պահպանված արձանագրությունները

68. Խաչքար, ագուցված արեւելակողմի պարըսպապատի մեջ, ներսի կողմից: Ստորին խաչաթեւից աջ եւ եզրին պահպանվել են 10 կարճ տողերը.

Թ(ՎԻՆ) | ՈԽԹ (1200), | Ա(ՍՏՈՒԱ)Ծ | ՈՂ| ՈՐՄ|Ի ԳՐ(Ի)|ԳՈՐ|ԻԿԱ | ԱՄ(Ո|ԻՄՆՈ՛)....

**Հրատ.** *«Դիվան...», էջ 213:*

69. Նախորդից ոչ հեռու, շրջապարսպի մեջ ագուցված փոքրիկ խաչքարի հորիզոնական խաչաթեւի տակ եւ ստորին մասում կիսաեղծ եռատող փորագրված է.

Թ(ՎԻՆ) ՈԼ (1181), | ԱԾ ՈՂՈՐՄԻ | ....ՄԻ:

**Հրատ.** *Առաջին անգամ:*

70. Խաչքար, ընկած է նույն պատի տակ, ի սկըզբանե սա էլ ագուցված է եղել պարսպապատի մեջ: Նեղ կողին ունի հնգատող արձանագրություն.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂ|ՈՐՄԵԱ | ՍԱՐԳՍԻ | ԵՒ ԳԵՈՐ|ԳԱ:

**Հրատ.** *Առաջին անգամ:*

71. Խաչքար. գտնվում է կաթողիկե եկեղեցու արեւմտյան մուտքի առջեւ կողքի վրա ընկած (սրահի մեջ): Ստորին մասում ունի քառատող արձանագրություն.

Թ(ՎԻՆ) ՈԼԹ (1190), ԵՍ Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԷՍ ՈՐ(ԴԻ) | ՎԱԽՏԱՆԳԱ ԿԱՆ(ԳՆ)ԵՑԻ ՋԽԱ|ՉՍ ՄԱՒՐ ԻՄՈ ՇՈՒՇԿԱՆՆ, ՈՐՔ | ԵՐԿՐՊԱԳԷՔ, ՅԱՂԱՒԹՍ ՅԻՇԵՑԷ|Ք :

**Հրատ.** *«Դիվան...», էջ 213:*

**Ծանոթ.** *Վրիպակով թվականը վերծանվել է՝ 1290, միաժամանակ նշվել, թե վիմագրի թերի պահպանված լինելու պատճառով լրացվել է ըստ Մ. Տէր-Մովսիսյանի հրատարակածի, այնինչ վիմագիրն այսօր էլ ամբողջությամբ ընթեռնելի է: Գրչանկարը տես հաջորդ )118) էջում:*

72. Խաչքար. բեկորված երկու մեծ կտորի (միասին ունեն 228x79x48 սմ չափեր): Վերին կես կտորը գտնվում է կաթողիկե եկեղեցու ներսում՝ ընկած բեմառաջին (մի ժամանակ այն ծառայել է որպես սե-







ղանի վեմ քարի մի մասը), իսկ երկրորդ կտորը (ստորին հատվածը) գտնվում է կաթողիկե եկեղեցու հարավային կողմում մասամբ թաղված հողի մեջ: Արձանագրությունը փորագրված է 29 տողով խաչքարի հարավային նեղ կողի ամբողջ երկարությամբ, թվականը փորագրված է խաչաքանդակի հորիզոնական թևի տակ, իսկ հյուսիսային նեղ կողին 8 տողով փորագրված է մեկ այլ արձանագրություն, որը գաղտնագիր է:

Թ(ՎԻՆ Ո)ԼԱ (1182) | ԵՍ ՀԱՍԱՆ ՈՐԴԻ ՎԱ | ԽՏԱՆԳԱ Տ(ԵԱՌ)Ն ՀԱԹԵՐՔՈ | ԵՒ ՀԱՆԴԱԲԵՐԴՈ, ԽԱՉ|ԻՆԱԲԵՐԴՈ ԵՒ ՀԱՒԱԽ | ԱՂԱՑԻՆ, ԿԱՑԻ ՑԱՒ|ԱԳՈՒԹԵԱՆ ԱՄՍ | :Խ: (40): ՇԱՏ ՊԱՏԵՐԱ|ԶՄԱՒ ԵՒ ՑԱՂԹԵՑԻ | ԹՇՆԱՄԵԱՑ ԻՄՈՑ ԱՒ|ԳՆՈՒԹԵԱՄԲՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՒ | ԵՂԵՆ ԻՆՁ: Զ: (6) ՈՐԴԻ Ջ|ԲԵՐԴԵՐՍ ԵՒ ՋԳԱՒԱՌ|Ս ԵՏՈՒ ՆՈՑԱ ԵՒ ԵՍ ԵԿ|Ի Ի ՎԱՆՔՍ, ՄԱՒՏ Ց|ԻՄ ԵՂԲԱՅՐՍ Ի Տ(Է)Ր | ԳՐԻԳՈՐԷՍ ԵՒ ԵՂԵ | ԿՐԱՒՆԱՒՈՐ ԵՒ Բ|ԵՐԻ ՋԽԱՉԱՔԱՐ|Ս ՑԱՋՈՒԱԾԱՏ | ԱՇԽԱՏՈՒԹԵ|ԱՄԲ ԵՒ ԲԱՋՈՒՄ | ՀՆԱՐԻՒՔ ԵՒ ԿԱՆ|ԳՆԵՑԻ Ս(ՈՒՐ)Բ ՆՇԱՆ | ՀՈԳՈ ԻՄՈ ՑԻ|ՇԱՏԱԿ. ԱՐԴ | ՎԱՄՆ ՁԵՐ ՀՈ|ԳՈՅԴ, ՈՐՔ ԸՆԹԵ|ՌՆՈՅՔ ՋԻՍ ՑԱՂ|ԱՒԹՍ ՅԻՇԵՑԷՔ:

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 198:*

***Ծանոթ.*** *Նախկին հրապարակություններում կան բազմաթիվ վրիպումներ. 13-րդ տողում բաց է թողնված «Ես» բառը, 18-րդ տողում «խաչաքար»-ի փոխարեն ընթերցված է «խաչքար», 19-րդ տողում «յազուաշատ»-ի փոխարեն՝ «յԱզուա, շատ» կամ «յԱղուա, շատ», 22-րդ տողում բաց է թողնված «եւ»-ը, 24-րդ տողում «հոգո»-ի փոխարեն՝ «հոգւոյ», 24-25-րդ տողերում դարձ է թողնված «յիշատակ» բառը և 26-27-րդ տողերում «հոգոյդ»-ի փոխարեն ընթերցված է «հոգւոյ»:*

*Ներկա արձանագրության մասին լրա նաև մեր՝ «Հասան Վախտանգյանի խաչքարը Դադի վանքում» հոդվածը («Ազատամարտ», 1994, N 46, էջ 14), որ սակայն վրիպել ենք թվականը:*

*Արձանագրության բովանդակությունը փաստվում է նաև 1184 թ. մի ձեռագիր հիշատակարանում. «...ի կողմանս Խաչենոյ, ընդ ժամանակս անուանելոյ Հասանա կրաւնաւորեցելոյ, եւ որդւոյ նորայ Վախտանգայ, ի դղեկին, որ անուանի Հայթերք...» («Ե-ԺԲ դարերի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Երևան, 1988, էջ 243):*

*Խաչքարի հյուսիսային կողի ստորին մասում 8 տողանոց գաղտնագիր է: Դրա վերծանությունը բոլորովին վերջերս հրապարակել է հնագետ-վիմագրագետ Համլետ Պետրոսյանը.*

ՁԵՌՆԱՑԳԻՐ Է ԻՄ՝ ՀԱՍԱ|ՆԱՅ. ԵՂԲԱ՛ՅՐՔ, ԶԳԱ|ՍՏ ԿԱՅԱՅՔ: ԵՍ ՅԱ|ՇԽԱՐՀԱՅՍ ՉԵ Տ|ԱՐԱ ՈՉԻՆՉ. Վ|ԱՒԱՏԱՅ|Մ ՅՔ ԴՈ(Ւ)Ք ԱՅԼ ՉՏ|ԱՆԻՔ

(«Իմ Հասանի ձեռքով գրածն է. եղբայրնե՛ր, զգաստ կացեք: Ես աշխարհից ոչինչ չտարա, դո՛ւք էլ չեք տանի»):

***Հրատ.*** *Համլետ Պետրոսյան, Դադի վանքի ծածկագիր արձանագրությունը, «Իրան-Նամե», 1998, N 1-3, էջ 38-40:*

73. Եկեղեցու ներսում ընկած մի գեղաքանդակ վարդյակի եզրին փորագրված է.

ԹԻՎՍ (Ո)ԼԹ (1190):

***Հրատ.*** *Առաջին անգամ:*









*ԴԱԴԻ ՎԱՆՔ. Հասան Վախտանգյանի խաչքարը: Վերին բեկորի արեւմտյան եւ հարավային կողմերը, ստորին կեսի արեւմտյան եւ հյուսիսային (գաղտնագրված) կողմերը*

74. Զանգակատան ներսում ագուցված երկու չըր-նաղակերպ խաչքարերից հարավակողմյանի եզրագոտու ողջ երկարությամբ 4 տողով փորագրված է.

ԶՏ(Է)Ր ԱԹԱՆԱՍ ՅԻՇԵՍՋԻՔ Ի Ք(ՐԻՍ-ՏՈ)Ս:|ԷԻՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ՋԱԻՐՈՒԹ(ԵԱՄ)ԲՆ ԵՍ Տ(Է)Ր ԱԹԱՆԱՍ, ՈՐԴԻ՝ ՀԱՍԱՆԱ, ԱՌԱՋՆՈ|ՐԴ Ս(ՈՒՐ)Բ ՈՒԽՏԻՍ ԿԱՆԳՆԵՑԻ ԶՍ(ՈՒՐ)Բ ՆՇԱՆՍ ՅԻՇԱՏԱԿ ՀՈԳՈ ԻՄ, | ԹԻՎՆ ՀԱ(Յ)ՈՑ: ՉԼԲ: (1283):

*Հրատ. «Դիվան...», էջ 213:*

75. Նախորդին կից խաչքարի քիվին փորագրված է.

Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐ ՄՆՈ(Ւ)ՅՈՂ Տ(Է)Ր ԱԹԱՆԱ-ՍԻ ՅԻՇ(ԵՑԷՔ):

*Հրատ. «Դիվան...», էջ 213:*

76 Զանգակատան հարավային պատի փակ, արտաքուստ ընկած մի բեկորի վրա կա արձանագրության եռատող մնացորդ.

.... ԶԱ ԱԻԾԵԱԼ ԵՒ..... | ..... ԵՏ ԳԱԼԸՍՏԵՆ...... | .....Ի ԿԱ(Ն)ԳՆ.......

*Հրատ. առաջին անգամ:*

77. Շրջապարսպից դուրս, դեպի հյուսիս-արևելք, կանգուն մատուռի արեւմտյան ճակատում ագուցված խաչքարին երեք տողով փորագրված է.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՍԱՐ|ԳԻՍԱ, ԳՐ(Ի)Գ-(ՈՐ)|Ա, Մ(Ե)Լ(Ի)ՔԻՆ:

*Հրատ. «Դիվան...», էջ 214:*



78. Կաթողիկե եկեղեցու արեւմտյան ճակատին. հարավակողմի որմնախորշի մեջ եղել է նվիրատվական բովանդակությամբ մի վիմագիր.

ԿԱ(ՄԱՐՆ)... | ԵՐԳ...... | ՏՈ...... | ........ | ՍՐ..... | Ս(ՈՒՐ)Բ .... | ՈՅ...... | ՈՒ........ | ՆԱՍ ՏԻԱՔ Ի... | ԵՆԵՑ ՄԵՐ Տ... | ՆՑ ՀՈՂՆ ՈՒ... | ԻՆ ԿԱՇԿԱ-ՌՈՒՏ.. (ՍԱ)|ՀՄԱՆԵՑԻՆ ՄԵԶ Ա(1) | ԱՒՐ ՊԱՏԱ-ՐԱԳ ԱՄ|ԵՆ ԵԿԵՂԵՑԻՔՍ... | ՍԱՐԳՍԻ ԿԻ..... | ԷՐՆ ԱՐԴՈՎ Զ... | ՀՈՂ ԿԱՄ Զ.... | ԽԱՓԱՆԵՆ .... | ԱԾ....... | ԷԻ ԱՌԱՑ....

*Հրատ. «Դիվան...», էջ 208:*

***Ծանոթ.*** *Արձանագրությունը չի պահպանվել:*

79. Նախորդից ցած, 11 կիսաեղծ տողով եղել է եւս մի արձանագրություն.

ԿԱՄԱՐՆ Ա(ՍՏՈՒԾՈՅ ԵՍ ՅՈ)|ՀԱՆ ՄԻԱ-ԲԱ(Ն)ԵՅԱ) | Ս(ՈՒՐ)Բ ՈՒ(ԽՏԻՍ ԱՌԱՋ)|ՆՈՐ-ԴՈՒԹ(ԵԱՆ ԱԹԱ)|ՆԱՍԻ.... (ԻՆ)|Զ: Բ: (2) ՊԱՏ-(ԱՐԱԳ Ի Տ)ԱՒՆԻՆ ԻՄ..... | ԱՌԱՒՕՐԻՆ | ԱՅ, ՈՎ ԶԺ(ԱՄՆ ԽԱՓԱ)|ՆԷ..... | ... ՊԱՐՏԱԿԱՆ Է:

*Հրատ. «Դիվան...», էջ 208 (N 729):*

***Ծանոթ.*** *Արձանագրությունը չի պահպանվել:*

80. Սրահի պատի վրա 2 տողով արձանագրված է եղել.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ. ԵՍ ՄՆՊԱՏ, ՈՐԴԻ ՎԱԽՏԱՆԿԱ ՇԻՆԵՑԻ ԶԳԱՒԻԹՍ ԵԿԵՂԵՑԻՈՅՍ ԵՒ ԵՏՈՒ ԶՇԻՆԱԶՈՐ ԻՒՐ ՍԱՀՄԱՆՈՎՆ ԵՒ ԶԴՈՓՈՒՆ ՏԱՓՆ ՅԵԿԵՂԵՑԻՍ:

*Հրատ. «Դիվան...», էջ 214, (N 756):*

81. Խաչքար արձանագրությամբ.

ԵՍ ՄԱՄԱՅ ԹԱԳՈՒՀԻ, ԱՄՈՒՍԻՆ՝ ՀԱՍԱ-ՆԱ, ԴՈՒՍՏՐ՝ ԿՈՒՐԻԿԱՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԿԱՑԱՔ ՅԱՒԱԳՈՒԹԵ(ԱՆ), ՅԱՄՍ: Լ: (30) ԵՍ ԵՒ ԱՅՐՆ ԻՄ ԹՈՂԵԱԼ ԶՀԱՅՐԵՆԻՔՍ ՈՐԴԻՈՑ ՄԵՐՈՑ, ԵԿԱՔ Ի ՎԱՆՔՍ ՄՕՏ ՏԷՐ ԳՐԻԳՈՐԻՍ, ԵՒ ՈՐ-ԴԻՆ ՄԵՐ ՀԱՄԱՆՈՒՆ ՆՈՐԻՆ, ԵՒ ԶԳԵՑԱՔ ԶԶԵՒ ՄԻԱՆՁԱՆՑ ԵՒ ԿԱՆԳՆԵՑԻ ԶԽԱՉՍ ՅԻ-ՇԱՏԱԿ ՀՈԳԻՈՑ ԻՄՈՑ. ՈՐՔ ԵՐԿՐՊԱԳԷՔ ՅԱ-ՂՕԹՍ ՅԻՇԵՑԷՔ: ՈԼԱ: (1182) ԹՎԻՍ:

*Հրատ. «Դիվան...», էջ 215 (N 762):*

***Ծանոթ.*** *Արձանագրությունը չի պահպանվել:*

82. Խաչքար. երկու երեսներին արձանագրությամբ.

ԱՆՈՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ. ԵՍ Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԷՍ ՏՂԱՅՈՒԹԵԱՄԲ ԵԿԻ Ի ԴՈՒՌՆ ԵԿԵՂԵՑԻՈՅՍ, ՇԱՏ ԱՇԽԱՏԱՆՔ ԱՐԱՐԻ. ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ ՇԱՀ ԹԱՀՄԱԶԻՆ ԷՐ. ՋՎԱՆՔՍ ՏՈՒԻՆ ՏՀՈՒԼ, ԵՍ ՂԱԲՈՒԼ ՉԱՐԱՐԻ. ԳՆԱՑԻ ՆՈՐՇԷՆՆ, ՇԻՆԵՑԻ ԵՐԵՔ ՋԱՂԱՑ, ԵՐԵՔ ԲԱՂՋԱՑ ԵՒ ԵԿԻ Ի ԴՈՒՌՆ ՍԲ. ԱՌԱՔԵԼՈՅՍ. ՇԻՆԵՑԻ ԶԽՈՒԹ, ՈՐ ԵԿԵՂԵՑԻՈՅՍ ՄԱԼՆ ՔԱՇԷ, ԶԲԱՂՈՒԲԱՂ-ՋԷՍ ԵՒ ԶՋՐԱՂԱՑՆԵՐՍ ԵՒ ԱՅԼ ԱՄԵՆԱՅՆ ԱՇ-ԽԱՏԱՆՔՍ ԵԿԵՂԵՑԻՈՅՍ ՎԱԽՄ ՏՈՒԻ: ԱՐԴ՝ ՈՎ ՈՔ ԱՅՍ ԳԵՂԵՐԱՆՔԵՐՍ ԵՒ ԶԻՄ ՎԱԽ-ՄԵՐՍ ՀԱՆԵԼ ՋԱՆԱՅ Ի ՍԲ. ԱՌԱՔԵԼՈՅՍ, Ե-ՐԵՔ ՀԱՐԻՒՐ ՏԱՍՆ ԵՒ ՈՒԹ ՀԱՅՐԱՊԵՏԱՅՆ ՆԶՈՎԱԾ Է. ՄԱՄՆ ՈՒ ԲԱԺԻՆ ԸՆԴ ՅՈՒԴԱՅԻ ԵՒ ԿԱՅԵՆԻ ԽԱՉԱՀԱՆՈՒԱՑՆ ԱՌՋԷ. ԵՒ ՄԵՐ ՄԵՂԱՅՍ ՏԷՐ Է. ԵՒ ՈՎ ՈՐ ՇԷՆ ՊԱՀԷ ԵՒ ԶՄԵԶ ՅԻՇԷ՝ ՎԱՐՁՍ Ի ՔՐԻՍՏՈՍԷ ԱՌՋԷ. ԱՄԷՆ. ԹՈՒԻՆ: ՌԷ: (1558):

*Հրատ. «Դիվան...», էջ 215 (N 763):*

***Ծանոթ.*** *Արձանագրությունը չի պահպանվել:*

**Այլ արձանագրություններ**

83. Արձանագրություն՝ XVIII դարի 1-ին կեսում լեզգիների արշավանքների հետեւանքով Խութա-

վան գյուղից գաղթած ու Բորչալու գավառի Մեծ Շուլավեր ավանում հաստատված Ջալալյանց տոհմի շառավիղների մոտ պահվող՝ Դադի վանքից փոխադրված մասունքի՝ արծաթյա խաչի վրա.

ԵՍ ԾԱՏՈՒՐՍ Ց(Ի)Շ(Ա)Տ(Ա)Կ ՏՎԻ ԽՕԹԱ ՎԱՆԻՑ, ԹՎ ՌՄԵ (1756):

Մյուս երեսին.

ՇՆՈՐՀՕՔՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՍ ՏԷՐ ՆԵՐՍԷՍ ԿԱԶՄԵԼ ՏՎԻ Ի ՍՈՒՐԲ ՆՇԱՆՍ, Ի ՀԱԼԱԼ ԸՆՉԻՑ ԻՄՈՑ, ՀԱՅՐ ԻՄ ՏԷՐ ՄԿՐՏԻՉՆ, ՄԱՅՐ ԻՄ՝ ՀՌԻՓՍԻՄԷՆ, ԿՈՂԱԿԻՑ ԱՆՆՄԱՆ ԵՒ ՈՐԴԻ ԵՂԻԱԶԱՐԻՆ ԱՄԷՆ, ԹՎ. ՌՃԽԵ (1696):

***Հրատ.*** *Սարգիս Քամալեան, «Արձագանք», 1892, N 111, էջ 1-2:*

***Ծանոթ.*** *«Սրբութիւնները երկու մասում կամ պահարանում են ամփոփուած: Առաջինը 4 վերջոկ մեծութեամբ արծաթապատ խաչ է, որ է իսկ պահարանը կենաց փայտի (Ս. Նշան): Չորս թևերից խորաքանդիրի վրայ մի ակն կայ եւ մեջտեղը արծաթէ խաչելութիւնը: Այդ երեսին հետեւեալ գրութիւնն ենք կարդում»:*

84. 1880-ականներին մի թուրք Դադի վանքից գողացել էր «4-5 պուդ» կշռող զանգը ու այն վաճառել մի հայի, վերջինս էլ վաճառել էր մի գյուղի հասարակության *(«Նոր-Դար», 1892, N 15, էջ 2)*: Մեկ այլ աղբյուրից պարզվում է, որ զանգը գնել էին Գեղարքունիք գավառի Թյուսկյուլու (այժմ՝ Վարդենիսի շրջան, գյուղ Լուսակունք) գյուղի հայերը իրենց եկեղեցու համար *(«Արարատ», 1896, յունվար, էջ 42)*: Համաձայն զանգի վրա փորագրված արձանագրության՝ այն ՉԿԳ (1314), թվականին վանքին էր նվիրել Դոփյան Վահրամ իշխանի որդի Սարգիսը: Զանգի հետագա ճակատագիրը պարզելու ակնկալիքով մեր զրույցը (1997 թ.) լուսակունքցի փարեց մարդկանց հետ խնդրի վրա որեւէ լույս չսփռեց:

85. Քշոցածեւ արծաթե խաչ՝ բռնակով. կրում է հետեւյալ արձանագրությունը.

ՅՆԹՀ (Յիսուս Նազովրեցի Թագաւոր Հրէից)

ՏՐ ԱԾ ՅՍ ՔՍ (Տէր Աստուած Յիսուս Քրիստոս)

ՅԻՇ(ԱՏԱ)Կ ԷՍ ԿՈՄԵՐԵՑԻ ՊԱՂՏԱՍԱՐԻՆ ԵՒ ԿՈՂԱԿՑՈՅՆ ՍԻՄԱԻՆ ԵՒ ՈՐԴՈՅՆ ԴԱՎԻԴԻՆ, Ի ԴՈՒՌԸՆ ԴԱԴԷՈՒ ՎԱՆՔԻՆ, ՈՐ Ե Ի ԽԱԲԱՆ, ԹԻՎԻՆ ՌՃՂԴ (1745)-ԻՆ:

***Հրատ.*** *«Հայերեն արձանագրությամբ առարկաներ», պրակ 1, Երեւան, 1964, էջ 69:*

***Ծանոթ.*** *Կոմերը՝ամենայն հավանականությամբ 1661 թ. մի վավերագրում հիշված Գոմեր գյուղն է (տես ՀՀՊԴԿԱ, ֆ. 57, ց. 1, գ. 4, թ. 4):*

86. Խաչքարի բեկոր (48x20x12 սմ), Դադի վանքից 3 կմ հր-ալ. անտառածածկ լեռնալանջին: Թիկունքին պահպանվում է 9 տողանոց արձանագրության մնացորդը.

ՇԽ... | (ԹՎԻՆ) | ՀԱՅՈՑ Կ... | ԱՆՍ Ի Վ... | ԱՅՐ ՏՂԱ... | ԵՂԵՒ ՋԱ... | ԱԿԻԼ ՀԱՍԿ... | ԱՅԼ Ի ՄԻԽԱ... | Կ ԵՒ ՄԱՅՐ... | Ք ԿԱՆԳՆԵՑԻՆ...

***Ծանոթ.*** *Խաչքարը 1986 թ. հայտնաբերել է Վոլոդյա Հարությունյանը: Թեեւ թվականի միավորը պահպանված չէ, այնուամենայնիվ թվագրումը պարփակվում է ՇԽ (1091) - ՇԽԹ (1100) թվականների միջեւ:*



**Կալվածագրեր (սիկելներ)**

1. Կալվածագիր (սիկել).

Կամաւն ամենակալին ա(ստուծո)յ եւ փ(առա)ն մերոյ յ(իսուս)ի, այս մեր գիր է իշխանական հրամանի: Ես Տուրսունս, Սեյփիս, Պռօշս, Գրիգորս, Հասանս եւ եղբարքս եւ որդիքս մեր զայս հաստատ սիկիլս տուաք Տր. Աւագ եպիսկոպոսին եւ իւր եղբայր Մանուէ աբեղային, որ մեր հայրենի աթոռն զԴադի վանս, զԽաթրի վանս, զԳեպամէջն, որ մեր գերեզմանատունն է ի մեր պապանցն մեզ մնացած, վասն սոցա լաւ միամտութեան համար, զի վանորայքս մարդ չկայր, որ յառաջն կայր եւ շէն պահէր եւ զեկեղեցիքս լուսաւորէր, յայս պատճառէս երեւս դրաք եւ զայս ս(ուր)բ. աթոռնին նոսա ապսպրեցաք ապսապարեցաք, եւ զերկու իշխանութիւն, որ է եպիսկոպոսութիւն եւ զպարոնութիւն էլ հէնց ի նոսա յանձնեցաք, որպէս առաջին մեծ կաթողիկոսն մեծ Տր. Զաքարիային, Տր. Աթանասին եւ Տր. Սարգսին էր տուեալ զԴաթի վանս, զԽաթրի վանս, զՀաղբատ իւր վիճակովն, նոյնպէս եւ այս հոգեւոր Տր. Գրիգոր կաթողիկոսն զայս երեք աթոռս հաստատեաց վիճակաւ եւ շրջաքերական թղթիւ:

***Հրատ.*** *«Դիվան...», էջ 216, N 764:*

2. Կալվածագիր (սիկել).

Կամաւն ամենակալին Այ. ես Սէյփիս, որդի պարոն Շանշին, թոռն պարոն Հասանայ. ես Գրիգորս, Հասանս, Պէկիս, Ալթունս որդիք պարոն Վահրամայ, թոռունք պարոն Հասանայ, ես Այփինս որդի պարոն Տուրսունին, թոռն պարոն Աղբուղին. ես Շանշաս որդի Հասանայ, թոռն պարոն Ջահանշին, մէք չորս եղբարքս տուաք մեր վանորէիցս Ապահէն, զԽութ, զԽոզենեկս իւր չորս սահմանով. ի Չափարէն հանդէն Զագունանց ագարակ գեղովն, Բոնջի աղբիւրովն, Թաշանանց գետովն, Պեպրոսապակ, որ մեր պապերն տուեալ են, զՄոխանանց, զԾովա-

պեղն, Ջաջօռեանց, Չօլբէկեանց, զՑրպնօպն, զՇիռմանանց, զԳրիգորաթաղս, զԴաթի վանս իւր Քօլապակերովն, զՀերանանց Հակառակաբերթովն, Նաւի աղբիւրովն, Բերթաքարովն, Կռապաշպոցովն, Ողնովն, Խոզենակուց մեծ այգին՝ Մանանա-ձորովն, Ծաղիկանց, Եզնարածանց փուաք Աւագ եպիսկոպոսին, որ մեր ճօճաւոր էր, քանի որ իւր պէտքն է՝ վարէ Աստուծով ազատ է: Իսկ թէ այլ մարդ վարէ պտաանորդն առնու եւ փայ վանքին անպատճառ: Այս եղեւ մեր ուխտ առաջի Աստուծոյ եւ սուրբ Դաթի առաքելոյս: Արդ՝ ով ոք զկնի մեր այս վաղմիաթերս այլայլէ կամ խլէ, թէ յորդւոց եւ թոռանց մերոց եւ յազգայնոց իցէ, առաջի Այ. պարտական եւ սեւերես լինի: ՅԺԸ: (318) Հայրապետաց նզոված է. Կայենի եւ Յուդայի դասակից, իսկ թէ յայլազգեաց եւ թուրքաց իցէ՝ իւր հալալն հարամ լինի եւ իւր փէյղամբարէն ապիզար լիցի, ամէն:

**Հրատ.** *«Դիվան...», էջ 216, N 765:*

3. 1763 թ. կազմված Դադի վանքի կալվածագիրը՝ («Խութավանից որպիսութիւնքն»).

Ունի վիճակս զբոլոր երկիրն Քեօլանու, որոյ հայերէն անունն Ծարայ երկիր կոչի, որ է սահմանակից Խամսայու, բայց Էջմիածնի է վիճակեալ եւ ընդ ձեռամբ Երեւանու իշխողին: Որոյ գեօղօրայքն են այսոքիկ. Էրք, Ծնիլանց, Կարմիրշէն, Սալամալիք, Քաթառանց, Ուռուցփոր, Ապարէնիս, Ծուղրուղաշէն, Հոսաբակ, Կեաւալու. սոքա յայսկոյս լերինն են, կից Արեգունւոյն Գեղամայն: Իսկ յայնկոյս լերինն՝ Մեծ Ծար, Կաժ, Անուխս, Խօլօզանց, Դաշպակ, Հաճար, Ապահէն, Ճումէն, Քարապակ, Ջուար, Մոս, Սեւաջուր, Ծովատեղ, Խրանց, Հալուճ, Մոթանց, երկու Դաւաչխուր՝ Մեծ եւ Փոքր, Լեւ, Եանշաղ, Բարսղիշէն, Մէյպանն, Երիցիշէն, Խութավանք, Չափար, Կեարաք, Նորշէն, Խնթրավանք:

Ունի եւ զանապատս ընդ ձեռամբ իւրով, զԽնդրավանից անապատն եւ զԾարայ անապատն:

**Հրատ.** *«Ջամբռ», էջ 283-284:*

4. Կալվածագիր (ղաբալա). գլանաձեւ կոլոլած թուղթ.

*«Կալվածագրի կամ վախմագրի երկարությունն է 30 վերշոկ. թվում է, թե վերջից մի ծալ պոկված է: Գրված է կոշտ եւ ամուր թղթի վրա, որ մագաղաթի է նմանում: Խոնավ տեղ պահվելուց շատ բառեր եղծվել են, աջ կողմի ափերը բոլորովին քրքրված են, տեղ-տեղ դժար է լինում կարդալը, իմաստ հասկանալը: Ամբողջ գրությունը բաղկացած է չորս կտոր իրար ետևից կպցրած թղթերից, որոնք տարբերվում են թե մելանի գույներով, թե տառերի գրվածքով: Բոլոր գրությունը 133 տող է: Վրան կան 16 կնիքների տեղեր՝ 6-ը կարմիր մելանով են խփված, մնացածները՝ սեւ: Կնիքներից 5-ը կաթողիկոսական են, ստորագրություններն էլ մոտը, մնացյալ կնիքները պատկանում են եպիսկոպոսների, վարդապետների, մելիքների, բեկերի, իշխանների:*

*Հիշածս կալվածագիրը սկսվում է նախ եւ առաջ նախաթոռ Գանձասարի Պետրոս կաթողիկոսի ձեռքով, որ գրում է, թե վկա եմ, որ Հաթերքը վախմ է Թադե առաքելոյն, աջ կողմից էլ կնիքը դրված: Հետո Եսայի կաթողիկոսի ձեռքն ու կնիքն է՝*վկա եմ այս բանիս: *Երրորդ տեղը՝ Երեմիա կաթողիկոսի ստորագրությունը եւ կնիքը՝*վկայ եմ այս բանին: *Չորրորդ տեղը՝ Գանձասարի Գրիգոր կաթողիկոս, որդի Մելիքբեկին, թոռն ... բեկին,* այս հաստատ բանիս վկայ եմ, *կնիքը աջ կողմից: Հինգերորդ տեղը՝ Փիլիպպոս հայոց՝*վկայ եմ, *կնիքը մօտը, վեցերորդ տեղը՝*«Ես Ակոբոս...»:

*Այս ստորագրություններից ետ սկսվում է մի գրություն, որի մեջ հայտնվում է, թե Քրիստոսի խոնարհ աղախին Արզուխաթունը, որ էր իշխանաց իշխան Քրդի դուստրը եւ Հաթերքի տեր Խաչենցի Վախթանգ թագավորազնի ամուսինը, շինել է սուրբ կաթողիկեն իրա Հասան եւ Գրիգոր որդոց հիշատակի համար, վերջում գրած է հայոց ՈԿԳ թվականը:*

*Վերոհիշյալ թաղեն եւ Խութը եղել են Հայաստանի առաջին լուսավորիչների աշակերտներից, երկուսի անունով էլ առաջին դարերում մենաստաններ են շինվել, հետզհետե ճոխացել եւ հարուստ վանքերի շարքն ընկել Սյունյաց աշխարհում: Խաթի անունով կառուցվածքը կոչվում է Խաթրավանք:*

*Արզուխաթունի կառուցած եկեղեցու վրայի արձանագրությունը ավարտվելուց ետ, թերթի վրա հանած է Խոթա վանքի նշանավոր խաչվիմի մի երեսի արձանագրությունը.*

«Ի ՓԱՌՍ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՒ Ի ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ՈՒԽՏԻՍ ՍԱՀՄԱՆԵՑԱՔ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑՈՅՍ ԳԻՒՂՍ ԵՒ ԱԳԱՐԱԿՍ ԻՒՐԵԱՆՑ ՍԱՀՄԱՆԱՒՔՆ ՋԱՊԱՀԷՆ, ՋԽՕԹՆ, ՋԵՋՆԱՐԱԾԱՆՑ, ՋԲՃԱՆՑ ԵՒ ՋԿԱՆԱՉԱՒՈՐՆ, ՈՐ Ի ՎԱՅՈՑ ՁՈՐ... ՉՈԲԱ ՎԱՆՔԻ ԵՐԿՈՑ ՏՈՒՆ ՅԱՐՓԱՅ ՀԱՍՏԱՏԵՑԱՔ ԿԱՄԱԿՑՈՒԹԵԱՄԲ ԵՂԲԱՐՑՍ ՋԱՒԱԳ ԽՈՐԱՆԻ ՊԱՏԱՐԱԳՆ ՅԱՆՈՒՆ ՎԵՐԱՅԳՐԵԼՈՅՍ ԿԱՏԱՐԻ ԱՆԽԱՓԱՆ: ԵԹԷ ՈՔ ԱՅՍՄ ՎՃՌԻ ՀԱՍՏԱՏՆՈՅ ԽԱՓԱՆՈՒՄՆ ԱՌՆԷ՝ ՅԻՇԽԱՆԱՑ ԿԱՄ ՅԱՌԱՋՆՈՐԴԱՑ ՏԵՂԻՈՅՍ ԿԱՄ ՈՔ ԵՒ ԻՑԷ, ԽԱՓԱՆԵՍՑԻ ՅՈՅՍ ՆՈՐԱ, ՈՐ ԱՌ ՔՍ ԵՒ ԴԱՏԱՊԱՐՏԵՍՑԻ ՅԱՒՑ»:

*Արզուխաթունի այս գրությունից ետ կան հետեւյալ ստորագրությունները.* «Ես Աթանէս եպկս, Գրիգոր եպկս, վկայ ենք, որ վանքին վերայ գրած հաստատը վախմ են»: *Կնիքները եւս կան իրենց: Դրանից ետ գրած է* «Ես Մելիք Ղասումս՝ որդի Ամիր բէկին, վկայ եմ, որ վանքին արծանում գրած վախմ են անպատճառ»: *Կնիքը գրած է պաճկերեն տառերով: Դրանից աջ գրած է.* «Ես Աստուածապովս՝ որդի Մելիք Քամալ բէկին Գեղամայ, վկայ եմ, որ էս վախմերս Դապէի առաքելոյն վրայ գիրած է հաստատ»: *Կնիքը պաճկերեն տառերով: Դրա ձախ կողմը* «Ես Զաքարայ եպկս, որդի Մասում բէկին վկայ եմ, որ այս վախմս սբ Դապէի առաքելոյն վերայ գրած է հաստատ վախմ է». *կնիք: Դէպի աջ գրած է.* Ես Ղարայգոզա որդի Մելիք Եավրին Գեղամայ վկայ եմ էս վախմերիս, որ Դապէի առաքելոյն վերայ գրած է հաստատ»: *Կնիքը պաճկերեն է: Դրա ձախ կողմը ցրվում է Դաթեացի Մինաս վարդապետի ձեռքը եւ կնիքը:*

*Այս ստորագրություններից ետ նույն թղթի վրա ավելի հին ձեռքով եւ հին մելանով հետեւյալն է.* «Թվականն ՌԼԱ. էր, գուղս եւ ագարակս վախմն տվի Դապէի վանքիս անխափան...: Հասան՝ որդի Վախտանկա, տէր Հաթերքոյ եւ ... այ Բերդ... եւ Խաչինայ բերդն եւ

Հաւաքախաղացին, կացի աւաքութեամբ ամս. Խ. շատ պատերազմաւ յաղթեցի թշնամեաց իմոց աւգնութեամբն ատուծոյ եւ եղեն ինձ Զ որդի. զբերդերս եւ զգաւառս եւ տու նոցայ եւ եւս եկի ի վանս... այր ի տէր Գրիգոր, եւ ես եղէ կրաւնաւոր, բերի զխաչաքարս Աղուայ, շատ աշխատութեամբ, բազում հնարիւք կանկեցի՝ սուրբ նշանիս եւ իմու յիշատակ: Արդ, վասն ձեր հոգուցդ՝ որք ընթեռնոյք զիս յաղաւթս յիշեցէք, ով խափանի վախմն, ՅԺԸ հայրապետաց նզոված է»:

*Սրանից ետ գրությունը շարունակվելու համար կցվել է այլ թուղթ, կցվածքի վրա երկու տեղ կարմիր մելանով կնիքներ են խփած հայոց տառերով, չեն կարդացվում հնության հետի:*

*Հետեւյալ գրությունը նոր տառերով է ու պարզ.* «Ես Սէփիս՝ որդի Գրիգորին, թոռն պարոն Հասանայ ետու մեր վանորէիցն զԱպահէն, զԽութ, զԽոզենակն՝ իւր Դ սահմանովն, զՊարանախաշէն ի Հէնիացն, ի Չիչապերթէն, ի Վաhէն, Շարինց քարէն ի Հարցյու դայէն, ի Չափարին հանդէն Ծագունանց ագարագացտով, Բռընշի աղբիւրովն, Թոզանանց գետովն, Պետրոսպակ, որ մեր պապերն են տուեր, զՍռխանանց, զԾովատեղն, զՋաջոռանց, զՉուլէկանց, զՅորնօտն, զԻրաշմանանց, Գրիգորա բաղս Դադի վանս իւր քոլատակերովն, Հերանանց Հակառակաբերդովն, Ծառի աղբիւրովն, Բերդատակովն, Կռապաշտցովն, Ողնովն, Խոզենակուց մեծ այգին: Մանանա ծորովն, Ծաղիկանց զԵզնարածանց տվաք տէր Դիր աւագ եպիսկոպոսին, որ մեր հաւատարիմ էր, քանի իւր պէտք է՝ վարէ, ազատ է, թէ որ այլ մարդ վարէ՝ Ժ-անորդն վանքին տայ անպատճառ»:

*Նույն թղթի վրա նույն ձեռքով գրած է հետեւյալը.* «Ես Հասան՝ որդի Վախտանկա եւ եղբայր իմ Գրիգոր առաջնորդ սբ ուխտիս ըստ Դադէի վանիցս եւ սակս... Սմբատ եւ եղբարքս մեր բաժանեալ տւաք զՄեծն Խաչէն... Սակռա եւ երկիրս Ծար ի Վերին Խաչէն տվաւ Հասանայ, եւ կանգնեցաք խաչ մի Մատաղիսոյ վերն, բոլոր բթին սահման Խաչէնոյ եւ Ծարայ: Ես Հասան կացի աւաքութեան ամս քառասուն եւ եղեն ինձ Զ որդիս եւ շինեցի Դ բերդս՝ Հաթերքաբերդ, Չիջաբերդ, Հաւախաղացին եւ Դաշտաբերդ, զբերդերս եւ զգաւառս ետու որդոց իմոց եւ ես եկի ի վանքս մօտ տէր Գրիգորի եւ տէր Աթանիսի եւ եղէ կրօնաւոր, եւ երկրիս հողանիւթն այս է՝ Հաթերքոյ գետն ի վեր մինչեւ ի սարն Ապասայ, Մռաւայ Շարագօլն, գա Պարանախաչն հին Հայոց եկեղեցի, Պախոսա եկեղեցին, բերթն Չիջայ, սարն Վահենոյ, Շարքարն, Հարազաքարն, Ըռեզա կաշկառն, բերթն Մազրոյ եւ գետն Հաթերքայ ամենայն ընչովն եւ ջուրնթացաւն:

Եւ մեք՝ որդիքս եւ թոռունքս Հասանայ, ես Գոնցէս տվին ինձ բերթն Չիջա, անցաւ ժամանակ՝ յետոյ եկի ուխտ ի վանքս. տվի իմ հայրենեացն Խոթաւարն, Շարքարն, Հարզաքարն, եկեղեցին Մարչամանցու մուլքն իւր սահմանքովն, իւր խասովն, իւր ջուրընթացովն վախմ ի դուռն ըստ Դադէի սուրբ առաքելոյն: Եւ միաբանքս սահմանէցին մեզ Դ օր պատարագ. որ ոք մեր տված վախմն խափանի՝ նզովեալ եղիցի ՅԺԸ հայրապետացն, ամէն. թվն ՌԼ:

Ես Թոբէ՝ թոռն Հասանայ տվաւ ինձ ի հօրէ իմ ի բերթն Հաւախաղացին երկրին Վերին Խաչէն: Ես իմ կամաւ տվի Ժ հող վախմ վարել-ցանել ժողովրդեամբ, ամէն տարի պտուղն առնել ի դուռն ըստ Թադէի սուրբ առաքելոյն, եւ սահմանեաց մեզ տէր Գրիգորն Զ օր պատարագ, ոչ խափանեսցի ամենայն ժամանակ, խափանողն խափանեսցի»:

*Այստեղ վերջանում է թերթը, բայց թվում է, թե գրությունը շարունակվում է. ամենավերջ խփած կարմիր մելանով կնիքի միայն կեսը կա, մյուս կեսը պոկված է:*

*Այժմ արտագրեմ դաքալայի լուսանցքում եղածը.* «Ես Դաղաձագ թոռն մեծին Հասանայ, տվավ ինձ ի հօրէ իմմէ բերթ Դաշտայ, ԺԱ շէն, եւ ես եկի ուխտ որ վանքն ի դուռն սբ առաքելոյն, ես իմ կամաւ տվի վախմ բաժնէն իմմէ զԱպահէն իւր մուլքովն, իւր սահմանքովն ի գետն Բարձրական ի ջուրն Շարօփին ճանապարհաբաժան, Կարմիր բիթն, Վաթաջերայ եկեղեցին իւր սահմանովն, ո ոք զայս խափանէ՝ նզովեալ եղիցի ի ՅԺԸ հայրապետացն, թիվն ՌԽԵ»:

***Դրատ.*** *Սարգիս Քամալյան, «Աղվանից աշխարհի» Թ-ադէ կամ Խոթա վանքի կալվածների վերաբերյալ մի դաքալա-կալվածագիր, «Кавказ и Византия», N2, 1980, էջ 150-154:*

### Որմնանկարներ

Դադի վանքում որմնանկարներ պահպանվել են միայն Կաթողիկե եկեղեցու ներսում (հավանաբար՝ ուրիշ որմնանկարներ չեն էլ եղել): Դրանց առաջին, քիչ թե շատ որոշակի նկարագրողը եղել է 1911 թ. վանք այցելած Մեսրոպ մագիստրոսը. «Նկարներից մի քանիսը մեր տեսած ժամանակ տանելի վիճակ ունէին, որոնցից մենք լուսանկարներ պատրաստեցինք, մինչդեռ Տաթեւում միանգամայն եղծուել էին: Նկարներ պահուած էին հիւսիսային եւ հարաւային պատերի վրայ, հիւսիսայինի վրայ զգալի էր խոնաւութեան քայքայիչ ազդեցութիւնը: Երանի թէ ժամանակին գոյներով արտանկարուած լինէին հայկական արուեստի այդ սակաւաթիւ պահուած որմնանկարի բեկորները:

Հարաւային պատի տեսարանն էր. Աստուածածին, նկարուած երեք քառորդ հանդիպահայեաց դիրքով, հագին մոխրագոյն երկար շապիկ, գլուխը փաթաթած կարմիր ծածկոցով, ձեռների վրայ երկարած խաչազարդ ուրար: Նա, հայեացքը յառած դէպի արեւելք դիտում է կենտրոնում նստած մի անձի: Նրա առջեւում գտնւում է թեւաւոր հրեշտակ, աւելի փոքր դիրքով նկարուած, որի հայեացքը նոյնպէս դարձած է դէպի նոյն կենտրոնական անձին պատկերը, իսկ այդ կենտրոնական անձնաւորութիւնը թէ ով է, չկարողացանք որոշել, որովհետեւ շատ էր վնասուած եւ նկատելի էին միայն անորոշ գծագրութիւններ:

Հիսիսային պատի պեսարանն է. մի անձնաւորութիւն քայլում է դէպի արեւելք, աջ ձեռքում բռնած ոսկէկազմ աւետարան, ունի կարմրագոյն երկար միրուք, ինչպէս որ նրա գլխի մազերի գոյնն է. հագել է կարմիր բաճկոն եւ գորշ գոյնի վերարկու: Նրա մօտ է մի երկրորդ անձնաւորութիւն, երիտասարդ հասակում, անմիրուք, աջ ձեռքը աղերսական եղանակով առաջ կարկառած. հագին ունէր միայն դեղնագոյն մի շապիկ, խաչերով զարդարուած, ուրիշ հագուստ չունէր:

Նոյն պատի վրայ նկարուած էր Յիսուսի ծնունդը: Աստուածածինը պառկած է, գլուխը բարձրացրած դիրքում, ինչ որ սովորական է աւետարանների մանրանկարներում: Նրա գլխի վերեւը կանգնած է Յովսէփը, բայց դրա գլուխը թափուած է, չկայ նկարում: Կոյսից աւելի ներքեւ չոքած էին երեք մոգերը, հագներին գոյնզգոյն, արեւելեան ճոխ հագուստներ, իսկ բարձրում սաւառնում էին խմբով հրեշտակները, «Փառք ի բարձունս» երգելով: Մանրամասնութիւնների նկարագրութիւնը թողել էինք լուսանկարչական ընդօրինակութեան:

Կային նաեւ որմնանկարների այլ բեկորներ, միանգամայն անորոշելի: Նկարչական ու ոճական յատկութեամբ պէտք է ընդունել, որ նկարներն պատկանում էին եկեղեցաշինութեան ԺԳ դարին...»:[268] Այնուհետեւ դրանք ուսումնասիրել է Լ. Դուռնովոն եւ նշել. «Հարավային պատի վրա պատկերված է Սուրբ Նիկողայոս Հրաշագործին Քրիստոսի կողմից վեղարի եւ Մարիամ Աստվածածնի կողմից թիկնոցի հանձնման մեծամասշտաբ պեսարանը, իսկ հյուսիսայինի վրա՝ Ստեփանոս սարկավագի քարկոծման պեսարանը (գտնվում է պատի աջ մասում): Նիկողայոս Հրաշագործի պաշտամունքը տարածում չունենալով Հայաստանում՝ անգամ ուշ միջնադարում, ու նաեւ վերջինիս ի հայտ գալը եւս պետք է որ առանձնահատուկ պատճառ ունենար»:[269]

Նյութի առնչությամբ հետագայում (1980 թ.) Բ. Ուլուբաբյանն ու Մ. Հասրաթյանն իրենց համատեղ հոդվածում նշել են. «Ըստ միջնադարեան արուեստի լաւագոյն գիտակներից մէկի՝ Լ. Դուռնովոյի մեկնաբանութեան՝ հարաւային ճակատում խոշոր որմնանկարը պատկերում է Քրիստոսի կողմից սուրբ Նիկողայոս Հրաշագործին վեղարի եւ Մարիամ Աստուածածնի կողմից թիկնոցի յանձնումը, իսկ հիւսիսային ճակատում պատկերուած է Ստեփանոս վարդապետի քարկոծուելով նահատակութիւնը: Սակայն կասկածելի է Նիկողայոս Հրաշագործի պատկերումը Դադի վանքում, որովհետեւ այդ սրբի պաշտամունքը Հայաստանում ընդունուած չի եղել: Ենթադրվում է, որ Դադիվանքում որմնանկարների հեղինակը հենց ինքը՝ Արզու Խաթունն է եղել, իր դուստրերի հետ, որովհետեւ յայտնի է Կիրակոս Գանձակեցու վկայութիւնն այն մասին, որ նրանք օժտուած են եղել նկարչական բացառիկ տաղանդով»:[270] Հետագայում Մ. Հասրաթյանը վկայակոչել է միայն Լ. Դուռնովոյի տեսակետը, ըստ երեւույթին մերժելով նախկինում Բ. Ուլուբաբյանի հետ համատեղ իրենց հայտնած այն կարծիքը, թե՝ որմնանկարում պատկերվածը Նիկողայոս Հրաշագործը չէ:[271]

Մենք հավաստում ենք Լ. Դուռնովոյի տեսակետը, քանզի այդ է վկայում պատկերի գլխավերեւում



*ԿԱԹՈՂԻԿԵ ԵԿԵՂԵՑԻ. հատված հյուսիսային պատի որմնանկարներից*

սպիտակ ներկով արված արձանագրությունը («Սբ Նիկողայոս Հայրապետն»), որը զամանալիորեն վրիպել է նախորդ հետազոտողների ուշադրությունից (տես ներկա հրատարակության 114-րդ էջում N 42 արձանագրությունը):

Ի պատիվ Լ. Դուռնովոյի՝ պետին է նշել, որ նա առանց արձանագրությունը նկատելու եւ ընթերցելու կարողացել է ճիշտ եզրակացության հանգել:

Ինչ վերաբերում է որմնանկարների թվագրման խնդրին, ապա խորանի մեջ սվաղի շերտին փորագրված արձանագրությունը (իբր՝ 1251 թ.) հիմք ընդունելով՝ դրանք 1214-1251 թթ. վերագրելը պարզապես սխալ է, քանի որ եկեղեցու ներսում սվաղի շերտի վրա փորագրված այլ արձանագրություններ էլ կան՝ 1263, 1265, 1267, 1297 եւ 1312 թթ.: Դրանցից 1263 եւ 1297 թթ. արձանագրությունները փորագիր չեն, այլ գրված են ներկով:[272] Վերը շարադրվածից հետեւում է, որ, որմնանկարները կատարված պետք է լինեն XIII դ. 2-րդ կեսին եւ կամ նույնիսկ XIV դ. սկզբներին:

268. *Նշվ. աշխ. էջ 87:*

269. *Л. А. Дурново, Очерки изобразительного искусства средневековой Армении, Москва, 1979, էջ 153-154:*

270. *Տես՝ Բ. Ուլուբաբյան, Մ. Հասրաթյան, Դադիվանք «Հայկազեան Հայագիտական Հանդէս», հ. Ը, Պէյրութ, 1980, էջ 37-38:*

271. *Մ. Հասրաթյան. Հայկական ճարտարապետության Արցախի դպրոցը, Երեւան 1992, էջ 49:*

272. *Տես NN 38, 41 արձանագրությունները:*

# ՔԱՇԱԹԱՂԻ (ԼԱՉԻՆ) ՇՐՋԱՆ




***Պատմական ակնարկ:*** Հայ մատենագրության մեջ Աղահեճք գավառի առաջին հիշատակությանը հանդիպում ենք VII դարում ստեղծված «Աշխարհացոյց»-ի մեջ՝ որպես Մեծ Հայքի Սյունիք նահանգի 12 գավառներից մեկը:[1] Այնուհետեւ գավառը հիշատակում է Մովսես Կաղանկատվացին 846 թ. տեղի ունեցած արաբ մի զորապետի ասպատակության առնչությամբ. «...արշաւանս առնէր յաշխարհն Սիւնեաց եւ գերի վարեալ զԲաղացն սահմանս՝ գայ իջանէ յԱղահէջ գաւառ յաւան մի՝ Արքուգետ կոչեցեալ...»:[2] Աղահեճքը կրկին հիշվում է նաեւ XIII դարում: Ուշագրավ է, որ արդեն այդ ժամանակ գավառի համար ավելի գործածական էին այլ անվանումներ. «... Աղահեճ գավառը, որ այժմ կոչվում է Քաշաթաղ եւ Խոժոռաբերդ»:[3]

Երկու հատվածի տրոհված գավառակներն իրենց անուններն առել էին դրանցում գտնվող նույնանուն բերդերից:[4]

Ի տարբերություն Խոժոռաբերդ գավառամասի՝ Քաշաթաղը, որն ընդգրկում էր նախկին Աղահեճք գավառի հարավային եւ հարավ-արեւմտյան հատվածը, հետագա դարերում նշանակալի պատմական դեր է ունեցել եւ այդու բազմիցս հիշվել ժամանակակիցների երկերում: Այսպես. 1488 թ. գավառը, այնտեղ գտնվող Խոզնավար գյուղի հետ միասին հիշվում է մի ձեռագիր ավետարանի հիշատակարանում. «...գրեցաւ ի գաւառիս Քաշթաղուց, ի գէղս որ կոչի Խոզանաւար, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի նախավկայիս...»:[5]

XVI դարում գավառն ավելի հաճախ հիշվում է հապավված՝ Քշտաղ անվանաձեւով: Նույն դարի վերջին այդտեղ կազմավորված հայկական իշ-

1. **Անանիա Շիրակացի**, *Մատենագրություն, Երեւան, 1979, էջ 295:*
2. **Մովսէս Կաղանկատուացի**, *Պատմութիւն Աղուանից աշխարհի, Երեւան, 1983, էջ 331:*
3. **Ստեփանոս Օրբելյան**, *Սյունիքի պատմություն, Երեւան, 1986, էջ 70:*
4. *Նշվ. աշխ., էջ 71:*
5. *«ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մասն Գ, Երեւան, 1967, էջ 116:*

խանության կենտրոնն էր Խանածախ գյուղը. «Մելիք Հայկազն ի Քշտաղս երկրէն՝ ի Խանածախ գեղջէ»:[6] 1609 թ. հրապարակվել էր պարսից Շահ Աբբաս Ա-ի հրովարտակը Քաշաթաղի Մելիք Հայկազի իրավունքները իր հակառակորդների նկատմամբ պաշտպանելու վերաբերյալ. «... Լավագույն քրիստոնյա Քուշթասիֆի Մելիք Հայկազը»:[7] Հայտնի է նաեւ 1620 թ.՝ նույն շահի մեկ այլ հրովարտակը. «... որով Քաշաթաղի Մելիք Հայկազի սեփականատիրական իրավունքները հաստատվում են Քաշաթաղում եւ Ղափանում գտնվող կալվածների վրա»:[8] Ուշագրավ են նաեւ Սեֆյան շահ Սաֆիի 1634 թ. հրովարտակը[9] Քաշաթաղի հայերից գանձվող եկեղեցական տուրքերի գանձման իրավունքը՝ Էջմիածնին վերապահելու մասին (այդ հարկերը ստանալու հավակնություն էր ցուցաբերում նաեւ Գանձասարի կաթողիկոսը) եւ Շահ-Աբբաս Բ-ի 1646թ. հրովարտակը՝ Քաշաթաղի 4 գյուղերին որոշ հարկերից ազատելու վերաբերյալ:[10] 1647թ. գավառը դարձյալ հիշվում է մեկ այլ ձեռագրի հիշատակարանում. «Գրեցաւ զսայ ի յերկիրս Քաշթաղու, ի գուղս Խանածախ, ընդ հովանեաւ Ամէնափրկչիս, ի թըւականիս Հայոց ՌՂՋ (1647)-ին...»:[11] Կարեւոր մի հիշատակություն եւս, ուր վկայված է գավառի համանուն բերդը վերաբերում է 1652 թ., իսկ առիթը մի նոր ձեռագրի ստեղծումն էր. «...ի յասպուածաբնակ եւ յանառիկ դղեակս Քաշթաղ, ի գ[ե]օղն Խզնավար, ընդ հովանեաւ Սրբոյն Ստեփանոսի Նախավկային...»:[12] Նույն դարի վերջին կատարված անցքերի կապակցությամբ «յերկիրն Քաշթաղու»-ն հիշում է նաեւ Զաքարիա Քանաքեռցին:[13]

XVIII դարի 2-րդ կեսի ընթացքում գավառի մի շարք բնակավայրեր հայաթափ եղան: Հայտնի է, օրինակ, որ Քաշաթաղի գյուղերից մեկի՝ Հալաքի հայերը հարազատ շենը լքել ու Ջրաբերդի եւ Գյուլիստանի մելիքներին միանալով դեպի Գանձակի խանի փիրույթներն էին գաղթել այն բանից հետո, երբ Շուշիին տիրացած Փանահ խանի եւ Ուրմիայի Ֆաթ-Ալի խանի միջեւ կռվից հետո կնքվել էր հաշտության պայմանագիրը. «Հալաքը դատարկվեց եւ զբաղեցվեց մողաուրցի քրդերով, որոնք այժմ էլ այդտեղ են մնում»:[14] Նույն դարի վերջերին եւ, հատկապես, XIX դարի ընթացքում լքված գյուղատեղիների զգալի մասը զբաղեցրին քրդական եւ թյուրքական մի շարք խաշնարած ցեղեր: Հայտնի չէ, թե գավառի երբեմնի բնիկ տերերի՝ Մելիք-Հայկազյանների վերջին շառավիղները ե՞րբ էին թողել հայրենիքը, բայց արդեն XIX դարի առաջին կեսին նրանց հետքերը գտնում ենք մերթ Շաքի քաղաքում, մերթ՝ Քութայիսում[15] եւ կամ այլուր: Օրինակ՝ Շաքիի «ղարիպականաց» (օտարականների) գերեզմանոցում 1986-ին դեռ պահպանվում էր հետեւյալ արձանագրությունը կրող տապանաքարը.

ՀԱՆԳՉԻՄ ԱՍՏԱՆՕՐ ԴԱՒԻԹՍ ԼԱԶԱՐԵԱՆՑ, | ԾՆՈՒՆԴ ԱՐՑԱԽՈՒ ԵՐԿՐԻՆ ՔԱՇԱՋԱՆՑ, | ՍԵՐՈՒՆԴ ԻՇԽԱՆԱՑ ՔՇՏԱՂ ԳԱՒԱՌԻ, |ՄԵԼԻՔ ՀԱՅԿԱԶԻՆ ՈՒ ԲՀԱՏՈՒՐ ԲԷԿԻ, | ՊԱՆԴՈՒԽՏՍ ՏԱՐԱԲԱՂԴ ՄՏԻ ՅԱՅՍ ԴԱՄԲԱՆ, | ԿԱՐՕՏ ԴԵՌԱՀԱՍ ՈՐԴՒՈՅՍ ՍԻՐԱԿԱՆ, | ՀԵՂԵԼՈՎ ՔԱՐՏՕՍՐՍ Ի ԾԱՆՐ ՄԱՀՃԻ, | ՅԱՆՁՆԵՑԻ ՔՆՈՍԱ ԵՐԿՆԱՅԻՆ ՏԵՍՉԻ | ԵՐԵՍՈՒՆ ԱՄԵԱՅ ԿԵՆՕՔ ՎԱԽՃԱՆԵՑԱՒ Ի ՍԵՊՏԵՄԲԵՐ 1823:

մյուս երեսին՝

ԿԱՌՈՒՑԱՒ ՏԱՊԱՆԱՔԱՐՍ ԱՐԴԵԱՄԲՔ | ՈՐԴՒՈՅ ՀԱՆԳՈՒՑԵԼՈՅՆ ԴԵՆԵՐԱԼ ՄԱՅՕՐ | ԻՒԱՆԷԻ ԴԱՒԻԹԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ:



*Աղավնագետի հովիտը միջին հոսանքի շրջանում*

6. **Առաքել Դավրիժեցի**, Գիրք պատմութեանց, Երեւան, 1990, էջ 63:

7. «Մատենադարանի պարսկերեն վավերագրերը. հրովարտակներ», կազմող՝ **Հ. Դ. Փափազյան**, պրակ երկրորդ, 1601–1650 թթ., Երեւան, 1959, էջ 89–90:

8. Նշվ. աշխ., էջ 99–100:

9. Նշվ. աշխ., էջ 109:

10. Նշվ. աշխ., էջ 124–125:

11. «ԺԷ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», հ. Գ, Երեւան, 1984, էջ 256:

12. Նշվ. աշխ., էջ 506:

13. **Զաքարեայ սարկաւագի** պատմագրութիւն, Վաղարշապատ, հատոր Բ, 870, էջ 9:

14. **В. Потто**, Генерал-адьютант Иван Давидович Лазарев, Тифлис, 1900, էջ 11:

15. «Մեղու Հայաստանի», շաբաթաթերթին 1862 թ. Քութայիսից թղթակցում էր պողպորուչիկ Աղեքսանդր Թումանյան Մելիք-Հայկազյանը (ղարաբաղցի) «Մեղու Հայաստանի» 1862, N28, յուլիս 14, էջ 111: 1890 թ. Անիում Կաթողիկե եկեղեցու խաչկալը կառուցելու ծախսը ստանձնել էր Ախալցխայի բնակիչ գնդապետ Իսահակ Մելիք-Հայկազյանը («Մշակ», 1890, N1, էջ 3), որն, ի դեպ, 10 տարի շարունակ վարել էր Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերության Ախալցխայի ճյուղի նախագահի պաշտոնը եւ վախճանվել 1899-ին Թիֆլիսում («Մուրճ», 1899, N1, էջ 144–145) եւ այլն: Առհասարակ, ինչպես երեւում է տարբեր աղբյուրներից, Մելիք-Հայկազյանների տոհմի շառավիղները ավանդաբար հմտացել են հատկապես զինվորական գործի մեջ:

Ինչ վերաբերում է Աղահեճքի փրոհումից հեփո նրա հյուսիսային եւ հյուսիս-արեւելյան մասում փեղորոշվող Խոժոռաբերդ գավառին, ապա սրա վերաբերյալ աղբյուրների բացակայության հետեւանքով հետագա դարերում այդ գավառի պապմական ուղին հիմնականում մնում է անհայտ: XVI-XVIII դարերում գավառամասն առավելապես հայտնի էր Մաղավուզ անվամբ, իսկ XIX դարի սկզբներին հաճախակի հիշվում է Ջառիսփ անվամբ (տես՝ Ջառիսփ գյուղի բաժնում):

Երբեմնի Աղահեճք գավառի տարածքը ներկայում հիմնականում համապատասխանում է ԼՂՀ Քաշաթաղի (նախկին՝ Լաչին) շրջանին: Տարածքն է՝ 1835 քկմ:

***Աղավնագետի ավազան:*** Արաքսի ավազանին պատկանող Հագարու գետի ամենաջրառատ վտակը նրան աջից միախառնվող Աղավնագետն է: Այն սկիզբ է առնում Ղարաբաղի բարձրավանդակի Ծղուկ լեռնագագաթի (ծ.մ. 3584 մ) հյուսիս-արեւելահայաց սփորոտում գտնվող փոքրիկ լճակից (ծ.մ. 3186 մ), ունի 51 կմ երկարություն եւ 527 քկմ ջրհավաք ավազան:[16]

Գետի բարեբեր հովիտը վաղնջական ժամանակներից ի վեր բնակեցված է եղել: Ներկայում տարածաշրջանում պահպանվում են առնվազն միջնադարից սկիզբ առնող ավելի քան 30 գյուղեր եւ գյուղավանաձեւով: Այն հայերեն բառացի թարգմանությամբ նշանակում է «սեւ քահանա»: Ո՞վ էր այդ քահանան, որի պատվին օտարները Ղարաքեշիշ են կոչել գյուղը, առայժմ մնում է անհայտ, իսկ գյուղում պահպանված պատմական հուշարձանների հետքերը վկայում են նրա հայաբնակ լինելը մինչեւ XVIII դարի սկզբները:

Գյուղի պատմական անունը վերականգնվում է Օրբելյանի «Ժամանակագրության» հավելվածում տեղ գտած Քաշաթաղ գավառի 18 գյուղերի անվանացուցակի շնորհիվ:[17] Այն հանգամանքը, որ ցուցակում թվարկված գյուղերը հիշված են հերթականությամբ (հարավ-արեւելքից՝ հյուսիս-արեւմուտք ուղղությամբ) մեծապես դյուրացնում է խնդրի լուծումը: Այդպես. Ղարաքեշիշ-Լենինքյանդը մի գյուղ էր, որը գտնվում էր Հակ եւ Սպիտակաջուր գյուղերի միջեւ (վերջիններիս տեղադրությունը որոշակի է), իսկ ցուցակում հիշյալ 2 գյուղերի անունների միջեւ նշված են միայն Փող եւ Եզնագոմեր գյուղերը: Մեր խորին համոզմամբ սրանցից վերջինն է, որ համապատասխանում է Ղարաքեշիշին: Այդ են վկայում նաեւ հետեւյալ փաստերը: Նախ՝ ներկայիս Ղարաքեշիշ-Լենինքյանդը շրջանի ամենաբազմամարդ գյուղը լինելով հանդերձ, գոյացել է ակնհայտորեն նաեւ միջնադարում բազմամարդ գյուղի ավերակների տեղում, իսկ հիշյալ ցուցակում՝ Եզնագոմերը Տաթեւի վանքին առավելագույն պտղահարկ մուծող (6700 միավոր) գյուղն





*ԵԶՆԱԳՈՄԵՐ. ընդհանուր տեսքը եւ բնակելի տենք XVII - XVIII դ.դ.*

տեղիներ: Ստորեւ ներկայացնում ենք դրանց պատմությանն ու պահպանված պատմական հուշարձաններին առնչվող նյութերն ըստ տեղադրման հաջորդականության:

### ԵԶՆԱԳՈՄԵՐ (ՂԱՐԱՔԵՇԻՇ, ԼԵՆԻՆՔՅԱՆԴ)

Խորհրդային տարիներին Լենինքյանդ վերանվանված գյուղը ե՛ւ ցարական քարտեզներում, ե՛ւ գրականության մեջ հանդիպում է Ղարաքեշիշ անէր, որն ինքնին գյուղի բազմամարդության վկայությունն է: Բացի այդ, հենց գյուղի անվանումն իսկ անուղղակի կերպով օգնում է խնդրի պարզաբանմանը: Կարծում ենք, պատահական չէ եւ տրամաբանական է, որ ողջ գավառի մեջ ալպիական արոտավայրերի ամենալայնարձակ դաշտերով շրջապատված, բարձրլեռնային (ուր բնականաբար հատկապես անասնապահությունն էր զարգացած) մի գյուղ՝ Եզնագոմեր կոչվեր:

16. *«Անրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր IV, Բաքու, 1980, էջ 279:*

17. *Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբէլեանի» (հավելված), Երեւան, 1942, էջ 42:*

Եղնագոմեր-Ղարաքեշիշ-Լենինքյանդը գտնվում է Աղավնագետի ավազանը Հոչաս գետի հետ միացնող լեռնանցքներից մեկի հարավակողմում, ծ.մ. 1890-1990 մ բարձրության վրա: Գյուղի հյուսիսային կողմում տարածված հին թաղամասում կանգուն վիճակով պահպանվում է գյուղի երբեմնի տանուտիրոջ կամ քահանայի երկսենյականոց տունը: Շինության արտաքին չափերն են 9,80x8,50 մ: Պատերի հաստությունը 1 մ է, թաղածածկերը կիսաշրջանաձեւ են: Շարվածքն անմշակ քարով եւ կրաշաղախով է: Պատերը ներքուստ ծածկված են սվաղի շերտով: Ունի մի քանի պահարան-խորշեր եւ դեպի ներս լայնացող 2 լուսամուտ: Շինարվեստով ու հորինվածքով բնորոշ է XVII դարի վերջերին եւ XVIII դարի սկզբներին: Բացի այն, որ սենյակներից յուրաքանչյուրը դրսից առանձին մուտք ունի, դրանք միմյանց հետ հաղորդակցված են լրացուցիչ ներքին մուտքով: Մուտքերի անկյունաքարերը սրբատաշ են:



*Բնակելի շենքի հատակագիծը*

Կառույցը մինչեւ վերջին տարիներս տեղացի թրքացած քրդերի կողմից օգտագործվում էր որպես բնակարանի օժանդակ մաս եւ հայտնի էր «Ասլի Քյարամի քիլիսա» անունով: Վերը շարադրվածից եւ շենքի ներկայացված հատակագծից երեւում է, որ շինությունը բնավ պաշտամունքային նշանակություն չի ունեցել: Հետեւաբար, տվյալ դեպքում տեղացիներն այն «քիլիսա» (թուրք. եկեղեցի) էին կոչում պարզապես հաշվի առնելով նրա՝ քրիստոնյա բնակիչներից մնացած լինելու հանգամանքը:

Վերոհիշյալ շինությունից ոչ հեռու, 1940-ականներին կառուցված առանձնատան պատի մեջ ագուցված են XVII դարին բնորոշ տապանաքարերի բեկորներ: Դրանք խաչազարդ են, զարդարված թռչնապատկերներով:

## ՉՐԱՂԼՈՒ (ՃՐԱ՞Գ)

Եղնագոմեր գյուղից 4 կմ հարավ-արեւելք, Աղավնագետի ձախակողմյան մի փոքրիկ վտակի ակունքի մոտ ծ.մ. 1860-1920 մ բարձրությամբ հարավահայաց լեռնակողին փռված է գավառի հին գյուղերից եւս մեկը, որի պատմական անունը մոռացության է մատնվել եւ այժմ հայտնի է արդեն XIX դարի կեսերից ի վեր քրդերի կողմից տրված Չրաղլու հորջորջմամբ:

Ազգագրագետ Ե. Լալայանի վկայության համաձայն՝ XIX դ. վերջին այս գյուղում գոյություն է ունեցել քուրդ բնակիչների կողմից խոտանոցի վերածված հայոց եկեղեցի,[18] որը, սակայն, ներկայում հիմնավեր է:

Չրաղլուից 1 կմ հարավ Քյամալլու գյուղն է, որը հիմնականում գոյացվել է խորհրդային տարիներին եւ հին պատմություն չունի:

## ՀԱԿ (ՄԻՆՔՅԱՆԴ)

Աղավնագետի ձախ կողմում, ծովի մակերեւույթից 1720-1800 մ բարձրության վրա գտնվող պատմական հարուստ անցյալ ունեցող Հակ գյուղը հայ մատենագրության մեջ առաջին անգամ հիշատակվում է XIII դարում, Ստեփանոս Օրբելյանի կողմից:[19] Այն հանգամանքը, որ հետագայում գյուղը ստացել է Մինքյանդ անունը, մի շարք հետազոտողների[20] եւ այդ թվում մեզ[21] կարծել է տվել, թե այն Օրբելյանի հիշատակած Մննի գյուղն է եղել եւ օտարների կողմից քիչ աղավաղվելով դարձել է՝ Մինքյանդ:

Սակայն, հայտնի «Ժամանակագրության» մեջ, ըստ տեղադրության հերթականության, հիշված Հակը ճշտորեն համապատասխանում է ներկայիս Մինքյանդին (այդ ցուցակում Հակը հիշված է Հերիկի եւ Եղնագոմերի միջեւ): Բացի այդ՝ ակնհայտորեն նաեւ միջնադարում բազմամարդ եղած գյուղը բնականաբար կունենար նաեւ բարձր հարկաչափ: Եվ իսկապես, Օրբելյանի Աղահեճ գավառի ցուցակում հիշված Հակի դիմաց նշված է հարկաչափ՝ 15 միավոր: Այն ամենաշատն էր ամբողջ գավառում: Մինչդեռ նույն ցուցակում հիշված Մննին հարկ էր մուծում ընդամենը՝ 6 միավոր: Վերջապես գյուղի՝ Հակ անունը հիշված է նաեւ գյուղամիջում կանգուն եկեղեցու 1675 թ. փորագրված արձանագրության մեջ (տե՛ս իր տեղում): Ուստի սրանով հերքվում է մինչեւ այժմ այնքան համոզիչ թվացող եւ անգամ կասկած չհարուցող Մննի-Մինքյանդ նույնականությունը պնդող տեսակետը: Ինչ վերաբերում է Մինքյանդ անվան ծագմանը, ապա այն, համաձայն մի ավանդության,

18. *«Ազգագրական հանդէս», գիրք Դ, N2, Թիֆլիս, 1898, էջ 49:*
19. ***Ստեփանոս Օրբելյան**, Սյունիքի պատմություն, Երեւան, 1986, էջ 399: **Ղ. Ալիշան**, Սիսական, Վենետիկ, 1893, էջ 267:*
20. ***Մորուս Հասրաթյան**, Պատմա-հնագիտական ուսումնասիրություններ, Երեւան, 1985, էջ 155: **Армен Карагезян**, К локализации гавара Кашатаг, «ԼՀԳ», 1987, N1, էջ 43:*
21. ***Ս. Կարապետյան**, Ազատագրված Մննի գյուղի պատմությունից, «Հայրենիքի Ձայն», 1993, N 27, էջ 5:*









*ՅԱԿ. մինչեւ 1918 թ. հայաբնակ թաղամասը, Սբ. Մինաս եկեղեցու տեսքը հարավ-արեւմուտքից, նույն եկեղեցու տեսքը արեւելքից եւ կամուրջ Աղավնագետի վրա*

կապվում է Լենկ Թեմուրի անվան հետ, համաձայն որի՝ գյուղը զորավարի ավերած 1000-րդ բնակավայրն էր (մին=հազար, քյանդ=գյուղ):[22]

Գյուղում եւ մերձակայքում պահպանված բազմաբնույթ հուշարձանները վկայում են, որ Հակը հայաբնակ է եղել մինչեւ XVIII դարի սկզբները: Այն կրկին հայերով բնակեցվել է 1841 թ.,[23] երբ այնտեղ մշտական բնակություն են հաստատել Խընձորեսկ գյուղից փոխադրված հայ ընտանիքներ: Ի դեպ, խնձորեսկցի հայերի մի մասի՝ Մինքյանդում հաստատվելու առթիվ վկայություններ են պահպանվել նաեւ արխիվային վավերագրերում «...բնակչաց Խնձորեսկ գեղջ վերաբնակեցելոց ի գիւղն Մինքեանդ յաջորդութիւն Տաթեւու...» (1856թ.):[24] Սակայն, գյուղն այլեւս զուտ հայաբնակ չէր:

XIX դ. վերջին եւ XX դ. սկզբին մի քանի վավերագրերում գյուղաբնակ հայերի թվաքանակը վկայված է հետեւյալ չափով.

| Տարեթիվ | տուն | ար. | իգ. | միասին |
|---|---|---|---|---|
| 1886 | 47 | 246 | 207 | 453[25] |
| 1897 | 85 | - | - | 556[26] |
| 1901 | - | 270 | 228 | 498[27] |
| 1905 | - | - | - | 696[28] |
| 1918 | - | - | - | 811[29] |

Մինքյանդում հայերը բնակվում էին առանձին թաղամասում, գյուղի հարավային կողմում, դեպի Աղավնագետը իջնող հարավահայաց ձորալանջին: Ի դեպ, ճիշտ այդ հատվածում է սահմանագծվում պատմական Հակ գյուղատեղին: XX դարի սկզբին մինքյանդցի հայերը. «... ունէին լաւ տներ՝ յաճախ երկու յարկանի եւ թիթեղեայ տանիքով: Նրանք պարապում էին երկրագործութեամբ, անասնապահութեամբ, մասամբ եւ առեւտրով: Ունէին 21 խանութ զանազան տեսակի ապրանքներով: Ունէին նաեւ դպրոց իր յատուկ շէնքով, ուր սովորում էին նոյն իսկ

22. **Ա. Ղանալանյան**, *Հայկական ավանդություններ, Երեւան, 1969, էջ 172: "Армянские легенды и предания", Москва, 1990, էջ 33:*

23. **Ա-Դօ**, *Հայ-թաթարական ընդհարումները Կովկասում 1905-06 թթ., Երեւան, 1907, էջ 255:*

24. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 19:*

25 *"Елисаветопольская губерния. свод статистических данных извлеченных из посемейных списков населения Кавказа", Тифлис, 1888, էջ 140-141:* **Ղ. Ալիշան**, *Սիսական, Վենետիկ, 1893, էջ 101: Նույն թվին գյուղում բնակվում էին նաեւ 23 տուն (147 շունչ) թրքեր:*

26 **Ա.-Դօ**, *նշվ. աշխ., էջ 245:*

27. *ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 56, ց. 14, գ. 205, թ. 27-28:*

28. **Ա.-Դօ**, *նշվ. աշխ., էջ 259:*

29. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 150, ց.1, գ. 59, թ.5:*

թուրք մանուկներ...»:[30]

1905 թ. հայ-թրքական ընդհարումների չարաղետ ալիքն ընդգրկեց նաեւ Մինքյանդը: Ինչպես տեղացի, այնպես էլ հարեւան գյուղերի գազազած ամբոխը ամբողջ 4 օր (օգոստոսի 19-22-ը) իրականացրեց անպաշտպան եւ փրկության որեւէ ճանապարհ չունեցող հայության սպանդն ու թալանը: 696 հայ բնակիչ ունեցող գյուղը կորցրեց 240 մարդ: Նրանցից 198-ը սպանվեցին, իսկ մյուսները գերեւարվեցին: Հայերի ամբողջ ունեցվածքը թալանվեց, իսկ տները հրկիզվեցին:[31] Քիչ ուշ (օգոստոսի 25-ին), Շուշիի մոտակա քոչվորների ձեռքից ազատվեցին 5 հայեր, իսկ եւս 38-ը ազատվեցին մուղանցի թափառական թուրքերի ձեռքից:[32]

Ընդհանրապես, մինքյանդցի քրդերը միշտ էլ աչքի են ընկել հայերի նկատմամբ կատարած գազանություններով: Ծնունդով այս գյուղից էր 1918 թ. Բաքվում հայերի կոտորածների գլխավոր կազմակերպիչներից մեկը՝ Խոսրով բեկ Սուլթանովը. «Իրենց դաժանությամբ առանձնապես աչքի էին ընկնում նրա Սուլթան եւ Իսկենդեր եղբայրները, որոնք հայաբնակ գյուղերի (Վանք, Բալլուջա եւ այլն) վրա ավազակային հարձակումների կազմակերպիչներն էին: Սուլթան բեկի ձեռքով ոչնչացավ եւ անխիղճ թալանի ենթարկվեց Հաջի-Սամլուի ֆրանսիական ընկերության բնակավայրը...»:[33]

1913 թ. Գանձակի նահանգական դատարանում տեղի ունեցավ Մինքյանդի հայության կոտորածի գործով դատը. «... Մեղադրուողների թիւը առաջի տարում եղել է մօտ 200, բայց մեղադրանքի փաստացի կողմը թոյլ լինելով, կրճատուելով, այժմ հասել է 33-ի»:[34] Ամբողջ գյուղերի եւ առաջին հերթին Մինքյանդի քրդերի մասնակցությամբ իրականացված հայերի կոտորածի համար ի վերջո կայացած դատավճռով պատասխանատվություն կրեցին միայն 29 մարդ. «մինքենդցի մօտ 250 հոգու, մանկամարդ կանանց եւ աղջկանց կոտորածի վերաբերմամբ նահանգական դատարանի սեկցիայի ունեցած 7 օրուայ նիստից յետոյ ներկայ եղող 30 մեղադրեալներից արդարացած է մէկը, դատապարտուած է մէկը, դատապարտուած են 8-ից մինչեւ 12 տարուայ տաժանակրութեան 23 հոգի, իսկ հինգ հոգի 8 եւ մի հոգի 4 ամսուայ բանտարկութեան»:[35]

Դատավարությունից հետո. «Իր հայրենի հողին ու ջրին սովոր գիւղացին, չնայած այն բոլոր գազանութիւններին, որ տեսել էր համագիւղացի թիւրքերից, ժամանակի ընթացքում վերադառնում է Մինքենդ, նորից իր քանդուած տունը շինում, իր կողոպտուած գութանը սարքում...»:[36]

1916 թ. Մինքյանդում քահանա ձեռնադրվեց համագյուղացի Միքայել Տեր-Մինասյանը:[37]

Նոր արհավիրքը իրեն երկար սպասեցնել չտվեց: 1918 թ. գյուղը վերջնականապես պարպվեց հայ բնակչությունից: Նրանք գլխավորապես վերաբնակվեցին Խնածախ, Խոզնավար եւ հարակից այլ գյուղերում:

1921 թ-ից գյուղը հայտնվեց Խորհրդային Ադրբեջանի կազմում, իսկ դա նշանակում էր, որ Մինքյանդից հեռացած հայերի համար վերադարձը հայրենի գյուղ կարող էր մնալ միայն իբրեւ չիրականացված երազանք, քանի որ այդ պետության գոյության ընթացքում միայն համալրվեցին հայաթափ նոր բնակավայրերի ցուցակները: Արդեն 1981 թ. Մինքյանդն ուներ 2306 ծագումով քուրդ, թրքացած բնակչություն:[38] Փաստորեն անցնող տասնամյակների ընթացքում Մինքյանդը դարձել էր Լաչինի շրջանի ամենաբազմամարդ գյուղը:

Արցախյան մերօրյա շարժման հենց սկզբից մինքյանդցիները կրկին աչքի ընկան իրենց ավազակաբարո վարքով: 1988-1992 թթ. ընթացքում գլխավորապես անասնագողության նպատակով պարբերաբար թափանցելով Հայաստանի Հանրապետության Սիսիանի եւ Գորիսի շրջանների տարածքը, հովիվներին գերելով կամ սպանելով, նրանք դեպի Մինքյանդ էին քշում բազմաթիվ անասնահոտեր:


ՅԱԿ. Սբ. Մինաս եկեղեցու հատակագիծը

Բայց «մեր արինը Աստուած տափին չի թողնի»[39] խոսքը, որն արտասանել էին եղեռնապուրծ մինքյանդցի հայերը 1905-ին, իրականություն դարձավ 1993-ի գարնանը: Հայ ազատամարտիկները վերջնականապես ազատագրեցին Մինքյանդը:

Արդեն նշել ենք, որ Մինքյանդի Հայոց Թաղը գտնվում էր պատմական Հակ գյուղի տեղում: Ճիշտ

30. Ա.-Դօ, նշվ. աշխ., էջ 255:
31. Ա.-Դօ, նշվ., աշխ., էջ 259: Տես նաեւ՝ ՀՀՊՊԿԱ. ֆոնդ 56, ցուցակ 4, գործ 422, թերթ 5:
32. «Արշալույս», 1905, 6 սեպտեմբեր, N 6, էջ 2:
33. Գ. Ա. Հովհաննիսյան, Սովետական իշխանության հաստատումը Լեռնային Ղարաբաղում, Երեւան, 1971, էջ 102:
34. «Հորիզոն», 1913, N 136, էջ 4:
35. «Հորիզոն», 1913, N 129, էջ 4:
36. «Հորիզոն», 1913, N 146, էջ 3:
37. «Արարատ», 1916, սեպտ.-հոկտ., էջ 636:
38. «Ադրբեջանի խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն) հատոր VI, Բաքու, 1982, էջ 578:
39. «Հորիզոն», 1913, N 146, էջ 3:

այդ հատվածում էլ պահպանվել են Սբ. Մինաս եկեղեցին, գերեզմանոցը, դեռեւս XIX դարի վերջերին եւ XX դարի սկզբներին կառուցված բնակելի տները, նաեւ Աղավնագետի ափին՝ երկու ջրաղացների մնացորդները եւ երկթռիչք կամուրջը:[40] Ի դեպ, 1856 թ. մի վավերագրում այդ եկեղեցին հիշատակվում է Սբ. Գեւորգ անվամբ («Սբ. Գէորգ եկեղեցին Մինքեանդ գեղջ ի վաղուց հետէ ունէ զվէմ քար, իսկ զպղծեալ փաճարի անուանեալ աղոթսն կարդացեալ է նայ յայնմ եկեղեցւոջ...»):[41]

Ուշագրավ է, որ հոգեւոր իշխանությունը դեռ 1858 թ. ընդառաջելով Մինքյանդում մշտական բնակություն հաստատած նախկին խնձորեսկցի հայերի խնդրանքին թույլատրել էր իբրեւ ծխական եկեղեցի օգտագործել մինչ այդ հայաթափ գյուղատեղիում կանգուն մնացած եկեղեցին. «... զխնդրագիր բնակչաց Խնձորեսկ գեղջ վերաբնակելոց ի գիւղն Մինքեանդ յաջորդութիւն Տաթեւու, սակս տալոյ նոցա ծրի քահանայ ժամանակաւորապէս ի կատարել զհոգեւոր պէտս նոցա, թոյլատրելով նմա նախագոյն կարդալ զպղծեալ փաճարի ի հին քարաշէն եկեղեցւոջ նորաբնակ գեղջ իւրեանց վասն կատարելոյ յայնմ զսրբազնագործութիւն...» (1858 թ.):[42]

Եկեղեցին, որը գտնվում է հին թաղամասի կենտրոնում, ունի եռանավ բազիլիկի հորինվածք եւ բավական ընդարձակ չափեր (22,58x12,60 մ): Կառուցված է կոփածո գորշ-դեղնավուն քարով, կրաշաղախով: Հարավային ճակատից բացված միակ մուտքի բարավորին փորագրված է.

ՇԻՆԵՑԱՒ Ս(ՈՒՐ)Բ ԵԿԵՂԵՑԻՍ ՆՈՐԱԿ ԽՈՒՆՔ ՀԱԿԱՑ ԺՈՂՈՎՈՒՐԴՍ: | ... | ԹՎ(ԻՆ) ՌՃԻԴ (1675):

Արձանագրության երրորդ տողն անհայտ պատճառով միտումնավոր կերպով քերված է: Վիմագրի աջ անկյան մոտ, XIX դարին բնորոշ գրչությամբ փորագրված է «1673» թվականը:

Եկեղեցու մոտ գտնվող գերեզմանոցում նախկին հետազոտողները տարբեր շիրմաքարերի վրա նկատել եւ ընդօրինակել են հետեւյալ տապանագրերը.

1. ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ[Ն] ՏԷՐ ՀԱՅՐԱՊԵՏԻ(Ն), (ԹՎԻՆ Ռ)ՃԺԱ(1662) ԷՐ:[43]

2. ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՀԱՐՈՒԹԻՒՆ ԲԵԿԻՆ, ՈՐ ԷՐ ԻՇԽՈՂ ՏԱՆՍ, ՌՃԼԴ (1685):[44]

3. ԱՅՍ Է ՀԱ(Ն)Գ(ԻՍՏ) ՌՍԳԷ ԴՌ(Ի)|ԿԻՆ (տիկինին), ԹՎ(ԻՆ) Ռ|ՃԽԷ (1698):[45]

4. ՀԱՆԳԻՍՏ Է ԽՆԾՈՐԵՍԿՈՒՑ ԳԻՒՂՍ ԲԵՐԱԾ ՎԱՐԴԱՋԱՐ ՏԱՆՈՒՏԷՐԻՆ, ՎՃ. 1891, ՈՒԹՍՈՒ ՆԱՄԵԱ ՀԱՍԱԿԱՒ ԷՐ:[46]

5. ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՊԱՐՈՆ ԱՂԱՅՃԱՆԻՆ, ՎՃ. 1904:[47]

Բոլոր այս տապանաքարերն այժմ անհայտացել են:

Մինքյանդ գյուղի տարածքում պահպանված են եղել նաեւ այլ վիմագրեր: Մասնավորապես՝ մի աղբյուրի մոտ ընկած տապանաքարին Ս. Խանզադյանը ընթերցել է.

ԱԾ Է ԱԾԱՏՈՒՐ ... ՉՂԳ(1344):[48]

Գյուղից հարավ, ձորում գտնվող մի գործող ջրաղացի մոտ խաչքարի բեկորի վրա եղել է.

ԱՐՔԱՈՒԹԵԱՄԲՆ ՏԱՐՍԱԻՃԱ...[49]

Նույն վայրում, ավերակների մեջ, մի պալատանման շենքի բարավորի վրա եղել է.

ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲՆ ԱԾ ՀՋԱՒՐՆ ԻՇԽԱՆ ՀԱՅԿԱԶՆ ՏԵՂՎՈՅՍ ... ՌԽԱ(1592):[50]

Գետակի ափին, մի տապանաքարի վրա եղել է.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԱՌՆ ՄԵԾԻՆ ՄԵԼԻՔ ԲԱՂՐ ՄԵԾ ԻՇԽԱՆԻՆ, ՈՐ ԵՂԵՒ ՌՃԻԱ (1672) ՀԱՅՈՑ ԹՈՒԱԿԱՆԻՆ:[51]

Համարյա կիսագետնափոր մի տան պատուհանի վերնամասում կոտրատված խաչքարի վրա եղել է.

... ԵԼԻԿՈՒՄ ՈՐԴԻ ՍՄԲԱՏԱ ՀՋԱՒՐԻՆ ԵՏՈՒ ՁԻԹՀԱՆՍ ՍԲ ԱԾԱԾՆԻ, ԹՎՆ ՉԽԲ (1293), ՈՎ ԽԱՓԱՆԷ...[52]

Եկեղեցու մուտքի բարավորին ըստ Խանզադյանի եղել է.[53]

ՇԻՆԵՑԱ ՅԱՆՈՒՆ ՍՈՒՐԲ ԱԾԱԾՆԻ ... ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ:[54]

Եկեղեցու մոտ մի տապանաքարին փորագրված է եղել.

ԱԾ ՈՂՈՐՄԻ ԾԱՏՈՒՐԻՆ, ԹՎ ՌԾԱ(1602):[55]

Ի դեպ, Ս. Խանզադյանը Մինքյանդի հարավային եզրով հոսող Աղավնագետի ափին կառուցված ջրաղացի հարեւանությամբ նկատել է նաեւ ժայռապատկերներ. «Ջրաղացի մոտ սալ քարեր տեսա՝ անհամար ժայռապատկերներով՝ կաքավ, այծյամ, գայլ, որսորդ, եղջերու եւ այլն»:[56]

Ջրաղացից ոչ հեռու, Աղավնագետի վրա կանգուն է երկթռիչք քարաշեն ու թաղակապ կամուրջը՝ կառուցված XIX դարում: Անցուղու լայնությունը ա-

---

*40. Պատմական հուշարձանների վերաբերյալ համառոտ կերպով տես նաեւ մեր «Ազատագրված Մինքի գյուղի պատմությունից» հոդվածը («Հայրենիքի Ձայն», 1993, N 27, էջ 5):*

*41. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 25:*

*42. ՀՀՊՊԿԱ. ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 25:*

*43. «Դիվան հայ վիմագրության», պրակ 5, Երեւան, 1982, էջ 194: **Ս. Խանզադյան**, Ի՞նչ են պատմում քարերը, «Սովետական Հայաստան» ամսագիր, 1984, N6, էջ*

*44. Նշված աշխատություններ, նույն տեղում:*

*45. **Ս. Խանզադյան**, նույն տեղում:*

*46. Նույն տեղում:*

*47. Նույն տեղում:*

*48. Նույն տեղում:*

*49. Նույն տեղում:*

*50. Նույն տեղում:*

*51. Նույն տեղում:*

*52. Նույն տեղում:*

*53. Նույն տեղում (աս ակնհայտ սխալի արդյունք է, քանի որ եկեղեցու բարավորին միանգամայն այլ արձանագրություն է փորագրված եւ անունն էլ Սբ. Աստվածածին չէ, այլ Սբ. Մինաս):*

*54. Տես՝ «Արարատ», 1879, սեպտ., էջ 398–399:*

*55. **Ս. Խանզադյան**, նշվ. հոդվածը:*

*56. Նույն տեղում:*





ՀԱԿ. բնակելի տուն 1902 թ. (ընդհանուր տեսքը եւ շինարարական արձանագրությունը)

մենանեղ մասում 2,85 մ է, իսկ երկարությունը 16,00 մ: Բացի թաղակիր կամարներից, որ սրբատաշ են, մնացած հատվածները կառուցված են կոփածո քարով եւ կրաշաղախով:

Գյուղի հայոց թաղում, մի երկհարկ տան պատին փորագրված է.

1902 ԱՄ. ԱՅՍ Է | ՊԱՏ ՆԱԶԱՐ Ճ(իռոր). | ՇԱՄ(ի). ՄՉՍ(Մանուչարս). ԱՍ(Ասլան):

Նույն թաղամասում դեռեւս պահպանվել են շուրջ 2 պասնյակ բնակելի տներ, որոնք կառուցվել են մինչեւ 1905 թ.: Դրանց մի քանիսի առաջին հարկերի սենյակները թաղածածկ սրահներ են:

Հակից 3 կմ հարավ, ձորալանջին պահպանվում են միջնադարյան գյուղի, եկեղեցու եւ գերեզմանոցի ավերակներ: Ըստ տեղադրության (Հերիկ եւ Հակ գյուղերի միջեւ) համապատասխանում է «Ժամանակագրության» մեջ հիշված Աղվեսահաք գյուղին: Հետագայում հնավայրը քրդերից հորջորջվել է Աղվափխեր ձեւով:

## ՀԱՅՐԻ (ՀԵՐԻԿ, ԱՀՄԱԴԼՈՒ)

Հակ-Մինքյանդից 3,5 կմ Աղավնագետի հոսանքն ի վար, գետի աջ կողմում, գտնվում է պատմական Հայրի գյուղը: Սրա մասին հիշատակություն ունի Ստեփանոս Օրբելյանը:[57] Անվան նախնական ձեւը փոքր-ինչ փոփոխմամբ հանդերձ պահպանվել է մինչեւ XX դարի սկզբները: Համենայն դեպս Ելիզավետպոլի նահանգի 1904 թվականին կազմված քարտեզում այն նշված է Բարապուն-Հերիկ ձեւով: Խորհրդային փարիներին գյուղը վերանվանվել է Ահմեդլի:



ՀԱՅՐԻ. տեսքը հարավ-արեւելքից

Գյուղամիջում այսօր էլ կանգուն է Սբ. Գեւորգ[58] միանավ թաղածածկ եկեղեցին: Այս եկեղեցու գոյությունը առաջինը փաստել է Ե. Լալայանը: Նա նշել է, որ «Հերիկ» գյուղատեղիում հաստատված մահմեդականները եկեղեցին օգտագործում էին որպես խոտանոց:[59] Խորհրդային փարիներին էլ եկեղեցին միեւնույն նպատակին է ծառայել եւ գուցե թե հենց այդ պատճառով մեզ է հասել կանգուն վիճակով: Այն կառուցված է անմշակ քարով, կրաշաղա-




ՀԱՅՐԻ. Սբ. Գեւորգ եկեղեցու հատակագիծը

57. **Ստեփանոս Օրբելյան**, նշվ. աշխ., էջ 399:

58. Եկեղեցու անունը գիտեին տեղի թրքացած քրդերը (մինչեւ տարածքի ազատագրումը) եւ կոչում էին «Փիր Գեւորգ»:

59. «Ազգ. հանդէս», նույն տեղում:





ՀԱՅՐԻ. Հատված Սբ. Գեւորգ եկեղեցուց եւ խաչքար (1517 թ.) ագուցված եկեղեցու հարավային ճակատում

խով: Միակ մուտքը հարավից է: Ավանդատներ չունի: Հողածածկ, երկթեք փանիքը ներքուստ պահում է մեկ զույգ որմնայսյան վրա հենված թաղակիր կամարը: Հյուսիսային պատի մեջ իր ավանդական փեղում է մկրտարանի ավազանը: Պատերն ունեն 1,3 մ հաստություն: Շենքի արտաքին չափերն են՝ 16,3x9,7 մ: Կառուցման ժամանակ պատերի մեջ ագուցվել են գերեզմանական բնույթի հուշարձաններ: Մասնավորապես՝ մուտքին իբրեւ բարավոր տապանաքար է ագուցված, իսկ հարավային ճակատում, մուտքի արեւելյան անկյունում ագուցված է դեղին կրաքարից կերտված (չափերը՝ 162x84x30 սմ) խաչքար: Վերջինիս քիվին (2 տող) եւ քիվատակին (1 տող) փորագրված արձանագրությունն ու խաչաքանդակները միտումնավոր կերպով քերված են:[60] Փրկվել է միայն քիվատակի մեկ տող արձանագրությունը, որը խաչքարի կերտման թվականն է:

ԹՎ.(ԻՆ) ՋԿԶ(1517):

Նույն խաչքարի քիվին փորագրված արձանագրությունը 1960-ականներին ընթերցվել է այսպես.

ԱԾ ՈՂՈՐՄԻ Ջ... | ԷՏԻԼ ՂՑԿ...[61]

1960-ականներին եկեղեցու հարավային պատի մեջ ագուցված մի տապանաքարին կարդացվել է.

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՊԱՂՏԱՍԱՐԻՆ:[62]

Առկա են նաեւ այս հնավայրին առնչվող՝ Ս. Խանզադյանի այլ ընթերցումները, որոնք կարծում ենք չեն կարող համարվել ճշգրիտ վերծանումներ. «Եկեղեցու դռան մոտի խաչքարին կարդացի.- ԱԾ... ԼԻՊ...ԻՇԽԱՆՍ ԹՎ ՉԳ: Սա 1254 թվի վկայություն է: ... Մի ընկած քարի.- ԿԱՏԱՐԵՑԱՎ Ի ՁԵՌՆ ՀԱՅԿԱԶ ԻՇԽԱՆԻՆ, Թ. ՌԿԲ ... Մի այլ խաչքարի վրա.- ԵՍ ՏԵՐ ՀՈՎԱՆ ՈՐԴԻ ԱՍԽԱԹԱՆԱՅ ԻՇԽԱՆԻ ... ԹՎ ՈՂ: Սա 1241 թվին է կանգնեցվել...»:[63]

## ԲՈՒԼԻՋԱ (ՊԱԼԱՉԱ)

Հայրի գյուղից 1 կմ հյուսիս-արեւելք, Աղավնագետի ձախ ափին գտնվում է աննշան մի գյուղակ: Թվում է, թե սա «Ժամանակագրության» մեջ հիշված Փուլն[64] է, քանի որ 1904 թ. կազմված (5 վերստանոց) քարտեզում գյուղը նշված է՝ «Բուլիջա» ա-

60. Ակնհայտ է, որ դա տեղի է ունեցել բոլորովին վերջերս, հավանաբար 1989–92 թթ. ընթացքում:

61. «Դիվան ...», պրակ 5, էջ 195:

62. Նույն տեղում: Չի բացառվում, որ այս նույն արձանագրության մասին է Ս. Խանզադյանի վկայությունը. «Գյուղի երեւ ծորակում, ցանկապատի մեջ մի համեստ խաչքար ցույց տվին ինձ.- ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՊԱՂՏԱՍԱՐ ԻՇԽԱՆԻՆ ... ԹՎՆ ՋԿԷ» (Սովետական Հայաստան» ամսագիր, 1984, N6, էջ 24):

63. **Ս. Խանզադյան**, նույն տեղում:

64. «Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբէլեանի» (հավելված), նույն տեղում:

նունով: Խորհրդային տարիներին այն վերանվանվել էր՝ Ղալաչա: Բնակիչները շրջակա գյուղերից գաղթած թրքացած քրդեր էին:

## ԲՈՂԼՈՒ

Ղալաչայից Աղավնագետի հոսանքով 3 կմ ներքեւ, գետի նույն ափին ջրառատ ու այգեւետ հովտում ծովի մակերեւույթից 1320-1360 մ բարձրության վրա տարածված է գավառի հին գյուղերից եւ մեկը, բայց որի պատմական անվանումը դեռեւս անհայտ է: XX դարի սկզբներից այն հայտնի է «Բողլու» անունով:

Գյուղի հարավային եզրին՝ Աղավնագետի աջ կողմում, պահպանվել են ջրաղացի ավերակները:





*ԲՈՂԼՈՒ. ընդհանուր տեսքը եւ տաղանաձարի բեկոր՝ փոխադրված Եզնագոմեր գյուղից*

## ՄԵՐԻԿ (ՄԻՐԻԿ)

Բողլուից հազիվ 0,5 կմ հարավ, բայց նկատելի բարձր դիրքով (ծ.մ. 1440-1520 մ), Աղավնագետին աջ կողմից միախառնվող Միրիկ վտակի երկու ափերին փռված են համանուն գյուղի թաղամասերը: Դարասկզբի քարտեզներում գյուղը հիշված է Մերիկ ձեւով, իսկ խորհրդային շրջանում կոչվում էր Միրիկ: Գյուղի համար այլ անվանաձեւ հայտնի չէ: Կարծում ենք, Մերիկն է գյուղի հայահունչ եւ նախնական-պատմական անունը, որը համարյա անաղարտ հասել է մեր օրերը:

Մերիկի հյուսիսային եզրին՝ իր բարձր դիրքով գյուղին իշխող լերկ ժայռազանգվածի վրա, կանգուն վիճակով մեզ է հասել Սբ. Աստվածածին եռանավ թաղածածկ բազիլիկ եկեղեցին: Այն կառուցված է կոփածո քարով, կրաշաղախով: Խաչաձեւ կտրվածքով սյուներն ու բոլոր անկյունաքարերը սրբատաշ են: Շենքը ներքուստ սվաղված է: Պատերի մեջ ագուցված են XII-XVII դդ. տապանաքարեր (ինչպես ամբողջական, այնպես էլ բեկորված): Հարավային ճակատից բացված միակ մուտքը արտաքինից ունի շքեղ հարդարանք: Եկեղեցու ներքին լուսավորությունն իրականացված է դեպի ներս լայնացող 6 լուսամուտների միջոցով: Իր ավանդական տեղում է մկրտարանի խաչաձեւ ավազանը: Խորանի երկու կողմերում մեկական ավանդատներն են: Եկեղեցու պատերն ունեն մինչեւ 1,55 սմ հաստություն: Արտաքին չափերն են 20,60x12,00 մ: Խորհրդային տարիներին եկեղեցու շենքը ծառայել է իբրեւ գյուղական ակումբ:

Որմերին պահպանվել են մի քանի արձանագրություններ: Դրանցից գլխավորը մուտքի ճակատակալ քարին 6 տողով փորագրված շինարարական բովանդակությամբ արձանագիրն է: Վերջինիս առաջին ընթերցումը կատարվել է 1960-ականների սկզբին:[65]

1. Պ(Ա)Ր(Ո)Ն Հ(Ա)ԽՆ(Ա)Զ(Ա)Ր | ԵՍ Պ(Ա)Ր-(Ո)Ն Հ(ԱԽ)Ն(Ա)ԶԱՐՍ ՇԻՆ(Ե)ՑԻ Ս(ՈՒՐ)Բ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾ(Ի)Ն ԵԿ(Ե)Ղ(Ե)Ց(Ի)Ս ՅԻՇ(Ա)Տ-(Ա)Կ ԻՆՁ ԵՒ ԻՄ | ԾՆ(Ո)Ղ(Ա)ՑՆ, ՀԱՅՐՆ ԻՄ Պ(Ա)Ր(Ո)Ն (ՍԱՐ)ԳՍԻՆ, ԵՂԲ(ԱՅ)ՐՆ ԻՄ Հ(Ա)ՅԿ(Ա)ԶՆ Յ(Ի)Շ(Ե)ՑԷՔ Ի Ք(ՐԻՍՏՈ)Ս | ԵՍ ՆՕԱՐԳՍ(?) ՏԱԻՆ(ՈՒ)Տ(Է)Ր ՎԵՐ(Ա)Կ(Ա)ՑԻ Ս(ՈՒՐ)Բ ԵԿԵՂԵՑ(ՈՅ)Ս Տ(ՈՒԱ)Ք: Ե(5) Թ-(ՈՒ)-ՄԱՆ ՅԻՇ(Ա)Տ(Ա)Կ | ԻՆՁ ԵՒ ԻՄ ԾՆ(Ո)Ղ(Ա)ՑՆ: ՄԵՆՔ ՄԱՐԿԻ(Ս)ԱՑ Ժ(ՈՂՈ)Վ(ՈՒ)ՐԴՍ ՏՈՒԻՆՔ Ս(ՈՒՐ)Բ ԵԿ(Ե)Ղ(Ե)ՑՈՅՍ | :Ե:(5)

---

65. *«Դիվան...», էջ 196 (հրատարակել են բազմաթիվ վրիպումներով, ամբողջ բառերի բացթողումներով եւ կեղծ գրչանկարով):*









*ՄԵՐԻԿ. եկեղեցու տեսքը արեւելքից, տապանաքար (1655 թ.) ագուցված եկեղեցու ճեմքին եւ խաչքարերի բեկորներ հարավային ճակատում*



*ՄԵՐԻԿ. եկեղեցու հարավային ճակատից բացված մուտքը*



*ՄԵՐԻԿ. Սբ. Աստվածածին եկեղեցու հատակագիծը*

Թ(ՈՒ)Մ(Ա)Ն ՅԻՇ(Ա)Տ(Ա)Կ ՄԵՋ ԵՒ ՄԵՐ ԾՆ(Ո)Ղ(Ա)ՅՆ, Ի ԹՎԻՆ: ՌՃԼ: ՄԷԿՆ(1682):

Մուտքի շեմքին հարմարեցված տապանաքարի հարավահայաց երեսին փորագրված է.

ԱՅՍ Է ՀԱՆ|ԳԻՍՏ ՀԱԽՆԱ|ՋԱՐԻՆ, Թ(ՎԻՆ) | ՌՃԳ(1654):[66]

Եկեղեցու ներսում՝ հյուսիսային ավանդատան բարավորից քիչ բարձր, երեք տողով փորագրված է.

ԵՍ ԷՄԻՆ Կ(Ա)Ն(ԿՆ)ԵՑԻ ՋԽ|ԱՉՍ Հ(ՈՒ)Ռ(ՈՒ)ՄՈ, ՀԱՒՐ ԻՄՈ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱ|(ՏՈՒՐ)........:

*Գրաւր. Առաջին անգամ:*

Եկեղեցու հարավային ճակատի ստորին շարքի մեջ ագուցված տապանաքարի բեկորին երեք տո-

66. «Դիվան...», էջ 196 (ընթերցումը թերի է, գրչանկարը կեղծ, տեղագրությունը սխալ): Տապանաքարը դեռեւս եկեղեցու կառուցման ժամանակ երկայնական ուղղությամբ կիսվել է ու ագուցվել դռան ճեմին:

ղով ընթերցվում է.

ԱՅՍ Է ՀԱՆԳ | ԻՍՏ... | Խ...

*Հրատ. Առաջին անգամ:*

1960-ականներին եկեղեցու բակում գտնված օ-րորոցաձեւ տապանաքարին փորագրված է.

ԵՍ ՊՕՂՕՍ ԿԱՆԳ(Ն)ԵՑԱՅ Ս(ՈՒՐ)Բ ԽԱՉՍ... | ...ՆԱՒԱՍԱՐԴԻՆ, Թ-Վ(ԻՆ) ՌՃԴ(1655):[67]

## ՎԱՐԱԶԳՈՄ (ՎԱՐԱԶԳՈՒՆ, ՎԱՐԱԶՂԱՆ)

Մերիկ եւ Ղուշչի գյուղերի միջեւ՝ Աղավնագետի ձախ կողմում, գետափից 2 կմ հեռավորությամբ, ձորակի մեջ երկարավուն հրվանդանաձեւ հարթության վերջավորության վրա, խիստ վթարային, բայց դեռեւս կանգուն վիճակում պահպանվում է խաչաձեւ, երկխորան-գմբեթավոր եզակի հորինվածքով չափազանց ուշագրավ ու արժեքավոր մի եկեղեցի: Նրա շուրջ տարածվում է թրքացած քրդերի կողմից Վարազղան հորջորջված գյուղատեղին, Վերջինս 1904 թ. հրապարակված «5 վերստանոց» քարտեզում նշված է Վարազգուն տարբերակով: Կարծում ենք՝ նրա նախնական անվանաձեւը եղել է Վարազգոմ:

Գյուղատեղիում, բացի դարուփոսերի վերածված հին տնատեղերի ավերակներից, պահպանվել են նաեւ ժայռափոր կացարաններ: Դրանք ունեն սովորական դռան չափերով մեկ մուտք եւ 3x4մ ներքին միջին չափեր (բարձրությունը 2,0-2,2 մ): Տարածքում պահպանվել են նաեւ երբեմնի գերեզմանատան վերջին մնացորդները՝ մի քանի բեկորված խաչքարերի ու տապանաքարերի տեսքով:

Վարազգոմի եկեղեցու առաջին նկարագրությունը տրվել է 1982 թ. (1960-ականների սկզբի այցելության հիման վրա):[68] Այնուհետեւ 1986 թ. լույս տեսավ եկեղեցուն նվիրված առաջին հանգամանալի ուսումնասիրությունը:[69] 1985 թ. մեր կողմից տեղում կատարված ուսումնասիրություններից որոշ նյութեր (լուսանկար, հատակագիծ) հրապարակվեցին նաեւ հետագա տարիներին:[70]

Հայտնի է, որ խաչաձեւ-գմբեթավոր հորինվածքը հայ ճարտարապետության մեջ բավական տարածված է եղել հատկապես վաղ միջնադարում: Այդ հորինվածքով եկեղեցիները իրենց ներթին միմյանցից տարբերվում են խորանների քանակով: Մասնավորապես հայտնի են նշված հորինվածքն ունեցող եկեղեցիների միախորան, եռախորան կամ էլ քառախորան տարբերակները, իսկ երկխորան (արեւելյան եւ հյուսիսային կողմերում) խաչաձեւ-գմբեթավոր հորինվածք ունեցող այլ հուշարձան, բացի սույն՝ Վարազգոմի եկեղեցուց, մեզ դեռեւս հայտնի չէ:

Եզակի այս տաճարը կառուցված է կոփածո եւ սրբատաշ քարերով, կրաշաղախով: Ներքուստ սվաղված է: Արտաքուստ (հատկապես արեւմտյան






*ՎԱՐԱԶԳՈՄ. եկեղեցու՝ դեպի հյուսիս կտրվածքը եւ հատակագիծը*

ճակատում) կրում է XVI-XVII դդ. նորոգման հետքեր: Թմբուկի վեղարն ու հարավային պատը փլված են: Տեղացի քրդերի ձեռքով քանդված են նաեւ պատերի (հատկապես արեւելյան ճակատի) երեսապատի սպորին շարվածքները: Շինարվեստն ու կառուցողական առանձնահատկությունները հար եւ նման են Սյունիքի IX-XI դարերի այլ պաշտամունքային կառույցներին (Տաթեւ, Որոտնավանք եւ այլն): Թմբուկը ե՛ւ ներքուստ, ե՛ւ արտաքուստ բոլո-

67. «Դիվան...», էջ 196:

68. «Դիվան...», էջ 7:

69. **Ռ. Աբգարյան**, *Հայ ճարտարապետության նորահայտ հուշարձան, «Էջմիածին» ամսագիր, 1986, Զ, էջ 48-53:*

70. *"Documenti di architettura Armena". Gharabagh, N19, Milano, 1988, էջ 60; Patrick Donabedian, Claude Mutafian, Artsakh, Histoire du Karabagh, Paris, 1991, էջ 152-153; «Ազատամարտ» շաբաթաթերթ, 1992, N21, էջ 14:*













*ՎԱՐԱԶԳՈՄ. եկեղեցու տեսքը հյուսիսից եւ հարավ-արեւելքից, գմբեթատակ քառակուսու չորս անկյունների առագաստներն ու տրոմպները*

բաձեւ է (գլանաձեւ): Գմբեթակիր որմնասյուներից անցումը գմբեթարդին արված է ինչպես զույգ տրոմպների (արեւելյան կողմում), այնպես էլ առագաստների (արեւմուտքում) միջոցով: Դրանց մեջ չորս ավետարանիչների բարձրաքանդակներն են: Եկեղեցու արտաքին չափերն են՝ 10,55x10,00 մ, իսկ պահպանված բարձրությունը մինչեւ թմբուկի քիվացող գագաթը (երբեմնի վեղարի սկիզբը) 9,60 մ է: Պատերի հաստությունը՝ 95 սմ է:

Ի դեպ՝ Միրիկ գյուղի մոտ, 1924 թ. մայիսին հովիվները պատահաբար հայտնաբերել էին հին դրամների մի ամբողջ հավաքածու: Դրանց մի մասի քննությունը, որը փոխադրվել էր Բաքվի պետական թանգարան, ցույց էր տվել, որ դրանք XVI դարին վերաբերող պարսկական դրամներ էին:[71]



## ՂԸԼԸՋԼԻ

Փոքր, գրեթե աննշան մի գյուղակ է Վարազգոմից 1,2 կմ հարավ-արեւելք, խոր ձորի մեջ սեղմված դիրքով, ծովի մակերեւույթից 1550-1580 մ բարձրության վրա: Մինչեւ տարածքի ազատագրումը այստեղ բնակվում էին 5-6 ընտանիք թրքացած քրդեր: Գյուղի պատմական անվանումը մեզ չի հասել:



## ՂՈՒՇՉԻ

Գյուղը գտնվում է Մերիկ գյուղից 2 կմ հարավ-արեւելք, Աղավնագետի աջ կողմում, գետափից 1 կմ հեռավորությամբ, ծովի մակերեւույթից 1520-1600 մ բարձրության վրա: Այն միեւնույն՝ անփոփոխ անվամբ առաջին անգամ հիշվում է Տաթեւի վանքին հարկատու գյուղերի թվում (1600 պտղաչափով):[72]

Ղուշչի գյուղից 1 կմ հարավ-արեւելք, Աղավնագետի աջակողմյան վտակ Սթունիսի ձախ ափին վեր խոյացած քարաժայռի գագաթին պահպանվում է ժողովրդական ավանդությամբ «Մկնատամի խաչ»[73] անվամբ հայտնի փոքրիկ եկեղեցին: Վերջինս համակ սրբատաշ քարով կառուցված, XII-XIII դարերին բնորոշ ճարտարապետական ու հորինվածքային դասական առանձնահատկություններով, միանավ, թաղածածկ շինություն է (ավելի շուտ մատուռ, քան եկեղեցի): Ճարտարապետական հարդարանքի տեսակետից աչքի է ընկնում արեւմուտքից բացված միակ մուտքի շրջանակը եւ լուսա-




«ՄԿՆԱՏԱՄԻ ԽԱՉ». տեսքը արեւմուտքից եւ հյուսիս-արեւմուտքից եւ հատակագիծը

71. **Е. А. Пахомов,** *Монетные находки в. Аз.ССР в 1924 г., "Известия Азербайджанского археологического комитета", выпуск I, Баку, 1925, էջ 81–82:*

72. *«Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբէլեանի» (հավելված), Երեւան, 1942, էջ 42:*

73. *«Մկնատամ» անունով սրբատեղի կար նաեւ Շատախի Թաղ գյուղից հյուսիս-արեւելք: Այն շրջակա հայերից ու քրդերից պաշտվել է որպես կոծոծ (մկնատամ) հիվանդության բուժիչ («Ազգագրական Հանդէս», գիրք XXVI, Թիֆլիս, 1916, էջ 200):*

մուտքի պսակը: Տանիքը պատած է կիսաբոլորակ ծածկասալերով: Նյութը կապտավուն բազալտն է:

Արտաքին չափերն են 4,30x3,15 մ: Որմերի պահպանված հատվածներն անարձանագիր են: Մատուռին հարավից կից է քառանկյուն հատակագծով մի շինություն՝ կառուցված կոփածո քարերով (ծածկը փլված է): Սա ներքուստ ունի բազմաթիվ խորշ-պահոցներ: Միակ մուտքը արեւելքից է: Դատելով կառուցողական առանձնահատկություններից այն, ամենայն հավանականությամբ, ծառայել է իբրեւ գրատուն կամ գրապահոց: Ունի 5,25x5,15 մ արտաքին չափեր: Թվում է՝ կառուցման ժամանակաշրջանով մոտ է կամ պարզապես ժամանակակից բուն մատուռին:

Ղուշչի գյուղից 800 մ հյուսիս-արեւելք, Աղավնագետի աջ ափին պահպանվել են հին ջրաղացի մնացորդները:

### ՍԹՈՒՆԻՍ (ՍԱԴԻՆԼԱՐ)

Ղուշչի գյուղից 2 կմ հարավ՝ Աղավնագետի աջ վտակ Սթունիսի ձախ ափին, հարավ-արեւելահայաց






ՍԹՈՒՆԻՍ. եկեղեցու տեսքը հարավից եւ հատակագիծը

ձորալանջին է գտնվում Քաշաթաղի պատմական գյուղերից մեկը՝ Սթունիսը: Սա եւս առաջին անգամ հիշատակվում է Տաթեւ վանքին (1600 պտղաչափով) հարկատու գյուղերի թվում:[74] XIX դարում գյուղը բնակեցվել է քրդերով, որոնք աղավաղելով գյուղի անվանումը այն վերանվանել են Սադինլար:

Գյուղից շուրջ 800 մ հյուսիս՝ Սթունիս վտակին ձախից միախառնվող մեկ այլ վտակի ձախ ափին, կանգուն է ըստ ամենայնի IX-X դարերի կառույց միանավ թաղածածկ եկեղեցին: Այն կառուցված է անմշակ եւ կիսամշակ քարով, կրաշաղախով: Երկու մուտքերը բացված են հարավից եւ արեւմուտքից: Ավանդատներ չունի, խորանը պայտաձեւ է: Պատերի որոշ հատվածներ, հատկապես անկյունային մասերում քանդված են, բայց կարծում ենք՝ որ եկեղեցին երբեւէ արձանագրություն չի ունեցել, քանի որ միանգամայն ողորկ է, օրինակ, անգամ հարավային մուտքի սրբատաշ բարավորը: Եկեղեցին հիմնված է միաստիճան որմնախարսխի վրա: Պատերի հաստությունը փատանվում է. 120-125 սմ է, իսկ արտաքին չափերն են 8,40x6,10 մ:

### ՀԱՐՃԼԱՆՔ (ՀԱՋԻԼԱՐ)

Հաջիլարը գտնվում է Աղավնագետի աջ կողմում՝ գետափից 1 կմ հեռավորության վրա, Սթունիսից 2 կմ արեւելք, ծովի մակերեւույթից 1380-1510 մ բարձրության վրա:

Պատմական աղբյուրներում գյուղի անվան հիշատակումներ չեն պահպանվել: Եպիսկոպոս Բարխուտարյանցը Հաջիլարի պատմական անվանաձեւ է համարել Հարճլանքը:[75]

Այստեղ հաստատված խաշնարածները 1905-06 թթ. ավար ձեռք բերելու նպատակով հարձակվել էին Խոզնավարի վրա (քշել-տարել էին 100 գլուխ տավար եւ գերել մեկ գյուղացու), սակայն խնածախցի քաջերն էլ մի հարձակումով դաս էին տվել հաջիլարցիներին:[76]

Նույն արհեստը հաջիլարցիները բանեցրին նաեւ 1989-91 թթ. ընթացքում եւ հատուցեցին ավազակորջի վերածած գյուղից վտարումով:

Գյուղից 0,5 կմ արեւելք եւ 1 կմ հարավ-արեւելք գտնվում են ուշագրավ բնական քարանձավներ, իսկ 1,6 կմ հարավ-արեւելք, Խոզնավար վտակի վրա պահպանվում են ջրաղացի մնացորդները:

### ՂԱՐԱՂՇԼԱՂ (ՂԱՐԸՂՇԼԱՂ)

Ինչպես նախախորհրդային, այնպես էլ ժամանակակից քարտեզներում եւ գրականության մեջ

74. *«Ժամանակագրութիւն ...», էջ 42:*
75. *Արցախ, էջ 403:*
76. *«Մշակ», 1906, 11 յունվարի, N5, էջ 1:*





ՂԱՐԱՂՇԼԱՂ. ընդհանուր տեսարաններ գյուղից եւ ժայռափոր եկեղեցուց




ՂԱՐԱՂՇԼԱՂ. ժայռափոր եկեղեցի. կտրվածք դեպի արեւելք, հյուսիս եւ հատակագիծ

Ղարըղշլաղ կամ Ղարաղշլաղ անվամբ հայտնի գյուղը միայն մեկ՝ եզակի անգամ՝ 1888 թ. մի քարտեզում[77] նշված է "Кары-гыштаг" ձեւով, որտեղ, սակայն, ակնհայտ է ընդամենը մեկ տառի տպագրական վրիպակը, «т»-ի փոխարեն՝ «л» պետք է լիներ: Սակայն, անտեսելով բազմաթիվ այլ վկայությունները եւ հենվելով սոսկ վերջին (վրիպակով) հրատարակության վրա՝ Ա. Ղարագյոզյանը պատմական գավառանիստ Քաշաթաղ գյուղը նույնացրել է վերջինիս հետ,[78] իսկ համանուն բերդի գտնվելու վայրը տեղորոշել նույն գյուղի հյուսիսում, ուր իրականում բերդ չկա (թեկուզ մնացորդները) եւ ոչ էլ կարող էր լինել (տեղանքի այդ շրջանը չունի որեւէ բերդի գոյության հարմարությունը): Նույնկերպ Ա. Ղարագյոզյանը պատմական Վերին շեն գյուղը (հիշ. Ստ. Օրբելյան) տեղորոշել է Ղարաղշլաղից մոտ 2-3 կմ հյուսիս-արեւելք:[79] Հարկ ենք համարում նշել, որ տեղանքի այդ շրջանով անցնում է ջրբաժան լեռնագիծը, պատված՝ մեծ թեքություն ունեցող, լերկ, ժայռոտ ու անջուր լանջերով: Տեղանքի այդպիսի մի հատվածում գոյություն չէր կարող ունենալ եւ ոչ մի գյուղ, ուստի եւ բնական է, որ տարածքում որեւէ գյուղատեղիի հետքեր չկան:

Ինչեւէ, ձեռքի տակ ունեցած տվյալները դեռեւս

77. *Խոսքը 1888-ին Թիֆլիսում հրատարակված Ե. Կոնդրատենկոյի կազմած քարտեզի մասին է (Елисаветопольская губерния. Свод статистических данных, извлеченных из посемейных списков населения Кавказа):*

78. ***Армен Карагезян,*** *К локализации гавара Кашатаг, «ԼՀԳ», 1987, N1, էջ 40:*

79. *Նշվ. հոդվածը, էջ 41:*

հնարավորություն չեն տալիս պարզել Ղարաղշլաղի պատմական անվանումը:

1914 թ. Ղարաղշլաղն ուներ 949 թրքացող քուրդ բնակիչ:[80]

Վարչական առումով այն գտնվում էր Ելիսավետպոլի նահանգի, Զանգեզուրի ուեզդի (գավառ), Մինքյանդի գյուղախմբի մեջ:[81] 1977 թ. գյուղի բնակչությունն (1152 շունչ)[82] արդեն իսպառ թրքացել (ադրբեջանականացել) էր:[83]

Գյուղը գտնվում է Աղավնագետի ձախ ափին, ծովի մակերեւույթից 1220-1290 մ բարձրության վրա: Գյուղի թաղամասերը գլխավորապես տարածված են լեռան հարավահայաց ստորոտին, բարձր ու լերկ շուրջպար լեռների արանքում գոյացած գեղեցիկ հովտի մեջ:

Գյուղի հյուսիս-արեւմտյան կողմում է գտնվում ամենահին թաղամասը: Այստեղ կիսավեր վիճակում են XVII-XVIII դդ. մի թաղակապ շենքի մնացորդները: Այն կառուցված է եղել անմշակ քարով ու կրաշաղախով: Սրբատաշ են միայն մուտքի, թաղակիր կամարի պահպանված հատվածներն ու որմնասյուները:

Գյուղամիջում մի փոքրիկ բլրի վրա պահպանվում է գյուղի եկվոր բնակիչների երբեմնի ներկայությունը փաստող մզկիթի շենքը: Վերջինս ուղղանկյուն հատակագծով, անմշակ քարերից կառուցված փայտածածկ (չի պահպանվել) պարզ շենք է: Միակ մուտքը բացված է հյուսիսային ճակատից: Վերջինիս բարավորին եռատող փորագրված է (արաբատառ թուրքերենով, խիստ անուս գրչությամբ) մզկիթի կառուցման թվականը, որն է՝ 1863 թ.:[84] Ի դեպ՝ ադրբեջանական հանրագիտարանը հանիրավի հնացրել է այն՝ շուրջ 1,5 հարյուրամյակ եւ թվագրել՝ 1718 թ.:[85]

Ղարաղշլաղից հազիվ 1 կմ հյուսիս-արեւելք, բնության ստեղծած մի անզուգական ժայռաստան պուրակում, իրարից ոչ հեռու կան մի քանի ժայռափոր խորաններ (ճգնարաններ) եւ մեկ եկեղեցի: Վերջինս կերտված է ճակատային մասով դեպի հարավ նայող ժայռազանգվածի մեջ:

Միանավ բազիլիկի հորինվածքով եկեղեցին ունի միայն մեկ մուտք եւ երկու դեպի ներս լայնացող լուսամուտ (բոլորն էլ բացված հարավակողմից): Հատակագծում եկեղեցին ունի 5,80x2,50 մմ չափեր: Բարձրությունը 4,4 մ է: Բացառությամբ մուտքի ստորին մի անկյան, եկեղեցու մնացած հատվածները գրեթե անվնաս են: Սեղանի վեմ քարը չի պահպանվել: Ի դեպ, այն առանձին կերտված ու տեղադրված է եղել խորանի մեջ հատուկ պատրաստված փոսորակում: Հարկ է նկատել, որ վեմ քարը եկեղեցու կառուցվածքային համակարգում միակ բաղադրիչն է, որ կերտված է եղել բուն ժայռազանգվածից անկախ, առանձին քարից: Հարդարանքը զուսպ է: Որմերը զուրկ են ոչ միայն վիմագրերից, այլեւ մինչեւ անգամ, խաչքանդակներից:

Ղարաղշլաղից Հոչանց տանող ճանապարհից քիչ հարավ՝ գյուղից 2,5 կմ արեւելք, մի բարձրադիր ու տեսարանավոր վայրում ոչ մեծ քրդական գերեզմանոց կա: Այստեղ պահպանված 3 քյումբազները, որ XIX դարի վերջի կառույց են, ուշագրավ են նրանով, որ նրանցից մեկի մուտքի մոտ ագուցված է խաչքար: Հնավայրի շուրջը դարավոր, հսատաբուն կաղնիներ են:

## ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ (ՁԵՅՎԱ, ԳՅՈՒՍՈՒԼՈՒ)

Ծիծեռնավանք կամ Ծիծառնուվանք գյուղը, ուր կանգուն է համանուն մեծահռչակ վանքի եկեղեցին, գտնվում է Աղավնագետի աջ ափին, նույն կողմից նրա հետ միախառնվող Խոզնավար եւ Բայանդուր վտակների միջեւ: Մատենագիր աղբյուրներում սրա գոյությունը վկայված է XIII դարից սկսած: Այն Տաթեւ վանքին հարկատու 681 գյուղերից մեկն էր (տարեկան վճարում էր տուրք 10 արծաթ):[86]

XIX դարի վերջին հինավուրց գյուղն արդեն հայտնի էր Ջեյվա անունով: Այստեղ բնակվում էին շուրջ 100 տուն թուրքեր (ըստ երեւույթին թրքացած քրդեր) եւ ընդամենը 25 տուն հայեր:[87] Վերջիններիս թվաքանակը անփոփոխ էր մնացել նաեւ 1905 թ.,[88] այսինքն՝ մինչեւ հայ-թրքական ընդհարումները: Ճիշտ է «Ջեյվա գիւղից ժողովուրդը փախաւ նախքան մեծ հարձակումը...»,[89] այնուամենայնիվ նա էլ «...ունեցաւ 5 զոհ եւ բացի այդ՝ ենթարկւեց կողոպուտի, կորցնելով ունեցած գոյքի կէսից աւելին եւ քոչեց գիւղից, այլ եւս անկարող լինելով ապրել այդտեղ»:[90]

Այդպես հինավուրց գյուղը զրկվեց իր վերջին բնիկ բնակիչներից: Խորհրդային տարիներին, Ջեյվա՝ վերանվանված պատմական Ծիծեռնավանքը կրկին վերանվանվեց, այս անգամ Գյուսուլու:

Գյուղի հյուսիս-արեւմտյան եզրին, Աղավնագետի եւ նրա՝ Խոզնավար վտակի միջեւ երկարած գեղեցիկ հրվանդանի ծայրին ցայժմ կանգուն է Ծիծեռնավանքի հուշահամալիրը: Նրա զարդը հանդիսացող եռանավ բազիլիկ եկեղեցին հայ ճարտարապետության առավել ուշագրավ ու մեծարվեստ կերտվածքներից

80. "Кавказский Календарь на 1915 г.", Тифлис, 1916, էջ 135:
81. "Кавказский календарь на 1917 г.", Тифлис, 1916, էջ 54:
82. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր III, Բաքու, 1979, էջ 73:
83. Առհասարակ տարածաշրջանի քրդերի բռնի թրքացման երեւույթի մասին տե՛ս **Вардан Григорян,** Насильственная ассимиляция в Азербайджане (Азербайджанский вариант решения Курдского вопроса), Ереван, 1992б էջ 25-31:
84. Վիմագրի վերծանությունը կատարել է արեւելագետ Հակոբ Փափազյանը:
85. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր III, Բաքու, 1979, էջ 73:
86. **Ստեփանոս Օրբելյան,** նշվ. աշխ., էջ 399:
87. **Ա.-Դօ.** նշվ. աշխ., էջ 262:
88. «Մշակ», 1906, N 56, 14 մարտի:
89. **Ա-Դօ,** նշվ. աշխ., էջ 262:
90. Նույն տեղում:









*ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. կենտրոնական նավի տեսքը դեպի արեւելք եւ արեւմուտք, հյուսիսային եւ հարավային կամարաշարերը*

է: Ծիծեռնավանքի եկեղեցին[91] արդեն արժանացել է մի շարք մասնագետների ուշադրությանը, որոնք եւ հրապարակել են իրենց բավական ծավալուն ուսումնասիրությունները:[92] Կարեւոր բացը թերեւս մնում է այն, որ կատարված չափագրական աշխատանքները դեռեւս միայն սխեմատիկ բնույթի են, այնինչ, օրինակ վերջին փաս փարվա ընթացքում արդեն խիստ քայքայված ու վթարային վիճակում գտնվող կենտրոնական նավը զգալի տարածության վրա փլվել է ու շարունակում է քանդվել:[93]

Հետազոտողներն արդեն տվել են Ծիծեռնավանքի եկեղեցու ճարտարապետական մանրազնին նկարագրությունը: Նրանք հանգել են այն

*91. Ծիծեռնավանքի եկեղեցին մինչեւ XX դարի սկզբները Ձեյվա գյուղի համար ծառայել է որպես ծխական եկեղեցի: Այն օծված է եղել Սբ. Ստեփանոսի անունով («Արարատ», 1879, սեպտ., 398):*

*92. **Ղ. Ալիշան**, Սիսական, Վենետիկ, 1893, էջ 268: **Ե. Լալայան**, Զանգեզուր, «Ազգագրական հանդէս», գիրք Դ, 1898, 2, էջ 46-49: **Ա. Սահինյան**, Քասախի բազիլիկայի ճարտարապետությունը, Երեւան, 1955: **Paolo Cuneo,** La basilique de Tsitsernavank, "REArm", h. IV, Paris, 1967, էջ 203-216: **Մուրադ Հասրաթյան**, Ծիծեռնավանք, «ՊԲՀ», 1980, N 2: Նույնի՝ Պատմա-հնագիտական ուսումնասիրություններ, Երեւան, 1985, էջ 219-240:*

*93. Ժամանակին ճարտարապետական մանրազննին չափագրություն չկատարելը ապագայում հնարավոր վերականգնողական աշխատանքների ժամանակ կարող էր տխուր փաստի առաջ կանգնեցնել: Այդ բացը լրացվեց 1997 թ. նոյեմբերին, երբ առաջին անգամ մեր կողմից Ծիծեռնավանքում իրականացվեցին մանրազնին չափագրական աշխատանքներ որդուս՝ Տիրան Կարապետյանի մասնակցությամբ եւ գյուղապետ Հայկ Հարությունյանի օժանդակությամբ:*








*ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. սյան խոյակներ*

համոզման, որ եկեղեցին հիմնված է եղել հեթանոսական փաճարի փեղում: Կարծում ենք, դրա վկայությունն առկա է մինչեւ իսկ եկեղեցու անվանման մեջ, քանի որ ծիծեռնակի պաշփամունքը հայփնի էր նախաքրիսփոնեական Հայասփանում: Եկեղեցին կառուցված է սրբափաշ քարով: Արփաքին չափերն են 25,6x12,5 մ: Ներսում պահպանվել են որմնանկարների հեփքեր: Չնայած եկեղեցին շինարարությանն առնչվող վիմագրեր չունի, սակայն ճարփարապեփական քննության շնորհիվ մասնագեփները փաճարի կառուցման ժամանակը համարել են V-VII դարերը: Ավելի ուշ եկեղեցին կրել է նորոգումներ, հավելումներ (շքամուփք, զանգակափուն), շրջապափը պարսպապափվել է: Վերջինիս արեւմփյան կողմում պահպանվում է շքեղ դարպասը (1613 թ. շինարարական արձանագրությունը ոչնչացվել է 1989-92 թթ. ընթացքում): Պարսպին հարավից հարում են մի քանի թաղակապ սենյակներ: Պարսպից դուրս, հյուսիս արեւմփյան կողմում երբեմնի հայաբնակ գյուղի գերեզմանոցն է:

Հնավայրի փարածքից նախկին հեփազոփողները ընդօրինակել ու հրափարակել են 22 միավոր արձանագրություն:[94] Հափկապես 1989-92·թթ. ընթաց-

*94. Ծիծեռնավանքից ընդօրինակված վիմագրերի առաջին հրատարակիչը Ե. Լալայանն է («Ազգագրական Հանդէս», գիրք Դ, N 2, Թիֆլիս, 1898, էջ 48): Սակայն նրա վերծանությունների մեջ, որոնք անփոփոխ վերահրատարակվել են նաև «Դիվան հայ վիմագրության» 5-րդ պրակում (Երևան, 1982, էջ 199), առկա են մի շարք անճշտություններ: Դրանք ճշտել ու ամբողջական տեքստով վիմագրերը հրատարակել է Մուրադ Հասրաթյանը (Պատմա-հնագիտական ուսումնասիրություններ, էջ 236): Ընդհանրապես, միայն Մ. Հասրաթյանն է, որ բարեխղճորեն և ճշգրիտ վերծանություններով վանքից ներկայացրել է 16 միավոր վիմագրեր (նշվ. աշխ., էջ 233-230), իսկ «Դիվան...»-ում (8 միավոր) և, մանավանդ, գրող Ս. Խանզադյանի կողմից («Սովետական Հայաստան» ամսագիր, 1984, N 6, էջ 26) վիմագրերը ներկայացվել են խիստ թերի ու սխալաշատ:*




±0.00

ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. արեւմտյան եւ արեւելյան ճակատները





ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. հարավային եւ հյուսիսային ճակատները







ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. կտրվածք դէպի արեւելք եւ արեւմուտք.







*ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. կենտրոնական նավով կտրված դեպի հյուսիս եւ հատակագիծը*





ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. որմնանկարի մնացորդ հյուսիսային պատին եւ վիշապի հարթաքանդակ հյուսիսային կամարաշարի սյան վրա

քում դրանց մի մասը միպումնավոր կերպով ոչնչացվել է: 1985, 1993-95 եւ 1997 թթ. ընթացքում հնավայրի պարածքից վիմագրերի մեր հավելումները կազմում են 4 միավոր (ընդամենը 26 արձանագրություն): Դրանք նախկին հրապարակումների հետ համադրելով՝ ներկայացնում ենք ստորեւ.

Գրչության առումով իրավամբ ամենահին արձանագրությունը համարվում է եկեղեցու ներսում, հյուսիս-արեւելյան մույթին հենվող կամարի ստորին երկու քարերին փորագրված հետեւյալ վիմագիրը.

(ՈՒԽ)ՏԱՒ|ՈՐ ՅԻՇԵ|ՅԷՔ| ՋԳՒ|ՈՐԳ|[Գ]Ս|, ԽՍ|Տ

Ոչ ուշ, քան մինչեւ X դարը թվագրվող մի հնգատող վիմագիր էլ պահպանվում է եկեղեցու հարավային մուտքերից մեկի անկյունաքարերին.

ՈՎ Տ(Է)Ր Ք(ՐԻՍՏՈ)Ս Ա|ՋԱՏ ԵՂԲ|ԱՅՐ ՍԻՐՈՂ | ՋԳՐԻԳՈՐ ՋԱՆԱՐԺԱՆ | ԾԱՌԱՅՍ ՅԻՇԵՑԷՔ ՅԱՂԱՒԹՍ:

Եկեղեցու խորանի մեջ, հյուսիսակողմի կորավուն պատի խաչազարդ ու սրբապաշ քարին 6 տողով փորագրված է.

ԵՍ| ՄՀ|ՈՏ|ԻԿ| ԿԱՆԳՆԵՑԻ ՋԽԱՉՍ ՀԱՒՐ ԻՄ | ՄԽԻԹԱՐ ԱԹԱՐԲԷԿԻՆ:

Եկեղեցու հյուսիսային սյունաշարի արեւմտյան ծայրի սյան հարավահայաց երեսին եռատող փորագրված է.

Ս(ՈՒՐ)Բ ԽԱՉՍ|ԲԱՐԷԽԱՒՍ ՀՈԳՈՅ|ՌԿԴ (1615):

Եկեղեցու հարավային պատին, արտաքուստ կան բազմաթիվ նվիրատվական հակիրճ հիշատակագրություններ:

1. Խ(Ա)ՉՍ | ԲԱՐԷԽՕ|Ս Ա...|ԻԻ|Ա|ԻՆ(՞) Ի|ՇԵՑԷՔ:

2. ԱՆՈՒՆ | Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ | ԱԿՈԲՍ| ԿԱ(Ն)Կ(Ն)ԵՑԻ ԽԱ(ՉՍ) | ԻՇ(Ա)ՏԱԿ ԻՆՁ| ԵՒ ԾՆՈՂ(ԱՑՆ):

3. ԹՎԻՍ | ՌԺԲ(1563):

4. ԵՍ ՅՈՀԱՆԷՍ | ԱԲ(Ե)Ղ(Ա)Ս| Կ(Ա)Ն-(ԳՆԵ)ՑԻ | Ս(ՈՒՐ)Բ Խ(Ա)ՉՍ ... ՌԾԴ(1605):

Եկեղեցու հյուսիսային, արեւմուտքից երկրորդ մույթի վրա երկտող արձանագրված է.

ԵՍ ՈՀ(Ա)ՆՋԱՆՍ Կ|(ԱՆ)ԿՆԵՑԻ Ս(ՈՒՐ)Բ Ն(ՇԱՆՍ):[95]

Տասնամյակներ առաջ եկեղեցու նույն ճակատի վրա Մորուս Հասրաթյանը նկատել ու հրապարակել է.

1. ՍԲ ԽԱՉՍ ԲԱՐԵԽՕՍ ՏՐ ԱՋՐԻՆ ՔՀՅՆ:

2. ՍԲ. ԲԱ...ԽՍ ՏՐ ՄԽԹՐ ՀԻՐԻՆ ԵՍ ՄԱՒՐՍ:

3. ՍԲ. ԽԱՉՍ ԲԱՐԽՍ ՈՒՀԱՆԷՍԻՆ, ԹՎ. ՌԼ (1581):

4. ԽԱՉՍ | ՏՐ ՄԿԻՐՏ|ԻՉԻՆ, ԹՎ. ՌԾԵ (1606):

5. ... ՌՃ ... | ՊՈՒՏԱԽ:

6. ... ԴՈՒՐՆԱՄ ԱՏԱՄՆ ...:

7. ԹՎ. ՌԾԵ (1606):

8. ԹՎ. Ռ...ԳԻՐԵՑԻ:

9. ՍԲ. ԽԱՉՍ ԲԱՐԵԽՕՍ ՏՐ ՆԵ(Ր)ՍԵՍԻՆ ՔՀՅՆ:[96]

Եկեղեցու հյուսիս-արեւմտյան մույթի վրա, եռատող փորագրված է.

ՍԲ. ԽԱՉՍ | ԲԱ(ՐԵ)ԽԱՒՍ ՀՈԳՈՅՆ | Մ(Ա)ՀԴ(Ա)ՍԻ ԳՆ...:

Հակիրճ հիշատակագրություններ պահպանվել են նաեւ լուսամուտների արանքում, որոնք սակայն բարձրության պատճառով դժվար ընթեռնելի են:

Տարիներ առաջ արդեն իսկ ոչնչացված, սակայն իր ժամանակին Մ. Հասրաթյանի կողմից ամբողջությամբ վերծանված 9 տողանոց արձանագրությունը[97] պատմում էր եկեղեցու նորոգման եւ զանգակատան կառուցման մասին.

ՆՈՐՈԳԵՑԱՒ ԴԱՃ(Ա)ՐՍ | ԵՒ Ս(ՈՒՐ)Բ ՋԱՆԿԱ(ԿԱ)ԴՈՒՆՍ | Ի Ժ(Ա)ՄԱՆ(Ա)ԿՆ ԻԲՐԱՀԻՄ | ԽԱՆԻՆ ՁԵՌ(Ա)ՆԲՆ | ԱՒՌՈՒՔԻ ՈՐԴԻ ՆԱ-

95. «Դիվան ...», էջ 193:

96. Բոլոր 9 վիմագրերն էլ վերցված են մորուս Հասրաթյանի «Պատմահնագիտական ուսումնասիրություններ» (Երեւան, 1985, էջ 234-235) աշխատությունից:

97. Արձանագրության լուսանկարը տես՝ Մորուս Հասրաթյանի «Ծիծեռնավանք» աշխատության մեջ (Երեւան, 1990, էջ 8):







*ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. խաչքարեր եկեղեցու տարածքում եւ տապանաքար 1809 թ.*

ՋԱ|ԳՈՒԼԻՆ, ԽՆԱԾՈՐԿՅԻ | ԵՒ ԷՐ ՎԱՔԻԼ ԳՈՐ|Ծ(Ո)ՅՍ ՈՒԴԻ ՅՈՒՀԱՆՆ | Թ(ՎԻ)Ն ՌՄԻԸ Ն(1779):[98]

Մինչեւ 1988 թ. իր նախնական տեղում պահպանվում էր նաեւ շրջապարսպի 1613 թ. կապարված նորոգման մասին պատմող արձանագրությունը. ներկայում պարսպի այդ հատվածը փլված է, իսկ վիմագիրն անհետացել է.

ԿԱՄԱՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ... ՆՈՐՈԳ|ԵՑԱՒ ՊԱՐԻՍՊՍ Ի ՁԵՌՆ ՀԱՅ|ԿԱԶ ԻՇԽԱՆԻՆ, Ի ԱՌ(Ա)ՋՆ(ՈՐ)ԴՈՒ|Թ(ԱՄԲ) ՄԿ(Ր)Տ(Ի)Չ ԵՊ(Ի)Ս(ԿՈՊՈՍԻՆ), ԹՎ(ԻՆ) ՌԿԲ (1613):

Եկեղեցու հարավային կողմում, պարսպին ներքուստ կցված թաղածածկ սեղանատան արեւելյան պատի մեջ ագուցված խաչքարին (չափերը՝ 140x58x32 սմ) փորագրված է.

Ս(ՈՒՐ)Բ Խ(Ա)ՉՍ ԳՈՒՋ(Ա)ԼԻՆ | Յ(Ի)Շ(ԵՑԵՔ Ի) Ք(ՐԻՍՏՈ)Ս, | Թ(ՎԻՆ) ՌԾԴ (1605):

Եկեղեցու ներսում, հյուսիսային պատին հենած խաչքարին (83x43x20 սմ) փորագրված է.

Ս(ՈՒՐ)Բ Խ(Ա)ՉՍ ԽԱՆՍՈՒՄԱՆԻՆ:

Ծիծեռնավանքի տարածքից 1994-95 թթ. ընթացքում շրջկենտրոն՝ Բերձոր (Լաչին) քաղաքի պատմական թանգարան փոխադրված երկու խաչքարերին փորագրված է.

1. ԱՆՈՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ Կ(Ա)ՆԿ(Ն)|ԵՑԱՒ Խ(Ա)Չ|Ս Ծ(ԱՏ)ՈՒՐ|ԽՍ | ՂԱՐԻ Յ(Ի)ՇԱ|ՏԱԿՆ...:

2. ԵՍ ՆԱԶԱՐ ԿԱՆԿ(Ն)ԵՑԻ Խ(Ա)ՉՍ ՀՕՐ ԱԼԹՈՒՆԻՆ, ՄԱՐԻԱՆ(ԻՆ), | ԹՎ(ԻՆ) ՌԾԳ (1604). ՊԵՏ:

Եկեղեցու հարավային պատի տակ կանգնած տապանաքարի հյուսիսային երեսին (7 տողով) եւ վերնամասում (երկտող) փորագրված է.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ Ի ՀԱՆԳՍ(Տ)ԵԱՆ
ԻՋԵԱԼ ՄԱՐՄՆՈՎ Ի ԳԵՐԵԶ-
ՄԱՆ ՏԷՐ ԱՍ(ՏՈՒԱ)ԾԱՏՈՒՐ ՏԷՐ
ՌՍՏԱԿԷՍԵԱՆ, Հ(Ա)Ր(Ա)ԶԱՏ ՈՐԴ-
ԻՔ՝ Տ(Է)Ր ԳԷՈՐՔ, Տ(Է)Ր ԳՐԻՔՈՐ,
ՀԱՅՐԱՊԵՏ, ԴԱՆԻԷԼ, ՊԱՊՆ

98. *Նւյ. աշխ., էջ 236:*





















*ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. վանահոր սենյակի ավերակները, սենյակի պատի մեջ ագուցված ջաղանաքար եւ խաչքարեր, վիմագրերի գրչանկարներ*





*ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ. դարպասի չափագրությունը եւ շինարարական ոչնչացված (1989-92 թթ.) արձանագրության գրչանկարը*

ՄԵՐՈՑ՝ՏԷՐ ՅՕՀԱՆԷՍԷ ՍԿՍԵԱԼ
ՌՍՏԱԿԷՍԵ(ԱՆ)Ց, Թ(ՎԻՆ) ՌՄԾԸ (1809)
ՈՐԴՈՑ ՈՐԴԻ Տ(Է)Ր ԳՐԻՔՈՐ Տ(Է)Ր ...

Եկեղեցու արեւելյան կողմում, գերեզմանատան ավերված մասում, մի տապանաքարի կա հետեւյալ արձանագրությունը.

ԱՅՍ Է ԽԱՉՍ ԵՒ | ՏԱՊԱՆ ԱՌԱՔԵ|ԼԻ ՈՐԴԻ ՈՀԱՆԻՆ:

Եկեղեցուց հյուսիս-արեւմուտք, հյուսիսահայաց լանջին պահպանվում են երբեմնի հայաբնակ Ջեյվա (հնում՝ Ծիծառնավան) գյուղի գերեզմանատան մնացորդները: Ուղղանկյունաձեւ տապանաքարերից 3-ի վրա արձանագրված են.

1. ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԱՎ|ՉԻ ՈՐԴԻ ՊԱՂՏԱՍԱՐ|ԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄՂ (1841):

Չափերը՝ 128x52x32 սմ:

2. ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԱՆԿԱՍԱՐ(Ի)| ՈՐԴԻ ՌՍԴԱ ՅԱՐՈՆ(ԻՆ) | 1861:

Չափերը՝ 145x35x60 սմ:

3. ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԿՐՏԻՉԻ | ՈՐԴԻ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ, 1892:

Չափերը՝ 105x31 սմ:

Ծիծեռնավանքի մերձակայքում գոյություն ունեն մի քանի հնավայրեր: Նախ, Բայանդուր վտակի հովտում, վանքից 2 կմ հարավ պահպանվում է մի հին գյուղատեղի, որի պատմական անվանումը, ցավոք, մոռացության է մատնվել եւ ներկայում հայտնի է Քյոսալար անվամբ:

Ջեյվա անունը կրող երկրորդ գյուղատեղին գտնըվում է վանքից 2 կմ հյուսիս:

## ՔԱՇԱԹԱՂ (ՍՈՒԼԹԱՆՔՅԱՆԴ, ՍՈՒԼԹԱՆԼԱՐ)

Քաշաթաղ (Քշթաղ) գավառը բազմիցս հիշվում է միջնադարյան աղբյուրներում, այնինչ համանուն գյուղը, որից եւ, ըստ երեւույթին, իր անունն էր առել ողջ գավառը (նաեւ գետը), մատենագիր աղբյուրներում հիշվում է միայն մեկ անգամ: Նրա գոյության հաստատումը եզակի անգամ տվել է Ստեփանոս Օրբելյանը (ի թիվս Աղահեճ գավառի 43 գյուղերի) Քաշաթաղք ձեւով:[99]

Դատելով ավելի քան նվազ հարկաչափից (ընդամենը 6 դրամ) Քաշաթաղքը գավառի սակավամարդ եւ փոքր գյուղերից էր, բայց ահա հենց այդ գյուղի անունն էր տարածվել ողջ գավառի վրա («հինգերորդը՝ Աղահեճ գավառը, որ այժմ կոչվում է Քաշաթաղ եւ Խոժոռաբերդ...»):[100] Ուրեմն ինչո՞վ է պայմանավորվում մի փոքր գյուղի անունը ողջ գավառի վրա տարածելու փաստը: Համոզված ենք, դրա պատճառը մեկն էր՝ Քաշաթաղքը իշխանանիստ էր: Հայտնի է, որ հաճախ հենց իշխանանիստ գյուղի կամ ամրոցի անվամբ էր կոչվում նաեւ





*Մելիք Հայկազի ապարանքը Քաշաթաղում (չափագրություն՝ ճարտ. Արտակ Ղուլյանի)*

*99 Ստեփանոս Օրբելյան, նշվ. աշխ., էջ 399:*
*100. Նշվ. աշխ., էջ 70:*









*ՔԱՇԱԹԱՂ. Մելիք Հայկազի ապարանքի տեսքը 1985 թ. եւ 1989-92 թթ. «վերականգնում»-ից հետո եւ օժանդակ շինությունները*

գավառը:[101] Այս դեպքում էլ ահա կարծում ենք գործել է նույն տրամաբանությունը: Հավանական է նաեւ, որ գավառի տարածքով հոսող գլխավոր գետն էլ բուն անունից զատ, հեշտ ճանաչելության նպատակով, դարձյալ Քաշաթաղ կոչվեր (որպես եւ էր):

Ներկայացնենք այն փվյալները, որոնք առիթ են տալիս նույնացնելու պատմական Քաշաթաղքն ու ներկայիս Սուլթանքյանդ գյուղերը:

Նախ նշենք, որ որեւէ իշխանանիստ գյուղում այնտեղ բնակվող իշխանները (մանավանդ եթե նրանք միաժամանակ մի ամբողջ գավառի տերերն էին) անշուշտ ունեցած պետք է լինեին իրենց բնակարանային առանձնահատուկ շենքերը: Սովորաբար դրանք առանձին դղյակներ կամ պալատներ էին: Ամեն դեպքում դրանք իրենց ամրությամբ ու շքեղությամբ մեծապես տարբերվել են մյուս բնակիչների տներից, իսկ Աղավնագետի հովտի գյուղերից միայն ներկայիս Սուլթանքյանդում է, որ գոյություն է ունեցել եւ գրեթե ամբողջությամբ պահպանվել է միջնադարյան իշխանական պալատի կամ մելիքական ապարանքի հուշարձանախումբ: Հետեւաբար, սա իշխանանիստ գյուղ էր, իսկ նրա փոքրությունը պայմանավորված էր, թերեւս, նրա բնական դիրքով՝ ընդարձակվելու հնարավորության բացակայությամբ:

Ուշագրավ է, որ XVIII դարի վերջերից հայաթափ Քաշաթաղքում հաստատված քրդերը գյուղին տվել են Սուլթանքյանդ (կամ Սուլթանլար) անվանումը: Ասել կուզի, քրդերն էլ անգետ չէին գյուղի անցյալին, եւ, փաստորեն, նրա իշխանանիստ լինելու հանգամանքով էր պայմանավորված նոր տեղանվան ծնունդը: Նշենք, որ Քաշաթաղքի՝ Սուլթանքյանդի հետ նույնացման մասին առաջինը վկայել է պատմաբան Մորուս Հասրաթյանը (ճիշտ է՝ առանց փաստարկների): Նա գյուղամիջում պահպանված իշխանական տունը համարել է XV դարի վերջի կառույց. «Հոչակավոր Ծիծեռնավանքից ոչ

101. *Ինչպես էր, օրինակ՝ Գյուլիստան գյուղի անունով՝ Գյուլիստանի գավառ եւ մելիքություն, Չարաբերդ ամրոցի անունով՝ Չարաբերդի գավառ եւ այլն:*

հեռու Աղավնո գետի մոտ գտնվող Քաշաթաղ ավանի (հետագայում՝ քրդաբնակ Սուլթանբեկով) մեջ պահպանված երկհարկանի քարաշեն դղյակի (կողքի կամարաշար ավերակով) կառուցումը անպայմանորեն վերագրել է Մելիք Հայկազին՝ XV դ. վերջին»:[102]

Քաշաթաղք-Սուլթանքյանդի նույնացմանը փաստորեն դեմ է արտահայտվել միայն Ա. Ղարագյոզյանը:[103] Նա ներկայիս Ղարաղշլաղն է նույնացրել Քաշաթաղքի հետ, որը, ինչպես արդեն նշել ենք, տպագրական վրիպակ ունեցող մի քարտեզի վրա հենվելու հետեւանք է:

Քաշաթաղքը գտնվում է Ծիծեռնավանքից 1,2 կմ Աղավնագետի հովտով ներքեւ,[104] այնտեղ, ուր Աղավնագետը ձախից ընդունում է Չորացիք վտակին: Իշխանական ապարանքը գտնվում է ճիշտ այս երկու ջրերի միջեւ վեր խոյացող լեռնաբազուկի հարավահայաց ստորոտին: Հուշարձանախումբը չորսբոլոր շրջապատված է մի անկյունում բուրգով հզորացված ամուր պարսպապատով, որը հարավակողմում զարդարված է շքեղ դարպասով: Ներսում երկհարկ, թաղակապ հորինվածքով ապարանքն է, կից սյունասրահով եւ օժանդակ այլ շինություններով: Համալիրի ճարտարապետական նկարագրությունը 1985 թ. կատարած ուսումնասիրությունների հիման վրա առաջին անգամ տվել է ճարտարապետ Արտակ Ղուլյանը: Այդ առթիվ նա մասնավորապես նշել է «Ապարանքի յատակագծային ու ծաւալային ձեւերում կիրառուած յօրինուածքային լուծումները, շարուածքի տեսակը լինելով XII-XIV դարերի Խաչենի ու Վայոց ձորի իշխանական պալատներից աւանդուած ձեւերի, իրենց հետագա լայն տարածումն ու վերամարմնաւորումն են գտել XVII-XVIII դարերի մելիքական ապարանքներում, որոնցով այնքան հարուստ է Ղարաբաղ-Զանգեզուրը»:[105]

Ինչ վերաբերում է Ստ. Օրբելյանի միայն մի անգամ հիշատակած «Քաշեթաղուց բերդ»-ին,[106] ապա նրա տեղադրությունն անպայմանորեն համանուն գյուղին կից տարածքում փնտրելը պարտադիր չէ: Բերդը Քաշաթաղ անունը կարող էր կրել թեկուզ միայն այդ գավառի տարածքում գտնված լինելու

102. **Մորուս Հասրաթյան**, նշվ. աշխ., էջ 158: Ի դեպ, չգիտենք՝ ի՞նչ աղբյուրի վրա հենվելով Ադրբեջանական խորհրդային հանրագիտարանում (հատոր VI, Բաքու, 1982, էջ 174) իբրեւ իշխանական ապարանքի կառուցման տարի նշված է 1761 թ., իսկ հուշարձանը կնքված է «Համզա Սուլթան» անունով:

103. **Армен Карагезян**, նշվ. հոդվածը, էջ 40-41:

104. «Քաշաթաղք» տեղանունը բառացի նշանակում է ներքին քաղ(եր): կարծում ենք, որ որեւէ բնակավայր «Քաշաթաղք» անունը կարող էր ստանալ միայն այն դեպքում, եթե այն մի քաշ կարեւոր ու հայտնի տեղից (լեռ, բերդ, վանք եւ այլն) ցած է = ներքեւ է: Համոզված ենք, որ տվյալ դեպքում գյուղը ներքեւ է Ծիծեռնավանքից, որը հայտնի ուխտատեղի էր ոչ միայն մոտակա գավառների բնակիչների համար:

105. **Արտակ Ղուլյան**, Քարե վկայագրեր, «Ազատամարտ», 1993, N17, էջ 11:

106. Նշվ. աշխ., էջ 71:

պատճառով: Կարելի է ենթադրել միայն, որ այն եղել է համանուն գավառի գլխավոր ամրոցը:

Գյուղից 2,5 կմ հյուսիս-արեւելք, ձորակով հոսող վտակի ակունքի շրջանում գտնվում են պատմական Չորացիք գյուղի ավերակները: Սրա առաջին ու միակ հիշատակությանը հանդիպում ենք Օրբելյանի կազմած Աղահեճ գավառի ցուցակում:[107] Գյուղատեղիի տարածքում պահպանվել են վիմափոր կացարաններ եւ հին տնատեղիներ: Նախախորհրդային տարիներին հնավայրի տարածքում հաստատված քրդերը գյուղատեղին աղավաղելով այն կոչում էին «Զեյրիկ» կամ «Զիյրիկ»:

## ՄԱԼԻԲԵՅԼԻ (ՊԱՏՄ. ՄԱԽՈ՞ՒԼՆ)

Քաշաթաղքից 1,5 կմ հարավ-արեւելք, Աղավնագետի աջ ափին փռված են XIX դարի կեսերից ի վեր քրդաբնակ Մալիբեկլու կամ Մալիբեյ գյուղի ցաք ու ցրիվ տները: Գյուղի պատմական անունը վերականգնելու միակ փորձն արել է գրող Ս. Խանզադյանը, բայց որը զուրկ է գիտական բավարար հիմնավորումից. «Մալիբեյ. Քրդաբնակ փոքրիկ գյուղ Ջաբուխ գետի ափին: Այստեղ մի կոտրված խաչքար գտա. - ԻՇԽԱՆՈՒԹԵԱՄԲ ՏԱՐՍԱԻՃԻ ՄԵԾԻ: Նույն գյուղի տարրական դպրոցի զանգի գոտու վրա կարդացի. - ՉՀԷ ՅՈՎՀԱՆ ՎՐԴՏ ՑԻՇԵՍՋԻՔ Ի ՔՍ(ՔՐԻՍՏՈՍ): Զանգը ձուլել է Հովհան վարպետ - ընձագործը 1328 թվին: Այս գյուղում մի վիշապագորգ տեսա, տակի եզրին գրած.- ԱՍԱՏՈՒՐ ԱՂԻՆ Ի ՎԱԵԼՈՒՄ, ՌԾԳ-1604: Մալիբեյը Օրբելյանի ցուցակի Մուխուլն գյուղն է»:[108]

Մալիբեյլիի հյուսիսային թաղը, որը տարածվում է Աղավնագետի հետ խառնվող Խնածախ վտակի ձախ կողմում, նախախորհրդային շրջանում համարվում էր առանձին գյուղ՝ Արըգլար անվամբ: Արգյո՞ք սա Օրբելյանի հիշատակած Արքո փոքրիկ գյուղն էր (6 դրամ հարկաչափով),[109] դժվարանում ենք պնդել:

Քրդերի կողմից Աբասլար կամ Ավազլար հորջորջված մի գյուղատեղի էլ պահպանվում է Մալիբեյլի գյուղից 1,5 կմ հյուսիս-արեւելք: Պատմաբան Ա. Ղարագյոզյանն իր կազմած քարտեզում[110] Մալիբեյլի գյուղի տեղում նշել է պատմական Կատոռինքը: Այդ ենթադրության միակ հիմքը Ս. Խանզադյանի հիշյալ հոդվածն է, ուր գրողը նշել է. «Կալուխչի. Լաչինի շրջանի Ջաբուխ գետի ափին փոքրիկ գյուղ է: Ավերակ եկեղեցու քարերից մեկի գիրն այս է.- ԽԱՉՍ ԲԱՐԵԽԱԻՍ ՄԵԼԻՔ ՀԱՅԿԱԶԻՆ

107. Նշվ. աշխ., էջ 399:

108. **Սերո Խանզադյան**, Ի՞նչ են պատմում քարերը, «Սովետական Հայաստան» ամսագիր, 1984, N 6, էջ 24, 31:

109. **Ստ. Օրբելյան**, էջ 399:

110. **Армен Карагезян**, նշվ. հոդվածը, էջ 41:

ԵՒ ... ՏՈՒԻ ԿԱՏՈՂՈՐԻՆՔ ԳԵՂՋՍ ԱՅՍ ...: Ուրեմն այս Կալուխչին Ստ. Օրբելյանի ցույց տված Կապռուորինքն է՝ Ծիծեռնավանք եւ Հայելեակ (այժմ Հալաք) գյուղերի մոտ...»:[111] Մի կողմ թողնելով Կալուխչի-Կապռուորինք գյուղերի նույնացման խնդիրը՝ հարկ ենք համարում նշել, որ Ա. Ղարագյոզյանի կազմած քարտեզում թյուրիմացությունն ակնհայտ է, քանի որ Կալուխչին Մալիբեյլին չէ:

Գետի հոսանքով ներքեւ, Մալիբեյլիից 2,5 եւ 4,0 կմ հեռավորության վրա, Աղավնագետի ձախ ափին նկատվում են Մորափ (Մուրադլի) եւ Չայքյանդ հոռջորջված գյուղատեղիների մնացորդները: Մորափից 1 կմ հյուսիս Ջաղազուր փոքրիկ գյուղատեղին է, իսկ գյուղին դեմ-հանդիման, Աղավնագետի աջ կողմում, մի հին ջրաղացի ավերակներ են:

## ՅԱՂՈՒԶՏԱՄ (ՈՒԼՈՒԴՅՈՒԶ)

Յալղուզտամ գյուղը՝ 2300 պտղահարկով, հիշվում է Օրբելյանի «Ժամանակագրության» հավելվածի մեջ՝ ի թիվս Տաթեւի վանքի թեմապատկան այլ գյուղերի:[112] Սրա աշխարհագրական դիրքը պարզելուն որոշակի նպաստ են բերում հետեւյալ պարագաները: Նախ, 1904 թ. հրապարակված «5 վերստանոց» քարտեզում Աբասլար եւ Ջաղազուր գյուղերի մոտ նշված է Յալղուզ-դաղ լեռնագագաթը, իսկ խորհրդային ռազմական քարտեզներում ճիշտ է, այդ գագաթի անունը զանց է առնված, բայց նրանից 1 կմ հարավ-արեւելք տարածված անտառածածկ լեռնալանջի համար նշված է «Յալղուզ-դամ» անունը (տվյալ դեպքում որպես այդ անունը կրող տեղամաս): Նույն վայրի հյուսիսային կողմում տարածված է մինչեւ 1992 թ. քրդաբնակ Ուլուդյուզ գյուղը: Վերջինս ակնհայտորեն հին գյուղ է, որն հայաթափումից հետո, XIX դարի 2-րդ կեսին բնակեցվել է քրդերով: Դժվար չէ կռահել, որ հենց այս գյուղն էլ հանդիսանում է պատմական Յալղուզտամը:

Գյուղից 1 կմ հյուսիս-արեւելք մի աննշան գյուղակի ավերակներ են: Խաչնարածներն այն կոչում էին Մոլլալար:

## ՄԱՐԳՔ (ՄԱՐԿԻԶ, ՄԱՐԳԻՍ)

Մարգքի մասին հիշատակում է Ստ. Օրբելյանը:[113] Կարծում ենք, դա Մարկիս գյուղն է, որի հայ բնակիչները 1682 թ. 5 թուման նվեր էին տվել Մերիկ գյուղում եկեղեցու կառուցման համար:[114]

Ընդ որում այն Մարկիզ անվանաձեւով նշված է նաեւ 1904 թ. հրապարակված «5 վերստանոց» քարտեզում, համանուն լեռնագագաթից հարավ-արեւելք: Խորհրդային տարիներին գյուղը ապաբնակեցվել է:

Ներկայում գյուղատեղիի տարածքում, բացի դարուփոսերի տեսք ստացած տնատեղիներից, ոչինչ չի պահպանվել:

## ՃԱՂԱԶՈՐ (ՋԱՂԱԶՈՒՐ)

Խորհրդային տարիներին իրարից ոչ հեռու գոյություն ունեին նույնանուն երեք գյուղ: Մինչխորհրդային տարիներին դրանցից արեւելյանը կոչվում էր Պովրուզղի (Նովրուզգլիլար), հյուսիսայինը՝ Քյալովալըխ եւ հարավայինը՝ Ջաղազուր: Դրանցից եւ ոչ մեկի վերաբերյալ մատենագրական տվյալներ հայտնի չեն:

Աղավնագետի աջակողմյան բարձր լեռնալանջին պահպանվում է նաեւ Սումիկլու անունը կրող գյուղատեղին, որի մասին նույնպես գրավոր աղբյուրներում հիշատակումներ չենք հանդիպել:

## ՋԱԲՈՒԽ (ՊԱՏՄ. ՇԱԲԱԿԻ°)

Աղավնագետի հոսանքն ի վար ամենավերջին գյուղը, որ տարածված է գետի ափերին XIX դարի սկզբներից ի վեր քրդերով բնակված Ջաբուխն է (ծովի մակերեւույթից 820-860 մ բարձրության վրա: Այն աչքի է ընկնում գյուղի երբեմնի բնիկներից մնացած թթենու ընդարձակ այգիներով:

Ստ. Օրբելյանի կազմած Աղահեճ գավառի հայտնի ցուցակում 7 դրամ հարկաչափով հիշվում է Շաբակի[115] անունով գյուղը (1911 թ. հրապարակության մեջ Շապոկի ձեւով):[116] Ուսումնասիրողներից Ղ. Ալիշանը,[117] Մորուս Հասրաթյանն[118] ու Արմեն Ղարագյոզյանը[119] այն կարծիքին են, որ Շաբակին նույն Ջաբուխն է, բայց ահա՝ գրող Ս. Խանզադյանը հայտնել է այլ տեսակետ (առանց պատմական հիմնավորման): Ըստ նրա Ջաբուխը պատմական Պախախոնիքն էր:[120]

Հարցի առթիվ չենք հավակնում սպառիչ խոսք ասել, սակայն Ջաբուխ եւ Տեղ գյուղերի միջեւ Շպկի անունով գյուղատեղիի առկայությունը,[121] թույլ է տալիս ենթադրելու, որ Շաբակին՝ Ջաբուխը չէ:

111. *Ս. Խանզադյան, նշվ. հոդվածը, էջ 24:*
112. *«Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբէլեանի» (հավելված), Երեւան, 1942, էջ 42:*
113. *Ստեփաննոս Օրբելյան, Սյունիքի պատմություն, էջ 399:*
114. *Այդ մասին տես ներկա աշխատությունը էջ 132:*
115. *Ստեփաննոս Օրբելյան, Սյունիքի պատմություն, էջ 399:*
116. *Ստեփաննոս Օրբէլեան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1911, էջ 516:*
117. *Ղեւոնդ Ալիշան, Սիսական, Վենետիկ, 1893, էջ 268:*
118. *Մորուս Հասրաթյան, Պատմա-հնագիտ. ուսում., էջ 156:*
119. *Армен Карагезян, նշվ. հոդվածը, էջ 43:*
120. *Սերո Խանզադյան, նշվ. հոդվածը, էջ 24: Ի դեպ, 1911 թ. հրատարակության մեջ պատմական Բաղախանիքը աղավաղմամբ հրատարակվել է՝ Պախախոնիք, որից եւ օգտվել է Ս. Խանզադյանը:*
121. *Армен Карагезян, նույն տեղում:*

Ս. Խանզադյանը նշում է, որ Ջաբուխը մինչեւ 1775 թ. հայաբնակ է եղել: Դա միանգամայն հնարավոր է, բայց ցավոք հայտնի չէ, թե ի՞նչ աղբյուրից է օգտվել գրողը այդ թիվը մեջբերելիս: Ինչ վերաբերում է գյուղում եւ մերձակայքում պահպանված հուշարձաններին, ապա այդ առթիվ գրողը նշել է. «Գյուղի Քեշիշ-վերան (Քահանայի ավերակ) հանդում մեջքի վրա ընկած մի խաչքարի կարդացի.- ԹՎՆ. ՌԴ ԵՍ ՄԵԼԻՔ ՈՒՍԵՓ ԱՂԱՀԵՋ ԳԱՎԱՌԻՍ ԻՄ ՀԵՐԵՆԻՔ ՇԱՂՈԿԻ ԳԻՒՂԸ ՏՎԻ ԾԻԾԵՌՆՈՒ ՎԱՆՔԻՆ, ՅԻՇԵՍՋԻՔ Ի ՔՍ: ... Հիշված Շաղոկի գյուղը գտնվում է Լորիք եւ Ագարակուգետ գյուղերի մոտ: Ձորի պռնկին մի գերեզմանաքար տեսա.- ՔԱՋԱՋԱՐՄ ՄԵԼԻՔ ԳԵԴԷՈՆ ԻՇԽԱՆ ՏԵՂՒՈՅՍ, ՆԱՀԱՏԱԿ ԵՂԵՒ ԿՌՎՈՒՄ ԱՆՕՐԷՆ ՊԱՐՍԻԿ ՋԱՌՋԻ ՓԱՆԱՀԻ ԴԵՄ ԾԱՂԻԿ ՀԱՍԱԿԱՒ ԹՎՆ. ՌՄԺԱ: Սա լինում է 1762 թվականը...»:[122]

Կարաիպ անվամբ մի աննշան գյուղատեղիի ավերակները նկատվում են Ջաբուխից 1,5 կմ հյուսիս-արեւմուտք՝ Աղավնագետի ձախ ափին:

Գտնվելով ճանապարհի վրա՝ Ջաբուխի քուրդ բնակիչներն ավելի մեծ շփում ունեին թրքախոս զանազան ցեղերի հետ, որի պատճառով արդեն 1888 թ. նրա 60 տուն բնակիչներին մի ականատես հիշում է իբրեւ թուրքերի:[123]

1905-06 թթ. հայ-թրքական ընդհարումների ժամանակ զաբուխցի թրքացած քրդերը գավառի առավել անհանգիստ տարրերից էին: Մասնավորապես, 1905 թ. դեկտեմբերի 29-30-ը նրանք. «... յարձակում են գործել, այն էլ շատ մեծ ուժով Ղարաղշլաղ գիւղի վրա եւ մեծ դիմադրութեան հանդիպելով՝ ամօթալի նահանջով փախուստի են դիմել...»:[124]

1898 թ. գերմանացի հնագետ Էմիլ Ռյոսլերը ուսումնասիրելով գյուղի մերձակայքում գտնվող հնավայրը, հանգել է այն եզրակացության, որ այն հայկական մի հնագույն գերեզմանոց էր. «Տեղ գյուղին չհասած՝ Ջաբուխ փոստային կայարանի մոտ ես դեմ առա կարծր, գորշ գրանիտե քանդակների բեկորների, որոնք, տեղաբնակների ասելով, վաղուց ի վեր այստեղ են բերվել այլ վայրերից: Այդ քանդակները պատկերում են թամբած երիվարներ՝ լիակատար ռազմական հանդերձանքով: Ամենայն հավանականությամբ այսօրինակ քարերը հին հայկական գերեզմանոցների մահարձանների թվին են պատկանում»:[125]

Խորհրդային տարիներին Ադրբեջանի իշխանությունների առանձնահատուկ ուշադրության շնորհիվ Ջաբուխը աննախադեպ ընդարձակվեց: Հաշվի առնելով գյուղի աշխարհագրական դիրքը (Լաչինից հետո Ջաբուխը երկրորդ եւ վերջին բնակավայրն էր Գորիս-Ստեփանակերտ մայրուղու միջակայքում)՝ իշխանությունները ամեն կերպ ամրացնում էին Ջաբուխը եւ պատահական չէր, որ 1990-ից գյուղը վեր էր ածվել ռազմական հենակետի:

***Հոչանց (Հոչաս) գետի ավազան:*** Հագարու գետի աջակողմյան խոշորագույն վտակներից մեկն է նաեւ Հոչանց գետը: Այն սկիզբ է առնում Ծավդեից լեռնաշղթայի Դալիդաղ լեռնագագաթի հարավահայաց փեշից: Ունի 63 կմ երկարություն եւ 414 քկմ ջրհավաք ավազան: Գետահովտում կանավելի քան



*Յոչանց գետի հովիտը միջին հոսանքի շրջանում*

15 գյուղեր եւ գյուղատեղիներ: Ստորեւ դրանք ներկայացնում ենք՝ գետի հոսքն ի վար ուղղությամբ մինչեւ նրա եւ Հակարի գետերի միախառնման վայրը:

## ՍՊԻՏԱԿԱՋՈՒՐ (ԱՂԲՈՒԼԱՂ)

Սպիտակաջուր գյուղը Հոչանց գետի ավազանի ամենաբարձր դիրք ունեցող բնակավայրն է: Ծովի մակերեւույթից նրա բարձրությունը հասնում է 1780-1850 մ-ի: Դեռ գյուղի մատույցները չհասած՝ վերանում են վերջին նոսր անտառները եւ սկսվում են համատարած ալպիական մարգագետիններով ծածկված լեռնադաշտերը: Գյուղի թաղամասերը տարածված են հարավ-արեւելահայաց ձորալանջին:

Գյուղի վերաբերյալ միակ պատմական հիշատակությանը հանդիպում ենք Օրբելյանի «Ժամանակագրության» հավելվածում:[126] Տաթեւի վանքին հարկ մուծող (պտղաչափը՝ 2900 միավոր)

122. ***Ս. Խանզադյան***, *նշվ. հոդվածը, էջ 24:*
123. *«Նոր Դար», 1888, N33:*
124. *«Մշակ», 1906, N11, 18 յունվարի, էջ 2:*
125. ***Эмиль Реслер***, *Археологическое изыскание в Закавказье, "Кавказ", 1903, №134, էջ 2:*

126. *«Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբէլեանի» (հավելված), Երեւան, 1949, էջ 42:*

Սպիտակաջուր գյուղը նույնպես ամենայն հավանականությամբ հայաբնակ է եղել մինչեւ XVIII դարի 2-րդ կեսը, իսկ հայաթափվելուց հետո եկվոր քրդերը գյուղի անունը թարգմանաբար կոչել են Աղբուլաղ:

Գյուղի հարավային փեշով հոսող վտակի ափին պահպանվել են 2 ջրաղացների ավերակները:

### ՇԵՅԼԱՆԼԻ

Հոչանցի աջ ափից մոտ 800 մ հեռու, գետափից 250 մ եւ ծովի մակերեւույթից 1700-1750 մ բարձրության վրա, լեռան արեւելահայաց լանջին տարածվում են հին, բայց պատմական անունը մոռացված, իսկ քրդերի կողմից Շեյլանլի հորջորջված գյուղի թաղամասերը:



Շեյլանլի գյուղի տեսքը արեւելքից

Գյուղից հյուսիս, Հոչանց գետի վրա կանգուն է թաղակապ, միաթռիչք միջնադարյան կամուրջը: Վերջինիս անցուղու լայնությունը 3,70 մ է, իսկ թռիչքի երկարությունը 12,4 մ: Կամրջի թաղի անկյունաքարերը սրբատաշ բազալտից են, իսկ կամարի 2-րդ շարք քարերը՝ կոփածո բազալտից: Մնացած հատվածները շարված են կիսամշակ եւ բոլորովին անմշակ քարով, կրաշաղախով: Կամրջի թաղակիր մասը սվաղված է:

Գետի ձախ կողմում, կամրջից հազիվ 100 մ հյուսիս-արեւմուտք, հին գյուղատեղիի մնացորդներն են: Վերջինս XIX դարի վերջին քրդաբնակ աննշան մի գյուղ է եղել ու կոչվել է Ներքին Աղքյորփի (թարգմ. Սպիտակ կամուրջ): Համանուն՝ վերին գյուղը եղել է գետի նույն ափին, 2,5 կմ հոսանքն ի վեր: Այն նույնպես ապաբնակեցվել է խորհրդային տարիներին: Սրանց պատմական անվանումները դեռեւս ճշտված չեն:

### ԿԱՏՈՍ (ՊԱՏՄ. ԳԵՏՈ՞ՒՋ)

Շեյլանլիից ընդամենը 1,5 կմ հարավ-արեւելք, Հոչանց գետից 1 կմ հարավ (աջ կողմում) եւ ծովի մակերեւույթից 1640-1760 մ բարձրության վրա (գետափից շուրջ 280 մ միջին բարձրությամբ) գտնվում է ըստ ամենայնի պատմական անվանումը պահպանած Կատոս գյուղը: Վերջին երկու հարյուրամյակում հարեւան գյուղերի նման Կատոսը նույնպես բնակեցված է եղել քրդերով, ընդ որում, ընդհուպ 1985 թ. մեր այցելության ժամանակ, դրանց մեջ դեռեւս քիչ չէին նաեւ մայրենի՝ քրդերենով խոսողները (նույնը եւ Շեյլանլիում):

1567 թ. Հակարու երկրի Գետուզ գյուղում գրված





Շեյլանլի գյուղից հյուսիս, Հոչանց գետի վրա կամուրջ (XII-XIII դդ.)

մի ձեռագիր «Ավետարան»-ի[127] գոյությունը կարծել է տալիս, թե Գետուզն ու Կատոսը միեւնույն գյուղի քիչ այլակերպված արտասանություններն են: Սակայն, անկախ այդ հանգամանքից գյուղի տարածքում պահպանված նյութական մշակույթի հուշարձանները ուղղակի վկայում են, որ ներկայիս Կատոս գյուղի պատմությունը սկիզբ է առնում առնվազն վաղ միջնադարից: Ասվածի ապացույցն է գյուղից 1 կմ հյուսիս, Հոչանց գետի աջ ափից 20 մ բարձրությամբ մի բլրալանջին պահպանված բազիլիկ եկեղեցու ավերակները: Կոփածո քարով ու կրաշաղախով (անկյունաքարերը սրբատաշ են, քարատեսակը՝ բազալտ) կառուցված միանավ շինությունն արեւելք-արեւմուտք ուղղությամբ ունի բավականին նեղ ու ձգված հորինվածք:








*ԿԱՏՈՍԱՎԱՆՔ. կտրվածք դեպի հարավ, հարավային ճակատ եւ հատակագիծ*

Արդեն բոլորովին կործանված թաղը ժամանակին պահելիս են եղել երկու զույգ որմնասյուներին հենված թաղակիր կամարները: Գլխավոր մուտքը բացված է հարավային ճակատից, բայց կառույցը մուտքեր է ունեցել նաեւ արեւմուտքից եւ հյուսիսից:

Շինության բուն հորինվածքում ավանդատներ նախատեսված չեն եղել, բայց այդպիսիք կառուցվել են եկեղեցուն կից՝ հյուսիսային եւ հարավային կողմերից: Ուշագրավ է, որ վերջիններիս մուտքերն էլ առանձին են եղել եւ եկեղեցու ներսից հաղորդակցում չեն ունեցել: Դրա ու նաեւ նկատելի ընդարձակ չափերի (հարավայինը՝ 7,60x.3,50 սմ, հյուսիսայինը՝ 6,90x2,25 սմ) շնորհիվ ավանդատներն ավելի շուտ մատուռների կամ փոքր եկեղեցիների տպավորություն են թողնում: Եկեղեցու պահպանված որմերին (առավել բարվոք վիճակում են հարավային եւ հյուսիսային ճակատները) արձանագրություններ չկան: Ունի խիստ եւ զուսպ արտաքին հարդարանք: Այդ տեսակետից թերեւս բացառություն է կազմում հարավային ճակատից բացված լուսամուտի պսակը: Պատերի հաստությունը տատանվում է 1,0-1,1 մետրի: Արտաքին չափերն են 16,7x6,9 մ: Հատակագծային, հորինվածքային եւ կառուցողական առանձնահատկությունները,՝ ինչպես նաեւ համանըման այլ հուշարձանների հետ վերջինիս համեմատական ուսումնասիրությունը թույլ է տալիս եկեղեցու կառուցման ժամանակաշրջանը համարել IX-XI դարերը:

Եկեղեցու (որը կից կառույցների շնորհիվ կարելի է եւ վանք կոչել) հարավ-արեւելյան կողմում տարածված է միջնադարյան գերեզմանոցը: Այս հնավայրը միտումնավոր կերպով եւ հիմնահատակ ավերման է ենթարկվել 1989-92 թթ: Ներկայում բոլոր շիրմաքարերը տեղահան ու կոտրտված վիճակում են, իսկ միակ արձանագիր խաչքարը, որը տեղում տեսել եւ վիմագիրն ընդօրինակել էինք 1985 թ.՝ մեր առաջին այցելության ժամանակ, անհայտացվել էր: Այդ խաչքարը, որի եզրագոտով ձգվող արձանագրության սկզբնամասն արդեն հողմնահար վիճակում էր, համաձայն հորինվածքային եւ զարդաքանդակների ոճական առանձնահատկությունների, ինչպես նաեւ վիմագրի գրչության քննության, ակնհայտորեն X-XI դարերի գործ էր: Ցավոք, արդեն գոյություն չունեցող այդ խաչքարի ներկայացվող լուսանկարը բարձրորակ չէ: Վիմագրի վերծանությունը հետեւյալն է.

...(ԿԱՆ)ԳՆԵՑԻ ԶՍ(ՈՒՐ)Բ ՆՇԱՆՍ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹ(ԵԱՄ)Բ ՀԱՅՐ ԳՐ(Ի)ԳՈՐՈՅ, ՅԻՇԵՍՋԻՔ Ի Ք(ՐԻՍՏՈ)Ս:

Ի դեպ, արձանագրության մեջ հիշատակված հայր Գրիգորի առաջնորդ լինելու հանգամանքը գալիս է հավաստելու, որ տվյալ հուշարձանը ոչ թե սոսկ եկեղեցի, այլ վանք էր եւ գավառի, ըստ ամենայնի, ոչ երկրորդական հոգեւոր կենտրոններից մեկը:

127. *«Ցուցակ Ձեռագրաց», հատոր Ա. Երեւան, 1965, ձեռ. N4932:*









ԿԱՊՐՈՍ. գյուղի ընդհանուր տեսքը հարավից, համանուն վանքը (տեսքը հարավից եւ հատվածներ)



ԿԱՊՐՈՍԱՎԱՆՔ. խաչքար X-XI դդ. (անհայտացված 1989-92 թթ. ընթացքում)

Հուշարձանախմբից արեւելք եւ արեւմուտք փարածված են հին գյուղատեղիների ավերակներ: Դրանցից առավել ընդարձակն է արեւմտակողմինը: Հնավայրերում բազմաթիվ են անմշակ քարով շարված երբեմնի բնակարանների հիմնապատերը:

Կապրոս գյուղի մերձակայքի կարեւոր հուշարձաններից է նաեւ վանքից շուրջ 800 մ արեւմուտք, Հոչանց գետի վրա գցված միջնադարյան մի մեծաթռիչք կամրջի մնացորդները: Կամրջի առավել լավ պահպանված ձախափնյա խելն ունի 7,50 սմ լայնություն, իսկ թռիչքի երկարությունը եղել է ավելի քան 12 մ: Կամուրջն ամբողջապես կառուցված է սրբատաշ կապտամանուշակագույն բազալտից, կրաշաղախով: Թվում է, թե այս կամուրջը Կապրո-

ԿԱՏՈՍ. կամրջի մնացորդ Հոչանց գետի ափերին

սավանքին ժամանակակից շինություն է, թեեւ օգտագործված քարերի չափերն ու մշակման կերպը ավելի բնորոշ են XII-XIII դարերին:

## ԱՂՋԱՔՅԱՆԴ (ՔԱՐԱԳԼՈ՞ՒԽ) ԵՎ ՂՈՇԱՍՈՒ

Կատոս եւ Արվական գյուղերի միջեւ, Հոչանց գետի աջակողմյան լայնատարած ողջ լեռնալանջը ծածկված է թավ անտառով, իսկ գետի հանդիպակաց կողմում, իրարից հազիվ 1 կմ հեռավորության վրա փռված են երկու առանձին գյուղերի թաղամասերը: XIX դարի սկզբներից հայաթափ այդ գյուղատեղիներում հաստատված քրդերը դրանց կոչել են Աղջաքյանդ եւ Ղոշասու, ընդ որում գյուղերից առաջինը գտնվում է Հոչանց գետի վրա բավական մեծ բարձրությամբ եւ ուղղահայաց դիրքով կախված ամեհի քարափների գլխին, իսկ երկրորդը՝ զույգ վտակների ափին, որոնք գյուղի ստորոտում միախառնվում են եւ գահավիժելով լցվում Հոչանց գետի մեջ:

Ս. Օրբելյանի «Ժամանակագրության» հավելվածի մեջ Սպիտակաջուր եւ Արվական գյուղերի միջեւ ընկած տարածքում հիշատակված է Քարագլուխ գյուղի մասին:[128] Այդ տարածքում գտնվող գյուղերից (Շեյլանլի, Կատոս, Աղջաքյանդ ու Ղոշասու) միայն Աղջաքյանդն ունի աշխարհագրական այնպիսի դիրք, որն առիթ հանդիսանար գյուղի՝ Քարագլուխ կոչվելուն: Ուստի կարծում ենք, որ Աղջաքյանդը, որն իսկապես քարափների պռնկին մեկնված բացառիկ տեսք ու դիրք ունի, համընկնում է պատմական Քարագլուխ գյուղին:

128. *«Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբէլեանի» (հավելված), Երեւան, 1942, էջ 42:*

## ՇՐՎԱԿԱՆ ԵՎ ԱՐՎԱԿԱՆ

Միմյանցից 1 կմ հեռավորության վրա գտնվող պատմական այդ երկու գյուղերը փռված են Հոչանց գետի աջակողմյան լեռնալանջերի հարավ-արեւելահայաց փեշերին: Երկու գյուղերի մասին միակ հիշատակությանը հանդիպում ենք Տաթեւի վանքին պտղահարկ մուծող գյուղերի ցանկում:[129] Ընդ որում, երկու գյուղերի տուրքի չափը (1300 միավոր) իրար հավասար էր:

XIX դարում, երբ հայաթափ գյուղերում հաստատվեցին խաշնարած քրդական եւ թուրքական ցեղերը գյուղերի պատմական անունները դեռեւս մոռացության չէին մատնված (հնարավոր է՝ սակավաթիվ հայերի առկայության շնորհիվ): Համենայն դեպս, 1904 թ. մի քարտեզում գյուղերը հիշված են Շարքյար եւ Արբիյան անուններով (առաջինը՝ սոսկ որպես ձմեռոց): Խորհրդային շրջանում Շրվականը քարտեզներում հիշված է Շեւաքար կամ Շվաքար ձեւով, իսկ Արբիյանը՝ նոր վերանվանումով՝ Ալխասլի:

Ի դեպ, 1980 թ. պատմական Արվական գյուղի տարածքից՝ ավերված դամբարանաբլուրների ուսումնասիրությունը ի հայտ է բերել մ.թ.ա. XIII-XII դարերին վերաբերող հնագիտական նյութեր, իսկ գյուղից հարավ-արեւելք գտնվող հին բնակատեղիի տարածքից հայտնաբերվել են բրոնզի եւ վաղ երկաթի դարաշրջաններին հատուկ գտածոներ:[130]

Նախախորհրդային քարտեզներում Արվական

*129. Նշվ. աշխ., նույն տեղում:*

*130. **А. Алиев**, Исследование в Лачинском районе, "Археологические открытия 1980 г.", Москва, 1981, էջ 414: Նույն հոդվածում նկարագրված է նաեւ Ալխասլի (Արվական) գյուղից 8 կմ հյուսիս-արեւմուտք գտնվող մի վանքի բարավորի վրա փորագրված արձանագրությունը (ըստ հոդվածագրի «աղվաներեն»): Իր ժամանակին այդ վիմագրի վերծանությունը*

գյուղից 2,5 կմ հարավ-արևելք նշված են Սեյտեր կամ Սեյդլյար գյուղը, իսկ Հոչանց գետի հանդիպակաց ձորալանջին՝ երկու այլ աննշան գյուղեր: Վերջիններս մինչև վերջերս քրդաբնակ էին և կրում էին Ալփոուտ և Ղարաջանլի անունները:

Ղարաջանլիում պահպանվում են XIX դարի վերջերով թվագրվող քրդական գերեզմանոց՝ խոյաձև, անարձանագիր տապանաքարերով:

### ՄՇԵՆԻ (ՄԻՇՆԻ)

Մշենին առաջին անգամ հիշատակվում է Ստ. Օրբելյանի կազմած Աղահեճ գավառի գյուղերի ցուցակում:[131] Մինչև XVIII դարի կեսերը հայաբնակ, իսկ այնուհետև քրդաբնակ գյուղն առ այսօր էլ հայտնի է իր պատմական անվամբ, միայն՝ փոքր ինչ աղավաղված արտասանությամբ (Միշնի): Խորհրդային տարիներին տեղի քրդերի մի մասը փոխադրվել է հարևան Քարվաճառի շրջան ու հիմնել համանուն նոր գյուղը:

Պատմական կամ բուն Մշենի գյուղը բաղկացած է երկու մեծ թաղերից՝ վերին և ներքին: Վերին թաղը գտնվում է ծովի մակերևույթից 1370-1450 մ բարձրության վրա, իսկ ներքին թաղը՝ 1250-1360 մ: Փաստորեն, գյուղի թաղերը միմյանց նկատմամբ 200 մ անկում ունեն: Գյուղի ներքին թաղը առավել հին հարված է: Այստեղ հողափոր կամ ժայռափոր բնակարանների մի ամբողջ համալիր կա: Դրանք գյուղի եկվոր տարրին ավանդ է մնացել բնիկների կողմից:

Մշենուց արևելք, Հոչանց գետի ձախափնյա ձորալանջին պահպանվում են կիկլոպյան շարվածքով հնամենի բերդի մնացորդները: Սա ակնհայտորեն, իր նպատակին է ծառայել նաև միջին դարերում: Կա այն կարծիքը, որ դա Ստ. Օրբելյանի հիշատակած Խոժոռաբերդն է:[132] Տեղացի քրդերը բերդը կոչում էին Գյավուրղալա (անհավատների=քրիստոնյաների բերդ):[133]

Գյուղի ստորոտով հոսող Հոչանց գետի այդ հատվածում կա մինչև 10 մ բարձրությամբ ջրվեժ:

### ԶԻԱՍԱՐ (ՍՈՆԱՍԱՐ)

Պատմական Զիասար գյուղը, որը նույնպես հիշատակված է Օրբելյանի կազմած Աղահեճ գավառի հայտնի ցուցակում, գտնվում է Մշենուց 2 կմ հարավ-արևելք, Հոչանց գետի աջ կողմում, գետափից հազիվ 800 մ հեռավորության վրա, բայց շուրջ 260 մ բարձր, իսկ ծովի մակերևույթից 1300-1350 մ բարձրության վրա: Նախախորհրդային տարիներին տեղաբնակ քրդերը գյուղը կոչում էին Մեծ Սունասար:



ՄՇԵՆԻ (ՄԻՇՆԻ). գյուղի տեսքը արևելքից



ԶԻԱՍԱՐ (ՍՈՆԱՍԱՐ). գյուղի տեսքը

Դեռևս XIX դարի վերջերին այստեղ պահպանվելիս է եղել հայոց հնամենի եկեղեցու շենքը: Այն հայաթափ գյուղատեղիի տարածքում հաստատված քրդերն օգտագործում էին որպես փարախ կամ գոմ:[134] Ցավոք, այդ եկեղեցին ներկայում հիմնահատակ քանդված է: Միայն երբեմնի եկեղեցու շուրջ տարածված գերեզմանոցն է, որ թեև նույնպես ակնհայտորեն միտումնավոր կերպով տակնուվրա է արված, այնուամենայնիվ դեռևս ներկայանում է իբրև երբեմնի բնիկ բնակիչների գոյությունը փաստող

տվել է պատմաբան Հ. Սվազյանը՝ *Об одной "Албанской надписи"* հոդվածում («ԼՀԳ», 1987, N2, էջ 42-47): Արտատպված է *"К освещению проблем истории и культуры Кавказской Албании и восточных провинций Армении"* ժողովածուում (Երևան, 1991, էջ 276-280): Վիմագրի բովանդակությունը հետևյալն է. [ԵՍ ՎԱՐ]ԹԱՆ [ԿԱՆ]ԳՆԵՑԻ ԶԽԱՉՍ / ՀՈԳՈ ԻՄ(Ո)Յ ՈՐ Կ/ԱՐԴԷՔ, ՅԱՂԱԻԹՍ ԻՇԵՑԵՔ: Հնավայրը, ուր գտնվելիս է եղել այս արձանագիր բարավորը, միայն ենթադրաբար կարելի է նույնացնել Կատոսավանքի հետ, քանի որ վերջինս Ալխասլիից ոչ թե 8, այլ հազիվ 4,5 կմ է հյուսիս-արևմուտք և բացի այդ՝ այն չի համապատասխանում Կատոսավանքի եկեղեցու մուտքի բարավորին:

131. **Ստեփանոս Օրբելյան**, Սյունիքի պատմություն, էջ 399:

132. **Армен Карагезян**, նշվ. հոդվածը, էջ 44:

133. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր VII, Բաքու, 1983, էջ 14:

134. «Ազգագրական Հանդես», գիրք Դ, N2, Թիֆլիս, 1898, էջ 50:













*ՉԻԱՍԱՐ (ՍՈՆԱՍԱՐ), ավերակ գերեզմանոցը, տապանաքար կենդանաքանդակներով, ջաղացքար Հոչանց գետի աջ ափին, սյան խոյակ գյուղամիջում, խաչքարի պատվանդան (1056 թ.) եւ սալատապան գերեզմանոցում*





ՁԻՍՍԱՐ (ՍՈՆՍԱՍԱՐ). կամրջի մնացորդ (XII-XIII դդ.) Յոչանց գետի ձախ ափին

պատմական հնավայր:

Գերեզմանոցից անհայտացվել են բոլոր խաչքարերը, բայց դեռեւս մնում են դրանցից մի քանիսի պատվանդանները: Վերջիններից մեկի (132x95 սմ) երկու նիստերին մեկ տողով արված է հեղեւյալ, խոշոր տառերով փորագիր արձանագրությունը.

ՇԵ(1056) Թ(ՎԻՆ) ՈՂՈՐ(Մ)...|... ՏՍ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՅԱՍՄԱՆԱ ԵՒ (Կ)ԵՑՈՅ:

Նույն գերեզմանատանը պահպանվում են նաեւ հարուստ պատկերաքանդակներով զարդարված մի քանի տապանաքարեր: Բոլոր շիրմաքարերն էլ կերտված են բազալտ քարից:

Գյուղի հյուսիսային ծայրում, մի տան բակում, հաստաբուն թթենու տակ ընկած է քարակերտ սյան խարիսխ (չափերը 70x65 սմ):

Գյուղից հյուսիս, Յոչանց գետի աջ ափին, նրանից ելնող հին ջրանցքի վրա պահպանվում են միջնադարյան ջրաղացի ավերակները: Չորս վիշապաքանդակներով զարդարված ջրաղացքարը կերտված է կարծր բազալտից եւ ունի 115 սմ տրամագիծ: Ջրաղացի ավերակից մոտ 200 մ գետի հոսանքն ի վեր պահպանվում են միջնադարյան (ըստ ամենայնի՝ XI-XIII դդ. կառույց) կամրջի մնացորդները: Գետի վարարահոս ջրերը դարերի ընթացքում հիմնահատակ լվացել են աջափնյա խելը, եւ այժմ պահպանվում է երբեմնի միաթռիչք կամրջի միայն ձախակողմյան խելը, որն ունի 2,8 մ լայնություն:

Ձիասար գյուղից հարավ-արեւմուտք, համապատասխանաբար 1 եւ 2 կմ հեռավորության վրա գտնըվում են Մայխ եւ Սոյուղբուլաղ հորջորջված հին գյուղերը: Սրանց պատմական անվանումները դեռեւս մնում են անհայտ: Նախախորհրդային տարիներին դրանցից առաջինը կոչվում էր նաեւ Ղըզխանըմ-Թոյուղլան:

## ՀՈՒՆՉԱՔ, ՀՈՉԱՆՑ ԿԱՄ ՀՈՉԵՍ (ՀՈՉԱԶ)

Քաշաթաղ գավառի առավել հայտնի ու պատմական հարուստ անցյալով նշանավոր գյուղերից է Յունչաքը:

Գյուղի առաջին հիշատակությանը հանդիպում ենք Ստ. Օրբելյանի կազմած Աղահեճ գավառի գյուղերի հայտնի ցուցակում՝ Յունչաք ձեւով:[135] Ուշագրավ է, որ գյուղի հարկաչափը՝ 12 միավոր, առավելագույններից է, ուստի կարելի է կարծել, որ Յունչաքը միջնադարում եւս եղել է գավառի առավել բազմամարդ գյուղերից մեկը: Գյուղը՝ Յոչանց ձեւով հիշ-



վում է նաեւ Տաթեւի վանքին պտղահարկ մուծող գյուղերի թվում, 3450 հարկաչափով, որը դարձյալ գյուղի բազմամարդության վկայությունն է:[136]

Այնուհետեւ գյուղը հիշատակվում է XVII դարի սկզբին Տաթեւի Մեծ Անապատում ուսանած եւ կրոնավորական մեկուսի կյանքով ապրելու համար

135. **Ստեփանոս Օրբելյան**, *Սյունիքի պատմություն*, էջ 399:
136. *«Ժամանակագրութիւն...»*, էջ 42:






*ՅՈՒՆՉԱՔ. եկեղեցու տեսքը հյուսիս-արեւելքից եւ հարավ-արեւելքից, ավերված գերեզմանատան տապանաքարերի բեկորներ օգտագործված բնակարանային շինարարության մեջ*

գյուղի մերձակայքում նոր անապատ հիմնած Կիրակոս եւ Թումա եպիսկոպոսների գործունեության առիթով: Մասնավորապես, հիշյալ երկու բարձրաստիճան հոգեւորականները գյուղի մոտ հիմնել էին հոգեւոր հաստատություն. «...տէր Կիրակոսն եւ Թումա եպիսկոպոսն գնացին յերկիրն Քշտաղս մերձ ի գիւղն Հօչանց, շինեցին անապատ՝ եւ անդ բնակեցան: ... Իսկ տէր Կիրակոսն, որ գնաց ի Հօչանց՝ կացեալ անդ կրօնաւորական ժուժկալութեամբ, ի նմին տեղւոջ մերձ ի գիւղն Հօչանց՝ յիւրում անապատին եղեւ վախճան սորա ի թուականութեան մերում ՌՀ, եւ գնաց առ սիրեցեալն իւր Քրիստոս, որում փափագեալ հանապազ կրէր ի հոգին իւր. եւ ի նմին տեղւոջ կայ թաղեալ պատուական նշխարք մարմնոյ նորայ, ի փառս Քրիստոսի Աստուծոյն օրհնելոյն յաւիտեանս ամէն» վկայում է Առաքել Դավրիժեցին:[137]

Իր իսկ հիմնադրած անապատում 1621 թ. Կիրակոս եպիսկոպոսի մահից հետո (նա թաղվել է իր իսկ հիմնած անապատում) այս հաստատության հետագա ճակատագիրն անհայտ է:

Տարածքում պահպանված հուշարձաններն ուսումնասիրելիս՝ ցավոք չենք հայտնաբերել հիշյալ անապատին առնչվող որեւէ հուշարձան: Ճիշտ է, Հոչանց գյուղում այսօր էլ կանգուն է XVII դարում կառուցված եկեղեցին, բայց այն հնարավոր չէ նույնացնել Կիրակոս եւ Թումա եպիսկոպոսների հիմնած անապատի հետ, քանզի վերջինիս համար պատմիչը շատ որոշակի նշել է, որ այն ոչ թե բուն

137. **Առաքել Դաւրիժեցի**, *Գիրք պատմութեանց*, Երեւան, 1990, էջ 222:

գյուղում էր, այլ. «...մերձ ի գիւղն Հօչանց...»: Մնում է ենթադրել, որ այդ անապատի կառույցը հետագա դարերում հիմնովին ավերվել է եւ մեզ չի հասել:

Հոչանցը հիշատակվում է նաեւ XVII դարի վերջին տեղի ունեցած դեպքերի առիթով, երբ Կարբի գյուղի հայերն այդ գյուղի մոտ ընդհարվել էին վրանաբնակ քրդերի հետ. «Եւ ելին ի բնակութենէ իւրեանց եւ ցրուեցան, ոմանք յաշխարհին Վրաց, ոմանք յԱղուանս, ի Ջակամ, ի Գեանճայ, ի Խաչէն, ի Վարանդ, եւ այլ ուր եւ կարացին: Իսկ կարբեցիքն ելին միահաղոյն ի վարդավառի բարեկենդանի շաբաթի օրն եւ դիմեցին դէպ յերկիրն Քաշթաղու, եւ հասին մինչ ի գիւղն Հոչէս, եւ անդ բնակեալ էին սեաւ վրանօք բազում տունք Քրտաց...»:[138]

Հայտնի է, որ գյուղում հաստատված քրդերը բնիկներից ժառանգություն ստացած ծխական եկեղեցու թափուր մնացած շենքն օգտագործում էին իրենց անասնակերի պահեստ,[139] իսկ խորհրդային վերջին տասնամյակներին այն՝ գյուղի համար ծառայել էր որպես հացի փուռ (այդ նպատակին առավելագույնս հարմարեցնելու համար եկեղեցու առանձին հատվածներ ձեւափոխել են, հարավից եւ արեւմուտքից նրան կցվել են այլ շինություններ):




Յունչաֆի եկեղեցու հատակագիծը

1960-ական թվականների սկզբներին արձանագրագիտական հատուկ գիտարշավի մասնակիցներն այդ եկեղեցու արեւմտյան պատի վերնամասում ագուցված մի սալաքարի վրա տեսել են մի խաչաքանդակ եւ 8 տողով փորագրված հետեւյալ արձանագրությունը.

ՅԱՆՈՒՆ ԱՅ. ԵՍ ՀԷԿԱԶ | ՍՐԱՆՈՅԻՆ ՀԱՅՐԷՆ|ԻՔՆ :Դ: | (4) ԲԱԺԻՆ| :Ա: ԻՄ ԷՐ. ԵՏ|ՎԻ ՎԱԽՄ ԸՍՏ|ԵՓԱՆՈՍ...|...|...:[140]

Կարծում ենք, թե վիմագրում հիշված «Ստեփանոս»-ը նույն եկեղեցու անվանումն է:

Եկեղեցին միանավ, թաղածածկ հորինվածքով, անմշակ քարով եւ կրաշաղախով կառուցված շինություն է: Ունի ավագ խորան, հարավից բացված միակ մուտք, չորս ճակատներից բացված մեկական՝ դեպի ներս լայնացող լուսամուտ եւ մկրտարանի ավազան՝ հյուսիսային պատի մեջ: Պատերի հաստությունը տատանվում է՝ 105-110 սմ: Արտաքին չափերն են 13,40x8,15 մ: Ըստ ամենայնի՝ եկեղեցին կառուցվել է XVII դարի 2-րդ կեսին:

Եկեղեցուց քիչ ցած, մի բնակելի տան պատերի մեջ ագուցված են բազմաթիվ տապանաքարերի կոտրատված բեկորներ: Այն տպավորությունն է ստեղծվում, որ ի սկզբանե եկեղեցու շուրջ (գլխավորապես դեպի հարավ) տարածված է եղել գյուղի հայոց գերեզմանոցը, բայց որն ամբողջությամբ ավերվել է, իսկ տարածքը՝ յուրացվել:

Հոչանց գյուղից 2 կմ հարավ, թավ անտառի մեջ բխող մի աղբյուրի մոտ պահպանվում է միջնադարյան մի գեղաքանդակ խաչքար:

Հոչանցից 2,7 կմ հյուսիս, համանուն գետի ձախ կողմի հարավահայաց ձորալանջին պահպանվում են քրդերի կողմից Աղափլու անվանված հին գյուղատեղիի ավերակները:

Մեկ այլ գյուղատեղի էլ պահպանվում է Հոչանցից 2 կմ հյուսիս-արեւելք, գետի ձախ ափին, խոր հովտի մեջ: Քրդերն այդ վայրը կոչում էին Ղզըլյար: Սրանց պատմական անվանումները դեռեւս մնում են անհայտ:

***Շալվա (Արքուգետ) գետի ավազան:*** Աղավնագետից եւ Հոչանցից հետո իր երկարությամբ եւ ջրառատությամբ աչքի է ընկնում Շալվա գետը: Այն եւս Հակարի գետի աջակողմյան վտակներից է եւ ունի 42 կմ երկարություն եւ 582 քկմ ջրհավաք ավազան:[141] Սկիզբ է առնում ծովի մակերեւույթից 2580մ բարձրության վրա բխող աղբյուրներից: Շալվայի եւ նրա ավազանին պատկանող վտակների հովիտներում ու ձորալանջերին գտնվում են շուրջ 20 մեծ ու փոքր գյուղեր: Դրանք բոլորն էլ շրջանի մյուս հատվածների նման, վաղնջական ժամանակներից ի վեր հայաբնակ են եղել, բայց XVIII դարի 2-րդ կեսից հետո հայաթափվել են ու ժամանակի ընթացքում բնակեցվել քրդերով:

## ՇԱԼՎԱ

Հովտի կենտրոնական եւ առավել ընդարձակ գյուղն է: Չնայած սրա մասին մատենագրական վկայություններ մեզ չեն հասել, բայց գյուղամիջում դեռեւս կանգուն եկեղեցին ու խաչքարերը վկայում են, որ գյուղը միջնադարի հայաշատ ու շեն բնակավայրերից է եղել:

Շալվայի թաղամասերը համանուն գետի ձորի ձախափնյակի երկայնքով ունեն շուրջ 1,3 կմ երկա-

138. ***Զաքարեայ սարկաւագի*** *Պատմագրութիւն. Վաղարշապատ, հատոր Բ, 1870, էջ 9:*

139. *«Ազգագրական Հանդէս», նշվ. հատորը, էջ 49:*

140. *«Դիվան հայ վիմագրության», պրակ 5, էջ 194:*

141. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան, հատոր X, Բաքու, 1987, էջ 505:*













*ՇԱԼՎԱ եկեղեցու տեսքը հարավ-արեւմուտքից եւ արեւելքից, տապանաքար (1629 թ.) ագուցված եկեղեցու արեւելյան ճակատում, նույն ճակատից բացված լուսամուտը, կից՝ խաչքարի գեղաքանդակ բեկոր, տեղահան խաչքար (XV-XVII դդ). եւ տապանաքարի բեկոր (XVI դ.) եկեղեցուց արեւմուտք՝ ավերված գերեզմանոցում*

րություն, բայց հազիվ 150-200 մ լայնություն: Գյուղն ունի ծովի մակերեւույթից 1480-1540 մ բարձրություն: Գյուղի հարավակողմում առավել հին ու պատմական թաղամասն է: Հենց այդտեղ էլ ցայսօր կանգուն է միանավ, թաղածածկ եկեղեցու շենքը, որը հորինվածքով եւ շինարվեստով հար եւ նման է գավառի տարածքում XVII դարի վերջերին կառուցված այլ եկեղեցիներին: Էական տարբերությունն այստեղ խորանի երկու կողմերում մեկական ավանդատների առկայությունն է: Ներքին լուսավորության խնդիրն այստեղ լուծված է 4 լուսամուտների միջոցով: Դրանցից երեքը բացված են արեւելյան, իսկ մեկը՝ արեւմտյան ճակատներից: Միակ մուտք, արեւմուտքից է: Կառուցված է անմշակ քարով, կրաշաղախով, ներքուստ սվաղված է: Հյուսիսային պատի մեջ իր ավանդական տեղում է մկրտարանի խորշը (ավազանը չի պահպանվել): Պատերն ունեն զգալի հաստություն՝ արեւմտյան ճակատում, օրինակ, 139 սմ: Եկեղեցու արտաքին չափերն են 13,50x8,45 մ: Եկեղեցու շուրջն իր ժամանակին ա-

մենայն հավանականությամբ, փարածված է եղել գյուղի գերեզմանափունը, սակայն հնավայրում գփնված խաչքարերի ու փապանաքարերի մի մասը եկեղեցու կառուցման ժամանակ ագուցվել է նրա որմերում, իսկ մնացածն էլ հետագայում որպես շինաքար օգտագործել են գյուղում հաստատված քրդերը: Ներկայում անհետացել է եկեղեցու դռնագլխի ճակատակալ քարը, որի վրա սովորաբար արձանագրված էր լինում շինարարության պատմությունը: Այստհանդերձ, մուտքի սրբատաշ անկյունաքարերին եւ արեւելյան ճակատին բացված կենտրոնա-




*ՇԱԼՎԱ. եկեղեցու հատակագիծը*

կան լուսամուտի փակ ագուցված տապանաքարին պահպանվել են հետեւյալ արձանագրությունները:

1. Բարավորից աջ, կամարաձեւ սրբատաշ քարին բազմաթիվ խաչաքանդակների արանքում խառը գրությամբ փորագրված է.

ՏՐ ՊՈ(Ղ)ՈՍ, ՄԽԻԹԱՐ, ՌԿ(1611):[142]

2. Մուտքից աջ՝ իբրեւ անկյունաքար հարմարեցված տապանաքարին, փորագրված է.

ՊՈՏՐՈՍ, ՊՈՂ(ՈՍ) | ԹՎ(ԻՆ) ՌՃ(1651) |...:

3. Արեւելյան ճակատում ագուցված տապանաքարին՝ պատկերաքանդակների շուրջ, երեք տողով փորագրված է.

ԹՎ(ԻՆ) ՌՀԸ(1629):

Եկեղեցուց ոչ հեռու, մի բնակելի տան մոտ, պահպանվել են երկու գեղաքանդակ խաչքարեր:

Շալվա գյուղից համանուն գետի հունով վեր՝ գտնվում են մի քանի հին գյուղատեղիներ, որոնք XIX դարում քրդերով բնակեցվելուց հետո ստացել են նոր անուններ, իսկ դրանց հին, պատմական անունները մատնվել են մոռացության: Ներկայում դրանք հայտնի են Ղավուշող, Ազիզփեյասի, Ջոռքեշիշ (Շալվայից բարձր, գետի ձախ ափին), Բուդաղդարա, Փալչխլի, Վելիբեյլի, Նարըշլար (Շալվա գետի աջակողմում), Ուլուխան (Իմանլար), Սեյդլար (Դամբուլաղ), Քյաղա (հավանաբար՝ Օրբելյանի հիշատակած Քեղածորը), Հաթամլար (Շալվա գետի ձախակողմի ձորալանջերին եւ հովիտներում) եւ Դաշլու (Շալվայից գետի հունով 3 կմ ցած) անուններով: Հայության հիշատակն ու շունչը պահպանվել է Հաթամլար գյուղից 1,5 կմ հյուսիս գտնվող 2291 մ բարձրություն ունեցող լեռան անվան մեջ: Այն կոչվում է Քեշիշթափա (քահանայի սար): Ի դեպ հայ հոգեւորականի հիշատակն է կրում նաեւ վերեւում հիշատակված Ջոռքեշիշ գյուղը (Ջոռ=ուժեղ/համառ, քեշիշ=քահանա):

Շալվա գետին ձախ կողմից միախառնվող Ղորչու վտակի հովտում գտնվում են մի քանի այլ հին գյուղատեղիներ, որտեղ XIX-XX դարերում նույնպես քրդեր էին բնակվում եւ դրանց ներկայիս հայտնի անվանումները եւս վերջիններիս կողմից են տրված: Դրանք են՝ Շապաքյանդը (Օղուլդարա), Ջաղալթին, Ղարաչանլուն (Ղորչու), Լիլոբաղըլին (Լյալյաբաղըլի),[143] Ղարաբեկլի, Արըքլի (հավանաբար՝ Օրբելյանի հիշատակած Արքո գյուղը), Կյուրջաբուլաղ (Ղորչուբուլաղ), Քյուրդ-Հաջի եւ Մունջուխլու:

Հայ մշակույթի հետքերը առկա են գրեթե բոլոր գյուղատեղիներում: Դրանք մեծավ մասամբ ավերված գերեզմանոցներից բնակարանային շինարարության մեջ օգտագործված տապանաքարերի բեկորներ են: Մունջուխլու եւ Քյուրդ-Հաջի գյուղերի հարավային եզրերին պահպանվում են գերեզմանատների մնացորդները: Քյուրդ-Հաջիում տապանաքարեր են ագուցված նաեւ գյուղի հյուսիս-արեւելյան կողմում կառուցված անասնագոմի պատերի մեջ:

Քյուրդ-Հաջիից 2,5 կմ հարավ, ծովի մակերեւույթից 1380-1450 մ բարձրության վրա, գտնվում է Խաչինտափ կամ Խաչինլյալ[144] գյուղատեղին: Սրանից էլ 1 կմ հարավ՝ Բաբա-բուրում կամ Ղըրմզի-գյունեյ գյուղատեղին, իսկ 700 մ արեւելք՝ Բճանց տանող ճանապարհի ձախ եզրին, քրդական ամենահին գերեզմանոցներից մեկն է: Այդտեղ պահպանվում է XIX դարի կեսերին կառուցված մի դամբարան, իսկ շուրջը՝ մի քանի անարձանագիր ձիակերպ տապանաքարեր:

## ՋԱՌԻՍՏ (ՀԱՋԻ-ՍԱՄԼՈՒ)

Ջառիստ տեղանվան հիշատակությունն առաջին անգամ հանդիպում է 1246 թ. Գտիչ վանքի շինարարական արձանագրության մեջ. «... Ջառիստ իր կերովն...»,[145] որպես Գտիչի եպիսկոպոսական թեմի իրավասության ներքո գտնվող բնակավայր (հավանաբար գյուղ կամ գավառակ իմաստով): Հետագա դարերում այդ տեղանվան հիշատակությանն այլեւս չենք հանդիպում, սակայն այն մոռացված չի

142. *«Դիվան ...», պրակ 5, էջ 195: Ի դեպ, վերծանության մեջ բաց է թողնված առաջին անձնանունը, թվականը վերծանել են «ՊԿ»(1411), որ սխալ է, իսկ գրչանկարը՝ կեղծված է:*

143. *Ըստ Մ. Բարխուդարյանցի՝ Լիլաբակ («Արցախ», էջ 403):*

144. *Արդյո՞ք Գտիչ վանքի 1246 թ. շինարարական արձանագրության մեջ հիշատակված Խաչինամարգն է. սա չենք կարող պնդել:*

145. *«Դիվան ...», պրակ 5, էջ 183:*

եղել: Դրա վկայությունն են XIX դարի մի շարք վավերագրերը: Այսպես, 1841 թ. Ջառիստը հիշվում է որպես գավառանուն: Նրա կազմում էին հայաբնակ Ղարադըլաղ,[146] Արկաթալի, Քարինտակ եւ Հաբար գյուղերը:[147] Ջառիստը, իբրեւ գավառամաս, հիշում է նաեւ Ջալալյանց արքեպիսկոպոսը. «...Մուխանք է Մըղօվուզն Ջառէստի...»:[148] Նույն թվականին Ջառիստ գավառի բարեկարգիչ է հիշվում Հովհաննես քահանան:[149]

1862 թ. Ջառիստ գավառի մեջ է հիշվում նաեւ հայաբնակ Ալղուլի գյուղը, որի հոգեւոր հովիվն էր Հակոբ քահանան:[150]

Սակայն XIX դարի վերջերից Ջառիստը ավելի հաճախ սկսեց հիշատակվել քրդերի կողմից նրան տրված Հաջի-Սամլու անունով, օրինակ՝ 1906 թ. նույն Ալղուլի գյուղն արդեն հիշվում է որպես. «...Հաջիսամլուի Ալըղուլիշէնը...»:[151] Այն, որ Հաջի-Սամլուն նույն՝ պատմական Ջառիստն էր, ուղղակի կերպով հիշատակում է եպիսկոպոս Բարխուդարյանցը. «...Ջառիստ այժմ Հաճի Սամլու կամ Հաճիլար»:[152]

Մակար եպիսկոպոս Բարխուդարյանցը նշում է նաեւ, որ պատմական Ջառիստը հարուստ է հայ մշակույթի հուշարձաններով. «Պակաս չեն աւերակ գիւղեր, եկեղեցիներ եւ հանգստարան Ջառիստում եւ սորա շրջականերում»:[153]

Նախախորհրդային փարիների պետականպաշտոնական գրագրության մեջ Ջառիստն այլեւս չի հիշատակվում: Փոխարենն օգտագործվում էր Հաջի-Սամլու անվանումը: 1910-ականներին Հաջի-Սամլուն գյուղական հասարակության (միավորում էր 28 գյուղ) կենտրոնն էր:[154]

Ուշագրավ է, որ երբեմնի գավառանիստ Ջառիստը, փաստորեն, XIX դարի վերջերին անվանափոխության ենթարկվելուց հետո, այնուամենայնիվ, պահպանել էր իր վարչական կարեւորությունը: XX դարի սկզբներին այդտեղ մինչեւ իսկ հաստատվել էին ֆրանսիացի արդյունաբերողներ, որոնք տեղում կառուցել էին փայտամշակման գործարան: 1918 թ. ծնունդով մինքյանդցի Սուլթան բեկի գլխավորությամբ, մոլեգնած թուրք եւ քուրդ ամբոխը հողին հավասարեցրեց այդ շեն եւ հանրօգուտ հաստատությունը. «...Սուլթան եւ Իսկենդեր եղբայրները, որոնք հայաբնակ գյուղերի (Վանք, Բալլուջա եւ այլն) վրա ավազակային հարձակումների կազմակերպիչներն էին: Սուլթան բեկի ձեռքով ոչնչացավ եւ անխիղճ թալանի ենթարկվեց Հաջի-Սամլուի ֆրանսիական ընկերության բնակավայրը...»:[155]

Ջառիստ-Հաջի-Սամլուից 3 կմ արեւմուտք պահպանվում են Քեշիշփեյասի (Քահանայի Գոմեր) գյուղատեղիի ավերակները, իսկ 2,8 կմ հարավ (ուղիղ գծով) հայտնի է մեկ այլ գյուղատեղի Բյուլեւլիկ անվամբ:

## ԱՐԲՔԼԻ (ՊԱՏՄ. ԱՐՔՈՒԳԵՏ, ԱՐՔՈ)

Զույգ գյուղերը, որոնք թրքախոս քրդերը Արըքլի են անվանել, գտնվում են Շալվա գետին ձախից միախառնվող Ղորչու վտակի ձախ կողմի անտառապատ ձորալանջերին եւ, հավանաբար, նույն գյուղի վերին եւ ներքին մասերն են: Սրանցից առաջինը փռված է սարալանջի հարավահայաց փեշին, ծովի մակերեւույթից 1600-1680 մ բարձրության վրա: Թերեւս սա Կաղանկատվացու հիշատակած Արքուգետ բնակավայրն է: Նա վկայում է, որ. «...արշաւանս առնէր յաշխարհն Սիւնեաց եւ գերի վարեալ զԲաղացն սահմանս՝ գայ իջանէ յԱղահէջ գաւառ՝ յաւան մի՝ Արքուգետ կոչեցեալ, եւ իսկոյն հրամայէ այրել զեկեղեցին, որ սրբոյն Գրիգորի էր անուանադրեալ»:[156] Բացառված չէ նաեւ, որ այս Արքուգետը Օրբելյանի հիշատակած Արքո գյուղն է, որը շատ ավելի ուշ քրդերի արտասանությամբ դարձել էր Արըքլի:

Գյուղի հարավային ծայրին ցայսօր կանգուն է միանավ թաղածածկ եկեղեցին:

Սրա հորինվածքային էական առանձնահատկությունն է արեւելքից խորանի աջ ու ձախ կողմերում գտնվող մեկական ավանդատները, որոնք իրենց ծավալներով դուրս են եկեղեցու հիմնական ուղղանկյուն (բազիլիկ) մակերեսից: Ընդ որում, ավանդատների մուտքերը բացված են ուղիղ խորանի մեջ:[157] Թաղը կիսաշրջանաձեւ է, ծածկը՝ երկթեք, շինանյութը՝ անմշակ քարն ու կրաշաղախը: Ներքուստ սվաղված է: Արտաքին չափերն են 9,60x5,20 մ (արեւելյան ճակատում՝ 10.70 մ), պատերի հաստությունը՝ 1 մ: Մուտքերը երկուսն են՝ հարավից եւ

146. Ղարադըլաղը՝ Բերդաձորին տված անվանումներից մեկն է: Այն հայտնի էր նաեւ Կալադարասի անվամբ:

147. **Մ. արքեպիս. Ջալալեանց**, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, Տփխիս, 1858, հ. Բ, էջ 351:

148. ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 56, ցուցակ 1, գործ 305, թերթ 45:

149. **Յակոբ Յ. Թօփճեան**, Ցուցակ ժողովածուաց Դաղեան խաչիկ վարդապետի, մասն Բ, Վաղ-դաս, 1900, էջ 25:

150. ՀՀՊՊԿԱ, ֆ. 57, ց. 1, գ. 139, թերթ 17:

151. «Մշակ», 1906, N2, 4 յունվարի, էջ 2:

152. **Մ. եպիս. Բարխուդարեանց**, Արցախ, Բաքու, 1895, էջ 26:

153. Նշվ. աշխ., էջ 134: Ի դեպ, Հ. Էփրիկյանը, օգտվելով այս աղբյուրից, ճիշտ չի կողմնորոշվել եւ իր աշխատության մեջ թյուրիմացաբար նշել է. «Ջառիստ. Աւերակ գիւղատեղի Արցախի Վարանդա գաւառի մէջ» (**Հ.Ս. Էփրիկեան**, Պատկերազարդ բնաշխարհիկ բառարան, հ. Ա, Վենետիկ - Ս. Ղազար, 1903-05, էջ 763):

154. "Кавказский Календарь на 1917 г.", Тифлис, 1916, отдел статистический, էջ 53-54:

155. **Գ. Ա. Հովհաննիսյան**, Սովետական իշխանության հաստատումը Լեռնային Ղարաբաղում, Երեւան, 1971, էջ 102:

156. **Մովսես Կաղանկատուացի**, նշվ. աշխ., էջ 331:

157. Նույնատիպ հորինվածք ունեն ներկայիս Շամքորի շրջանի Նուկզար գյուղի մոտ գտնվող Ամենափրկիչ վանքի եկեղեցին, Գետաբեկի շրջանի Փոլադլու գյուղի եկեղեցին, Խաչակաղի Թարգմանչաց վանքի եկեղեցին եւ այլն:






*ԱՐՔՈ (վերին). եկեղեցու տեսքը հարավ-արեւմուտքից, հյուսիս-արեւմուտքից, հյուսիս-արեւելքից եւ սալաքար (XVI դ.) ագուցված եկեղեցու արեւելյան ճակատում*

հյուսիսից: Դրանցից առաջինը փակվել է դեռեւս այն ժամանակ, երբ եկեղեցին գործում էր (առնվազն 200 տարի առաջ): Շինարարության մասին պատմող վիմագրեր չեն պահպանվել: Պատերի մեջ ագուցված են XV-XVI դարերին բնորոշ մի քանի պատյանաքարեր: Եկեղեցին ավելի հին եւ հավանաբար ավերված եկեղեցու տեղում վերակառուցվել է XVI-XVII դարերում: Երբեմնի հին եկեղեցու գոյությունն է փաստում խորանից դեպի արեւելք բացված լուսամուտի գլխին ագուցված 1246 թ. նվիրատվական բնույթի արձանագրությունը: Հինգ տողով՝ սրբատաշ սալաքարին փորագրված, այդ արձանագրության սկիզբն ու վերջնամասը խրված են շենքի պատերի մեջ, եւ այդ պատճառով անհնար է ամբողջական վերծանությունը ներկայացնել:

...(Թ-)ՎՆ: ՈՂԵ(1246)... | ...Ց ՀԱՅՈՑ... | ...(ԻՇԽ)ԱՆՈՒԹԵ(ԱՆ)Ս ՏԱ... | ...Ն ՈՐԴՈՑ Պ(Ա-ՐՈ)Ն ԿՈՆԻ... | ...ԱՌԻՆ ՄԵՐ:

Եկեղեցուց քիչ հյուսիս ժայռաքարերին քանդակված են պարզ խաչեր, առանց արձանագրության:

Ներքին Արքըլին (Արքո) ավելի ընդարձակ գյուղատեղի է, բայց այստեղ հայկական հետքերն իսպառ անհետացել են: Փոխարենը՝ գյուղից 1,5 կմ հարավ, հարավահայաց լեռնալանջի հրվանդանաձեւ երկարած լեզվակի հարթության վրա պահպանվում



*ԱՐՔՈ (վերին). եկեղեցու հատակագիծը*

են միջնադարյան գյուղատեղիի, գերեզմանատան եւ 1983 թ. պայթեցված եկեղեցու[158] ավերակները: Հնավայրը, որը գտնվում է ծովի մակերեւույթից 1510-1540 մ բարձրության վրա, բազմիցս ենթարկվել է միփումնավոր ավերումների, բայց առավել կորստաբերը եղել է եկեղեցու՝ 1983 թ. պայթեցումը:[159] Միայն կենտրոնական թաղակիր կամարով դեռեւս կանգուն մնացած եկեղեցին ունի միանավ

*158. Գունավոր լուսանկարը տես՝ "Documenti di Architettura Armena. GHARABAGH", N 19, Milano, 1988, էջ 80:*

*159. Այդ մասին տեղեկացել ենք տեղաբնակ ֆրղերից, 1985 թ. մեր առաջին այցելության ժամանակ:*








*ԱՐՔՈ. տապանաքար անանուն վանքից հյուսիս-արեւմուտք գերեզմանոցում (1582 թ.), խաչքար (XI-XI դդ.) եկեղեցու հարավ-արեւմտյան կողմում եւ հատակագիծը*

թաղածածկ բազիլիկի հորինվածք: Ավանդատներ չունի: Ուշագրավ է բավականին լավ ընդգծված պայտաձեւ խորանը: Կառուցված է անմշակ քարով, կրաշաղախով, ներքուստ սվաղված է: Արտաքին չափերն են 12,30x5,20 մ, պատերի հաստությունը՝ 90 սմ: Ըստ հորինվածքային եւ կառուցողական առանձնահատկությունների՝ XII-XIII դարերի կառույց է: Կարծում ենք՝ այն հիմնված է եղել ավելի հին եկեղեցու հիմքերի վրա: Եկեղեցու չորսբոլոր տարածվում է բավականին վնասված միջնադարյան գերեզմանոցը: Այստեղ կանգուն կամ տեղահան արված, ամբողջական կամ կոտրատված վիճակում դեռեւս պահպանվում են շուրջ երկու տասնյակ խաչքարեր ու տապանաքարեր: Դրանցից մի քանիսի վրա կան արձանագրություններ:

1. Տապանաքարին (սրբատաշ, ուղղանկյունաձեւ, չափերը՝ 180x50x18 սմ, տեղահան վիճակում ընկած է եկեղեցուց հարավ-արեւմուտք) երեք տողով փորագրված է.

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԲԱԽՏԱ ՈՐԴՈ ՀԱՅՐԱՊԵՏԱ, ՈՐ | ԿԱՐԻ ԾԵՐՈՒԹ(ԵԱՄ)Բ ՎԱՂՃԱՆԵՑԱՒ, | ՅԻՇԵՑԷՔ | Ի ԹՎԻՍ ՉԽԷ(1298) ԲԱՐԻՆ:

2. Եկեղեցուց հյուսիս-արեւմուտք, ուղղանկյունաձեւ տապանաքարին (120x55x28 սմ) քանդակված է գավազան եւ շուրջը երկու տողով արձանագրված է.

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԱՒԱՔ ՍԱՐԿԱՒ(ԱԳԻՆ)|
ԹՎ(ԻՆ) ՌԼԱ(1582):

3. Եկեղեցուց հյուսիս-արեւմուտք, երկու երեսները խաչազարդ ու պատկերաքանդակ ուղղանկյունաձեւ տապանաքարին (110x28x≈40 սմ) մեկ տողով փորագրված է.

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՊԱՂՏ(ԱՍ)ԱՐԻՆ:

4. Եկեղեցուց հյուսիս-արեւմուտք գտնվող տապանաքարի (115x28x=50 սմ) հյուսիսահայաց երեսին, պատկերաքանդակներից վեր, երկու տողով փորագրված է.

ՍԷՀԱԳ ԿԱ(Ն)Կ(Ն)ԵՑԻ ԽԱՉՍ ԻՄ ԵՂԲԱՐ ՄԻՏԿԻՆԻՆ:

Գերեզմանատան տարածքում ուշագրավ է եկեղեցու հարավ-արեւմտյան անկյան մոտ թեքված, բայց դեռեւս կանգուն վիճակով եւ ամբողջական տեսքով պահպանված հնաոճ (անարձանագիր) խաչքարը: Չափերը՝ 220x60x30 սմ: Ըստ ոճական եւ գեղարվեստական առանձնահատկությունների՝ խաչքարը կարելի է թվագրել XI-XII դարերով: XVI-XVII դարերին բնորոշ մեկ այլ ամբողջական, բայց տեղահան խաչքար (180x67x30սմ) պահպանվում է եկեղեցուց մի քանի մետր հարավ:

***Բճանից (Բչանիս) գետի ավազան:*** Հակարի գետի վերջին ու կարեւոր վտակը Բճանցն է: Այն








*ԱՐՔՈ. անանուն վանքի տեսքը պայթեցումից (1983 թ.) հետո՝ 1985-ին, հատվածներ ներսից, տեսքը հյուսիսից եւ խաչքար (XVI-XVII դդ.) եկեղեցու հարավային կողմում*

սկիզբ է առնում Ծավդեից լեռնաշղթայի հարավահայաց փեշերից, ծովի մակերեւույթից 2200 մ բարձրության վրա բխող աղբյուրներից: Ունի 29 կմ երկարություն եւ 198 քկմ ջրհավաք ավազան:[160] Բձանցն իր հերթին ունի մի շարք վտակներ, որոնց հովիտներում ու կիրճերում ցրված են շուրջ մեկ տասնյակ հին գյուղատեղիներ: Դրանք, գավառի մնացած մասերի նման, հայաբնակ են եղել մինչեւ XVIII դարի 2-րդ կեսը, իսկ հետագայում կամաց-կամաց բնակեցվել զանազան խաշնարած ցեղերով:

### ԱԼՅԱԿՉԻ[161]

Բձանցի ձախ ափին տարածված գյուղի արեւելյան եզրին պահպանվում է գավառում հաստատված քրդերի «հնագույն» գերեզմանոցներից մեկը: Այդտեղ արաբատառ թուրքերենով արձանագրված ամենահին շիրմաքարը 1930 թվականից է:[162]

Ալյակչիից 2 կմ հեռավորությամբ՝ վեր եւ վար, գտնվում են Նաղդալի, Շամքյանդ եւ Չորման գյուղատեղիները: Ի դեպ, Չորման անվամբ հին գյուղը գտնվում է Բձանց գետի ձախ ափին, համանուն գյուղից 5 կմ հյուսիս: Պատմական Մշենի (Միշնի) գյուղի օրինակով Հին Չորմանում հաստատված քրդերի մի մասն էլ, փոխադրվելով ներկայիս Քարվաճառի շրջանը, հիմնել է համանուն մի գյուղ եւս:

Հին Չորմանից 4,5 մ արեւելք, ծովի մակերեւույթից 1800-1850 մ բարձրության վրա, խոր ձորի հարավահայաց լանջին գտնվում է մի հին գյուղատեղի, որի պատմական անվանումը մոռացության է մատնվել: Այն թրքացած քրդերը կոչում էին Փարպաջ: Հին Չորմանից 2 կմ հյուսիս-արեւելք գտնվող փոքրիկ գյուղատեղին էլ հայտնի է Չալաղան-Գյունեյ անվամբ:

### ԲՁԱՆՑ (ԲՉԱՆԻՍ)

XIX դարի սկզբներից գյուղի տարածքում հաստատված քրդական ցեղերին տեղաբնիկներից փոխանցվել էր այս գյուղի պատմական անունը: Այն՝ միայն փոքր-ինչ աղավաղմամբ, հասել է մեր օրերը: Գյուղի անվան միակ հիշատակությանը հանդիպում ենք Դադի վանքի կաթողիկե եկեղեցու 1214 թ. շինարարական արձանագրության մեջ՝ «Բձանց» ձեւով: Հետագա դարերում գյուղն այլեւս չի հիշվում, բայց պահպանված պատմական հուշարձանները վկայում են, որ գյուղը շեն եւ հայաբնակ է եղել մինչեւ XVIII դարի կեսերը, որից հետո միայն բնակեցվել է խաշնարած քրդերով:

Գյուղը գտնվում է համանուն գետի աջ ափի ձորալանջին, ծովի մակերեւույթից 1400-1450 մ բարձրության վրա, լեռնալանջի հարավ-արեւելահայաց փեշին:

Գյուղի կենտրոնական մասում պահպանվում է բազմիցս նորոգված, բայց ներկայում կիսավեր եկեղեցին: Դեռեւս XIX դարի վերջերին եկեղեցին խաշնարած քրդերը օգտագործում էին որպես հարդանոց:[163] Նույն նպատակով եկեղեցու շենքն օգտագործվում էր նաեւ մեր 1-ին այցելության ժամանակ՝ 1985-ին: Ներկայում, սակայն, եկեղեցու փայտածածկն ամբողջապես քանդված է: Կանգուն են միայն անմշակ քարով ու կրաշաղախով կառուցված պատերը: Եկեղեցին նման է միանավ թաղածածկ շինություններին, մինչեւ իսկ ունի զույգ որմնասյուներ, բայց այն ի սկզբանե, կարծում ենք, փայտածածկ է եղել, որովհետեւ պատերը միահավասար բարձրությամբ են, առանց դեպի թաղը բարձրացող կորության: Ուշագրավ է նաեւ խորանը: Այն, ինչպես



*ԲՁԱՆՑ. տեսքը հարավից*

եւ երկու կողմերում գտնվող մեկական ավանդատները, ունի ուղղանկյուն հատակագիծ: Միակ մուտքը արեւմուտքից է: Պատերի միջին հաստությունը 110 սմ է, իսկ արտաքին չափերն են 11.70x8.20 մ:

Պատերի մեջ՝ ե՛ւ ներքուստ, ե՛ւ արտաքուստ ագուցված են XIV-XVII դարերին պատկանող բազմաթիվ խաչքարեր ու տապանաքարեր: Դրանց մեծ մասը տեղադրված է մուտքի, լուսամուտների եւ շենքի արտաքին անկյուններում՝ իբրեւ ավելի կայուն ու հարմար շինաքար:

Եկեղեցուն կից խորհրդային տարիներին կառուցվել են պահեստային նշանակության շինություններ: Դրանց պատերի մեջ եւ, հատկապես, լուսամուտների շուրջ իբրեւ անկյունաքարեր ագուցվել են խաչա-

160. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր VII, Բաքու, 1983, էջ 542:

161. Ալյակչի կամ Ալաքչի գյուղի անվան առնչությամբ Մ. եպիս. Բարխուդարյանցը նշում է «Մաղագործ» անվանաձեւը («Արցախ», էջ 403), որը Ալյակչիի բառացի թարգմանությունն է:

162. Ընթերցումը՝ արեւելագետ Հակոբ Փափազյանի:

163. «Ազգագրական Հանդէս», գիրք Դ, N 2, Թիֆլիս, 1898, էջ 49:








*ԲՆԱՆՑ. եկեղեցու տեսքը հարավ-արեւելքից, ներքին տեսքը դեպի արեւելք եւ արեւմուտք, խաչքար՝ ագուցված արեւմտյան ճակատում, մուտքը եւ մուտքի մեջ իբրեւ անկյունաքար ագուցված տապանաքար*

զարդ ու արձանագիր առանձին քարեր ու բեկորներ:

Ուղղանկյունաձեւ մի բեկորին (չափերը՝ 57x28 սմ) խաչաքանդակի շուրջ, մեկ տողով փորագրված է.

ԽԱՉՍ Բ(Ա)ՐԷԽ(ԱՒ)Ս ՍՈՆԱՆԻՆ:

Եկեղեցու արեւմտյան պատի տակ ընկած բեկորին (55x26x24 սմ) երկու տողով փորագրված է.

ԽԱՉՍ ՈՒՍՏԱՅ Մ|ԷՀԻՐԻՆ:

Մեկ այլ բեկորին (39x18,5 սմ) խաչաքանդակի շուրջ փորագրված է.

Խ(Ա)ՆԻ(Ն):

Եկեղեցուց հարավ եւ դեպի արեւելք փարածված երբեմնի գերեզմանատնից ներկայում միայն մի քա-

նի տեղահան կամ կոտրատված շիրմաքարեր են պահպանվել: Դրանց հիմնական մասը կիսամշակ սալատապաններ են:

Բճանց գյուղին դեմ հանդիման, գետի աջ կողմում գտնվում է Արդուշլու գյուղը: Նրանից 1,5 կմ հյուսիս «Սուվատ» գյուղատեղին է, իսկ նույնքան դեպի հյուսիս-արեւելք, ձորի աջ ափին, Ղալաալթի (Բերդատակ) գյուղատեղին է: Ավելի դեպի հյուսիս-արեւելք, նույն ձորի մեջ է Նուրադդին գյուղատեղին: Բոլոր այս հին գյուղատեղիների պատմական անուններն առայժմ ճշտված չեն՝ հայտնի են միայն



0 5մ

ԲՃԱՆՑ. եկեղեցու հատակագիծը

խաշնարած ցեղերի տված անվանումները:

Բճանց գյուղից 2 կմ հարավ-արեւելք, գետի ձախակողմյան ձորալանջին գտնվում է «Աղջայազ» անվանումով հայտնի հին գյուղատեղին: Սրա արեւելյան ծայրում, մի տնամերձ հողամասում դեռեւս կանգուն վիճակով պահպանվում է բավականին մեծ չափերով (185x155x35 սմ) մի խաչքար: Սրա արեւմտահայաց երեսին՝ իրար կողքի, զույգ խաչաքանդակներ են, իսկ ստորին ձախ անկյան մոտ 9 տողով փորագրված է.

Ի Թ(Վ)ԻՍ | ՈՁԴ(1235), | ԹԱԳԱ|ԻՈՐՈՒԹԵ(ԱՄ)Բ | ՋԱԼԱԼԻՍ, Ե|Ս՝ ՍԱՐԳԻՍ ԿԱՆԳ(Ն)ԵՑ|Ի ԽԱՉՍ ՋԱՅՍ ԻՆՁ ԵՒ ԵՒԱ | ՆԻՈ(՞) ԻՄՈ, ՅԱՂԱՒԹՍ | ՅԻՇԵՅԷՔ:



ԱՂՋԱՅԱԶ. արձանագիր խաչքարի գրչանկարը

Խաչքարի վրա ակնհայտ են հրազենի հետքերը:

***Հակարի գետի ավազան:*** Հակարի (Հագարու, հնում՝ Հայքարի կամ Հեքյարի) գետը կազմվում Բճանց եւ Շալվա խոշոր վտակների միախառնումով: Վերջինիս հետ միասին Հակարին ունի 113 կմ երկարություն (Շալվայի երկարությունը՝ 42 կմ է) եւ 2570 քկմ ջրհավաք ավազան:[164]

Մինչեւ Հոչանց գետի հետ միախառնվելը Հակարիի աջ ու ձախ կողմերում փռված են ավելի քան մեկ տասնյակ հին գյուղատեղիներ: Նախ ներկայացնենք գետի աջակողմյան գյուղատեղիները:

## ԱԼՂՈՒԼԻՇԵՆ ԵՎ ՄԵՐՁԱԿԱՅՔ

Ալղուլիշենը գավառի այն հազվագյուտ գյուղերից էր, որը հայաբնակ էր մինչեւ 1918 թ.: Գտնվում է Հակարի գետի աջ վտակներից մեկի ակունքի շրջանում, ծովի մակերեւույթից 1350-1450 մ բարձրության վրա, անտառներով շրջապատված արեւելահայաց լեռնալանջին:

Գյուղի պատմական անունը մեզ չի հասել:[165] XIX-XX դարերի զանազան վավերագրերում գյուղը հիշատակվում է միեւնույն Ալղուլի (Ալիղուլի) անվամբ:

Զուտ հայաբնակ ալղուլեցիները տեղաբնիկներ էին:[166] Նրանց թվաքանակը շարունակաբար աճել է մինչեւ 1905-06 թթ. հայ-թրքական ընդհարումները:



ԱԼՂՈՒԼԻՇԵՆ

*164. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադըր-բեջաներեն), h. X, Բաքու, 1987, էջ 192:*

*165. Գրող Ս. Խանզադյանը, առանց աղբյուրագիտական հիմնավորման Ալղուլիշենը նույնացրել է Օրբելյանի հիշատակած Աղախիրդ գյուղի հետ (Հաբանդ գավառ), տես՝ «Սովետական Հայաստան», ամսագիր, էջ 26:*

*166. «Արցախ», էջ 403:*

| Տարեթիվ | տուն | ար. | իգ. | միասին |
|---|---|---|---|---|
| 1850 | 21 | 125 | 100 | 225[167] |
| 1876 | | | | 487[168] |
| 1886 | 76 | 356 | 287 | 643[169] |
| 1889 | | 372 | 286 | 658[170] |
| 1901 | | 518 | 337 | 855[171] |
| 1914 | | | | 412[172] |
| 1905 | 100 | 561 | 423 | 984[173] |
| 1914 | | | | 347[174] |
| 1918 | | | | 1012[175] |

XIX դ. վերջին, ականատեսը Ալղուլիշենը նկարագրել է հետեւյալ կերպ. «Ալիղուլին հայկական գիւղ է՝ ընկած մի փոքրիկ սարահարթի վրայ արեւգուն տեղ: Այս գիւղը շատ հեռու է հայ գիւղերից՝ աւելի քան 30 վերստ, ունի 100 ծուխ, մի աղքատ եւ անշուք եկեղեցի եւ մի քահանայ: Այդ գիւղի չորս կողմն անտառներ են, որի մէջ բնակութիւն են հաստատած քանից աւելի աւազակաբարոյ թրքերի եւ քրդերի գիւղեր...»:[176]

Ալղուլիշենը իբրեւ հայաբնակ գյուղ գոյատեւեց մինչեւ 1905 թվականը, երբ «...Ալիղուլին պաշարուեց տեղացի եւ քոչւոր թարաքեամաների մի ահագին խումբով, բայց երկու օր նա կարողացաւ հերոսաբար դիմադրել, մինչեւ որ Գորիսից զօրք հասաւ, թէեւ մինչեւ այդ գիւղի մեծ մասն արդէն կողոպտուել էր եւ հրդեհուել: Զօրքերի գալով թուրքերը յետ մղւեցին մեծ կորուստներով: Հայերն ունեցան բաւական թւով սպանուածներ...: Չնայած կռւի այդպիսի վախճանին, հայերն այդ գիւղում ապրելն այլեւս անհնարին համարելով, ձգեցին ամեն ինչ եւ դուրս եկան մի այլ տեղ բախտ որոնելու»:[177] Համաձայն Տաթեւի Ներսես վարդապետի վկայության Ալղուլիում հայերի կորուստները կազմել էին. «...սպանուած 10 հայ, այրուած 20 տուն, թալանուած գիւղի կեսը...»:[178] Տեղ հասած ռուս զորքի (կազակներ) շնորհիվ խաշնարածները հետ էին մղվել զգալի կորուստներով. «...թուրքերից սպանուած վիրաւոր 100-ից աւելի...»:[179] Ալղուլեցիք վերաբնակվեցին գլխավորապես Խնածախ եւ Բերդաձոր գյուղերում: Ականատեսը 1906 թ. վկայել է. «Հաջիսամլուի Ալղուլիշէնը, որի նեղ դրութեան մասին եւս ժամանակին գրել էի, այժմ դատարկված է հայերից: Գիւղում մնացող՝ կազակներին որոշ վարձատրութիւն տալով, հայերը, նրանց ուղեկցութեամբ, դուրս են եկել գիւղից: 20-25 տուն տեղափոխվել է Խնածախ գիւղը, մնացածները գնացել են Ղարաղշլաղ գիւղը»:[180] Հայտնի է, որ նույն վիճակին արժանացած Մինքյանդ, Հարար, Զեյվա եւ Խոզնավար գյուղերի բնակիչները հաջորդ տարիներին կամաց-կամաց վերադարձել են մոխրակույտի վերածված հայրենի գյուղերը:[181] Նույնը արել են նաեւ ալղուլեցիները, եւ 1914 թ. դարձյալ զուտ հայաբնակ գյուղն ուներ 347 բնակիչ:[182] Վերջիններս հարազատ գյուղում ապրելու հնարավորություն ունեցան միայն մինչեւ 1918 թ., երբ, վերջնականապես, հեռացվեցին բնօրրանից: Խորհրդային տարիներին Ալղուլին բնակեցվեց հարեւան գյուղերից փոխադրված թրքախոս քրդերով եւ թուրքերով:

Որպես հայաբնակ գյուղ՝ Ալղուլին ունեցել է իր ծխական եկեղեցին: Այն 1879 թ. հիշվում է Սբ. Հռիփսիմե անվամբ:[183] Նույն եկեղեցին 1891-ին եւ հետագա տարիներին հիշվում է Սբ. Աստվածածին անվամբ:[184] Հավանաբար, այդ ընթացքում եկեղեցին ենթարկվել է հիմնավոր վերանորոգման, եւ օծվել՝ ստանալով նոր անուն: Այժմ այդ եկեղեցու հետքն անգամ չի պահպանվել:

Ի դեպ, 1985 թ. գյուղի հարավ-արեւմտյան եզրին, փոքրիկ վտակի ձախակողմում, մի թմբի վրա պահպանվում էին 15-20 ուղղանկյունաձեւ սրբատաշ ու արձանագիր տապանաքարեր՝ այն ամենը, ինչ մնացել էր հայոց երբեմնի ընդարձակ գերեզմանատնից: Տապանագրերը վերաբերում էին XIX դարի 2-րդ կեսին եւ XX դարի սկզբներին: Տարածքի ազատագրումից հետո, 1993-ին մեր հերթական այցելության ժամանակ պարզվեց, որ այդ գերեզմանատունն էլ արժանացել է այն ճակատագրին, ինչին՝ ծխական եկեղեցին: Երկար որոնումներից հետո տապանաքարերի միայն առանձին բեկորներ գտնվեցին մի քանի տների բակերում, քարաշեն ցանկապատերի մեջ եւ այլուր:

Ալղուլիից 3 կմ հարավ-արեւմուտք, Հակարի գետից 2 կմ հեռավորությամբ, ծովի մակերեւույթից 1210-1350 մ բարձրության վրա, հյուսիս-արեւելահայաց լեռնաբազուկին գտնվում է Փիրիջան կամ Փիրջահան գյուղը: Սրա պատմական անունը եւս որոշակի չէ: Գյուղամիջի մի տան առաջին հարկի մուտքի շուրջ ագուցված են կոփածո խաչքարեր: Դրանք անարձանագիր են, բայց ունեն IX-XI դարերին բնորոշ խաչքարերին հատուկ զարդաձեւեր:

Փիրջահանից 2,5 կմ հարավ-արեւելք, Հակարի գետի վրա պահպանվում են XVII դարում կառուցված սրբատաշ եւ միաթռիչք կամրջի մնացորդները:

167. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 2596:
168. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1. գ. 6775, թ. 105-106:
169. "Свод статистических данных извлеченных из посемейных списков населения Кавказа. Елисаветопольская губерния", Тифлис, 1888, էջ 136-137:
170. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8583, թ. 39-40:
171. «Արցախ», նույն տեղում:
172. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 235-236:
173. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ.10403, թ. 54-55, նաեւ՝ **Ա-Դօ**, նշվ. աշխ., էջ 261:
174.
175. ՀՀՊԴԿԱ, ֆ. 150, ց. 1, գ. 59, թ. 5:
176. «Նոր Դար», 1899, N 64, էջ3:
177. **Ա-Դօ**, նշվ. աշխ., էջ 263:
178. «Մուրճ» ամսագիր, 1905, N10, էջ 106:
179. Նույն տեղում:
180. «Մշակ», 1906, N 2, 4 հունվարի, էջ 2:
181. «Մշակ», 1906, N 56, 14 մարտի:
182. "Кавказский Календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 87:
183. «Արարատ», 1879, սեպտ., էջ 398-399:
184. «Արցախ», էջ 403: Նաեւ՝ ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 235-236:





Այն, մինչեւ վերջին ժամանակներս կանգուն վիճակում էր եւ վնասվել է 1992 թ. տարածքի ազատագրման ժամանակ: Կամրջի թռիչքի երկարությունն է՝ 11,95 մմ, իսկ լայնությունը՝ 3,25 մմ:

Փիրջահանից դարձյալ 3 կմ հարավ-արեւելք, Հակարի գետից 500-600 մ հեռավորության վրա, բայց գետափից 120 մ բարձր (ծ.մ. 1110-1150 մ) գտնվում է մեկ այլ գյուղատեղի, որն այնտեղ հաստատված քրդերից ստացել է Սեյդլյար անվանումը: Այստեղ պահպանվում է աղբյուրի թաղակապ շինությունը, իսկ գյուղից 800 մ հարավ գտնվում է գավառի քրդական ամենահայտնի գերեզմանատունը: Այդտեղ պահպանվել են քրդական ամենահին գերեզմանային հուշարձանները՝ ձիակերպ ու խոյաձեւ տապանաքարեր (XIX դ. սկիզբ) եւ դամբարաններ (XIX-XX դարեր):[185] Գերեզմանատունը հատկապես նշանավոր էր այն պատճառով, որ այդտեղ



ՓԻՐՋԱՀԱՆ. բնակելի տան դասի մեջ ագուցելու նպատակով բեկորված խաչքար եւ կամրջի մնացորդներ Հակարի գետի վրա

թաղվածները սեիդներ էին (մոտակա գյուղը կոչվում էր՝ Սեյդլյար):

Սեյդլյար գյուղից ներքեւ, Հակարիի աջ ափին պահպանվել են հին ջրաղացի ավերակներ:



ՍԵՅԴԼՅԱՐ աղբյուր

Հակարիի ձախ ափին եղել են հին եւ պատմական հարուստ անցյալ ունեցող գյուղեր, որտեղ սակայն հայ մշակույթի նմուշները մեզ են հասել, ցավոք, բեկորների ձեւով: Մասնավորապես՝ Վաղազին, Արփաշիպ (Արդաշեւի), Դարաքյանդ, Թազաքյանդ,

185. Բաքվում հրատարակված մի շարք աշխատություններում այս հնավայրը հատուկ ուշադրության է արժանացել: Տե՛ս **Расим Эфенди,** *Декоративно-прикладное искусство Азербайджана* (Բաքու, 1976): Տես նաեւ նույնի՝ «Քարերն են խոսում» (Բաքու, 1980, ադրբեջաներեն), նույնի՝ "Народное искусство Азербайджана" (Բաքու, 1984) եւ այլն:





ԱՐՏԱՇԻՊ. խաչքար գյուղամիջում (1481 թ.)

Ղոզլու, Ղըզկաչփի (Փինգյա), Հախնազար, Կայնարբուլաղ, Ղալաֆալըղ, Բոզգյունեյ, Զաքիր, Բաբաղին, Ղարաքիշի, Բյուլուլդուզ[186] կամ Բազարդուզ, Այիբազար, Իփյակ եւ Տղիկ (Թիգիկ) գյուղատեղիներում թրքախոս քրդերը խորհրդային փարիներին ջանադրաբար ավերել են բոլոր եկեղեցիներն ու հայկական գերեզմանոցները, իսկ քարերն օգտագործել գոմերի եւ բնակարանների շինարարության մեջ: Այսպես Ղոզլու գյուղատեղիում մի տան մուտքի ապիճանների շարքում տեղադրված է խաչքար, իսկ Արտաշիպ (Արդաշեւի) գյուղի աղբյուրի պատի մեջ ագուցված է մի ամբողջական տապանաքար: Նույն գյուղի փոստատան շենքի պատի մեջ ագուցված էր գեղաքանդակ ու արձանագիր խաչքարի բեկոր (60x64x16,5 սմ), որը գյուղի հայ վերաբնակիչները, 1995 թ. տեղադրել են գյուղի կենտրոնում գտնվող աղբյուրի մոտ: Խաչքարի բեկորի կողին (12 տող) եւ ճակատային մասում (2 տող) կա հետեւյալ արձանագրությունը.

ԹՎ.(ԻՆ)| ՋԼ(1481)|... ԿԱՆԳ|ՆԵՑ|Ի ԽԱ|ՉՍ Հ|ԱՒՐ Ի|Մ ԵՒ Մ|ԱՒՐ ԻՄ | ԵՒ ԱՂԲ(ԱՒՐ)| ԻՄ Ի Վ|ԱՄՆ | ՓՐԿՈ(Ի)|ԹԵ(ԱՆ) Հ|ՈԳՈ...:

Ի դեպ, 1615 թ. այս գյուղում Քասբար երեցի ջանքերով նորոգվել է մի ձեռագիր, որի հիշատակարանում նշված է. «Ի երկիրս Մաղայոզ, ի գեղն՝ Արտաշիպ...»:[187] Հարկ է նշել, որ նույն՝ Արտաշիպ գյուղում մեկ այլ ձեռագիր ավետարան էլ նորոգվել է 1637 թ.: Վերջինիս հիշատակարանում կարդում ենք. «...ի երկիրս Մաղայոզ, ի գուղս Արտայշիբի: Դարձեալ նորոքեցաւ ձեռամբ սուտանուն Սարգիս էրէցու, ի թիւականիս Հայոց ՌՁԶ (1637)»: [188]

Ինչ վերաբերում է Վաղազին գյուղի պատմական անվանմանը, այն արտացոլված է Գտիչ վանքի 1246 թ. շինարարական արձանագրության մեջ. «...Վակունիս Վաղազնագետո...»:[189] Վաղազնագետը գյուղի հարավային եզրով հոսող եւ ձախից Հակարիին միախառնվող խոշոր վտակն է: Հետեւաբար ներկայիս Վաղազին գյուղի պատմական անվանումը եղել է Վակունիս:

## ԲԵՐՁՈՐ (ԼԱՉԻՆ)

Ներկայում Բերձոր վերանվանված նախկին Լաչին քաղաքը նույնպես գոյացել է հայաթափ հին գյուղի տարածքում: Այդ են վկայում բնակավայրի տարածքում պահպանված հայ մշակույթի հետքերը: Մասնավորապես, 1980-ական թթ. սկզբներին գրող Ս. Խանզադյանը Լաչինում տեսել է հետեւյալը. «Մի նոր շինած տան պատի մեջ ագուցած քարի կարդացի. «ՄԵԼԻՔ ԱՎՐ... ՌԺԱ: ... Շուկայի մուտքի մոտ, նստարան դարձրած մի ոչ մեծ խաչքարի պորտակին կարդացել եմ. «ՀՋԱՎՐՆ ՄԽԻԹԱՐ... ՊԿԱ...»:[190] Քաղաքի տարածքում պատմական այլ հուշարձաններ չեն գտնվել:

Լաչինը մինչեւ 1923 թ. կոչվում էր Աբդալյար,[191] եւ իրենից ներկայացնում էր մի աննշան գյուղակ, որը, օրինակ, 1914 թ. ուներ 124 թրքախոս քուրդ բնակիչ:[192] 1923 թ. օգոստոսի 6-ից մինչեւ 1930 թ. Լաչինը հանդիսանում էր նորաստեղծ «Կարմիր Քրդստան» վարչատարածքային միավորի կենտրոն-

186. Կա այն կարծիքը, որ դրա տեղում հնում բնակավայր է եղել (Ա. Բահաթրեան, Զանգեզուր, «Նոր Դար», 1885, N29, էջ2):

187. «ԺԷ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», հատոր Ա, Երեւան, 1976, էջ 561:

188. «ԺԷ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», հատոր Բ, Երեւան, 1978, էջ 699:

189. «Դիվան...», պրակ 5, էջ 183:

190. «Սովետական Հայաստան» ամսագիր, 1984, N 6, էջ 24:

191. "Азербайджанская ССР, Административно - территориальное деление", Баку, 1979, էջ 212:

192. "Кавказский календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 82:







*Լաչին քաղաքի հատակագիծը 1952 եւ 1973 թվականներին*

նը, բայց դրանից հետո այն վերածվեց սոսկ նորաստեղծ համանուն շրջանի կենտրոնի:[193]

Տակավին այդ տարիներին, ի թիվս այլոց, Լաչինն ուներ նաեւ հայ բնակչություն, որոնք սակայն ավելի ուշ դուրս մղվեցին: Ահա դա հավաստող մի վկայություն. «Լաչին քաղաքում ապրում են թե քրդեր, թե հայեր եւ թե ադրբեջանցիներ: Լաչինում ապրող քրդերի նախահայրերը առաջացել են «Ճելոյա» կոչված ցեղից...»:[194]

Հայաբնակ Արցախը Սյունիքից բաժանող Լաչինը 1950-ական թվականներից սկսեց արագ թափով կառուցապատվել: Ընդամենը մեկ-երկու տասնամյակի ընթացքում այն իր զբաղեցրած նախնական սահմանների համեմատ ընդարձակվեց ավելի քան տասն անգամ,[195] իսկ բնակչության արհեստական աճը կազմակերպվեց Ադրբեջանի այլ շրջաններից փոխադրված թուրքական տարրի հաշվին:

1989-ից սկսած Լաչինը վերածվել էր Արցախը Հայաստանից մեկուսացնող գլխավոր ռազմական հենակետի: Այն միաժամանակ հայաբնակ Բերդաձորի ենթաշրջանը (Շուշիի շրջանում) ու Գորիսի շրջանի սահմանամերձ գյուղերը ասպատակող ավազակաորջ էր: 1992 թ. մայիսի 18-ին Արցախի ազատամարտիկներն ազատագրեցին Լաչինը:

Ներկայում, ավելի քան 200 տարվա ընդմիջումից հետո, Բերձոր վերանվանված Լաչինը վերստին բնակեցված է իր բնիկներով: 1996 թ. դրությամբ քաղաքն ուներ շուրջ 150 տուն բնակիչ, գործում են հայոց երկու դպրոցները, մանկապարտեզը, երաժշտական ուսումնարանը եւ այլն: Ազատագրման 4-րդ տարելիցի առթիվ՝ 1996 թ. Բերձորում բացվեց նաեւ պատմա-գավառագիտական թանգարանը:

Նույն՝ 1996 թ. Բերձորում դրվեց նոր եկեղեցու հիմքը: Գմբեթավոր հորինվածքով, սրբատաշ բազալտից կառուցված եկեղեցու կառուցումն ավարտվեց երկու տարի անց եւ օծվեց 1998 թ. մայիսի 31-ին. «... Քաշաթաղի Բերձոր բնակավայրում Արցախյան թեմի հոգեւոր առաջնորդ Պարգեւ սրբազանի օծմամբ բացվեց զոհված ազատամարտիկների հիշատակը հավերժացնող Սբ. Համբարձման եկեղեցին: Մեկ օր առաջ տեղի էր ունեցել եկեղեցու խաչի օծումը: Ներկա էին ԼՂՀ նախագահ Արկադի Ղուկասյանը, բարձրաստիճան հյուրեր Հայաստանից, Արցախից, կամավորական ջոկատների հրամանատարներ, մարտիկներ»:[196]

Եկեղեցու հյուսիսային ճակատին 6 տողով փորագրված է շինարարական բովանդակությամբ հետեւյալ արձանագրությունը.

ՅՈՒՍՈՎՆ ԱՍՏՈՒԾՈՅ ՔԱՇԱԹԱՂԻ ՆՈՐԱԲՆԱԿ ԺՈՂՈՎՈՒՐԴՍ ՇԻՆԵՑԱՔ ԶՍԲ. ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ԵԿԵՂԵՑԻՍ | Ի ՅԻՇԱՏԱԿ ՎԱՄՆ ՀԱՅՐԵՆԵԱՑ ՆԱՀԱՏԱԿԵԱԼ ԲԻՒՐ ԵՂԲԱՐՑ ՄԵՐՈՑ: ՀԻՄՆԱՐԿԵՑԱՒ ՏԱՃԱՐՍ ՍՈՒՐԲ | ՀԱՄԲԱՁՈՒՄ ԱՆՈՒՆ ՅԱՒԱՆՍ ԲԵՐՁՈՐ ՅԱՄԻ ՏՆ. ՌՆՂԵ (1996) ԵՒ ՕԾԵՑԱՒ ՅԱՄԻ ՌՆՂԷ (1998) ՅԱՒՈՒՐ ՍԲ. ՀՈԳՈՅ | ԳԱԼՍՏԵԱՆԻ ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵ(Ա)Ն ՏՏ. ԳԱՐԵԳԻՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ, ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ԱՐՑԱԽ ԱՇԽԱՐՀԻՍ ՏՐ. ՊԱՐԳԵՒ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ԵՒ Ի ՀՈՎԻՈՒԹԵ(Ա)Ն ԳԱՒԱՌԻՍ ՏՐ. ԱԹԱՆԱՍ

193. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան», (ադրբեջաներեն), հատոր VI, Բաքու, 1982, էջ 173:*

194. ***Ամինե Ավդալ**, Անդրկովկասյան քրդերի կենցաղը, Երեւան, 1957, էջ 13:*

195. ***Սամվել Կարապետյան**, Ինչպես էին յուրացվում հայկական հողերը (Լաչին քաղաքի օրինակով), «Ազատամարտ» շաբաթաթերթ, 1994, N43, էջ 13:*

196. *«Երկրապահ» շաբաթաթերթ, 1998, 4-10 հունվար, N14, էջ 4:*





*ԲԵՐՁՈՐ. Սբ. Համբարձման եկեղեցու տեսքը հյուսիս-արեւելքից եւ արեւային ժամացույցը*

ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ԵՂԵՒ | Ի ԹՈՒԻՆ ՀԱՅՈՑ ՌՆԽԷ (1998) Ի ՓԱՌՍ ԱՄԵՆԱԳՈՒԹ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՅԱՒԻՏԵԱՆՍ ԱՄԷՆ:

Բերձոր քաղաքի մերձակայքում գտնվում են մի քանի հին գյուղատեղիներ, որոնց մեծ մասը ներկայում հայտնի է միայն վերջին երկու հարյուրամյակների ընթացքում քրդերի կողմից դրանց տրված օտարոտի անուններով. հյուսիսային կողմում՝ Կարըկախա, Ջերփի (Ջարդ),[197] Խըրմանլար, Աղբուլաղ եւ Ասկյարքյանդ (դրանք բոլորն էլ գտնվում են Հակարի գետի ձախակողմում), Բերձորից դեպի հարավ եւ հարավ-արեւելք, դարձյալ Հակարիից ձախ՝ գտնվում են Ղարայուզ (Ղարավուզ), Աղանուս, Ֆաթալիփեա եւ Շիվլիկ անունները կրող գյուղատեղիները: Հակարիի աջակողմում՝ Բերձոր քաղաքին դեմ հանդիման, գտնվում են Մոլլալար, Ղըզըլջա եւ Սուս, իսկ գետափին՝ Թաթարասի գյուղատեղիները:

## ՄԱԼԽԱԼԱՖ

Թրքախոս քրդերի կողմից Մալխալաֆ անվանված պատմական գյուղատեղին գտնվում է Հակարիի ձախ վտակի նեղ ու ձգված կիրճի մեջ, երկու գետերի միախառնման տեղից 1 կմ վեր, ծովի մակերեւույթից 740-800 մ բարձրության վրա:



*ՄԱԼԽԱԼԱՖ. կամրջի ավերակ Հակարի գետի վրա (լուսանկարը՝ Հովհաննես Բաղալյանի, 1985 թ.)*

*197. Ջերփի (Ջարդ) գյուղի հայերը XVIII դարի 2-րդ կեսին, հեռանալով հայրենի գյուղից, հաստատվել են Վրաստանի տարածքում: Նրանք իրենց նոր բնակավայրը եւս կոչել են Ջերփի ի հիշատակ հայրենի, բայց կորուսյալ բնակավայրի: Ժամանակի ընթացքում կենտրոնական Վրաստանում հանգրվանած ուրիշ հայերի նման ջերփցիներն էլ կորցրին մայրենի լեզուն: Ներկայում Ջերփին Գորիի շրջանի վրացախոս հայերով բնակեցված գյուղերից մեկն է: Այստեղ կանգուն է XIX դարում կառուցված Սբ. Աստվածածին եկեղեցին:*

*1897 թ. Ջերփ գյուղի մոտ գտնվող դամբարանաբլրի պեղումների արդյունքում հայտնաբերվել է քարարկղային թաղում եւ հնագիտական ուշագրավ նյութեր. «... Ջերփի գյուղի մոտ դամբարանաբլուր կա՝ մեջտեղում քարարկղով: Տարաբնույթ առարկաներից զատ, ինչպես օրինակ՝ պարուրաձեւ օղերը, փոքրիկ ունելիքը, գուրզի՝ գնդիկներով ավարտվող գլանաձեւ ծայրերը, հայտնաբերվել է դեւի դիմակի տեսքով սրբակերտ բրոնզե լամպիկ» ("Кавказ", 1903, №134, էջ 2):*

Գյուղից ոչ հեռու, Հակարի գետի վրա պահպանվում են միջնադարյան բազմաթռիչք կամրջի մնացորդները: 1985 թ. կանգուն էր միայն կամրջի աջ թռիչքը, իսկ մյուսներից պահպանվել էին միայն մի խելն ու հենապատի մնացորդները: 1885 թ. մի վկայություն հավաստում է, որ ավելի քան 100 տարի առաջ այդ կամուրջն արդեն կիսավեր է եղել. «Սընըղ-Քեօրփին այժմ բոլորովին քարուքանդ է եղած. միայն մի պատն է կանգուն մնում (առանց որեւէ արձանագրութեան) եւ ինչպէս երեւում է, դա մի ահագին կամուրջ է եղած եւ բաւականին էլ ամուր եւ գեղեցիկ շինած, բայց ի՞նչ արած, որ չէ կարողացել Հագարի կատաղի ալիքներին դիմանալ, ... շինած է սեւագոյն սրբատաշ քարից»:[198]

Մալխալաֆից արեւելք եւ հյուսիս-արեւելք, միմյանցից ոչ հեռու գտնվում են Մելիքփեա, Մազութլու, Բալըղըղանլի եւ Չինարլի գյուղատեղիները:

## ՄԵՂԻ (ՄԸՂԸԴԱՐԱ)

Սա ըստ ամենայնի Ստ. Օրբելյանի հիշատակած Մեղի գյուղն է, որ քրդերը, քիչ աղավաղելով դարձրել են Միղի կամ Մըղըդարա (դարա=ձոր):

Սրա մերձակայքում գտնվում են Թարխանլի եւ Դաղըմանյանի, իսկ 2 կմ հյուսիս՝ Արաբ եւ Ունանովու գյուղատեղիները: Վերջինս, որն իր անունն առել է գյուղում աղբյուրի շենք՝ նով, կառուցած հայ Հունանի անունից (Հունանի Նով), գտնվում է ԼՂՀ Շուշիի շրջանի սահմանից հազիվ 500 մ հեռավորության, ծ.մ. 1170-1210 մ բարձրության վրա:

Ըստ Հինշեն գյուղի (Բերդաձորի ենթաշրջան) բնակիչ Հայկ Բախշիի Ասրյանի վկայության՝ Ունանով (Հունանինով) գյուղից ոչ հեռու գտնվող մատուռը թուրքերը հիմքից քանդել են 1983 թ.:[199] Քարերն օգտագործվել են նոր տան շինության մեջ:

Մեղի գյուղից 3 կմ հյուսիս-արեւելք՝ անտառներով շրջապատված լեռնալանջի արեւմտահայաց կողմում. գտնվում է Դեյխան գյուղատեղին: Սրանից 400 մ հյուսիս, խոր ձորով հոսող վտակի աջ ափին պահպանվում են հին ջրաղացի ավերակները: Փլատակների մեջ ամբողջական վիճակում դեռեւս մնում է հսկա ջրաղացքարը:

Նույն վտակի հովտով ավելի վեր գտնվում են Ըրճան, Ճամբերախաչ, Քյոհնաքյանդ, Ղշլաղ, Խումարթա, Էյրիկ եւ Ալիփանահլի գյուղատեղիները: Սալատապաններով մի փոքրիկ գերեզմանատուն պահպանվում է Խումարթա գյուղից 1 կմ հարավ-արեւմուտք՝ լեռնաբազուկի հովանդանաձեւ վերջավորության վրա:

198. **Աբրահամ Տէր-Գասպարեանց**, Ճանապարհորդութիւն դէպի Ղափան, «Մեղու Հայաստանի», 1885, N 101, էջ 3:

199. Տեղեկությունը ստացել ենք 1984 թ., Հինշեն գյուղում:

## ՀԱՐԱՐ

Հարարը հարուստ պատմական անցյալ ունեցող գյուղ է: Գտնվում է Հակարի գետի ձախ կողմում, գետափից (ուղիղ գծով) 6 կմ հեռավորության, ծ.մ. 1180-1280 մ բարձրության վրա, հարավ-արեւմտահայաց լեռնալանջին: Գյուղը ներկայիս ԼՂՀ Հադրութի շրջանի արեւմտյան սահմանից հեռու է ընդամենը 2 կմ:

Մինչեւ XVII դարը Հարարի մասին սկզբնաղբյուրները լռում են, բայց գյուղում պահպանված նյութական մշակույթի նմուշները վկայում են որ այն շատ ավելի վաղ շրջանից ի վեր է գոյություն ունեցել:



ՀԱՐԱՐ. ընդհանուր տեսքը հարավից

Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում, 3437 համարի ներքո պահվող ձեռագիր «Մաշտոց ձեռաց»-ի հիշատակարանից պարզվում է, որ այն ստեղծվել է Պաղտասար դպրի ձեռքով եւ Մարտիրոս քահանայի պատվերով, 1666 թ. Հագարան երկրի Հարար գյուղում:[200]

Երկու տարի անց այստեղ՝ «յերկիրս Հագարեան ի գեօղն, որ կոչի Հարար» ստեղծվել է նաեւ մեկ այլ ձեռագիր «Մաշտոց»: 1885 թ. այն պահվելիս է եղել Վ. Տեր-Գրիգորյան Դադյանի մոտ:[201]

Նույն Պաղտասար դպրի ձեռքով Հարար գյուղի եկեղեցում 1671 թ. ստեղծվել է մեկ այլ ձեռագիր, որի հիշատակարանում գրված է. «...Արդ, գրեցաւ կենսաբեր սուրբ Աւետարանս ձեռամբ մեղապարտ եւ սուտանուն Պաղտասար դպրի, ի թուաբերութեանս Հայոց ՌՃԻ (1671)-ին ի յերկիրս Հագարեան, ի գեօղս որ կոչի Հարար, ընդ հովանեաւ սրբոյ Ստեփաննոսի...»:[202] Այդ ձեռագիրը պահվում է Լոնդոնի «Վելքոմ» ինստիտուտի գրադարանում:

Այնուհետեւ շուրջ 1,5 դար աղբյուրները Հարարի մասին լռում են: Միայն XIX դարի կեսերից է գյուղը սկսում հաճախակի հիշատակվել զանազան վավե-

200. «Ցուցակ ձեռագրաց», հ. Ա, Երեւան, 1965, ձեռ. N 3437:

201. «Մեղու Հայաստանի», 1885, N 94, 1 դեկտեմբերի, էջ 1:

202. «Բանբեր Մատենադարանի», N15, Երեւան, 1986, էջ 323:

րագրերում: Մասնավորապես, գյուղի բնակչության թվաքանակին վերաբերող տվյալների համադրումը ներկայացնում է հետեւյալ պատկերը.

| Տարեթիվ | տուն | ար. | իգ. | միասին |
|---|---|---|---|---|
| 1841 | 31 | 147 | 175 | 322[203] |
| 1850 | 47 | 160 | 112 | 272[204] |
| 1876 | | | | 737[205] |
| 1886 | 134 | | | 1004[206] |
| 1889 | | 416 | 339 | 755[207] |
| 1891 | 134 | 532 | 482 | 1014[208] |
| 1901 | | 699 | 561 | 1260[209] |
| 1905 | 135[210] | | | |
| 1914 | | | | 412[211] |
| 1918 | | 666 | 412 | 1078[212] |
| 1921 | 9 | 29 | 26 | 55[213] |

1930-ական թվականներից Հարարում խպառ մարեց հայ կյանքը: Այնտեղ կամաց-կամաց բնակություն հաստատեցին մերձակա գյուղերից փոխադրված թրքախոս քրդեր եւ թուրքեր: Դրանց թիվը 1976-ին արդեն կազմում էր 268 շունչ:[214]

Աղյուսակից երեւում է, որ Հարարը քիչ թե շատ բնակչության աճ է ունեցել մինչեւ 1905 թ. նոյեմբերի իրադարձությունները: Այնուհետեւ, դեռ չապաքինված, 1918 թվականից հետո, եւ, վերջնականորեն խորհրդային կարգերի հաստատումից հետո՝ այն, փաստորեն, ամայացավ:

Հարկ է նշել, սակայն, որ Հարարում «խաղաղ տարիներին» էլ իրադրությունն ավելի քան լարված էր: Դեռ 1880-ականների սկզբներին խաշնարած քոչան ցեղի քրդերը իրենց ավազակաբարո հարձակումներով անընդհատ լարվածության մեջ էին պահում Հարարի հայ բնակիչներին: Ականատեսը վկայում է. «Անցեալ տարի նրանք երեք ամսուայ ընթացքում հարեւան Հարար գիւղից մօտ 100 գլուխ տաւար յափշտակեցին»):[215] Արդյունքը եղավ այն, որ 1891 թ. հարարցիներից 15 ընտանիք ստիպված թողեցին հարազատ գյուղը եւ, փոխադրվելով Ջեւանշիրի գավառ, Տրտու (Թարթառ) գետի ափին, բեկապատկան հողի վրա նոր գյուղ հիմնեցին:[216] Նրանք, ովքեր մնացին հարազատ գյուղում, ապրեցին 1905 թ. սարսափները. «135 տուն ժողովուրդը կողոպտւեց մինչեւ վերջին թելը, վերջին ասեղը: Ապա նա գերի ընկաւ շրջապատող թուրքերի ձեռքը: Խե՜ղճ հայեր, օրեր շարունակ նրանք ապրում էին մահւան սարսափի, բարոյական եւ հոգեկան տանջանքների տակ, նրանք կտրւած դրսի աշխարհից, չը գիտէին, ի՞նչ էր կատարւում դուրսը, չը գիտէին, որպիսի վախճան է սպասում իրենց: Եւ երբ այդ բոլորից յետոյ զօրքը գնաց նրանց ազատելու, նրանք չէին հաւատում իրենց աչքերին: Ինչպէս դահճի սրից փախածը, նրանք հեռացան այդ ծանօթ վայրերից, այլ եւս չը վերադառնալու պայմանով, գնացին մի այլ տեղ ապաստան փնտռելու: Հարարն ունեցաւ բաւական մարդկային զոհեր...»:[217] Ի դեպ հարարցիները, ուժերի բազմակի աննպաստ հարաբերությունն ու չորս բոլորից պաշարված լինելը հաշվի առնելով, հենց սկզբից դիմադրելու փորձ անգամ չէին արել. «... Հարար գիւղը անձնատուր եղաւ եւ թոյլ տւեց խուժանին կողոպտելու եղած չեղածը առանց դիմադրութեան»:[218]

Հայտնի է, որ 1907 թ. նոյեմբերին հարարցի ցիրուցան եղած 10 ընտանիք (78 շունչ) հոգեւոր իշխանություններին խնդիրք էին ներկայացրել Ամարասի վանքի կալվածներից մի հողամասի վրա բնակություն հաստատելու նպատակով:[219] Չնայած վանահոր համաձայնությանը, ինչ-ինչ հանգամանքներ նկատի առնելով, կոնսիստորիան 1908 թ. մայիսին մերժել էր խնդիրքը:[220]

Ի վերջո, ոչ իրենց կամքով, այլ կառավարության ստիպմամբ հարարցիների մի մասը կրկին սկսեց համախմբվել հայրենի գյուղում, բայց նրանց թիվը, ինչպես երեւում է ներկայացված աղյուսակից, օրինակ՝ 1914 թ. հունվարի 1-ին, կազմել է ընդամենը 412 շունչ:[221] Նրանց մի փոքր մասն այդպես էլ մնաց Խանքյանդում (Ստեփանակերտ):

Խորհրդային տարիներին, երբ վերջապես Հարարը վերածվել էր մի թրքաբնակ գյուղի, մերձակա գյուղերի քուրդ եւ թուրք բնակիչների ձեռքով վերանում էին գյուղում բնիկներից մնացած հիշատակները, այդ թվում եւ մշակութային հուշարձանները: Ցավոք, պատմական այս գյուղի մշակույթի հուշար-

---

203. *ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 305, թ. 15:*
204. *ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 74:*
205. *ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 6775, թ. 105-106:*
206. ***Ղ. Ալիշան**, Սիսական, Վենետիկ, 1893, էջ 100:*
207. *ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8583, թ. 39-40:*
208. *«**Արցախ**», էջ 401:*
209. *ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 235-236:*
210. ***Ա-Դօ**, նշվ. աշխ., էջ 261:*
211. *"Кавказский Календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 107:*
212. *ՀՀՊԴԿԱ, ֆ. 150, ց. 1, գ. 59, թ. 5:*
213. ***Карапетян М. М.**, Этническая структура населения Нагорного Карабаха в 1921 г., Ереван, 1991, էջ 17:*
214. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր I, Բաքու, 1976, էջ 509:*
215. *«Նոր Դար», 1885, N104, էջ 4:*
216. *"Сборник материалов для описания местностей и племен Кавказа", выпуск 25, Тифлис, 1898, էջ 103: Գյուղը, որտեղ հանգրվանել էին հարարցի հայերը, ներկայիս ԼՂՀ Մարտակերտի շրջանի արեւմտյան ծայրում գտնվող Չափարն է:*
217. ***Ա-Դօ**, նշվ. աշխ., էջ 263: Ի դեպ, նույն 1905 թ. Հարար գյուղի համար բախման էր ձեռնարկվել Համբարձում Գրիգորյան Աղանյանցը («Արշալույս», 1905, ապրիլ, էջ 312):*
218. *Նշվ. աշխ., էջ 262:*
219. *ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց.6, գ.675, թ.2:*
220. *Նշվ. գործը, թ.6:*
221. *«Մշակ», 1906, N 240, 2 նոյեմբերի, էջ 1-2*








*ՀԱՐԱՐ. եկեղեցու տեսքը հարավից եւ արեւմուտքից, մուտքը եւ հարավային ճակատում ագուցված խաչքար, բարավորի տեղում ագուցված տապանաքար եւ խաչքարի բեկոր հարավային ճակատում*

ձաններն իր ժամանակին բավարար չափով չէին ուսումնասիրելվել, եւ դրանց զգալի մասն այժմ անդարձ կորսփի է մատնված:

Նախ, հարկ է նշել, որ Հարար գյուղը բաղկացած է եղել իրարից բավականին հեռավորություն ունեցող եւ ավելի հաճախ առանձին գյուղեր համարվող մի քանի գյուղամասերից. «Հարարը բաժանուած է չորս մասի, որոնք առանձին-առանձին գիւղ են կազմում եւ պաշտոնական փեղերում կրում են միեւնոյն Հարար անունը, իսկ իրենց մէջ յայտնի են որոշ ա-






*ՅԱՐԱՐ. գյուղի արեւմտյան եզրին տարածված գերեզմանատունը եւ արձանագիր տապանաքարեր*

նուններով, այն է՝ Թէգ-Խարաբ, Արփագետղիկ, Գօնաղգեօրմազ եւ Սեչմանլու...»:[222]

Բուն Հարար գյուղի արեւելյան ծայրում, թեք լեռնալանջին, կիսավեր վիճակով պահպանվում է ակնհայտորեն ավելի հին եկեղեցու տեղում XVI-XVII



*ՅԱՐԱՐ. եկեղեցու հատակագիծը*

դարերում հիմնովին վերակառուցված Սբ. Ստեփանոս եկեղեցին:[223] Նույն եկեղեցին 1841 թ. եւ հետագա տարիների վավերագրերում հիշված է Սբ. Հռիփսիմե անունով:[224] Ասել կուզի՝ այդ տարիներին կրկին վերակառուցվել է, որի ավարտից հետո՝ վերստին օծվել: Արդեն XIX դարի վերջին այդ եկեղեցու շենքը գտնվում էր քայքայված վիճակում. «... ունի մի եկեղեցի, բայց միայն անունով... մերկ պատերը առանց ծեփի, սուաղի...»:[225]

Հավանաբար եկեղեցու այդ վատթարագույն վիճակը նկատի առնելով՝ մեկ այլ վկայագրում մինչեւ իսկ անտեսվել է նրա գոյությունը. «... եկեղեցի չունին...»:[226]

Ներկայում կանգուն են նրա հարավային եւ մասամբ արեւմտյան ճակատները: Հորինվածքով միանավ թաղածածկ շինություն է, առանց ավանդատների, հարավից բացված միակ մուտքով եւ առանց շինարարական արձանագրության: Մուտքին, իբրեւ բարավոր, ագուցված է խաչազարդ երեսով տապանաքար: Մի քանի խաչքարեր եւ տապանաքարեր են ագուցված նաեւ պատերի առանձին հատվածներում: Մուտքի շեմին ագուցված միջնադարյան խաչքարին (ըստ ոճական եւ գեղարվեստական առանձնահատկությունների՝ XII-XIII դարերի գործ է, չափերը՝ 108x70x35 սմ) նկատվում են խիստ եղծված արձանագրության հետքերը:

*222. «Նոր Դար», 1899, N 63, էջ 3:*
*223. Եկեղեցու անունը հիշված է 1671 թ. գրված «Ավետարան»-ի հիշատակարանում («Բանբեր Մատենադարանի», N 15, էջ 323):*
*224. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 305, թ. 45:*
*225. «Նոր Դար», նույն տեղում:*
*226. «Արձախ», էջ 401:*

...|ԿԱ|ՆԳՆԵՑԻ ՁԽ(Ա)ՉՍ ԲԱՐԵԽ(ԱՒ)Ս-ՈՒԹԻՒՆ | ՄԱՒՐ ԻՄՈՅ ԹՈՒ|... Ե...

Եկեղեցու երբեմնի թաղը պահելիս է եղել մի զույգ որմնասյուների վրա հենված թաղակիր կամարը, որը չի պահպանվել: Շենքն ամբողջությամբ կառուցված է անմշակ քարով (գերակշռում է սպիտակ թերթաքարը) եւ կրաշաղախով: Եկեղեցու մկրտարանի ավազանը չի պահպանվել, բայց դեռ 1960-ականների սկզբներին այն տեղում է եղել եւ կրել է 1901 թ. արձանագրություն:[227]

Գյուղի հարավ-արեւմտյան ծայրում, շրջապատի նկատմամբ փոքր-ինչ առանձնացած բլրակի վրա տարածված է գյուղի գերեզմանատունը: Այս հնավայրը 1989-92 թթ. ընթացքում բառիս բուն իմաստով տակնուվրա է արվել: Տարածքի մի մասը հարթեցվել է ու տեղում անասնաշենք կառուցվել: Ավերումից զերծ է մնացել միայն գերեզմանատան հարավային ծայրը: Այդտեղ պահպանված տապանաքարերի թիվը չի անցնում մեկ տասնյակից: Վերջիններից երեքի վրա պահպանվել են XIX դարին վերաբերող արձանագրություններ:

Սույն հնավայրից մի քանի տապանագրեր են ընդօրինակել նաեւ նախկին հետազոտողները, որոնք սակայն չեն պահպանվել:

Արձանագիր տապանաքարերից մեկը, ըստ հետազոտողի, եղել է. «...օրորոցաձեւ, հյուսիսային երեսին կենցաղային տեսարան, վերեւի թեքության վրա եղծված արձանագրություն, արեւմտյան ճակատին խաչքարիկ, որից վեր՝ միայն թվականը. ԹՎ(ԻՆ) ՌՃԷ(1658)»:[228]

1980-ական թթ. սկզբներին հնավայր այցելած Ս. Խանզադյանը այդտեղ տեսել է հետեւյալը. «Հին գերեզմանատանը կարդացի. - ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԴԱՎԻԹԻ ՈՐԴԻ ՊԱՂՏԱՍԱՐԻ, ԿԱՏԱՐԵՑ. ԹՎ ՌՄԼԵ-1786: Մի այլ - ԱՅՍ Է ԴԱԲԱՆ ՕՎԱՆԵՍԻ ՈՐԴԻ ՓԱՆԻ ՈՐԴԻ ՄԵԼԻՔ ԳԱՐԴՄԱՅԵԼԻ. ԲԵՐԱՆ ԱԾՈՂ. ՈՂՈՐՄԻ ԱՍԱ ԱԾ. ԹՎ. ՌՄԼԸ: Մելիք Գարդմայելը Սյունիքի իշխանական տան շառավիղն էր: Չորս քարի կարդացի միայն տարեթվեր 1840, 1846, 1853, 1871: Այսինքն՝ գյուղի կյանքը շարունակվում է: Մոշի թփի մեջ բարձր քարի գրած է. ԱՅՍ Է ՀԱՆԿԻՍՏ ՄԵԼԻՔԵՆՑ ՏԱՆՈՒՏԵՐ ԳԱԼՈՒՍՏԻՆՆ Է. ՎՃ. 1903: Սրանով էլ վերջանում է Հարարի հայոց կյանքը»:[229]

Ներկայում, գերեզմանոցի՝ ավերումից զերծ մնացած հատվածում պահպանվել են հետեւյալ տապանագրերը.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՐ(ԱՐ)ՑԻ | ԴԱՒԹԻՆ ՈՐԴԻ ՊՈՂՈՍԻ, | ԹՎԻՆ ՌՄՁԶ (1837):

Տապանաքարի չափերն են 122x80x27 սմ:

Ուղղանկյունաձեւ մեկ այլ տապանաքարին (չափերը՝ 122x80x36 սմ) 4 տողով փորագրված է.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՐԱՐԵՑԻ | ՄԱՐՏԻՐՈՍԻ ՈՐԴԻ ԴԱՎԻԹԻՆ, | ՕՎ ՈՐ ԳԱՐՏԱՅ. ՌՄՂԵ (1846), | ՄԷԿ ԲԵՐԱՆ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ԱՍԻ:

Նախորդի մոտ մեկ այլ գերեզմանաքարին (չափերը՝ 95x40x30 սմ) եռատող փորագրված է.

ԱՅՍ Է Տ(Ա)ՊԱՆ... | ՄԿ ՈՐԴԻ Ս(ԱՐ)ԳՍԻ Ա-(ԱՍՏՈՒԱ)Ծ ՈՂ(ՈՐՄԻ) | 1871 ԱՄԻ:

Իր ժամանակին Հարարի մերձակայքում նշանավոր սրբատեղիներ կային. «Հարարում կան մի քանի ուխտատեղեր՝ «Ամուտեղ», «Հուռում այեա» եւ «Սիմիքլու բաբա» անուններով, սակայն դրանք կորած են անյայտութեան մէջ...»:[230]

Հարարից 2,2 կմ արեւմուտք՝ Սոֆիան կամ Սաֆիան գյուղատեղին է, իսկ 3 կմ հարավ-արեւմուտք՝ Ղուշչուլարը: Հարարից 4 կմ հարավ՝ Խաչգետիկ գյուղատեղին է:

## ՓԱՐԱՋԱՆ

Գավառի նույնպես պատմական գյուղերից մեկն է: Գտնվում է Հարարից 2 կմ հյուսիս-արեւելք, ծ.մ. 1210-1290 մ բարձրության վրա, Խաչգետիկի աջ վտակի ափին, ԼՂՀ Հադրութի շրջանի արեւմտյան սահմանից հազիվ 0,5 կմ հեռավորության վրա:



*ՓԱՐԱՋԱՆ. ընդհանուր տեսքը արեւմուտքից*

XIX դարում գյուղում հաստատվել են խաշնարած թուրքերը: 1914 թ. դրանց թիվը հասել էր 494 շնչի:[231]

Մինչեւ 1950-ական թվականները գյուղամիջում մի դարավոր ընկուզենու մոտ պահպանվում էին հայոց եկեղեցու ավերակները: Ներկայում դրա հետքերն իսկ չեն նշմարվում:

1906 թ. հայ-թուրքական ընդհարումների ժամանակ Փարաջանի թրքացած քրդերն առավել անհանգիստ տարրերից էին. մասնավորապես, հա-

227. «Դիվան ...», պրակ 5, էջ 196:
228. Նշվ. աշխ., նույն տեղում:
229. «Սովետական Հայաստան» ամսագիր, 1984, N 6, էջ 31:
230. «Նոր Դար», 1899, N 63, էջ 3:
231. "Кавказский Календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 193:

յաքընակ Վաղավեր եւ Արփագետիկ գյուղերի ավերն ու թալանը դրանց ձեռքի գործն էր: Նշված երկու հայ գյուղերի բնակիչներն ապաստան էին գտել առավել հուսալի Խծաբերդ գյուղում, իսկ երիտասարդները, ջոկատ կազմելով (14 հոգի), սկսել էին կռվել իրենց գյուղերն ավերող թուրքերի դեմ: Ջոկատի վերջին մարտը տեղի էր ունեցել Փարաջանի մոտակայքում գտնվող մի հին ջրաղացի մոտ. «... 14 քաջ երիտասարդներ, որոնք Փարաջան թուրք գիւղի մօտ կռւի բռնւելով՝ նեղն ընկած մտան մի ջրաղաց: Երկու օրւայ հերոսական դիմադրութիւնից յետոյ, պատմում են, խուժանը հրդեհեց ջրաղացը, պաշարւածները գերադասեցին իրենց ձեռքով սպանւել. նախ նրանք փչացրին բոլոր զէնքերը եւ ապա իրենց դաշոյններով ինքնասպան եղան եւ ընկան հերոսաբար: Այս անօրինակ մարտիրոսութիւնը, որ տեղի ունեցաւ յունվարի 27-ին, սարսափ ազդեց նոյն իսկ գազանացած խուժանի վրա»:[232]

Փարաջանից 3 կմ հյուսիս գտնվում է Սվարանց գյուղատեղին (թուրք. Սուարասի): Վերջինիցս էլ 2,3 կմ հարավ-արեւմուտք Խանալար անունը կրող գյուղատեղին է: Այս գյուղից 300 մ հարավ հին ջրաղացի ավերակներ են:

## ԳԻԼԱԲԵՐԴ (ԳՅՈՒԼԵԲԻՐԴ)

Գիլաբերդ գյուղը գտնվում է Հակարի գետի աջ ափին: Այն գետափի երկայնքով ձգված է ավելի քան 2 կմ: Ծովի մակերեւույթից ունի 540-580 մ բարձրություն: Գյուղի հարավային եզրին պահպանվում են մի քրդական դամբարանի ավերակները:

Գյուղի շրջակայքում պահպանվում են մի քանի գյուղատեղիներ: Դրանք ներկայում հայտնի են տեղացի թուրքերի կողմից տրված անուններով, իսկ պատմական անվանումները հիմնականում մոռացության են մատնվել: Դրանք են Ռաֆի (գյուղից 1 կմ հյուսիս-արեւմուտք), Թյուրքլար (Գիլաբերդից 2 կմ հյուսիս), Կուրդալի (3 կմ հյուսիս-արեւմուտք), Աբբասղշլաղ եւ Մազմազակ (համապատասխանաբար 1,5 եւ 3 կմ արեւմուտք) եւ Վերին Մազմազակ (5 կմ արեւմուտք) գյուղատեղիները:

## ՎԱՆՈՑԱ (ՋԻՋԻՄԼԻ)

Ըստ որոշ հետազոտությունների (Մ. Հասրաթյան, Ս. Խանզադյան), Ստ. Օրբելյանի հիշատակած Վանոցա գյուղը համապատասխանում է ներկայիս Ջիջիմլիին: Մեզ հայտնի չեն, այդ եզրակացության գրավոր փաստարկները: Ըստ երեւույթին այդ պնդումը հենված է մերձակա բնիկ





*ՎԱՆՈՑԱ. եկեղեցածեւ դամբարան (XIV դ.), ընդհանուր տեսքը եւ առագաստը*

հայ բնակչության բանավոր վկայության վրա, որն, ինքնին, հուսալի աղբյուր է:[233]

Ընդհանրապես Ջիջիմլիները երկուսն են՝ Վերին եւ Ներքին կամ Մեծ ու Փոքր: Հին գյուղը կամ պատմական Վանոցան Վերին կամ Մեծ Ջիջիմլին է: Այն գտնվում է Գորիսի շրջանի Կոռնիձոր գյուղից 3,5 կմ հարավ, ՀՀ պետական սահմանից հազիվ 800 մ հեռավորության վրա: Հակարի գետին աջից միախառնվող մի վտակի աջ ափին, ծովի մակերեւույթից 1010-1090 մ բարձրության վրա:

Ամենայն հավանականությամբ Վանոցան նույնպես հայաթափ է եղել XVIII դարի 2-րդ կեսին: Այնուհետեւ այդտեղ հաստատվել են այսնի դավանանքի թրքական ցեղեր: Վերջիններս, միշտ էլ, անգամ խաղաղ տարիներին, զբաղվել են մերձակա հայ գյուղերից անասունների հափշտակությամբ, բայց 1905 թ. վերջին՝ հայ-թրքական ընդհարումների ժամանակ, նրանց այդ զբաղմունքը աննախադեպ չափեր էր ընդունել: Ըստ վկայության.. «Ջէջիմլուները սիւնիներ էին եւ բնականաբար աւելի մեղմ բարքերով սնւած, քան շիաները, սակայն այդ հան-

232. *Ա-Դօ, Հայ-թուրքական ընդհարումները Կովկասում (1905-06 թթ.), Երեւան, 1907, էջ 242:*

233. *Մորուս Հասրաթյան, Պատմա-հնագիտական ուսումնասիրություններ, էջ 155: Ս. Խանզադյան, Ի՞նչ են պատմում քարերը, «Սովետական Հայաստան» ամսագիր, 1984, N 6, էջ 31:*

գամանքը չարգելեց նրանց ընկնել կողոպուտների հմայքի ազդեցության տակ եւ օգտվել առիթից, որն էլ եղաւ նրանց աւերման պատճառը: Կոռնիձորի եւ միւս գիւղերի հանդերից ջէջիմլուեցիները մի քանի անգամ փաւար գողացան, սակայն նրանք հասարակ գողութիւններով չը բաւականացան: Դեկտեմբերի 17-ին յարձակւեցին եւ Տեղ գիւղի հանդից քշեցին նախիրը. ահա այս եղաւ առիթ, որ եւ հայերը իրենց հերթում յարձակւեցին երկու Ջէջիմլուների վրա»:[234] Այս դեպքերն իր ժամանակին արձանագրած օրաթերթը նշել է, որ «... դեկտ. 17-ին ջիջիմլիցիները քշեցին տարան տեղացիների տաւարը. վերջիններս ոչնչացրին երկու Ջիջիմլուները, սպանեցին 15 թուրք...»:[235]

Վերին կամ Մեծ Ջիջիմլուի արեւելյան ծայրին, գյուղի հյուսիսային փեշով հոսող վտակի ափին պահպանվել են ջրաղացի ավերակներ, բայց հինավուրց այս գյուղը առավել հայտնի է հարավ-արեւմտյան բարձրադիր եզրին տարածված ընդարձակ գերեզմանատնով եւ նույն տեղում դեռեւս կանգուն երկու դամբարանատներով: Դրանք համակ սրբատաշ քարով կառուցված, հատակագծում մեկը՝ քառանկյուն (բոլորաձեւ թմբուկով, ինչպես եկեղեցի), մյուսը՝ բազմանիստ (սրածայր վեղարով) հատակագծով կառույցներ են: Արձանագրություններ չկան, սակայն պատերի քանդակները (վարդյակներ, հավասարաթեւ խաչեր) ակնհայտորեն վկայում են դամբարանների՝ հայ վարպետների կողմից կառուցված լինելու հանգամանքը: Հորինվածքային, կառուցողական եւ գեղարվեստական առանձնահատկությունների՝ համանըման այլ հուշարձանների հետ համեմատական ուսումնասիրությունը թույլ է տալիս դամբարանատըների կառուցման ժամանակաշրջանը համարել XIV-XV դարերը:

1980-ականների սկզբին Մեծ Ջիջիմլուի մեջ գտնվող եկեղեցու քերված արձանագրությունից մի կերպ վերծանվել է.

ԱԾ ... ԿԱՐՈՂ ... ՈԵ ԹՎԻՆ:[236]

Փոքր Ջիջիմլիից 1,5 կմ արեւելք, նույն վտակի ձախ ափին գտնվում է քրդերից Ղազիկուրդալի (Ղազիդարա) հորջորջված գյուղատեղին: Վերջինիցս նույնքան հարավ-արեւելք Կուրդալի փոքրիկ գյուղատեղիի ավերակներն են:

## ԱՆԱՊԱՏԻԿ

1361 թ. ստեղծված «Մեկնութիւն պատարագիս» ձեռագրի հիշատակարանում հիշված է Հայքարա ձորի Անապատիկ գյուղը՝ իր Սբ. Աստվածածին եկեղեցով: Ահա ձեռագրի հիշատակարանի այն հատվածը, որտեղ հիշված է Անապատիկը՝ «... Արդ, գրեցաւ պատարագի մեկնիչս ձեռամբ Զաքարէ աբեղի, ի Ձորս Հայքարայ ի գեաւղս, որ կոչի Անապատիկ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, ի հայրապետութեանն տէր Ստեփանոսի, ի ղանութեանն Յոհսի, ի դառնութեան ժամանակի, որ հալածումն էր քրիստոնէից...: Թվ. ՊԺ (1361) գրեցաւ...»:[237] Թե ներկայիս ո՞ր գյուղին է համապատասխանում Անապատիկը, դժվար է որոշել: Պարզ է միայն, որ գյուղը Հակարի գետի հովտում տեղադրված բազմաթիվ բնակավայրերից մեկն էր:

---

*234. Ա-Դօ, Հայ-թուրքական ընդհարումները Կովկասում, էջ 268:*
*235. «Մշակ», 1906, N 5, 11 յունվարի, էջ 1:*

*236 «Սովետական Հայաստան» ամսագիր, 1984, N6, էջ 31:*
*237. «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», կազմեց Լ. Ս. Խաչիկյան, Երեւան, 1950, էջ 450: «Ցուցակ Ձեռագրաց», հատոր Բ, Երեւան, 1970, ձեռ. N8256, էջ 706:*

# ՔԱՇՈՒՆԻՔԻ (ՂՈՒԲԱԹԼԻ) ՇՐՋԱՆ




***Պատմական ակնարկ:*** Համաձայն VII դարում ստեղծված «Աշխարհացոյց»-ի տվյալների՝ Բաղքը Մեծ Հայքի Սյունիք նահանգի 12 գավառներից էր:[1] Միջնադարում գավառը, տրոհվելով արևելյան և արևմտյան մասերի, զուգահեռաբար սկսեց հանդես գալ նոր անուններով: Մասնավորապես՝ արևմտյանը կամ բուն Բաղքը ավելի հաճախ սկսեց հիշվել Աճեն կամ Աճանան անուններով «Բաղք գավառը, որ այժմ կոչվում է Աճեն. դա Բաղակի [անունից այդպես] անվանվեց»,[2] իսկ արևելյան ավելի ցածրադիր հատվածը, սկսեց կոչվել Քաշունիք: Ներկա դեպքում մեզ համար հետաքրքրություն է ներկայացնում պատմական Բաղքի արևելյան հատվածը, որը XIII դարում, իր ոչ այնքան վաղեմի անցյալի Քաշունիք անվանումից զատ, ստացել էր նաև մի երրորդ անվանում՝ Բարկուշատ: Հին Բաղքի այդ հատվածում գտնվող հռչակավոր Երիցվանքի մասին մի հիշատակության առթիվ պատմիչը նշել է. «...երբ նրանք հասան Երիցավանքի դուռը, որը գտնըվում է Բաղք, այսինքն Քաշունիք, իսկ այժմ Բարկուշատ կոչվող գավառում»[3] և կամ «...Քաշունիք գավառը, որ այժմ Բարկուշատ է կոչվում...»:[4] Հայտնի

1. *Անանիա Շիրակացի, Մատենագրություն, Երևան, 1979, էջ 295:*
2. *Ստեփանոս Օրբելյան, Սյունիքի պատմություն, Երևան, 1986, 70:*
3. *Նշվ. աշխ., էջ 110-111:*
4. *Նշվ. աշխ., էջ 114: Տես նաև՝ «Մանր ժամանակագրություններ», հատոր Ա, Երևան, 1951, էջ 37:*

է, որ XII դարի կեսերից թուրք-սելջուկների փիրապետության տակ հայտնված գավառը 1201 թ. ազատագրել էին Իվանե եւ Զաքարե իշխանները «...գրավեցին Առանից մինչեւ Ներքին Բասեն, Բարկուշատից մինչեւ Մժնկերտ»:[5] Ի դեպ, Քաշունիք եւ Բարկուշատ անունները հետագա մի քանի հարյուրամյակների ընթացքում եւս զուգահեռաբար գործածական են եղել, բայց ի վերջո, արդեն XVI-XVII դարերում Քաշունիք անվանումն ամբողջությամբ իր տեղը զիջել է Բարկուշատին: Մեր օրերում երբեմնի գավառանունը Քաշունի ձեւով պահպանվել է տարածքի ամբողջ երկարությամբ հոսող եւ Որոտան գետի հետ աջից միախառնվող գետի անվամբ (թուրք. Չայ-Զամի): Ինչ վերաբերում է Բարկուշատին, ապա արդեն XIII դարում այդ անվամբ նույն գավառում հիշատակվում է թե՛ բերդ եւ թե՛ գյուղ. առաջինը՝ Սյունյաց Լիպարիտ իշխանին Իվանե աթաբեկից նվիրաբերված այլ ամրությունների շարքում,[6] իսկ երկրորդը՝ գավառի գյուղերի ցուցակում (12 դահեկան հարկաչափով, որը կարծել է տալիս, որ այն միջինից ավելի խոշոր գյուղերից էր):[7]

XVII-XVIII դարերում Բարկուշատն իր հերթին տրոհվեց ավելի մանր գավառամասերի: Նրա հյուսիսային եւ հյուսիս-արեւմտյան մասում (Քաշունի գետից ձախ ընկած հատվածը) գոյացավ Մաղանջուղ գավառակը, իսկ հարավային մասում, Ողջի գետի ստորին հոսանքի շրջանում՝ Գիլաբերդ գավառակը, եւ միայն հին Քաշունիք-Բարկուշատի կենտրոնական մասը շարունակեց կրել Բարկուշատ (նաեւ՝ Բարկաշատ, Բարգուշատ) անվանումը:[8] Ի դեպ, այդ անունով էր հայտնի նաեւ Որոտան գետի ստորին հոսանքի՝ գավառի արեւելյան կողմով հոսող հատվածը:

Վարչատարածքային նշված կացությունը գրեթե անփոփոխ պահպանվեց ընդհուպ մինչեւ տարածքի՝ ռուսական տիրապետության ներքո անցնելը, որից հետո այն ընդգրկվեց Ելիսավետպոլի նահանգի Զանգեզուրի ուեզդի կազմում: Խորհրդային կարգերի հաստատումից հետո պատմական Քաշունիքի տարածքի վրա գոյացած հիշյալ երեք գավառակներն ավել կամ պակաս չափով մասնատվեցին Հայաստանի եւ Ադրբեջանի նորաստեղծ խորհրդային հանրապետությունների միջեւ: Միջհանրապետական կամայական որոշված նոր սահմանագիծը վերից վար անցնում էր հիշյալ 3 գավառների միջնամասերով, արդյունքում՝ Հայաստանին բաժին թողնելով գավառակների արեւմտյան, առավել լեռնային ու կտրտված հատվածները, իսկ Ադրբեջանին՝ արեւելյան, առավել բարեբեր ու հարթաշատ մասերը: 1923 թ. գավառակների՝ Ադրբեջանին անցած տարածքները ընդգրկվեցին նորաստեղծ Կարմիր Քրդստան Ինքնավար Մարզի կազմում, բայց 1930-ին, վերջինիս կազմալուծումից հետո, դրանք մտան Զանգելանի շրջանի մեջ: 1964 թ. երբեմնի Մաղանջուղ եւ Բարկուշատ գավառակների արեւելյան մասերի, ինչպես նաեւ Հակարի գետից արեւելք ընկած եւ պատմական Արցախի մասը կազմող նախալեռնային գոտու որոշ հատվածների միավորմամբ ստեղծվեց վարչական նոր ու առանձին շրջան:[9] Վերջինս, կոչվեց արդեն 1962 թ-ից քաղաքատիպ ավանի կարգավիճակ ստացած Ղուբաթլուի անվամբ (տարածքը 802 քկմ):[10]

Քաշունիք-Բարկուշատը վաղնջական ժամանակներից մինչեւ XVIII դարի 1-ին քառորդի վերջերը հիմնականում հայաբնակ է եղել, իսկ այնուհետեւ տարածք են ներթափանցել մահմեդական զանազան խաշնարած ցեղեր, որոնցից, մասնավորապես, քրդերը մինչեւ 1825 թ. բացարձակապես վրանաբնակ էին, բայց հաստատվելով հայաթափ հին գյուղատեղիներում ընդամենը 60 տարվա ընթացքում՝ մինչեւ 1885 թ., փոխեցին իրենց ապրելակերպը՝ դադարելով լինել վրանաբնակ:[11] Դրանով իսկ 1880-ականներից սկիզբ առան մի շարք քրդաբնակ գյուղեր, որոնց թիվը, հատկապես խորհրդային պասնամյակների ընթացքում բազմապատկվելով, արդեն 1977 թ. հասավ 94-ի:[12]

Ստորեւ ներկայացնում ենք շրջանում պահպանված պատմական հուշարձանները՝[13] նախապես տարածքը պայմանականորեն բաժանելով 3 մասի 1. Որոտան գետի աջափնյա ավազան, 2. Որոտան եւ Հակարի գետերի միջակայք եւ 3. Հակարի գետի ձախափնյա ավազան:

### *Որոտան գետի աջափնյա ավազան*

### ՄԱԶՐԱ

Այսպես կոչված՝ Թասի լեռնանցքի գագաթից մոտ 2 կմ հեռավորության վրա, ծովի մակերեւույթից 1250-1310 մ բարձրությամբ ձգված լեռնաբազկի բարձրադիր մասում տարածվում է երբեմնի Մաղանջուղ գավառի Մազրա գյուղը:[14] Ստուգապես հայտնի չէ, թե երբ է հայազրկվել այս գյուղը, բայց

---

5. **Ստեփաննոս Օրբելեան**, նշվ. աշխ., էջ 316:
6. Նշվ. աշխ., էջ 319:
7. Նշվ. աշխ., էջ 401:
8. «Ժամանակագրութիւն ...» հավելված, Երեւան, 1942, էջ 41-42:
9. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր III, Բաքու, 1979, էջ 254:
10. Նույն տեղում:
11. **Ս. Բահաթրեան**, Զանգեզուր, «Նոր Դար», 1885, N34, էջ2-3:
12. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան», նույն տեղում:
13. Ղուբաթլիի շրջանի տարածքում պահպանված պատմական հուշարձաններին նվիրված մեր ընդարձակ հոդվածը տես «Առերեսում» ամսաթերթում, N15, 1996, էջ 8-9:
14. «Ժամանակագրութիւն...», հավելված, էջ 42:






*ՄԱԶՐԱ. գյուղատեղիի տեսքը հարավ-արեւմուտքից, եկեղեցին հարավ-արեւելքից, խաչքար հարավային պատի տակ եւ արեւելյան ճակատից բացված լուսամուտի պսակը*

նրա կենտրոնական մասում ցայսօր կանգուն ընդարձակ եկեղեցին փաստում է, որ նրա կառուցման ժամանակ, այն է՝ 1694 թ., Մազրան շեն ու հայահոծ գյուղ էր:




*ՄԱԶՐԱ. եկեղեցու հատակագիծը*

Եկեղեցին միանավ, թաղակապ հորինվածքով, ներսում ավագ խորանի երկու կողմերում զույգ ավանդատներով, հարավային ճակատից բացված միակ մուտքով, կոփածո եւ սրբատաշ գորշ ու մանուշակագույն բազալտ քարով միջին չափերի (14,15x8,15 մ) կառույց է: Բարավորին դժվարությամբ ընթերցվում է ակնհայտորեն միտումնավոր կերպով վնասված 8 տողանոց արձանագրությունը.

... ԽՈՃԱՑ | ՊԵՏՐՈՍԻՆ ԵՒ ԻՒՐ ԿՈՂԱԿԻՑՆ, ՈՐԴՈՑՆ՝ ՅՈՎԱՆԷՍԻՆ, | ԾՆՈՂԱՑՆ՝ ՄԱԼԻՔՍԷԹԻՆ, ՄԱՐՈՒՆ, ԵՂԲԱ(Ր)ՑՆ ԱՌ|ԱՔԷԼԻՆ, ՄԱՐԳԱՐԻՆ ... ԱԹԻ ԱՌ(Ա)ՋՆՈՐ|ԴՆ ՅՈՀԱՆԷՍ ԵՒ Տ(ԷՐ)Ն ԳԵՂ(ԻՍ)... ՄԱԼԻՔ ԿԱԼՈՒՍՏ, | ՎԵՐԱԿԱՑՈՒՆ՝Տ(Է)Ր ՍԱՐԳԻՍՆ..., | ԹՎԻՆ ՌՃԽԳ (1694):

Մինչեւ 1993 թ. այս եկեղեցին պեղի խաշնարածներն օգտագործում էին որպես անասնակերի պահեստ: Նրանք, նոր մուտք բացելու նպատակով, քանդել են եկեղեցու արեւմտյան ճակատի հյուսիսային անկյունը: Եկեղեցու արեւելյան ճակատից բացված լուսամուտի խաչաձեւ շրջանակն ու հարավային պատի մեջ ագուցված խաչքարը (115x72x20 սմ) ակնհայտորեն վնասված են հրազենից արձակած գնդակներով:

Գյուղատեղիի տարածքում պահպանվում են նաեւ ստորգետնյա հողափոր բնակարաններ, իսկ հայոց երբեմնի գերեզմանատնից միայն բեկորներ են պահպանվել:

Մազրա գյուղից 1,5 կմ արեւելք պահպանվում են քարանձավ բնակատեղիի մնացորդները:

## ՆՈՎԼՈՒ

Մազրայից 3 կմ արեւելք, ծովի մակերեւույթից 1170-1220 մ բարձրության վրա գտնվում է հայկական հին գյուղատեղիներից եւս մեկը, որը XIX դարում այդտեղ հաստատված քրդերի կողմից ստացել է Նովլու անունը:

Չնայած Մաղանջուղ գավառում հիշված 12 գյուղերի թվում Նովլուն (նաեւ մի այլ անվանաձեւով) չի հիշատակվում, բայց անկասկած այն «Ժամանակագրության» ստեղծման ժամանակ՝ XVII-XVIII դդ., գոյություն ուներ:





*ՆՈՎԼՈՒ. հայաշեն աղբյուրը եւ վերջինիս միակտուր գուբը*

Գյուղի արեւմտյան բարձրադիր եզրին պահպանվում են XVI-XVII դարերում կառուցված աղբյուրի քարե երկու միակտոր գուբը (նովեր): Հենց այս աղբյուրի գոյությունն էլ առիթ է հանդիսացել քրդերի կողմից գյուղի՝ Նովլու կոչելուն: 1957 թ. ակնհայտորեն հայ քարգործների ուժերով, աղբյուրը նորոգվել է:

Գյուղամիջում մի քանի տների պատերի մեջ ագուցված են հին շենքերին պատկանած առանձին սրբատաշ քարեր:

Նովլու գյուղից 1,2 կմ հյուսիս-արեւելք՝ դեպի Գյուրջուլու տանող ճանապարհի աջ կողմում, շրջապատի նկատմամբ քիչ առանձնացած բլրի վրա, կանգուն է հատակագծում ուղղանկյուն, սրածայր վեղարով, եւ ներքուստ, եւ արտաքուստ դեղնավուն սրբատաշ քարերով կառուցված մի դամբարան: Շինության որմերին եւ շուրջը տարածված գերեզմանատանը պահպանված մի քանի տապանաքարերն անարձանագիր են: Ի դեպ, շիրմաքարերը ոճական եւ հորինվածքային առումով բնորոշ են միջնադարի հայկական գերեզմանաքարերին, այնինչ դամբարանն ըստ ամենայնի՝ պարսկական ծագում եւ պատկանելություն ունի եւ XVII դարի գործ է:

Նովլուից 2,5-3 կմ արեւելք եւ հարավ-արեւելք կան երկու գյուղատեղի Ջըլֆը եւ Գյոյարջըղ անուններով: Վերջինս գոյացել է հայկական հին գյուղի տեղում, որի պատմական անունը, սակայն, մեզ չի հասել:

Որոտանի աջ ափին, միմյանցից 1,5-2 կմ հեռավորության վրա փռված են 4 գյուղատեղի: Դրանք տեղի թրքացած քրդերը կոչում էին Դաշալթի (Կուսդանլի), Թեյմուր-Մյուսքանլի, Գոլջըղ եւ Բախտիյարլու: Վերջինից 1 կմ Որոտան գետի հոսանքն ի վար՝ պահպանվում են անմշակ քարով կառուցված միջնադարյան միաթռիչք կամրջի երկու խելերի մնացորդները:

## ՍԵԹԱՆՑ

Մաղանջուղ գավառակի մեջ հիշված 12 գյուղերից մեկը պատմական Սեթանցն է:[15] Այն գտնվում է Կապան լեռան (2074 մ) հյուսիս-արեւելյան փեշերից սկիզբ առնող Սեթանց գետակի (Որոտանի աջ վտակը) ձախ ափին: XIX դարի 2-րդ կեսին հայաթափ գյուղատեղիում հաստատվել էին Ղարաղշլաղ գյուղից հեռացած քրդեր,[16] որոնք փոքր-ինչ աղավաղելով հայկական տեղանունը, գյուղը կոչել էին Սեյթաս:

Գյուղի հարավային կողմում՝ վտակի ձախ ափին, այնտեղ, ուր վտակը մեծ ոլորանով տեղանքը նմանեցնում է թերակղզու, պահպանվում են անմշակ քարով, առանց կրաշաղախի կառուցված, պաշտպանական նշանակության փոքրիկ շինության՝ բերդակի ավերակները: Ոչ հեռու, խիտ թաղումներով, անմշակ սալատապաններով հայոց գերեզմանոցն է:

Սեթանց գյուղին դեմ հանդիման, վտակի աջ կողմի անտառախիտ լեռնալանջին պահպանվում են եւս մեկ ամրոցակերպ կառույցի ավերակները: Այստեղ կա նաեւ մի անարձանագիր բեկորված խաչքար:

Սեթանց գյուղի հարավային եզրով հոսող հա-

*15. «Ժամանակագրութիւն...», էջ 42:*
*16. «Նոր Դար», 1885, N 28, էջ 3:*

մանուն վտակի հունով ցած՝ գտնվում են 4 հին գյուղատեղիներ: Դրանք են Ղեարաս կամ Ղեաբաբաս, որը Սեթանցի նման քրդաբնակ էր դարձել XIX դարի 2-րդ կեսին (այդտեղ բնակություն էին հաստատել բախտիյարլուեցի քրդերը), Հալավա վտակի աջ ափին՝ Մամեդլի եւ Ղարաղշլաղ գյուղատեղիները (առաջին երկուսը վտակի աջ, իսկ վերջին երկուսը՝ ձախ ափին):

Թվարկված բոլոր գյուղերը, ինչպես ասացինք, քրդաբնակ են դարձել XIX դարի ընթացքում, եւ գյուղանունններն էլ այդ շրջանի ծնունդ են: Բացառությամբ Մամեդլիի, մյուսների պատմական անվանումները մոռացության են մատնվել:





### ՏԱՃԿԱՁՈՐ (ՄԱՄԵԴԼԻ)

Տաճկաձորը (6 դահեկան հարկաչափով) Մյուս Բաղք կամ Քաշունիք գավառի գյուղերի ցանկում հիշատակում է Ստ. Օրբելյանը:[17] Գյուղը նույն անվամբ հայտնի է եղել նաեւ XIX դարում: Համենայն դեպս, Ս. Բահաթրյանը 1885-ին գրել է. «... Տաճկաձոր, Կուսաքարեր եւ Ային գիւղերի աւերակները գտնվում են այժմեան քրդաբնակ Ջիբիկլուի մօտ»:[18] XIX-XX դարերում կազմված ու հրապարակված բազմաթիվ քարտեզներից եւ ոչ մեկում Տաճկաձոր տեղանվանն այլեւս չենք հանդիպում, բայց դրա փոխարեն (Վերին կամ Հին) Ջիբիկլուից 4,5 կմ հյուսիս-արեւելք «5 վերստանոց» քարտեզում ցույց է տրված Մամեդլի (Մամատլի) գյուղը: Դժվար չէ կռահել, որ այստեղ եւս նախապատվությունը տրվել է նույն բնակավայրի անվան թուրքական տարբերակին՝ ռուսական քարտեզագրությանն, առհասարակ, բնորոշ մի երեւույթ: Ինչ վերաբերում է Կուսաքարերին, ապա այն «Քոսաքարեր» ձեւով հիշվում է հայտնի «Ժամանակագրության» մեջ իբրեւ Մաղանջուղի գյուղերից մեկը[19] եւ պարզապես ցավալի է, որ պատմական այս գյուղանունը՝ մինչեւ XIX դարի վերջերը պահպանվելով հանդերձ, այժմ մոռացության է մատնվել, եւ այդ գյուղի տեղադրությունն անորոշ է:

### ՃԱՊԿՈՒՏ (ՋԻԲԻՔԼԻ)

XIX դարում քրդերով բնակեցված եւ Ջիբիքլի անվանված գյուղը գտնվում է Սեթանց գետակի հետ աջից միախառնվող, ավելի սակավաջուր մեկ այլ վտակի ակունքի շրջանում, հարավահայաց լեռնալանջին, ծովի մակերեւույթից 1350-1430 մ բարձրության վրա:

Օրբելյանի կազմած Քաշունիք գավառի գյուղերի



ՃԱՊԿՈՒՏ. եկեղեցու տեսքը հարավ-արեւելքից, հարավային ճակատից բացված մուտքը եւ տեսարան արեւելքից

ցուցակում (12 դահեկան հարկաչափով, որից կարելի է հետեւություն անել, որ համեմատաբար մեծ գյուղ էր) հիշվում է Ճապկուտ գյուղը: Հայկական եւ թուրքական անվանումների Ճապկ՝ հայերեն եւ Ջիբիք՝ թուրքերեն նույնականությունը կասկած չի հարուցում:

17. *Ստեփանոս Օրբելյան*, նշվ. աշխ., էջ 401:
18. *Ս. Բահաթրեան*, Զանգեզուր, «Նոր Դար», 1885, N28, էջ 3:
19. «Ժամանակագրություն...», նույն տեղում:

Ճապկուտի կենտրոնում դեռեւս կանգուն է միանավ հորինվածքով, անմշակ քարով եւ կրաշաղախով կառուցված թաղակապ եկեղեցին (արտաքին չափերն են 13,70x8,15 մ): Ունի միայն մեկ ավանդատուն՝ խորանի հարավային կողմում: Հյուսիսային պատի մեջ պահպանվում է մկրտարանի խորշը: Վնասված են ու կիսաքանդ արեւելյան եւ արեւմտյան ճակատները: Միակ մուտքը հարավից է: Սրա խաչազարդ բարավորին կարդացվում է. Թ(ՎԻՆ) ՌՂ(1641) արձանագրությունը: Ըստ ամենայնի դա կառուցման տարեթիվն է, չնայած որ այդ մասին այլ փվյալներ հայտնի չեն: Ներսում՝ շենքի տարբեր հատվածներում ագուցված են մի քանի անարձանագիր խաչքարեր: Ըստ ոճական եւ գեղարվեստական առանձնահատկությունների՝ դրանք կարելի է վերագրել XV-XVI դարերին:



ՃԱՊԿՈՒՏ. եկեղեցու հատակագիծը

Ճապկուտից 2,5 կմ հարավ-արեւելք Ներքին Ջիբիքլի գյուղատեղին է:

## ԱԿՆ (ԱՅԻՆ)

Քաշունիք գավառի գյուղերի ցուցակում հիշատակված գյուղերից է Ակնը (6 դահեկան հարկաչափով՝ նշանակում է այն փոքր գյուղ էր):[20] Միեւնույն անվամբ գյուղը հիշվում է նաեւ «Ժամանակագրության» հավելվածում՝ Բարկուշատ գավառի գյուղացուցակում:[21] Ի դեպ, ինչպես 1976-ին նշել է Ա. Ղարագյոզյանը «Ղափանի շրջանի Դավիթ-Բեկ գյուղի բնակիչները այսօր էլ Ակն անունով են կոչում հարեւան ադրբեջանական Ային գյուղը, որը գտնըվում է Քաշունի գետի ձախ ափին...»:[22]

Մինչեւ խորհրդային կարգերի հաստատումը Ակնը, իր շրջակա հողերով հանդերձ, պատկանում էր Եղիազարյանցներին: Նույն այդ կալվածատերերը Ջեյվա (այժմ՝ Դավիթ-Բեկ) գյուղի եզրին Քաշունի գետի վրա 1900 թ. կառուցել են քարաշեն միաթռիչք կամուրջ:

Ակնը գտնվում է Դավիթ-բեկ գյուղից 2,3 կմ հյուսիս, համանուն լեռան արեւելահայաց լանջին, ծովի մակերեւույթից 1330-1400 մ բարձրության վրա:

Ակնից 1,5 կմ հյուսիս մի աննշան գյուղատեղիի մնացորդներ են: Այն հայտնի է Միստան անունով:

Ակնից 2,5 կմ արեւելք գտնվող մեկ այլ գյուղատեղի հայտնի է Չարդախլու[23] անվամբ: Վերջինից հյուսիս՝ Խալաջ գյուղատեղի տանող ճանապարհին, պահպանվում են երկու անարձանագիր եւ պարզ ոճավորում ունեցող խաչքարեր:

## ԽԱԼԱՃ (ԽԱԼԱՋ)

Հին գյուղ է: Գտնվում է Ղուբաթլի քաղաքից 4 կմ հյուսիս-արեւմուտք: XVIII դարի վերջերին այստեղ հաստատված քրդերը, մի քանի տասնամյակների ընթացքում մերձակա գյուղերի արոտավայրերին տիրանալով, արդեն XIX դարի կեսերին որոշակի կարողություն եւ ազդեցություն էին ձեռք բերել: Դրա հավաստումն է հենց այդ ժամանակ գյուղում (անտարակույս, մերձակա հայաբնակ գյուղերից հրավիրված վարպետների ձեռքով) կառուցված քուրդ


ԽԱԼԱՃ. բեկատասկան տան ընդհանուր տեսքը

բեկի բնակարանային համալիրը (մի քանի թաղակապ սենյակներ՝ ներառնված կամարակապ լայն դարպաս ունեցող պարսպապատի մեջ):

Դրանց վերականգնման ուղղությամբ որոշ աշ-

20. Նշվ. աշխ., էջ 401:

21. «Ժամանակագրութիւն...», էջ 42:

22. Ա. Ղարագյոզյան, Սյունիքի Բաղք եւ Քաշունիք գավառների մի շարք բնակավայրերի տեղադրության շուրջը, «ԲԵՀ», 1978, N 3, էջ 197:

23. «Ժամանակագրության» հավելվածում Բարկուշատ գավառի մեջ հիշված Փակահան գյուղը՝ Փիգիհան ձեւով այսօր էլ Կապանի շրջանի Դավիթ-Բեկ գյուղի բնակիչներին հայտնի է իբրեւ Չարդախլուի հին անվանաձեւ:



ԽԱԼԱՇ. բեկամասական տան դարպասը

խապանքներ են կատարվել 1980-ական թվականներին, որոնք, բարեբախտաբար, մնացել են թերավարտ, քանի որ աշխատանքներն ունեցել են ոչ այնքան վերականգնելու, որքան այլափոխելու նպատակ:

Ներկայիս Դավիթ-Բեկ (նախկին՝ Ջեյվա) գյուղից 3 կմ հյուսիս-արեւելք գտնվում է Թարովլու գյուղատեղին: Սրա եւ Քաշունի գետի ձախ ափին գտնըվող Վ. Խոջա-Մուսախլի գյուղատեղիների միջեւ, ընդարձակ մակերեսի վրա, պահպանվում են դամբարանաբլուրներ: Այստեղ 1990 թ. ադրբեջանցի «գիտնականները» հնագիտական ուսումնասիրություններին անհարիր եղանակով «պեղումներ» են կատարել:

## ՉՈՐ (ՋՈՌ)

Երկու կողմերից ամեհի լեռնազանգվածներով սեղմված Քաշունի գետի ամենանեղ մասում՝ գետի ձախ ափին, գտնվում է փոքրիկ, բայց ակնհայտորեն պատմական մի գյուղատեղի: Այն այդտեղ հաստատված քրդերը կոչում էին Ջոռ: Դժվար չէ նկատել, որ այն հայկական Չոր տեղանվան հնչյունափոխված տարբերակն է, ընդ որում՝ տեղանքը համապատասխանում է այդ անվանումին: Գյուղատեղիի հանդեպ, գետի աջ կողմում գտնվում են 2 ջրաղացների ավերակները:

Չորից 1 կմ հյուսիս, դարձյալ Քաշունիի ձախ ափին, Վերին Խոջա-Մուսախլի կամ Մազիտլի կոչված գյուղատեղին է: Ըստ տեղացիների վկայության՝ գյուղն իր անունն առել է ազգությամբ հայ՝ Խոջա-Միսաքի անունից, որը քրդերը քիչ աղավաղելով, արտասանել են Խոջա -Մուսախլի: Այս գյուղատեղիի արեւելյան եզրին՝ գետի նույն ափին, գտնվում են մեկի ջրաղացի ավերակները:

Դարձյալ 1 կմ գետի հոսանքի հունով ցած Ներքին Խոջա-Մուսախլի կամ Ղալաչըղ գյուղատեղիի մնացորդներն են: Սրա արեւելյան եզրին, ապառաժ լանջերով վեր խոյացող սարի գագաթին դեռ պահպանվում են միջնադարյան բերդի ավերակները:

Այդ բերդաստի հարավային լանջին ձգվում է միմյանցից 10 մ հեռավորությամբ, զույգ կիսաբոլոր աշտարակներով հզորացված, անմշակ քարով եւ կրաշաղախով կառուցված պարսպապատը: Դրանց պահպանված մասերի առավելագույն բարձրությունը հասնում է 6-7 մ-ի: Քիչ ավելի վեր՝ քարուկիր պատերի եւ այլ շինությունների մնացորդներն են: Առանձին կառույցների հետքեր կան նաեւ լեռան գագաթին: Բերդաստն այլ հատվածներում քարուկիր պարիսպներով ամրացված է միայն թշնամու հարձակման դեպքում մատչելի համարված հատվածները, քանի որ այլ կողմերից լեռը մեծ մասամբ շրջապատված է բնականից ուղղահայաց ժայռեղեն պարսպով: Պարսպապատերի պահպանված մասերի կառուցողական առանձնահատկությունները բնորոշ են X-XIII դարերին:

Ստեփանոս Օրբելյանն այս շրջանում հիշատակում է երկու՝ Պահու եւ Անդոկաբերդ բերդերի մասին: Ամենայն հավանականությամբ, Ներքին Խոջա-Մուսախլի գյուղի մոտ պահպանված բերդը դրանցից մեկն է:

Բերդից 1 կմ արեւելք, Քաշունի գետի վրա հին կամրջի մնացորդներն են, որը քանդվելուց հետո նորոգվել է փայտամածով: Պահպանված խելերը շարված են անմշակ քարով:

## ԵՐԿԱԹԱՎՈՐՔ (ԴԱՄԻՐՉԻԼԱՐ)

Գտնվում է Քաշունիի՝ Որոտանին միախառնվելու տեղին մոտ, գետի ձախ ափին: Գյուղամիջում, Քաշունի գետի վրա, կանգուն է XVII-XVIII դարե-



ԵՐԿԱԹԱՎՈՐՔ. եռաթռիչք կամրջից













*ՊԱՅՈՒ՝ ԲԵՐԴ, բերդաստի տեսքը արեւելքից, բրգավոր պարսպապատի կենտրոնական մասը հարավից, հատված բերդաստի արեւմտյան կողմից, միջնաբերդի մնացորդները եւ համեմատաբար լավ պահպանված 2 աշտարակները*

րի շինություն՝ միաթռիչք կամուրջը: Այն ունի 9,15 մ երկարություն (թռիչքը) եւ 3,10 մ լայնություն: Վերջին նորոգումը՝ ցեմենտ-բետոնով, կատարվել է 1990 թ.: Ունի արաբատառ արձանագրություն:

Ըստ Ղ. Ալիշանի՝ Երկաթավորք (թուրք. Դամըրչիլար) կոչվող գյուղում ցայժմ պահպանվել են նաեւ երկու դամբարաններ: Դրանք թվագրվում են XIV-XV դարերով: XIX դարի վերջին այդտեղ կառուցվել է նաեւ մզկիթ (հազվադեպ երեւույթ տարածաշրջանի քրդաբնակ եւ թրքաբնակ գյուղերի շարքում):

### ԱԳԱՏԻ (ԱԿԱՏԻ, ԱՅԱԴԻ)

Ստ. Օրբելյանի կազմած Քաշունիք գավառի գյուղացուցակի մեջ հիշված Ագատին[24] (8 դահեկան հարկաչափով) գավառի միջին մեծության հայաբնակ գյուղերից էր: Ուշ միջնադարում գյուղը դարձյալ հիշվում է Ակատի ձեւով,[25] իսկ XIX դարի ցարական քարտեզներում այն հանդիպում է Այադի ձեւով: Ագատի-Ակատի եւ Այադի տեղանվան նույնականությունը որեւէ կասկած չի հարուցում:[26] Խորհրդային տարիներին գյուղը վերանվանվել է՝ Մեհրիլի:

Գտնվում է Զոր գյուղից 0,7 կմ արեւելք՝ Քաշունի գետի աջ, բարձրադիր ձորաբերանին: 1904 թ. հրատարակված ցարական «5 վերստանոց» քարտեզում այս գյուղի հարավ-արեւելյան եզրին ցույց է տրված մի ավերակ եկեղեցի, որի հետքն իսկ այժմ չի պահպանվել:

Ագատիից Քաշունի գետի հոսանքն ի վար գտնվում են եւս երկու պատմական գյուղատեղիներ, որոնք հայտնի են միայն XVIII դարում այդտեղ հաստատված թուրքերի կողմից տրված անուններով՝ Փոլադլի եւ Դոնդարլի:

### ՓՌՈՋԱՆՑ (ՓՌՈՇԱՆՑ)

«Ժամանակագրության» հավելվածում Բարկուշատ գավառի բաժնում հիշված Փռոջանց գյուղը,[27] չնայած այնտեղ հաստատված թուրքերից ստացել էր Փիրջան, Փերջան կամ Փարիջան անունը, այնուամենայնիվ դեռեւս XIX դարի վերջերին մերձակա հայերին հայտնի էր իր վաղեմի չաղավաղված անվամբ: Համենայն դեպս Ս. Բահաթրյանը 1885-ին պարզորոշ նշել է. «Բարգուշատու գաւառում - Գէօդախլու, Խաչփար եւ Փիրջան (հնուց՝ Խաչդաբ եւ Փռօշանց)»:[28] Ցավոք, գյուղում իրենց՝ շուրջ 200-ամյա ներկայության ընթացքում թուրքերը ջանադրաբար ոչնչացրել են հայոց նյութական մշակույթի հիշատակները:

Փռոջանցից հազիվ 300 մ արեւելք գտնվում է մի գյուղատեղի, որը ներկայում հայտնի է թուրք խաշնարածների՝ գյուղին տրված Գյոյալ անվամբ:

### ՀԱՐԹԵՔ

Փռոջանցից 2 կմ հյուսիս-արեւելք, երեք կողմերից սարերով շրջապատված գոգաձեւ գեղատեսիլ վայրում գտնվում է երկրամասի պատմական գյուղերից եւս մեկը՝ Հարթեքը: Այն առաջին անգամ հիշվում է XIII դարում կազմված Քաշունիք գավառի հարկատու գյուղերի ցուցակում՝ (10 դահեկան հարկաչափով՝ հետեւաբար, միջին գյուղերի թվում էր):[29] XIX դարում այդտեղ հաստատված խաշնարածները, հավանական է իրենց ցեղապետի անունով, գյուղը կոչել են Ալիբեկ (այդպես է նշված 1904 թ. հրատարակված «5 վերստանոց» քարտեզում), բայց, փաստորեն անմոռաց պահպանվել է նաեւ գյուղի



ՀԱՐԹԵՔ. գյուղի տեսքը արեւելքից

պատմական անվանումը: Ի դեպ, Հարթեք է կոչվում (թուրք՝ Հարթիզ) նաեւ գյուղից 1,5 կմ հարավ գտնվող լեռնագագաթը (1280 մ): Ներկայիս Հարթիզի եւ պատմական Հարթեքի նույնականությունն ապացուցված է:[30]

Գյուղատեղիի տարածքում պահպանվել են հին գերեզմանոցի եւ աղբյուրի մնացորդները: Սրբատաշ, ուղղանկյունաձեւ, բայց անարձանագիր 2 տապանաքարերն ու աղբյուրի քարե միակտոր գուռը երբեմնի հայաբնակ գյուղի լուռ վկաներն են:

Հարթեքի հարավ-արեւելյան եզրին գտնվող բլրի

24. **Ստեփանոս Օրբելյան**, նշվ. աշխ., էջ 401:
25. «Ժամանակագրություն...» (հավելված), էջ 42:
26. **Գ. Մ. Գրիգորյան**, Պատմական Սյունիքի մի շարք գյուղերի տեղադրության հարցի շուրջ, «ՊԲՀ», 1966, N 4, էջ 233:
27. «Ժամանակագրություն...», նույն տեղում:
28. «Նոր Դար», 1885, N29, էջ 2:
29. **Ստեփանոս Օրբելյան**, էջ 401:
30. **Ա. Ղարագյոզյան**, նշվ. հոդվածը, էջ 197:









*ՀԱՐԹԵՔ. բնակարանային շինարարության ընթացում ոչնչացված գերեզմանոցը եւ մի քանի փրկված տապանաքարեր*

գազաթին նշմարվում են հնագույն ամրոցի պարըսպապատերի հիմքերը:

Հարթեքից 1,8 կմ հյուսիս՝ քրդերի կողմից՝ Թաղաքաշ կոչված գյուղատեղիի ավերակներն են:

### ԱԹԽՈՒՅՔ

Քաշունիքի՝ միջինից ավելի մեծ գյուղերի շարքում էր (12 դահեկան հարկաչափով)[31] Փոռջանցից 1,5 կմ հարավ՝ լեռնալանջի հարավահայաց փեշին գտնվող Աթխույքը: Թուրքերն այն կոչում էին Աթկիզ: Վերջինիս նույնականությունը Աթխույքի հետ ապացուցված է:[32]



*ՀԱՐԹԵՔ. ավերված աղբյուրի գուռը գյուղամիջում*

31. ***Ստեփանոս Օրբելյան***, *էջ 401:*
32. ***Ա. Ղարագյոզյան***, *նշվ. հոդվածը, էջ 197:*

Աթխույքից 1,5 կմ հարավ-արեւելք գտնվում է մինչեւ 1993-ը խաշնարած թուրքերով բնակեցված եւ Սալդաշ կոչված գյուղը: Դրանից արեւելք, միմյանցից ոչ հեռու, գտնվում են եւս 4 գյուղատեղիներ, որոնց պատմական անունները մեզ չեն հասել, իսկ խաշնարածները դրանք կոչում էին Չարպալու, Բոյունաղար, Բալլուդայա եւ Մոլլալի:

Որոտանի աջ ափի երկայնքով, սկսած Երկաթավորքից, տեղադրված են Միրլյար, Հալ, Մամար, Ուլաշլի եւ Աբիլջա գյուղերը, իսկ Գիլիջան կամ Խալիջան եւ Խոջախան կամ Խոջա-Օհան գյուղերը գտնվում են Հակարիի եւ Որոտանի միախառնման վայրից ավելի ներքեւ: Հիշյալ գյուղերը արդեն XVII-XVIII դարերի սահմանագլխին հիմնականում հայաթափ էին, եւ նրանցում հայոց հետքերի ավելի քիչ կարելի է հանդիպել: Այնուամենայնիվ, որոշ փշրանքներ այսօր էլ նկատելի են: Դրանցից հիշատակելի են Մամար գյուղի հյուսիսային եզրին գտնվող հին գյուղատեղիի ավերակները, նաեւ Գիլիջանում իշխանական ապարանքի մնացորդները, որն, ի դեպ, Ղ. Ալիշանը նկարագրել է հետեւյալ կերպ. «...Խալիճան, առ որով աւերակ տեղի մի կամ ապարանք դարպասի կոչեցեալ, որոյ դրան գեղեցիկ կոփածոյ քարամբք կերտեալ է, որպիսի եւ անդաստակ ապարանիցն կործանեալ եւ շուրջ զնովաւ անգիր գերեզմանք հայոց...»:[33] Ինչ վերաբերում է Խոջախան գյուղանվան ստուգաբանությանը, ապա այդ առթիվ կա հետեւյալ մեկնաբանությունը. «... է մեծագոյն գիւղ Խօճախան, մերձ ի հուն անցի գետոյն այսպէս աղաւաղ կոչեցեալ յայլազգեաց, յանուանէ Խօճայ Յովհան ճոխի առն վաճառականի, զորոյ ինչս յափշտակեաց Փաթ-Ալի բռնաւորն՝ դիմամարտ Դաւթի բէկի եւ ազգատ արար»:[34]

Մի աննշան բերդակի, բայց ավելի ճիշտ՝ դիտակետ-պահակատան նշանակություն է ունեցել Որոտան եւ Հակարի գետերի միախառնման տեղից ոչ հեռու, նրանց միջեւ երկարած հրվարդանի ծայրին պահպանված ավերակը:

Խոջախանից հյուսիս-արեւմուտք գտնվող եւս երկու գյուղատեղիները խաշնարածներից ստացել են Աղաքիշիլար եւ Ղիյասլի անունները: Դրանց պատմական անունները մոռացության են մատնըված:

***Որոտան եւ Հակարի գետերի միջակայք:*** Սյունյաց աշխարհի երկու գլխավոր գետերի միջեւ, նրանց ստորին հոսանքի շրջանում ընկած տարածքը մոտավորապես ունի դեպի հարավ ուղղված սրածայր եռանկյունու տեսք:

Տարածաշրջանի համարյա բոլոր բնակավայրերը գոյացել են հիշյալ գետերի ափերին, իսկ լայնարձակ միջակայքը հիմնականում օգտագործվել է իբրեւ արոտավայր (հատկապես վերջին երկու հարյուրամյակում, երբ հայաթափ գյուղերում բուն դրեցին խաշնարած ցեղերը):

Տարածաշրջանի հնավայրերը ներկայացնում ենք նախ Որոտան գետի ձախափնյակի երկարությամբ, ապա Հակարիի աջափնյակով, գետերի հոսանքն ի վար:

Ղուբաթլիի շրջանում, Որոտան գետի ձախափնյա առաջին կամ ամենավերջին գյուղը մինչեւ 1993 թ. թրքաբնակ Էյվազլին էր: Սրանից 1 կմ հյուսիս-արեւելք՝ Վարարակն եւ Որոտան գետերի միջեւ հրվանդանաձեւ երկարած «Յազի» կոչված տեղամասում, պահպանվում է XV-XVII դարերի հայոց գերեզմանոց:

Հիշյալ երկու գետերի միախառնման վայրին մոտ գտնվող Դավուդլու գյուղատեղիի արեւմտյան ծայրին պահպանվում է եւս մեկ գերեզմանոց: Շիրմաքարերի մեծ մասն անմշակ սալատապաններ են: Թաղումներն իրականացված են բավականին մեծ խորությամբ: XX դարի սկզբներից այստեղ հաստատված խաշնարածներն իրենց թաղումները կատարել են հայոց գերեզմանատան հարեւանությամբ, քիչ ներքեւ (հարավ-արեւելյան ուղղությամբ): Ս. Խանզադյանն այստեղ պահպանված մի տապանաքարին կարդացել է. «ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԴԱՎԻԹ ՔԱՋ ԶՕՐԱՎԱՐԻՆ, ԹՎՆ. ՌԾԸ (1609)»: Ս. Խանզադյանը նշել է նաեւ, որ Դավուդլուն պատմական Մարգաձոր գյուղն է,[35] բայց որեւէ հիմք չի նշել, իսկ պատմաբան Շ. Մկրտչյանը գյուղի նախկին՝ հայկական անվանաձեւ է համարում՝ Դավթաշենը:[36] Ի դեպ, մոտակա հայ բնակիչներն էլ այդ են պնդում:

Դավուդլու գյուղատեղիի արեւելյան ծայրում՝ ճանապարհից ցած, ավերակ ջրաղացի մնացորդներն են:

## «ԼԱԼԱՁԱՐ» ԿԱՄՈՒՐՋ

Դավուդլու գյուղատեղիից 2,5 կմ արեւելք, Որոտան գետի վրա կանգուն է երկթռիչք, քարաշեն, ամբակուռ մի կամուրջ: Կամարները սրբատաշ են՝ քարատեսակը՝ գորշ բազալտ: Ձախակողմյան թռիչքի երկարությունը 12,37 մ է, իսկ աջակողմյանը՝ փոքրինչ ավելի: Եզրապատնեշներ ունեցող անցուղին ունի 4,05 մ լայնություն: Կամրջի ձախափնյա խելի արեւելահայաց պատին ագուցված է մի շրջանաձեւ քար, որի հղկված երեսին 10 տողով փորագրված է

33. *Ղ. Ալիշան, Սիսական, Վենետիկ, 1893, էջ 282:*
34. *Նույն տեղում:*

35. ***Ս. Խանզադյան,*** *Ի՞նչ են պատմում քարերը, «Սովետական Հայաստան» ամսագիր, 1984, N 6, էջ 31:*
36. ***Շ. Մկրտչյան,*** *Ջեբրայիլ-Ղուբաթլուի հայկական պատմա-մշակութային հուշարձանները, «Ազատամարտ», 1993, N40, էջ 12:*









*«ԼԱԼԱԶԱՐ» ԿԱՄՈՒՐՋ. ընդհանուր տեսարաններ, աջակողմյան թռիչքը եւ միտումնավոր քերված շինարարական արձանագրությունը*

եղել շինարարական արձանագրությունը: Ըստ այդմ՝ իր չափերով բավականին մեծ այս կամուրջը 1867 թ. կառուցել է խնձորեսկցի Հովակիմ Լալազարյանցը: Ի դեպ, «Լալազարի» կամրջի հիմնադրման մասին մերձակա գյուղերի հայերի շրջանում առ այսօր պահպանվել է մի գեղեցիկ եւ ուշագրավ պատմություն:[37]

1900-1902 թթ. ընթացքում կամուրջը հիմնավորապես նորոգել է Հովակիմ Լալազարյանցի որդին՝ Սիմեոն Լալազարյանցը: Ժամանակի մամուլն այդ մասին գրել է. «Խնձորեսկ գիւղացի Յովակիմ Լալազարեանցի՝ 1860-ական թուականներին Բարգիւշատ գետի վրա կառուցած քարէ կամուրջը քայքայված էր, անպէտքացած: Այժմ նա վերանորոգված է եւ արդէն համարեա պատրաստ է: Վերանորոգողը հանգուցեալի որդի Սիմէոնն է. նրա ծախսով ճիշտ տարի ու կէս է, ինչ աշխատանքներ էին կատարվում կամուրջի վերանորոգութեան վրա: Ինքը՝ Սիմէօն Լալազարեանցը անձամբ հսկում էր այդ գործի վրա…»:[38]

Ցավոք, կամրջի շինարարական 10 տողանոց արձանագրությունը տեղի թրքացած քրդերի կողմից վերջին տարիներին միտումնավոր կերպով քերվել է եւ այժմ գրեթե չի ընթերցվում:

«Լալազարի» կամրջից 350 մ Որոտան գետի հոսանքով ներքեւ՝ դեռ պահպանվում են XIX դարում կառուցված ջրաղացի ավերակները, իսկ կամրջից 1,2 կմ հյուսիս-արեւելք, Ալղուլիուշաղի կոչված

37. **Ս. Կարապետյան**, *Քաշունիք-Բարկուշատ-Ղուբաթլի. հայկական պատմական հուշարձանները. «Անտեսում», N15, էջ 18:*

38. *«Մշակ», 1902, N 161, էջ 2:*

գյուղատեղիի մոտ, անվնաս է ժայռափոր մի եկեղեցի: Սրա գոյությունը վկայում է Երվանդ Լալայանը, որը նշում է, որ այն, ինչպես մյուս եկեղեցիները «... իբր փարախ կամ գոմ են ծառայում: Նոյն դրութեան մէջ է նաեւ Ալիղուլի-ուշաղի թրքաբնակ գիւղի ժայռի մէջ փորուած փոքրիկ եկեղեցին, որից փոքր ինչ բարձր կան քարայրներ եւ հնձաններ ու դիպիճաղ (կարաս)»:[39]

Ալղուլիուշաղի գյուղատեղիում եւ մերձակայքում պահպանվում են նաեւ «Քեյղալա» կոչված միջնադարյան (IX-XI դար) բերդի եւ աղբյուրի մնացորդները:

Մինչեւ շրջկենտրոն՝ Ղուբաթլի քաղաքը, Որոտան գետի ձախ ափին, կան միմյանցից ոչ հեռու թվով 7, մեծ մասամբ պատմական գյուղատեղիներ, բայց որոնք հայտնի են միայն վերջին 1-2 հարյուրամյակների ընթացքում այդտեղ հաստատված քրդերի կողմից տրված օտարոտի անուններով՝ Մելիքահմեդլի, Բալա-Հասանլի, Խդրլի, Աբդալանլի, Լեփեխեյրանլի, Ղայալի (Ղարագյուզլու) եւ Մահմուդլու: Թվարկված գյուղատեղիների տարածքում հայ մշակույթի հետքերը գրեթե իսպառ վերացված են:

Ինչ վերաբերում է Ղուբաթլի քաղաքում ստեղծված պատմա-երկրագիտական թանգարանին, ապա դրա բակում շրջանի տարբեր հնավայրերից (ցավոք անորոշ են դրանց նախնական հասցեները)



*ՂՈՒԲԱԹԼԻ. տապանաքար (XVI-XVII դդ.) փոխադրված շրջկենտրոնի թանգարան*

ժողովված են մի քանի գերեզմանական հուշարձաններ: Մասնավորապես՝ 4 տապանաքարերից 1-ը ուղղանկյունաձեւ սալատապան է, 1-ը՝ կենցաղային թեմաներով պատկերազարդված, իսկ 2-ը խոյակերպ շիրմաքարեր են:

Ղուբաթլիից գետի հոսանքով ցած, մինչեւ Որոտանի եւ Հակարիի միախառնման վայրը գտնվում են միայն օտարոտի անուններով մեզ հասած հետեւյալ գյուղատեղիները՝ Գլոդակլար, Սարայ, Դիլյալիմյուսքանլի, Ղազյան եւ Քեյդաղըխ:

Նույնպիսի գյուղատեղիների մի երկար շարք ձգվում է գետի աջ ափի երկարությամբ: Հոսանքն ի վար՝ միայն Ղուբաթլիի շրջանում գտնվածները հետեւյալներն են՝ Քեոլար,[40] Շիխովա (Ղարաքիշիլար), Ղարաջանլի, Ղարաղաչ, Սաղխլի, Սարիյաթաղ, Մոլլաբուրխան, Վերին Մոլլա, Կարթուբան, Ներքին Մոլլա, Հյուսեինուշաղի եւ Ղարալար:

***Հակարի գետի ձախափնյակ:*** Հակարիի ձախ ափի երկարությամբ եւս ձգվում է մի շարք՝ հիմնականում հինավուրց գյուղեր, որոնց պատմական անունները, նույնպես, մեզ չեն հասել, եւ այժմ դրանք հայտնի են միայն վերջին 1-2 հարյուրամյակների ընթացքում դրանցում հաստատված քրդական եւ թուրք զանազան ցեղերի կողմից տրված օտարոտի պատահական անվանումներով: Հակարի գետի՝ Ղուբաթլիի շրջանի միջով հոսող հատվածում (ձախ ափի երկայնքով) գտնվում են հետեւյալ գյուղերը՝ Մուրադխանլի, Խանդակ, Չըջիկ (Իշըլի), Փափար, Բալա-Մոլթանլի, Բեյխթաշ, Խոջիկ, Մարդանլի, Էֆենդիլյար, Յուսիֆբեյլի, Համզալի, Չայթումաս, Շոքլանլի,[41] Խանլըղ, Ալադուրշաղ, Մուղանլի, Մաֆրուզլի, Քյուրդ-Մաֆրուզլի, Ջիլանլի եւ Մեյալի: Վերոհիշյալ գյուղերում հայ մշակույթի հետքերը գրեթե իսպառ անհետացված են: Այնինչ հայտնի է, որ դեռեւս 1880-ականներին կիսավեր դրությամբ եկեղեցիներ էին պահպանվել՝ Չըջիկ կամ Ջաղջիկ (խորհրդային տարիներին վերանվանված՝ Իշըլի), Պապար (Փափար) եւ Խոջիկ գյուղերում:[42] Ուշագրավ են հատկապես Մուրադխանլի գյուղից 3 կմ հյուսիս-արեւելք, լեռնագագաթին գտնվող վաղ միջնադարյան բերդի եւ մատուռի ավերակները: Հնավայրը հայտնի է «Ղալալի» անվամբ:

Հակառակ Հակարիի հովտում գտնվող բնակավայրերի՝ ձորից վեր, ավելի դեպի արեւելք ընկած լեռնալանջերին ու հատկապես նախալեռնային անտառածածկ գոտում գտնվող հին գյուղատեղիներում դեռեւս առկա են երկրամասի բնիկներից մնացած նյութական մշակույթի հետքերը:

## ԱՄՈՒՏԵՂ

Շրջապատի համեմատ բավականին առանձնացած, ծովի մակերեւույթից 1315 մ բարձրությամբ,

39. *Ե. Լալայեան, Զանգեզուր, «Ազգագրական Հանդէս», գիրք Դ, N2, Թիֆլիս, 1898, էջ 50:*

40. *Ըստ Մորուս Հասրաթյանի՝ սա համապատասխանում էր Հաքանդ գավառի Քրվանք գյուղին (Մ. Հասրաթյան, Պատմահնագիտ. ուսումնասիրություններ, էջ 155):*

41. *Ի դեպ, խաշնարած Շոքլանլի կոչված ցեղը, որից եւ իր անունն էր առել նրանց բնակավայրը, հայտնի էր իր ապօրինի գործողություններով: Օրինակ՝ Խնձորեսկ գյուղին պատկանող 500 դեսիատին հողատարածքին 1913 թ. նրանց տիրանալու հանգամանքը ժամանակի մամուլի հավաստմամբ սպառնում էր վերածվել արյունահեղության («Հորիզոն», 1913, N124, էջ 3):*

42. *«Արցախ», նշվ. աշխ., էջ 400:*






*ԱՄՈՒՏԵՂ. լեռան տեսքը հյուսիսից, գագաթնամերձ հատվածը արեւելքից, եկեղեցու տեսքը հյուսիս-արեւմուտքից եւ հարավ-արեւելքից*




*ԱՄՈՒՏԵՂ. լեռան գագաթին գտնվող եկեղեցու հատակագիծը*

հարավ-արեւմուտքից եւ արեւմուտքից ամեհի քարափներով եռիզված Ամուտեղ լեռը գտնվում է Հակարի գետի ձախ ափից ուղիղ գծով 5 կմ արեւելք:

Լեռան գագաթին ցայսօր կանգուն է XVII դարի վերջին կամ XVIII դարի սկզբներին կառուցված մի փոքրիկ եկեղեցի: Այն թաղածածկ, միանավ շինություն է՝ կառուցված կրաքարով եւ կրաշաղախով: Միակ՝ արեւմտյան ճակատից բացված մուտքի անկյունաքարերը սրբատաշ են: Խորանը ուղղանկյունաձեւ է: Արձանագրություններ չկան: Արտաքին չափերն են 7,67x4,79 մ:

Ամուտեղի եկեղեցին, մինչեւ Հարար գյուղի հայաթափվելը, հանդիսացել է վերջինների գլխավոր ուխտատեղին:[43]

Հնավայրի առաջին նկարագրողներից մեկը՝ ե-

*43. Այդ մասին տես ներկա աշխատության էջ 183-ում: Նաեւ՝ «Նոր Դար», 1899, N 63, էջ 3:*

պիսկոպոս Բարխուդարյանցը, նշել է «Քարուկիր պատով պարսպուած է վաղ ժամանակից սարիս գլուխն, որ ունի բաւական մեծութիւն, ամուր դիրք, պատուական տեսարան...»:[44] Հարկ է նշել, որ բացի «պատուական տեսարան»-ից մնացած տվյալներն իրականությանը չեն համապատասխանում. պատվարժան հեղինակը, հավանաբար անձամբ տեղում չլինելով, հենվել է ոչ լավատեղյակ անձանց պատմածների վրա:[45]

### ԲԱՇԱՐԱԹ

Անշուշտ Բաշարաթը փվյալ բնակավայրի պատմական անունը չէ, բայց թվում է, որ այն այդպես է կոչվել առնվազն XVIII դարի սկզբներից: Նույն դարի 1-ին կեսին գյուղից հեռացած հայերի մի մասը հաստատվել է պատմական Կապաղակի Ճալեթ գյուղում, որտեղ նրանք կրել էին Բաշարաթյաններ (Պաշարաթյաններ) ազգանունը (հանդիպում է տեղի բազմաթիվ փաստաթղթերում):

Գյուղը գտնվում է Ամուտեղ լեռան արեւելյան կողմում՝ լեռնալանջի հարավ-արեւելահայաց թեքության վրա, իսկ ծովի մակերեւույթից՝ 1030-1160 մ բարձրության վրա:

Դեռեւս XIX դարի վերջին գյուղում ավերակ դրության մեջ է եղել եկեղեցին:[46] Ներկայում դրա հետքն իսկ չկա:

Հայաթափ գյուղատեղիում հաստատված թուրք խաշնարածների թիվը Բաշարաթում միշտ էլ աննշան է եղել: Այսպես, 1914 թ. այդտեղ ընդամենը 43 թուրք է եղել,[47] իսկ 1976-ին՝ 256:[48]

1905-06 թթ. Բաշարաթը, չնայած իր սակավաբնակ լինելուն, գավառի առավել անհանգիստ գյուղերից էր: Այդ տարիներին Բաշարաթի ավազակաբարո թուրքերը մինչեւ իսկ ընդդիմացել էին կառավարական զորքերին, որի համար պատժվել են. «Ամսիս 16-ին, երբ կօզակների զօրաբաժինը մրտնում էր թուրքական Բաշարաթ գիւղը (Զանգեզուրի գաւառում), Կօզակների վրա յանկարծ կրակ բաց արին: Կօզակները ստիպված էին պատասխանել թնդանօթաձգութեամբ: Կան քանդված տներ եւ սպանված թուրքեր»:[49]

### ՀԱՏՔ

Բաշարաթից 3 կմ հյուսիս-արեւմուտք գտնվում է ըստ ամենայնի իր նախնական-պատմական անվամբ մեզ հասած՝ գավառի փոքրիկ գյուղերից մեկը՝ Հատքը:

Այն տարածված է ծովի մակերեւույթից 1250-1260 մ բարձրություն ունեցող, հյուսիսից-հարավ ձգվող հարթավանդականաձեւ տեղանքի վրա:

Գյուղի դեռեւս XIX դարի վերջին կիսավեր վիճակով պահպանված եկեղեցու[50] հետքն իսկ այժմ չի մնացել, բայց ահա՝ գյուղից 250 մ հյուսիս գտնվող բլրի վրա, պահպանվում են հայոց գերեզմանատան անմշակ սալատապանները: Թաղումները իրականացվել են բավականին մեծ խտությամբ: Համանման այլ հնավայրերի հետ վերջինիս համեմատական ուսումնասիրությունը թույլ է տալիս տվյալ գերեզմանոցը թվագրել XV-XVIII դարերով:

Հատքում հայ կյանքը մարելուց հետո՝ XIX դարի վերջերից, այնտեղ հաստատված խաշնարածները իրենց հանգուցյալներին ամփոփել են հայոց գերեզմանատան արեւելյան կողմում:



ՀԱՏՔ. տեսարան գյուղից

Հատքից 1,5 կմ արեւելք գտնվում է քրդական Միլանլի ցեղանունը[51] կրող, սակայն կառուցապատման առանձնահատկություններից ելնելով՝ անշուշտ, պատմական մի գյուղատեղի եւս:

### ԴԱՇՏԱՀԱՏ

Այս անվամբ մեր օրերը հասած ոչ պակաս պատմական գյուղատեղին գտնվում է Հատքից ընդամենը 1,5 կմ հյուսիս-արեւմուտք, Վաղավեր վտակի աջ կողմում, ծովի մակերեւույթից 1100 մ միջին բարձրության վրա:

Գյուղի արեւմտյան եզրին տարածված է հայոց գերեզմանատունը, որը հար եւ նման է Հատքի վերոհիշյալ գերեզմանոցին, ուստի եւ թվագրվում է XV-XVIII դարերով: Գերեզմանոցի արեւելյան կողմում

44. *«Արցախ», նշվ. աշխ., էջ 401-402:*

45. ***Ս. Կարապետյան,*** *Նորահայտ հուշարձաններ Ղուբաթլիից. «Հայրենիքի ձայն», 1994, N15, հունիսի 2-8:*

46. *«Արցախ», նույն տեղում:*

47. *"Кавказский календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 97:*

48. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան», (ադրբեջաներեն), հատոր II, Բաքու, 1978, էջ 48:*

49. *«Մշակ», 1906, N39, 22 փետրվարի, էջ 1:*

50. *«Արցախ», նշվ. աշխ., էջ 400:*

51. *«Մեղու Հայաստանի», 1877, N17, էջ 2:*

52. *«Արցախ», նշվ. աշխ., էջ 400:*









*ՀԱՏՔ. հայոց գերեզմանատան մնացորդները գյուղի հյուսիսային եզրին*

*ԴԱՇՏԱՀԱՏ. հողաթմբի վերածված հայոց եկեղեցին եւ գերեզմանոցը*

նշմարվում են XIX դարի վերջին ավերակ,[52] իսկ այժմ՝ գրեթե հիմնավեր եկեղեցու կրաշաղախ հիմքերը: Եկեղեցապեղին ունի մոտավորապես 8x5 մ արտաքին չափեր եւ անկասկած՝ միանավ, թաղակապ շինություն է եղել:

Դաշտահատից 1,5 կմ հյուսիս-արեւելք պատմական Վաղավեր գյուղատեղիի մնացորդներն են: Թուրքերն այն թարգմանաբար կոչում էին Թեզխաբաբ: Գյուղը հայաբնակ է եղել մինչեւ 1950-ական թվականները, բայց քանի որ Վաղավերը երբեւէ վարչականապես Ղուբաթլուի շրջանին չի պատկանել, այլ, թեկուզ անկլավ դրությամբ պատկանել է ԼՂՀ Հադրութի շրջանին (նախկինում էլ՝ ԼՂԻՄ-ի նույն շրջանի մեջ էր), նրան վերաբերող շարադրանքն այստեղ բացառում ենք:[53]

# ԿՈՎՍԱԿԱՆԻ (ԶԱՆԳԵԼԱՆ) ՇՐՋԱՆ




***Պատմական ակնարկ:*** 707 քկմ մակերեսով շրջանը կազմավորվել է 1930 թ.: Այն համապատասխանում է պատմական Սյունիքի 12 գավառներից՝ Կովսականին: Վերջինիս սահմանները ստույգապես որոշված չեն, բայց ակնհայտ է, որ ներկայիս Զանգելանի շրջանը զբաղեցնում է նախկին գավառի կենտրոնական մասերը:

Վաղ միջնադարում Կովսականի մի ծայրը (արևելյան) հասնում էր. «... մինչեւ Նակորզյան քաղաքը...»,[1] իսկ Նակորզանը, կարծում ենք, գտնվում էր Հակարի եւ Արաքս գետերի միախառնման վայրից ոչ շատ հեռու (հավանաբար՝ ներկայիս Մինջեւանի տեղում), մանավանդ, որ հայտնի է նաեւ, որ Նակորզանը Աղավնագետի «պտույտների» (ստորին հոսանքում) մոտ էր գտնվում:[2]

Միջին դարերում Կովսական գավառն ավելի հայտնի էր այնտեղ գտնվող Գրիամ բերդի անունով. «Ութերորդը՝ Կովսական գավառը, որն այժմ Գրիամ են կոչում»:[3] Գավառում կային 53 հարկատու գյուղեր: Գրիամը, որի անունը տարածվել էր ողջ գավառի վրա, տարածքի գլխավոր բերդերից մեկն էր եւ կարեւոր դեր է կատարել Սյունյաց իշխանության (821-987 թթ.) եւ Սյունյաց թագավորության գոյության ընթացքում (987-1170 թթ.):

Գավառի հատկապես մերձարաքսյան հատվածները միշտ էլ հայտնի են եղել տաք կլիմայով: Օրբելյանը, նկարագրելով Վասակ մենակյացի այդտեղ ապրած 10 տարիները, նշել է, որ նա ապրել էր ընդեղենով ու ծառապտուղներով, քանի որ «Երկիրը ամառ ու ձմեռ Եգիպտոսի պես էր»:[4]

XVII-XVIII դարերի ընթացքում երբեմնի Կովսական-Գրիամը տրոհվեց մի շարք գավառակների. Չավնդուր, Գիլաբերդ կամ Կուլաբերդ,[5] Գուրիամ,

1. ***Անանիա Շիրակացի,*** *Մատենագրություն, Երեւան, 1979, էջ 295:*
2. ***Ստեփանոս Օրբելյան,*** *Սյունիքի պատմություն, Երեւան, 1986, էջ 117:*
3. *Նշվ. աշխ., էջ 402:*
4. *Նշվ. աշխ., էջ 114:*

Աճան (Աճանան), մասամբ՝ Բարգուշատ (հարավային մասը) եւ այլն: Սրանցից մի քանիսն իրենց հերթին բաժանված էին էլ ավելի փոքր մասերի, որոնցից էր, օրինակ, Բարգուշատի արեւմտյան մասը զբաղեցնող Քյուփարա (նրա կազմում էին Սեւաքար, Չափնի, Ըրկենանց, Արծվանիկ, Ջեյվա, Խդրանց եւ Ագարակ գյուղերը):[6]

Խորհրդային հանրապետությունների սահմանագիծը որոշելիս թվարկված գավառակներից Աճանանը ամբողջապես միավորվեց ՀԽՍՀ Ղափանի շրջանի հետ, բայց մնացած գավառակների միայն արեւմտյան մասերը միավորվեցին Հայաստանի Հանրապետությանը, իսկ արեւելյան՝ առավել ցածրադիր, հատվածները բռնակցվեցին նորաստեղծ Ադրբեջանին: Դրանց տարածքի վրա 1930-ին գոյացվեց Զանգելանի վարչական շրջանը, որտեղից, անցնող տասնամյակների ընթացքում, դուրս մղվեցին դեռեւս հայաբնակ գյուղերի վերջին բնիկ բնակիչները (օրինակ՝ Տանձաթափա գյուղը վերջնականապես հայաթափ եղավ 1967 թ.), եւ շրջանն իսպառ հայազրկվեց: Դրա փոխարեն ավելացավ թուրք ազգաբնակչության թիվը: Վերջիններս համալրվեցին նաեւ թուրքերի հետ արագորեն ձուլվող քրդերով: Արդյունքում՝ արդեն 1978 թ. շրջանն ուներ 81 թրքաբնակ գյուղ, մեկ ավան՝ Մինջեւանը եւ մեկ քաղաք՝ Զանգելանը: Վերջինս մինչեւ 1957 թ. մի աննշան գյուղ էր, հետո՝ քաղաքատիպ ավան, իսկ 1967-ից՝ հանրապետական ենթակայության քաղաք: 1979 թ. հունվարի 1-ի մարդահամարի համաձայն՝ Զանգելանի շրջանն ուներ 28,400 բնակիչ:[7]

Զանգելանի շրջանը հիմնականում զբաղեցնում է Ողջի գետի ստորին հոսանքի շրջանը: Շրջանի կազմի մեջ ընդգրկված են նաեւ Ծավ կամ Բասուտ եւ Հակարի գետերի հոսանքի ստորին շրջանները:

Պատմական հուշարձաններով հարուստ են շրջանի հատկապես արեւմտյան, այն է՝ Հայաստանի Հանրապետության հետ սահմանակցող, առավել լեռնային եւ զգալի մասով նաեւ անտառածածկ հատվածները: Այդ հատվածի գյուղերը եւ տեղանքն՝ ընդհանրապես, պաշտպանության դեպքերում առավել հուսալի եւ հարմար են նկատվել, ուստիեւ պատահական չէ, որ հայերն այդ հատվածում ավելի երկար են գոյատեւել, իսկ մերձարաքսյան դաշտավայրային հատվածները ավելի վաղ են հայազրկվել, ինչով էլ պայմանավորված՝ այդ տեղերում ավելի հազվադեպ են պահպանված հայ մշակույթի հետքերը:

Զանգելանի շրջանի հին բնակավայրերն ու պատմական հուշարձանները հարմար ենք նկատել ներկայացնել այն նույն սկզբունքով, որն արդեն կիրառել ենք Քարվաճառի, Քաշաթաղի եւ Քաշունիքի շրջանների համար, այն է՝ ըստ գետահովիտների: Տվյալ դեպքում՝ Հակարի գետի ստորին հոսանքի շրջանը, նույն գետի ավազանին պատկանող Թորոսաձորը, Ողջի գետի ստորին հոսանքի շրջանը, Բասուտաջրի ստորին հոսանքի ավազանը եւ մերձարաքսյան շրջանները:

***Հակարի գետի ստորին հոսանք:*** Հակարին աջից Որոտանին ընդունելուց հետո, հազիվ մի քանի կիլոմետր անց, մտնում է ներկայիս Զանգելանի շրջանի տարածքը: Այդտեղ այն հոսում է բավականին լայն հունով եւ միանգամայն հարթ տեղանքով: Գետի աջ ու ձախ կողմերով, մինչեւ Արաքսին խառնվելը, ձգվում են մեծ ու փոքր մի շարք գյուղեր, որոնք ներկայում հայտնի են միայն վերջին 1-2 հարյուրամյակի ընթացքում ստացած անուններով: Մասնավորապես՝ գետի աջ ափին իրար հաջորդում են Ռաբենդ, Ալիբեյլի, Սարալ, Խումարլի, Շարիֆան եւ Հաջալի գյուղերը, իսկ ձախակողմում՝ Աղալի, Բաբայլի, Մամեդբեյլի, Խավալի եւ Ջեռնալի գյուղերը:

Գետահովտի այս հատվածում հայ մշակույթի հետքերը գրեթե իսպառ վերացված են: Աղալի գյուղի մզկիթն ակնհայտորեն հիմնված է միջնադարյան հայոց եկեղեցու հիմքերի վրա,[8] իսկ Մամեդբեյլի եւ Շարիֆան գյուղերում պահպանվում են XIV դարով թվագրվող դամբարաններ: Բրոնզեդարյան ամրակները պահպանվել են Հաջալի գյուղի մոտ:

Ըստ երեւույթին, այս շրջանում է գտնվելիս եղել հետագայում Գյուտ անվանված, Վասակ մենակյացի կողմից V-VI դարերում հիմնադրված այն վանքը, որի համար Սյունյաց իշխանը հաստատել էր հետեւյալ սահմանները. «Տվեցին հինգ գյուղ՝ այսպիսի սահմաններով՝ սկսած Սեւասարից[9] մինչեւ Բոթիրոթեր, դեպի վար, որտեղ Թ-զենու գետն է, մինչեւ ուրկանոցի այգիները, այնտեղից մինչեւ Աղավնո գետի պտույտները, Նակորզանի եկեղեցու դիմաց, մինչեւ Աստծու տունը»:[10]

**ԹՈՐՈՍԱՁՈՐ**

Թ-որոսաձորը «... գտնվում է Եմազլու գիւղի հանդէպ եւ ձգւում է Խդրանցից մինչեւ Բարկուշատի գետը»:[11] Վտակն իր անունն առել է 1720-ականների սկզբին այդտեղ հաստատված Թ-որոս իշխանի անունից: Ըստ Օրբելյանի. «...Թ-որոս իշխանը գաղ-

5. ***Ղուկաս Սեբաստացի***, *Դավիթ Բեկ կամ Պատմություն Ղափանցոց, Երեւան, 1992, էջ 83:*
6. *«Ազգագրական հանդէս», գիրք XII, Թիֆլիս, 1905, էջ 177:*
7. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբջաներեն), հ. IV, Բաքու, 1980, էջ 317:*

8. *Այդ մասին տես՝ «Առեւտուր», N16, 1996, էջ 19:*
9. *Սեւասարը հետագայում քարգմանաբար կոչվեց Ղարադաղ:*
10. ***Ստեփանոս Օրբելյան***, *նշվ. աշխ., էջ 117:*
11. *«Ազգ. հանդէս», գիրք XII, Թիֆլիս, 1905, էջ 189-190:*

թած է եղել Սողանլուից եւ հասպարտուել է Թորոսաց-ձոր ասուած տեղում, որ գտնուում է Եմազլու գիւղի հանդէպ...»:[12] Այս վտակի հովտում եւ մերձակայքում են գտնվում Վերին, Ներքին եւ Միջին Եմազլու գյուղերը, ինչպես նաեւ Սպիտակաղբյուր (Աղբիս), Խաչքար (Սարալիխեշպար), Տանձապափ (Ղարաբաբա), Մեծ եւ Դարա Գիլյաթաղ, Վթանանց (Վենեթլի), Կզրխանա (Գիզըրխանա), Ալադին (Շամլի) եւ Իսքյանդարբեկլի գյուղատեղիները: Թվարկված գյուղերի մեծ մասին՝ ուշ շրջանում տրված օտար անունների կողքին, բարեբախտաբար, մոռացության չեն մատնվել նաեւ դրանց պատմական անունները:

## ՏԱՆՁԱՏԱՓ

Աղավաղված ձեւով Տանձաթափա կամ Ղարաբաբա անվանված հինավուրց Տանձատափը գտնվում է Թորոսաձորի ձախ կողմում՝ Կապանի շրջանի սահմանից ընդամենը 2 կմ հեռու, Ագարակ գյուղից 4,5 կմ հարավ-արեւելք, ծովի մակերեւույթից 700-740 մ բարձրության վրա:

Գյուղի վերաբերյալ մատենագրական հնագույն տվյալներ հայտնի չեն, այն հաճախակի սկսում է հիշատակվել XVIII դարի 20-ական թվականներից: Հայտնի է, որ Դավիթ Բեկի զինակից Թորոս իշխանը, նստավայր ունենալով ներկայիս Կապանի շրջանի Եղվարդ գյուղը, իշխում էր նաեւ. «... Ագարակ, Խդրանց, Վժանիս, Ջէյվա եւ այժմ աւերակ Գեղարքունի, Ղարաբաբա, Գզըրխանա եւ այլ գիւղերի վրայ...»:[13] Հայտնի է, որ Թորոս իշխանի կրտսեր որդու՝ Հեթումի որդիներից երկրորդը՝ Քարամը, որ արտասովոր ուժի տեր անձնավորություն էր, մելիքական իրավունքներով իշխում էր Քյուփարա գավառակի վրա: Մելիք-Քարամն ու իր հաջորդները (իր քաջությամբ հայտնի էր նաեւ Քարամի թոռ՝ Հայրումը) իրենց նստավայրը Ագարակ գյուղից տեղափոխում են Տանձատափ (Տանձաթափա) գյուղը: Սկսած Մելիք-Քարամից՝ տոհմի ներկայացուցիչները կոչվում են Մելիք-Քարամյաններ:[14] Տարածքի՝ ռուսաց տիրապետության տակ անցնելուց հետո մելիքները շարունակում են իրենց տիրույթներին տիրապետել կալվածատիրական (բեկական) իրավունքներով: Ի դեպ, մի լրագրական նյութի մեջ կա այն վկայությունը, որ գյուղը կառուցվել (հավանաբար՝ վերաշինվել) է 1870-ական թթ.: Ընդ որում, իբր՝ սկզբում 3-4 ընտանիք է եղել, եւ 30-35 տարվա ընթացքում (1906 թ. դրությամբ) հասել 33-35 տան:[15] 1897 թ. գյուղը բաղկացած էր 29 ծխից (218 շունչ), բոլորն էլ հայեր:[16] Հայտնի է նաեւ, որ 1906 թ. օգոստոսի 10-ին. «... թուրքերի մի ահագին խումբ յարձակւեց Տանձաթափայի վրա: Մինչեւ կէս օր դիմադրելով՝ հայերն անկարող եղան կանգնեցնել խուժումը: Ժողովուրդը հազիւ կարողացաւ փախչել Ագարակ: Հարուստ Տանձաթափան բոլորովին կողոպտուեց եւ հրդեհուեց: Խուժանը տարաւ 300 գլուխ տաւար, հարիւրաւոր բեռներով ցորեն, գարի եւ այլ տնային հարուստ իրեր: Ժողովուրդը փախաւ բոլորովին պլոկւած՝ 5 զոհերով եւ մի քանի վիրաւորներով: Սպանուեցին՝ Մելիք Քարամեանների տանից՝ Միքայէլ-բէկը՝ 70 տար., Բէգլար-բէկը՝ 65 տար., Բահրամ-բէկը՝45 տար., Բախշի-բէկի կինը՝40 տար. եւ Հաթամ-բէկի աղջիկը՝ 19 տար.: Թուրքերը նոյնպէս ունեցան զոհեր, բայց անյայտ թւով...»:[17] Ի նպաստ զրկյալ հայրենակիցների՝ Տիրմեզից Մելիք-Քարամյան եղբայրները 300 ռուբլի օգնություն էին ուղարկել:[18]

Հետագա տարիներին, սակայն, Տանձատափը կրկին շենացել է: Այն նույնիսկ խորհրդային մի քանի տասնամյակների ընթացքում (մինչեւ 1967 թ.) շարունակեց մնալ հայաբնակ, որից հետո վերածվեց զուտ թրքաբնակ գյուղի:

Գյուղի հյուսիսային ծայրում, բլրաշարքի բարձրադիր տեղում, դեռեւս կանգուն է միանավ, թաղածածկ ծխական եկեղեցու շենքը: Այն կառուցված է անմշակ քարով, կրաշաղախով: Որոշ անկյունաքարեր սրբատաշ են: Ներքուստ սվաղված է: Խորանի երկու կողմերում ավանդատներն են, իսկ հյուսիսային պատի մեջ՝ իր ավանդական տեղում, մկրտարանի ավազանն է: Միակ մուտքը, որն այժմ ավերված է, բացված է հարավային ճակատից: Արտաքին չափերն են 14,50x8,30 մ: Արձանագրություններ չեն պահպանվել: Ըստ կառուցողական առանձնահատկությունների՝ կարելի է թվագրել XIX դարի կեսերով:

Եկեղեցու շուրջ տարածված գերեզմանոցը միջումնավոր կերպով ավերվել է 1989-93 թթ. ընթացքում, մինչեւ տարածքի ազատագրումը: Ներկայում հնավայրում պահպանվում են միայն բազմաթիվ բեկորված տապանաքարեր: Դրանցից մեկի վրա՝ Մելիք-Քարամյան տոհմից Հաթամբեկի հիշատակին (բեկորի չափերը՝ 63x53 սմ) կա եռատող արձանագրության մնացորդներ:

(ԱՅՍ Է) ՏԱՊԱՆ ՅԱԹԱՄ ԲԷԿ(Ի)...
...(Ա)ԿՈԲՋԱՆ ԲԷԿ ՄԷԼԻՔ Ք(Ա)...

---

12. «Ազգ. հանդէս», նոյն տեղում:
13. «Ազգ. հանդէս», էջ 189:
14. Թորոս իշխանից սերված տոհմի մասին ավելի մանրամասն տես մեր՝ «Մելիքանիստ՝ մոռացության թմբիրում» հոդվածը («Հայաստանի Հանրապետություն», օրաթերթ, 1995, 21 օգոստոս, N209, էջ 2:

15. «Մշակ», 1906, N 257, 23 նոյեմբերի, էջ 2:
16. Ա-Դո, Հայ-թաթարական ընդհարումը Կովկասում (1905-1906 թթ.), Երեւան, 1907, էջ 247:
17. Նշվ. աշխ., էջ 292:
18. «Մշակ», 1906, N257, 23 նոյեմբերի, էջ 2:









ՏԱՆՁԱՏԱՓ. եկեղեցու տեսքը հարավ-արեւմուտքից եւ հարավ-արեւելքից, խաչաքանդակ՝ եկեղեցու հարավային ճակատում եւ տապանաքարի բեկոր՝ շուրջը տարածված հիմնավեր գերեզմանոցում




ՏԱՆՁԱՏԱՓ. եկեղեցու հատակագիծը

... (18)82 ԱՄԻ:

Գյուղի հյուսիս-արեւմտյան կողմում՝ Թորոսաձորով հոսող վտակի ափին, պահպանվում են 2 ջրաղացների ավերակները:

Տանձատափից 1 կմ հյուսիս, խաղողի նորատունկ այգիների տարածքում գտնվող երբեմնի



ՏԱՆՁԱՏԱՓ. խաղողի այգիներ հիմնելու հետեւանքով ոչնչացված գերեզմանոցում պահպանված խաչքարի բեկոր (XII-XIII դդ.)

խաչքարերով գերեզմանոցը հիմնավորապես ավերվել է այդու սպեղծման ժամանակ: Առանձին վազերի շարքերում պահպանվում են միայն բեկորված խաչքարեր: Դրանցից մեկն ունի XI-XII դարերին բնորոշ ոճավորում ունեցող խաչաքանդակներ (անարձանագիր է):

### ԽԱՉՏԱՓ

Խորհրդային փարիներին Զանգելանի շրջանում՝ միմյանցից 5 կմ հեռավորությամբ, թրքաբնակ դարձած երկու գյուղեր կրում էին Կույուդարախեշպար եւ Սարալիխեշպար անունները: Վերջինից 1 կմ արեւմուտք՝ Կապանի շրջանի սահմանի մոտ, խիտ մացառուտի մեջ, պահպանվել է միջնադարյան խաչքարերով գերեզմանոց: Հնավայրից գտնված խաչքարերից մեկը տարիներ առաջ ագարակցի հայերը փոխադրել են իրենց գյուղ եւ կանգնեցրել նորոգված ծխական եկեղեցու հարավային պատի տակ: Խաչքարն անարձանագիր է: Ոճական առանձնահատկությունները բնորոշ են XVII-XVIII դարերին:



*ԽԱՉՏԱՓ. Ագարակ գյուղ փոխադրված խաչքար*

Սարալիխեշպարից 2,7 կմ արեւելք Աղբիս գյուղատեղին է: Հավանաբար սա Բարկուշապ գավառի Սպիտակ Աղբյուր[19] գյուղն է, որի կենտրոնում ցայսօր պահպանվում են հայաշեն աղբյուրի միակտոր քարերից կերտված գոռերը:

### ՎԹԱՆԱՆՑ

XVIII դարի վերջերին այստեղ հաստատված թուրքերը, աղավաղելով գյուղի պատմական անվանումը, այն կոչել են՝ Վեներլի, իսկ բնիկներից մնացած նյութական մշակույթի հետքերը ժամանակի ընթացքում ջանադրաբար ոչնչացրել են:

Վթանանցը գտնվում է Թորոսածորով հոսող Ալադին կոչվող վտակի ձախ ափին, ծովի մակերեւույթից 490-530 մ բարձրության վրա:[20]

Գյուղից 1 կմ արեւմուտք՝ Դարա Գիլյաթաղ գյուղի հյուսիսային եզրին, վտակի աջ ափից քիչ բարձր, պահպանվում է գյուղի երբեմնի բնիկներից «ժառանգված» քարաշեն աղբյուրը, որի գոռերից մեկի հարավահայաց ճակատին ձգվող հայերեն արձանագրությունը միտումնավոր կերպով քերված է:[21]



*ԴԱՐԱԳԻԼՅԱԹԱՂ. աղբյուրի գուռ միտումնավոր քերված հայերեն արձանագրությամբ*

Աղբյուրը հայտնի է «Աթրջանի աղբյուր» անվամբ: Վիմագրից ընթեռնելի է միայն մի քանի տառ:

### ԿԸՁԸՐԽԱՆԱ

Վթանանցից 5 կմ արեւմուտք՝ Սուսանսարի հյուսիս-արեւելահայաց անտառախիտ փեշին, պահպանվում են Կըզըրխանա գյուղատեղիի մնացորդները: Մերձակա բնակիչներն այն անվանում են Գիզըրխանա, բայց XVII-XVIII դարերում կազմված Բարգուշատ գավառի գյուղացուցակում այն նշված է «Կեազարխունի» ձեւով:[22] Հայաբնակ է եղել մինչեւ XIX դարի սկզբները: XVIII դարում գյուղը մաս էր կազմում Թորոս իշխանի փիրույթների:

Ի դեպ, գյուղի անվանը հանդիպում ենք նաեւ Ագարակ գյուղի եկեղեցու հարավային պատին՝ 1831 թ. փորագրված մի նվիրատվական արձանագրության մեջ.

ԿԸՁԸՐԽԱՆՑԻ ՍԱՐԳԻՍ ՊԵՏՐՈՍԵԱՆ|
ԵՒ ԻՒՐ ԿՈՂԱԿԻՑ ԳՆԵԱ ՀԱՄՐԱԹԵԱՆ|
ԵՏՈՒՆ ՔԱՐ ԱՅՍ ՅԻՇԱՏԱԿ ԻՆՔԵԱՆ |
ԵԿԵՂԵՑԻՆ ՕԳՆԱԿԱՆ ԼԻՑԻ ՊԱՀԱՊԱՆ|

19. «Ժամանակագրութիւն...», Երեւան, 1942, էջ 42:

20. Այդ գյուղի մասին տես՝ «Ժամանակագրութիւն...», նույն տեղում:

21. Այդ մասին տես՝ «Առեւտուր», 1996, N16, էջ 18:

22. «Ժամանակագրութիւն...», էջ 42:

ԿԱՐԴԱՑՕՂՆ Խ(Ո)Ջ(Ա) ՍԱՐԳՍԻՆ ԱՍԷՆ ՈՂՈՐՄԻ ԱՄԵՆ | 1831 ԱՄԵԱՆ | ՅՆԹՀ (Հիսուս Նազովրեցի Թագավոր Հրեից):

Կըզըրխանայից 2 կմ հարավ-արեւմուտք՝ Սուսանսարի բարձրադիր մասում, պահպանվում են «Օհանա եղցի» վանքի եւ միջնադարյան բերդի ավերակները, որոնք, հավանաբար, պատկանում են մեծահռչակ Գրհամ բերդին:

***Ողջի գետի ստորին հոսանքի շրջան:*** Կապան քաղաքից 3-4 կիլոմետր անց Ողջի գետը մըտնում է Զանգելանի շրջանի տարածք եւ մինչեւ Արաքսին խառնվելը՝ երկու կողմերից ընդունում է միայն մի քանի աննշան վտակներ: Գետի այդ հատվածի ափերին գտնվող գյուղերի հիմնական մասը հայաթափ է եղել XVIII դարի վերջերին:

Ողջիի ձախ ափին իրար են հաջորդում Չինարի (Սեյդլար), Գյոդակլար, Նամիլար, Թաղիլի, Գենլիկ, Մալատքեշին, Իչարի-Մուշլան, Կոսական[23] եւ Ջահանգիրբեկլի գյուղատեղիները, որոնք բոլորն էլ հին հայկական բնակավայրերի տեղում XIX դարում գոյացած թրքաբնակ գյուղեր էին, եւ օտարաշունչ անուններն էլ ունեն առավելագույնը՝ 200 տարվա պատմություն:

Գետի աջ ափի գյուղատեղիների թիվն ավելի մեծ է: Դրանք նույնպես հիմնականում, մեզ են հասել օտարոտի անվանումներով՝ Ղազանչի, Աղբյանդ, Գեյալի, Խըրդաղշլաղ, Շարիկան, Օթուզինջի, Գոն (Գյունոշլաղ), Փիրվեյսլի, Ջանբար, Բուրունլու, Գեյալի (2-րդ), Նոխութլու, Շայիֆլի, Սաֆարլար, Նաջաֆլար, Յուսիֆլար, Ղարագյոլ, Չախուրյուրդ, Նոր- գեղ (Թազաքյանդ), Սարիդշլաղ, Քեչիկլի, Բեշդալի, Զանգելան (շրջկենտրոնը), Ղըրխ-Մուշլան, Ուդգյուն եւ Թուրաբադ: Հիշված բոլոր գյուղերն էլ գտնվում էին ուշ միջնադարում կազմավորված Գիլաբերդ գավառակի մեջ: Նրանցից մի քանիսը (օրինակ՝ Գոն, Նոխութլու. Չխուրուրդ, Նորգեղ) հիշվում են Տաթեւի վանքին պտղահարկ վճարող գյուղերի շարքում:[24] Գոնը հիշվում է նաեւ Օրբելյանի՝ Կովսական գավառի հարկատու գյուղերի ցուցակում (5 դահեկան հարկաչափով):[25]

Ինչ վերաբերում է 1957 թ-ից քաղաքատիպ ավանի, իսկ 1967 թ-ից հանրապետական ենթակայության քաղաքի կարգավիճակ ստացած Զանգելան շրջկենտրոնին (մինչեւ 1957 թ. կոչվում էր Փիրչեւան), ապա սրա պատմական անվան պարզաբանման խնդրով զբաղվել եւ միանգամայն ճիշտ եզրահանգում է կատարել պատմաբան Հ. Կարագյոզյանը, ապացուցելով, որ Ստ. Օրբելյանի կողմից Կովկասական գավառի կազմում հիշված Աշտարակ գյուղը՝ նույն ինքը ներկայիս Զանգելանն է. «... աշտարակ բառը դիտվել է որպես բուրջ: Բնականաբար, բերդին (աշտարակին, բուրջին) կից բնակավայրի անունը կարող էր կազմվել բուրջ («աշտարակ») բառով. Բուրջի աւան>Բուրջեւան>Բրջեւան: Փոխառու լեզուն այս տեղանունը ժողովրդական ստուգաբանության հիման վրա եւ արտասանության ունակությունների սահմաններում դարձրել է Փիրչիվան...»:[26]

Հայ մշակույթի հետքերը ցայսօր առկա են հետեւյալ վայրերում.

- Եկեղեցի՝ Ջանբարի արեւմտյան եզրին (կանգուն է):
- Եկեղեցի՝ Գեյալի գյուղի մոտ, Նոխութլու գյուղատեղիում (ավերակ):
- Եկեղեցի՝ Նաջաֆլարից 1 կմ արեւելք (ավերակ):
- Եկեղեցի եւ գերեզմանոց՝ Չխուրուրդ գյուղատեղիում (ավերակ):
- Աղբյուր, գերեզմանոց եւ գյուղատեղի Թաղարյան գյուղատեղիում, Շայիֆլուից 0,5 կմ հարավ-արեւմուտք, Սաֆարլար տանող ճանապարհին:
- Եկեղեցի՝ Քեչիկլի եւ Բեշդալի գյուղերի միջեւ: Այն մինչեւ վերջին տարիներն օգտագործվում էր իբր պահեստ եւ ամբողջապես կանգուն էր, բայց 1990-1993 թթ. միջակայքում քանդել են: Ոչ հեռու պահպանվում է նաեւ հայաշեն աղբյուրը:

***Բասուտաջրի ստորին հոսանքի շրջան:*** Այս շրջանն էլ խորհրդային հանրապետությունների սահմանաձեւման ժամանակ բռնակցվեց Ադրբեջանի հանրապետությանը:

Ուշ միջնադարում ձեւավորված Չավնդուր գավառը ճշգրտորեն զբաղեցնում է Բասուտաջրի ավազանը: Հովտում գտնվող գյուղերի մեծ մասը մեզ է հասել XVIII-XIX դարերում ստացած նոր անուններով: Հազվադեպ հանդիպում են նաեւ միջնադարյան անվանումները պահպանած գյուղեր: Բասուտաջրի ձախ ափին իրար են հաջորդում Քյոլլուղշլաղ, Բերքնի (Շատարիս), Մեշադի-Իսմայիլի, Շաֆիբեկլի, Ղարադարա եւ Բահարլի, իսկ աջ ափին՝ Չինարի (Ռանջդարա, Ռազդարա), Թոփ, Խըլնձը, Քոթանլար, Սվաջուր (Սեւաջուր), Օրդաքլի եւ Ղարագյոզ գյուղերը: Թվարկածից զատ Բասուտաջրի ավազանի մեջ են մտնում նրա աջակողմյան՝ Ծոբաջուր վտակի հովտում գտնվող Ծոբի(Սոբու), Տորվանուտ (Տարվանոտ, Թարնեյուտ), Ղարաշլար եւ Չոպադարա գյուղատեղիները:

23. Ա. Ղարագյոզյանը այն միտքն է հայտնել, թե գյուղի անունը հետագայում տարածվել է ողջ գավառի վրա (**Արմեն Ղարագյոզյան**, Սյունյաց աշխարհի Կովսական գավառի տեղադրությունը. X դ., «ԼՀԳ», 1980, N12, էջ 100):

24. «Ժամանակագրություն...», էջ 41-42:

25. **Ստեփանոս Օրբելյան**, էջ 402:

26. **Հովհաննես Կարագյոզյան**, Հակահայկական սեղը եւ նրա չորս շրջկենտրոնները, «Երկիր» օրաթերթ, 1994, 12 հուլիսի, N131, էջ5:

## ԲԵՐՔՆԻ (ՇԱՏԱՐԻՍ)

Գյուղատեղիից 0,9 կմ հյուսիս-արեւմուտք, Կապանի շրջանի սահմանից 1 կմ հեռավորությամբ, ծովի մակերեւույթից 910 մ բարձրության վրա դեռեւս կանգուն է միանավ, թաղածածկ եկեղեցին, որի շուրջը երբեմնի հայաբնակ Բերքնի գյուղի մնացորդներն են: Այն կառուցված է անմըշակ քարով, կրաշաղախով: Ներքուստ սվաղված է: Ունի մեկ մուտք (հարավից), ավանդատներ





*ԲԵՐՔՆԻ. եկեղեցու տեսքը հարավ-արեւելքից եւ հատակագիծը*

(խորանի երկու կողմերում), մկրտարան (հս. պատի մեջ): Արտաքին չափերն են 14,50x9,10 մ: Երեսապատի որոշ քարերի հարթեցված մակերեսներին քանդակված են XVI-XVII դարերի ոճավորմամբ, պարզ խաչեր: Եկեղեցու կառուցողական եւ հորինվածքային առանձնահատկությունները եւս բնորոշ են նշված ժամանակաշրջանին:

## ՔՅՈՒԼԼՈՒՂՇԼԱՂ

Ավազակաբարո թուրքերի հանգրվաններից մեկն էր: Գտնվում է Բասուտաջրի եւ նրան ձախից միախառնվող Շիկահողի վտակի միջեւ՝ շատ մոտ Կապանի շրջանի սահմանին:

1906 թ. ամռանը, երբ թուրքերը Հանդ եւ հարա-





*ԹՈՓ. կամրջի տեսքը հարավից եւ աջափնյա խելը (XVI-XVII դդ.)*

կից հայաբնակ գյուղերը գրավելու փորձ էին արել, քյոլլուղշլաղցիները եւս մասնակցեցին այդ ավազակաբարո հարձակմանը, բայց չարաչար պարտվեցին: Օգոստոսի 6-ին հայերը ոչ միայն զսպեցին արդեն Հանդ գյուղի մարագներին մոտեցած եւ դրանք հրո ճարակ դարձրած թուրքերին, այլեւ հետ մղելով ու հետապնդելով, իրենք հարձակվեցին Քյոլլուղշլաղ, Մթնաձոր եւ Սանալու գյուղերի վրա:[27] Այնուամենայնիվ, փարիներ անց այդտեղից փախածները վերստին համախմբվեցին նույն տեղում: Նրանց թիվը 1914 թ. հունվարի 1-ի դրությամբ կազմել է 76 շունչ:[28]

27. *Ա-Դօ, նշվ. աշխ., էջ 300-301:*
28. *"Кавказский календарь на 1915 г.", 1914, Тифлис, էջ 139:*

### ԹՈՓ

Տաթեւի վանքին պտղահարկ վճարող փոքր գյուղերի թվում էր Չավնդուրի Թոփ գյուղը:[29] Այն գտնըվում է ներկայիս Կապանի շրջանի Ներքին Հանդ գյուղից 4 կմ արեւելք, Բասուտաջրի աջ ափից 3 կմ հարավ, Թոփ վտակի աջ ափին: Շրջապատված է թավ անտառով:

Գյուղի հյուսիս-արեւմտյան եզրին, Թոփ վտակի վրա կանգուն է XVI-XVII դարերի կառույց՝ միաթռիչք (5 մ), քարաշեն, կամարակապ կամուրջը: Այն կառուցված է անմշակ քարով, կրաշաղախով: Մինչեւ վերջին տարիներս (1980-ականները) կամրջի մոտ կանգնած էր նաեւ մի գեղաքանդակ խաչքար:

Թոփից 2,5 կմ հյուսիս՝ Բասուտաջրի աջ ափին, գտնվում է Չինարի կամ Ռանջդարա (Ռազդարա) գյուղատեղին, որի հարավային եզրին հայոց գերեզմանատան մնացորդներն են: Մինչեւ 1980-ականներն այդ գերեզմանատունը շատ ավելի բարվոք վիճակում էր եղել:

### ԾՈԲԻ

Ծոբին գավառի հինավուրց գյուղերից է: Այն հիշվում է դեռեւս Օրբելյանի՝ Կովսական գավառի հարկատու (12 դահեկան հարկաչափով) գյուղերի ցուցակում:[30] XVIII դարի վերջերից հայաթափ այս գյուղատեղիում հաստատված խաշնարածները գյուղը սկսեցին կոչել Սոբի կամ Սոբու: Ծոբի եւ Սոբու տեղանունների նույնականությունը նույնպես ապացուցված է:[31]

Ծոբին գտնվում է Բասուտաջրի աջակողմյան վտակի ձախ ափին, լեռնակողի հարավ-արեւելահայաց լանջին: Ցավոք, այս գյուղում եւս հաստատված խաշնարած թուրքերը հասցրել են իսպառ վերացնել հայ մշակույթի հետքերը:

Ծոբիից 1,5-2 կմ հյուսիս, միմյանցից 1 կմ հեռավորության վրա պահպանվում են Խընզըր (խնձոր) եւ Քոթանլար գյուղատեղիները: Վերջինս (1300 միավոր պտղահարկով) հիշվում է Չավնդուր գավառի գյուղերի ցուցակում:[32]

### ՏԱՐՎԱՆՈՏ (ՏՈՐՎԱՆՈՒՏ)

Ծոբիից 2 կմ հարավ-արեւելք, թավ անտառների մեջ գտնվում է Օրբելյանի՝ Կովսական գավառի հարկատու (6 դահեկան հարկաչափով) գյուղերի ցուցակում նշված Տարվանոտ գյուղի ավերակները: Հիմնավեր վիճակում են թե՛ եկեղեցին, թե՛ գերեզմանոցը: Տարածքում պահպանվել են միայն տների հիմնապատերն ու վաղուց ի վեր վայրենացած մրրգատու ծառերը:

Վերջին մեկ-երկու հարյուրամյակներին աղավաղելով գյուղի անվանումը՝ այն կոչում էին նաեւ Թարնավուտ կամ Թարնայուտ:



ԾՈԲԻ. գյուղի տեսքը



ՏՈՐՎԱՆՈՒՏ. տեսարան գյուղատեղիից

### ՄԵՐՁԱՐԱՔՍՅԱՆ ԳՅՈՒՂԵՐ

Զանգելանի շրջանի՝ Արաքսի ձախափնյակին ընկած գյուղերի թիվը մեծ չէ: Արաքսի հետ միախառնվող մի քանի մանր վտակների հովիտներում գտնվող գյուղերի ու գյուղատեղիների հետ միասին,

29. *«Ժամանակագրութիւն...», էջ 42:*
30. *Ստեփանոս Օրբելյան, նշվ. աշխ., էջ 402:*
31. *Գ. Մ. Գրիգորյան, նշվ. հոդվածը, էջ 235:*
32. *«Ժամանակագրութիւն...», էջ 42:*

այդ թիվը հասնում է 9-ի (Աղբենդ, Վեժնալի կամ Դաշղայա, Էմիրխանլի, Բարթազ, Քարղուլու, Դաշաքլի, Ուլափ, Ներգի եւ Փիրիվարդա):

Նշված բնակավայրերից պատմական անվանումը (փոքր-ինչ աղավաղված) ցայսօր պահպանել է Բարթաղը (այժմ՝ Բարթազ): Այն հիշվում է Տաթեւ վանքին հարկատու գյուղերի ցուցակում (1100 միավոր հարկաչափով):[33]

XIX դարում տարածքի՝ ռուսաց տիրապետության ներքո անցնելուց հետո, իբրեւ սահմանային ամրություն նորոգվել է Էմիրխանլի գյուղից 1 կմ հարավ-արեւմուտք (Արաքսի ձախ ափից 2,5 կմ հեռավորության վրա), Ղզղալա լեռան գագաթին (ծ.մ. 1023 մ) գտնվող եւ խաշնարածներից՝ Կաթըղղալասի անվանումը ստացած՝ փոքրիկ, միջնադարյան ամրոցը:

33. *«Ժամանակագրութիւն...», էջ 42:*

# ԹԱՐԹԱՌԻ (ՄԻՐ–ԲԱՇԻՐ) ՇՐՋԱՆ




***Պատմական ակնարկ:*** Լեռնային Ղարաբաղի Հանրապետությունից դեպի արեւելք ու հարավ-արեւելք փարածված եւ բավական ընդարձակ մակերես զբաղեցնող հարթավայրային շրջանները եզրափակվում են Կուր եւ Արաքս գետերով: Միջնադարում այդ լայնածավալ շրջաններն ընդգրկված էին հիմնականում երեք՝ Պարտավ կամ Ուտի-Առանձնակ, Բեղամեջ եւ Բայլական (Բելուկան) գավառների կազմում: Առաջինը զբաղեցնում էր համանուն քաղաքին հարող ընդարձակ տարածքները, 2-րդը՝ նրանից հարավ. «....ի մօր եւ ի փղմուտ տեղիս, որ կայ ի մէջ երկուց քաղաքացն՝ Պարտաւայ եւ Բելուկանայ յամրացոյն տեղիս, զոր Բեղամէջն կոչեն...»[1] եւ 3-րդը՝ Բեղամեջից էլ ավելի հարավ գտնվող Բայլական գավառը, որը եւս իր անունն առել էր համանուն քաղաքից:

Տարածաշրջանը վաղնջական ժամանակներից ի վեր բնակեցված է եղել լեռնաշխարհի բնիկներով՝ հայերով: Նրանցից մնացած եւ մեզ հասած մշակույթի հետքերը հիմնականում՝ հասնում են մինչեւ XIII-XIV դարերը, որոշ տեղերում՝ մինչեւ իսկ XVIII-XIX դարերը եւ այնուհետեւ գրեթե իսպառ մարում են: Երեւույթի բացատրությունն այն է, որ դեռեւս արաբական տիրապետության շրջանում պաշտպանության կազմակերպման տեսակետից նվազ հուսալի դաշտային շրջաններից հայերն այդ ժամանակաշրջանում արդեն իսկ զգալի չափով քաշվել ու ամրացել էին հարեւան լեռնային ու անտառածածկ վայրերում, իսկ մնացող դաշտաբնակներն էլ կենտրոնացել էին առանձին բերդաքաղաքներում (Տիգրանակերտ, Բայլական, Պարտավ եւ այլն):

Կուր-Արաքսյան ափամերձ միջագետքում երկրի բնիկ ու հողագործ տարրն էլ ավելի էր տեղի տվել թուրք-սելջուկյան արշավանքների ժամանակ, իսկ մոնղոլ-թաթարական արշավանքներից հետո, կարելի է հաստատապես պնդել, որ հայաբնակ վայրերի թիվն ավելի քան սակավաթիվ էր: Հետագա դարերում տարածքը մեծագույն մասով բնակեցվեց թյուրքական ծագումով զանազան խաշնարած ցեղերով, որոնք երկրամասի լայնարձակ շրջաններն օգտագործում էին սոսկ իբրեւ ձմերոց՝ իրենց անթիվ անասնահոտերի համար: Արդյունքում՝ շարքից դուրս եկան բազմաթիվ ջրանցքները, խոպանացան

1. ***Կիրակոս Գանձակեցի***, *Պատմություն Հայոց, Երեւան, 1961, էջ 202–203: Հիրավի, առ այսօր էլ Պարտավի (Բարդա) եւ Բայլականի միջեւ ընկած միջանկյալ տարածքի մի ընդարձակ մասը ծածկված է կիսաճահճացած մեծ ու փոքր բազմաթիվ լճերի, ճահիճների եւ աղուտների ցանցով:*

ոռոգովի հողատարածքները, եւ բարեզարդ երկիրը վերածվեց չոր փափասփանների ու կիսանապատի: Երկրի հողագործ փարրի հեռանալուն զուգահեռ անշուքացան ու ամայացան նաեւ երկրամասի երբեմնի փարթամ քաղաքներն ու գյուղերը:

Իրավիճակը գրեթե անփոփոխ պահպանվեց մինչեւ XIX դարի կեսերը, երբ ցարական իշխանությունները սկսեցին ուշադրություն դարձնել լայնածավալ, բայց խոպան խոպանացած տարածքի վրա:[2]

XIX-XX դարերի սահմանագլխին, հարյուրամյակների անուշադրությունից հետո, վերսկսվեցին հին ջրանցքների վերականգնման եւ նորերի կառուցման աշխատանքները: Այդպես գլուխ եկավ անհիշելի ժամանակներից ի վեր գոյություն ունեցող եւ թուրք խաշնարած ցեղերից «Գյավուր-արխ» հորջորջվող (ասել է թե՝ «քրիստոնյաների ջրանցք») ջրանցքի վերագործարկումը: Վերջինս, սկիզբ առնելով Արաքս գետից, իր մեջ էր առնում ու կանոնավորում Քոնդալան, Խոնաշեն, Կարկառ, Խաչեն եւ այլ ավելի մանր գետերի ջրերն ու ոռոգում հազարավոր հեկտար հողատարածքներ (խորհրդային տարիներին ջրանցքին պաշտոնապես տրվեց «Վերին Ղարաբաղյան» անունը):

Մինչեւ 1910-ական թվականները Կուր-Արաքսյան միջագետքում բացվեցին նաեւ մի քանի նոր՝ «Աթաբեկով» ընկերության, իշխանուհի Ումցեւայի, Ռուստամբեկովների եւ այլոց ծախսերով բացված նոր ջրանցքները:[3]

Հիշյալ լայնատարած շրջանների յուրացումը, սակայն, անհնարին էր իրականացնել առանց տարածքում հողագործ բնակչության առկայության: Խնդրի լուծումը հատկապես բարդացած էր նրանով, որ հողագործության բնագավառին վարժ ու գործուն տարրը՝ հայ բնակչությունը, արդեն վաղուց խոպան լքել էր տարածաշրջանը, իսկ նրանց տեղերը բռնած ու քոչվորական կյանքով ապրող խաշնարած ցեղերը նման ծրագրին բնավ պիտանի լինել չէին կարող: Ի վերջո, ցարական իշխանությունները խնդրի լուծումը գտան ջրանցքների ու գետերի ափերին ռուս գաղթականների գյուղեր ու ագարակներ հիմնելով: Գործընթացը, սակայն, միայն հաշված տարիների կյանք ունեցավ, որովհետեւ 1918 թ. հետո ռուս վերաբնակիչների մեծագույն մասը լքեց նորահիմն գյուղերը:

Տարածքի խորհրդայնացումից հետո, այս անգամ արդեն Ադրբեջանի իշխանությունները, կրկին բախվեցին միեւնույն խնդրին: Ճիշտ է, 1920-30-ական թվականներին կառավարության ստիպմամբ քոչվոր ցեղերի մի զգալի մասն արդեն անցել էր նստակյաց կենցաղավարության ու զբաղեցրել ռուսների հիմնած եւ նրանցից թափուր մնացած բնակավայրերի մեծ մասը, սակայն խոպանացած երկրամասի մշակության գործը պահանջում էր հողագործության բնագավառում հմուտ բնակչության ներկայություն: Ուստի, դրությունը փրկելու համար, սկսած 1930-ականների կեսերից Ադրբեջանի իշխանությունները սկսեցին վարել զանազան արտոնությունների ու խոստումների գնով Կուր-Արաքսյան միջագետքի փափասփաններն ու աղուտները Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի գերբնակեցված ու սակավահող գյուղերից հեռացող հայերով բնակեցնելու քաղաքականություն: Այդպես, վերստին գոյացան հայաբնակ մի քանի գյուղեր՝ Աղջաբեդու եւ Ժդանովի (այժմ՝ Բայլագան) շրջաններում:

Ուշագրավ է, որ հայ բնակիչներն իրենց համար բնակության վայրեր ընտրեցին նախկինում ռուսներով բնակեցված, սակայն պատմական այն գյուղատեղիները, ուր, թեկուզ ավեր դրությամբ, այնուամենայնիվ դեռ պահպանվում էին հայոց հինավուրց եկեղեցիների կամ այլ հնությունների հետքերը: Դրանք էին՝ Թազաքյանդն ու Շահումյանը (Աղջաբեդու շրջանում), Խաչինստրոյը եւ Քեբիրլին (Ժդանովի շրջանում):

1960-ական թվականների սկզբներից հիշյալ գյուղերում կամաց-կամաց հանգրվան գտան ադրբեջանական թուրքերի առաջին ընտանիքները: Դրան զուգահեռ՝ ծայր առավ հայերի արտագաղթը (հիմնականում՝ վերադարձ դեպի Լեռնային Ղարաբաղ): Հարթավայրային շրջաններից վերջին հայ ընտանիքները բռնագաղթվեցին 1988 թվականին:

Նշված լայնատարած հարթավայրերը, ժամանակակից Ադրբեջանի վարչա-տարածքային բաժանման համաձայն, ընդգրկված են մի քանի վարչական շրջանների կազմի մեջ: Դրանք են՝ Թարթառի (նախկինում՝ Միր-Բաշիրի), Պարտավի (թուրք. Բարդայի), Աղդամի, Աղջաբեդու, Բայլագանի (նախկինում՝ Ժդանովի), Ֆիզուլու (նախկինում՝ Կարյագինի) եւ Ջաբրայիլի շրջանները:

Շրջանը կազմավորվել է 1930 թ. եւ մինչեւ 1949 թ. կոչվում էր Թարթառի շրջան: 1963-ին այն միացվել է հարեւան Պարտավի (Բարդայի) շրջանին, բայց 1965-ից կրկին հանդես է եկել իբրեւ առանձին վարչական միավոր: Տարածքն է 412 քկմ:[4] Ջրաղեցնում է Տրտու (Թարթառ) գետի ստորին հոսանքի շրջանը՝ հյուսիսում սահման ունենալով Ինջա գետը, իսկ հարավում՝ Խաչենագետը: Սահմանակցում է ԼՂՀ Մարտակերտի շրջանին (արեւմուտքից) եւ Ադրբեջանի Կասում-Իսմայիլովի, Եվլախի, Պարտավի եւ Աղդամի շրջաններին:

---

2. *Краткое сведение о древнем водопроводе Гяурарх, "Кавказ", 1852, №23, էջ 106:*

3. *Տես՝ 1905 թ. հրատարակված «5 վերստանոց» քարտեզը:*

4. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր VI, Բաքու, 1982, էջ 587:*

1981թ. դրությամբ շրջանում կար 1 քաղաք (շրջկենտրոն Միր-Բաշիրը) եւ 49 գյուղ, որոնցից մեկը՝ հայաբնակ (Բեգում-Սարով գյուղը):

Միջնադարում շրջանի ներկայիս տարածքը մտնում էր Պարտավ գավառի կազմի մեջ: Մինչեւ XIX դարի կեսերն այն կազմում էր Բարդա-Բասան գավառի մի մասը:[5] Շրջկենտրոն Միր-Բաշիրի տարածքում է տեղորոշվում (ըստ ակադ. Ս. Տ. Երեմյանի) Հայոց Արեւելից Կողմանց նշանավոր բնակավայրերից մեկը՝ Կաղանկատույքը:[6] Մինչեւ տարածքի խորհրդայնացումը շրջանի ներկայիս տարածքում հայաբնակ էին ստորեւ ներկայացվող գյուղերը:

### ԲԵԳՈՒՄ-ՍԱՐՈՎ

Պատմական հարուստ անցյալով նշանավորված Սարով կամ Սարավ գյուղը, որի անվանն ուշ միջնադարում ավելացել է նաեւ «Բեգում» մասնիկը, գտնվում է հանրահայտ Պարտավ քաղաքից 16 կմ հյուսիս-արեւմուտք, իսկ Թարթառ շրջկենտրոնից՝ 13 կմ հյուսիս: Հեռավորությունը Կուրի աջ ափից՝ 22 կմ է: Գյուղի ընդարձակ թաղամասերը փռված են ծովի մակերեւույթից 120-140 մ բարձրությամբ արգավանդ հարթավայրում: Աչքի է ընկնում հայկական (հատկապես՝ լեռնային) գյուղերին ոչ բնորոշ նոսր կառուցապատումով, ընդ որում՝ յուրաքանչյուր տուն շրջապատված է բազմատեսակ ու փարթամ մրգատու ծառատեսակներով (նուռ, սերկեւիլ, թուզ, խնձոր, տանձ, արքայանարինջ, փխիլ, շագանակ, ընկույզ, հոն եւ այլն): Ընդհանուր առմամբ Սարովն ունի 1,5 կմ երկարություն եւ նույնքան էլ լայնություն:

Տեղաբնության խնդրում գերակշռում են հենց նրանց՝ սարովցիներին բնիկներ համարող կարծիքները,[7] բայց կան նաեւ այլ վկայություններ, ինչպես, օրինակ. «Գիւղական համայնքը կազմուած է խիկական սարովցիներից, որոնք գաղթել են Կուր գետի հովտում եղած Աղջա-Ղովախ գյուղից՝ Արէշու գաւառում եւ իրենց մէջ Ջանի-Բէգի անունով կոչւում են «Ջանի-Բագլի» եւ նորեկներից, որոնք գաղթել են զանազան տեղերից»[8] կամ «Բնակիչները հայադաւաններ են եւ գաղթած են Պարսկաստանից»:[9] Բացի վերջին վկայությունից, որ գրեթե անհավանական է (գուցեեւ շփոթ՝ Գանձակի Սարովի հետ), մնացած բոլոր դեպքերում հաստատվում է բնակիչների՝ բնիկ լինելու հանգամանքը: Ի վերջո, եթե անգամ ստույգ է սարովցիների Արեշի Աղջա-Ղովախից գաղթած լինելը, որը Սարովից հեռու է 26 կմ (Կուրի ձախ ափից 2 կմ), ապա դա էլ չի խանգարում վերջիններիս բնիկներ համարելու, քանի որ գաղթը կատարվել է գրեթե աննշան հեռավորության վրա, անփոփոխ են մնացել բնակլիմայական պայմանները:

Աղբյուրները սարովցիներին բնիկներ են համարում հնագույն ժամանակներից ի վեր. «Այս գիւղը ... բնակեցրած է հայերով սկսեալ այն ժամանակներից, երբ հարեւան Բարդա գիւղը (այժմ՝ թրքաբնակ) համարվում էր աթոռանիստ քաղաք Աղուանից աշխարհում...»:[10]

Կամ մեկ ուրիշը. «Ինչպես ենթադրում են, Սարովը գոյություն ունի հին ժամանակներից ի վեր, եւ հետագայում նրա անվանը միացվել է մեկ այլը՝ Բեգումը՝ ի տարբերություն մյուս Սարովի, որը առաջինից 3 մղոն հեռու է: Բեգում Սարովն իր անվանումը ստացել է Ղարաբաղի Մեհտի Ղուլի-խանի՝ Ազատ Բեգումի քրոջ անունից, որն իբրեւ օժիտ ստացել էր այս գյուղը: Սարով գյուղում հնագույն ժամանակներից բնակվում են հայեր, եւ այդ հաստատում է նրանից երկու մղոն հեռավորության վրա դեպի արեւելք գտնվող հինավուրց գերեզմանոցը: Գերեզմանոցն ընկած է հարթ մակերես ունեցող բլրաձեւ բարձունքում: Բոլոր տապանաքարերից իր հնությամբ արժանահիշատակ է հայերեն արձանագրություն ունեցող մեկը, որը ժամանակի ընթացքում ջնջվել է եւ այն ընթերցելն այժմ անհնար է, բայց հնաբնակները հավաստիացնում են, թե իրենց ներկայությամբ Սարովի հոգեւորականները կարդացել են այս գրերը, որոնք վկայում են, որ քարի տակ ամփոփված է Քրիստոսի ծնունդից ի վեր 4-րդ դարում ապրած մի հայ մելիքի աճյունը: Այս դամբանի շուրջ խմբված են սարովցի հանգուցյալների գերեզմանները...: Սարով գյուղի՝ հնուց քրիստոնեական բնակչություն ունենալու պարագան ապացուցող հնագիտական հուշարձաններից կարելի է մատնանշել հնադարյան հրնձանները (չերաուշները), որտեղ բոբիկ ոտքերով մզել են խաղողի հյութը: Այդ հնձանները հանդիպում են այգիներում, սակայն, մեծ մասամբ ծածկված են լինում հողով: Մերձակա բլուրներում մարդիկ հաճախ ջարդված կարասներ են գտնում»:[11]

Հնտաքրքիր է Մ. Բարխուդարյանցի վկայությունը գյուղի գերեզմանատան մասին, ուր ամփոփվում էին նաեւ մերձակա հայաբնակ գյուղերի հանգուցյալները. «Գիւղիս հանգստարանում ամփոփուած են ցարդ եւ ամփոփւում են Սարովիս, Ղահրիլարի, Բոզլուի եւ Մարալեան-Սարովի ննջեցեալներն, որոց մէջ մի տապանաքարի վերայ փորագրուած է. «ՏԱ-ՊԱՆՍ ՄԵԼԻՔԻՆ, ՌԾԻԲ ԷՐ»:[12] Անշուշտ, 1673 թ. այս տապանագիրը գյուղի այնքան էլ խոր հնության

5. *ՀՀՊԿԱ, դ. 56, ց. 1, գ. 305, թ. 47:*

6. *Տես՝ «Հայաստանը ըստ Աշխարհացոյց»-ի, Երեւան, 1963, էջ 75:*

7. *«Նոր-Դար», 1887, N 55, էջ 1: Նաեւ՝ СМОМПК, VI, Тифлис, 1888, էջ 123-132:*

8. *«Նոր-Դար», 1888, N 211, էջ 3:*

9. *«Նոր-Դար», 1890, N 122, էջ 3:*

10. *«Նոր-Դար», 1887, N 55, էջ 1:*

11. *СМОМПК, նույն տեղում:*

12. *«Արցախ», էջ 33:*

վկայությունը չէ. համենայնդեպս այն ավելի հին է, քան XVIII դարում այս եւ Կուրի ձախափնյա շրջանների հայության շրջանում կատարված փոխադարձ արտագաղթերն ու բռնի դավանափոխությունները: Սա կրկին հավաստում է սառովցիների՝ իրոք բնիկներ լինելու անվիճահարույց հարցը:

Չնայած հարթավայրային տեղադրությանը Բեգում-Սառովի արեւելյան թաղամասը 10-15 մ ավելի ցածր է արեւմտյանից, իսկ ընդհանուր առմամբ՝ հարթավայրն ունի հյուսիս-արեւելահայաց մեղմ թեքություն: Երկու հիմնական թաղերը իրարից զանազանվել են «վերին» եւ «ներքին» բնորոշումներով. «Գիւղը բաժանւում է երկու մասի՝ վերին եւ ներքին, վերին մասը կոչւում է Նոր-Շէն (Նոր-գիւղ): Գիւղի կեդրոնով հոսում է մի առուակ, որը վերցուած է Թարթառ գետից. այս գետակիցն են ջրում թէ արտերն եւ թէ այգիները»:[13]

Մինչեւ 1860-ական թվականները գյուղի բնակելի տները հիմնականում գետնափոր էին, բայց հետզհետե դրանք սկսեցին փոխարինվել բարեկարգ շենքերով. «Տները միմեանցից այնքան հեռու են շինուած, որ նայողի աչքին Սառովը ներկայանում է մի փոքրիկ քաղաք: Գոմերը եւ մարագները մեծ մասամբ կից են բնակարաններին: Մի քանի տարի առաջ գոյութիւն ունեցող գետնափոր խըրճիթները այժմ անհետանում են եւ նրանց տեղերը կանգնում են քարէ կամ աղիւսէ տներ...»[14] կամ «Գիւղը նշանաւոր է իրեն լայն եւ ընդարձակ բակերով. հին գետնափոր տները անհետանում են՝ նոր քարաշէն եւ աղիւսի տների առաջ...»:[15]

Հողի պակասը Սառովում միշտ էլ զգացնել է տվել իրեն: Ի հետեւանք դրա՝ սառովցիները վարձով մշակում էին մոտակա թուրքաբնակ գյուղերի հողերը:[16]

Սառովի բնակչության թվաքանակին վերաբերող ձեռքի տակ եղած տվյալները ներկայացնում են հետեւյալ պատկերը.

| Տարեթիվ | տուն | արական | իգական | միասին |
|---|---|---|---|---|
| 1841 | 39 | 62 | 58 | 120[17] |
| 1851 | 56 | 125 | 103 | 228[18] |
| 1862 | 80[19] | | | |
| 1873 | 117[20] | | | |
| 1876 | | | | 696[21] |
| 1886 | 140[22] | | | |
| 1887 | 143[23] | | | |
| 1889 | | 494 | 416 | 910[24] |
| 1891 | 141 | 484 | 440 | 924[25] |
| 1901 | | 761 | 561 | 1322[26] |
| 1908 | | | | 1344[27] |
| 1976 | | | | 1113[28] |

Չնայած բնակչության անընդհատ աճին՝ Սառովում ժամանակ առ ժամանակ շնչերի կտրուկ նվազում է տեղի ունեցել: Այդպես է եղել, օրինակ, 1887-ի հոկտեմբերից մինչեւ 1888-ի փետրվարի վերջը, երբ ծաղիկ հիվանդության զոհ են գնացել 110 երեխա:[27]

Սառովը հայաբնակ ու շեն մնաց մինչեւ 1988թ.՝ Ադրբեջանի հայության համատարած բռնագաղթը: Ստիպված լքելով հարազատ օրրանը՝ սառովցիները բնակություն հաստատեցին Մարտակերտի շրջանի դաշտային գյուղերում, ապա 1992թ. Մարտակերտի անկումից հետո, ցրվեցին զանազան վայրեր (գլխավորապես՝ Հյուսիսային Կովկաս):

Սառով գյուղում նշանավոր էր Սբ. Աստվածածին եկեղեցին: Այն վավերագրերում առաջին անգամ հիշվում է 1846թ. (մի կողոպտի առթիվ):[30] Հայտնի է նաեւ, որ 1887թ. մարտի 24-ին եկեղեցին ենթարկվել էր նոր կողոպուտի: Հետագայում հարեւան Մարաղյան-Սառով գյուղից գտնվել ու ետ էին վերադարձվել եկեղեցուց գողացված «Մեծ Պապ» կոչված երեք ձեռագիր մատյանները:[31] Պահպանվել է հիշատակում այն մասին, որ 1888-ին սառովցի Եսայի Սարգսյանը եկեղեցուն էր նվիրել մի զանգ, որ գնել էր Մոսկվայում 150 ռուբլով:[32] Եկեղեցին 1890 թ. գտնվում էր քայքայված վիճակում,[33] եւ սառովցիները ձեռնարկել էին. «...վարենորոգել ի հիմանց զքայքայեալ եկեղեցին սեպհական ծախիւք իւրեանց»:[34] Աշխատանքները սկսելու թույլտվությունը ստացել էին 1891 թ. հունվարի 2-ին:[35] Այդ նպատակով 1892-ին արդեն իսկ կուտակվել էր շինանյութը:[36] Նույն թվականի սեպտեմբերի 20-ի ուժեղ անձրեւից հետո, երբ փլվել էին արդեն խիստ խարխլված եկեղեցու տանիքն ու հյուսիսային պատը,[37] սառովցիների համար այլեւս օրակարգի խնդիր էր հնի տեղում նոր եկեղեցի կառուցելու հարցը: Հոկտեմբերի 25-ին հանդիսավոր կերպով, Չայլու եւ Մարաղա գյուղերի քահանաների ներկայությամբ, օծվեց կառուցվելիք եկեղեցու հիմքը:[38] Վե-

13. «Նոր-Դար», 1890, N122, էջ 3:
14. «Նոր-Դար», 1887, N 55, էջ 1:
15. «Նոր-Դար», 1888, N211, էջ 3:
16. Այդ մասին տես՝ «Տարազ», 1892, N19, էջ 225:
17. ՀՀՊԳԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 305, թ. 47:
18. ՀՀՊԳԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 93:
19. «Նոր-Դար», 1887, N 94, էջ 3:
20. СМОМПК, VI, Тифлис, 1888, отдел 1, էջ 124:
21. ՀՀՊԳԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 6775, թ. 115-116:
22. СМОМПК, նույն տեղում:
23. «Նոր-Դար», 1887, N 94, էջ 3:
24. ՀՀՊԳԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8583, թ. 45-46:
25. «Արցախ», էջ 33:
26. ՀՀՊԳԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 241-242:
27. "Кавказский календарь на 1910г.", Тифлис, 1909, էջ 360:
28. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան», (ադրբեջաներեն), Բաքու, 1978, հատոր II, էջ 140:
29. «Նոր-Դար», 1888, N 26, էջ 2:
30. ՀՀՊԳԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 2124, թ. 1:
31. «Նոր-Դար», 1887, N 55, էջ 1:
32. «Նոր-Դար», 1888, N188, N167, էջ 3:
33. Նույն տեղում:
34. ՀՀՊԳԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8584, թ. 34:
35. Նշվ. գործը, թ. 35:
36. «Նոր-Դար», 1890, N122, էջ 3:
37. «Նոր-Դար», 1890, N 148, էջ 3:
38. «Նոր-Դար», 1890, N168, էջ 2:

բաշինված եկեղեցին սարովցիների առաջ իր դռները վերստին բացեց 1895թ.: Ժամանակի մամուլը վկայում է. «Ահա չորրորդ տարին է անցնում, որ սարովցիները ձեռնարկել էին հին եկեղեցու տեղը նորը կառուցանել: Եկեղեցու շինութիւնը կապալով վերցրել էր շուշեցի պ. Յ. Մելիք-Ղարագեօզեանը, որը կարելի է ասել բարեխղճութեամբ աւարտեց նոր եկեղեցու շինութիւնը: Եկեղեցու սիւները, հիմքը՝ գետնից մինչեւ մի արշին բարձր, սեղանը եւ դրսի անկիւնները սրբատաշ քարից են, որը բերուել է սայլերով Կապաստ գիւղի մօտերքից, 45 վերստի վրայ:... Մնում են թերի տանիքը, որ պիտի թիթեղով ծածկուի եւ հարաւային դրան գլխին մի զանգակատուն, որ շինելը յանձնուած է մի ուրիշ քարտաշի 600 ռուբլով: ... Սարովի եկեղեցին նստում է ժողովրդին մօտ 16 հազար ռուբլի: Փետրուարի 29-ին գեր. Կարապետ եպիսկոպոսն օծեց այդ նորակառոյց եկեղեցին: Հանդէսը շքեղ էր...»:[39] Ի դեպ, օծման հանդեսին ներկա էին նաեւ գավառապետ Ռաֆիբեկովը, նրա օգնական Ա. Մելիք-Փաշայանը, գավառի հաշտարար դատավոր Ի. Ռուսովիչը, բեկեր ու կալվածատերեր, ժողովուրդ՝ շրջակա գյուղերից (այդ թվում՝ թուրքեր): Ականատես եպիսկոպոս Բարխուտարյանցը գրել է. «... եկեղեցին նորաշէն, հոյակապ, բոլոր անկիւնաքարերն եւ կամարներն շինուած սրբատաշ քարով, որի երկարութիւնն է 22 մետր 28 սանթ. եւ լայնութիւնն՝ 12 մետր 35 սանթ.»:[40]

Սարովը շրջակա հայաբնակ գյուղերի մեջ միակն էր, որտեղ գործել է հայոց դպրոցը: Այն բացվել է 1873թ. եւ ունեցել 17 աշակերտ,[41] սակայն 1881-ին փակվել է՝ ուսուցիչ չլինելու պատճառով:[42] Այնուհետեւ, 1883թ. հոկտեմբերի 20-ից բացվել է սկզբնական միդասյան ժողովրդական ուսումնարան, ուր 36 աշակերտ ուսանում էին մայրենի եւ ռուսաց լեզուները:[43] Քիչ ուշ՝ 1884-ին[44] (մեկ այլ աղբյուրում նշված է 1887թ.)[45] հայկական ծխական, դպրոցի փոխարեն գյուղում բացվել է պետական արքունի դպրոց, որտեղ տեսչության պաշտոնը վարում ու զուգահեռաբար նաեւ դասավանդում էր Նիկողայոս Գրիգորյանը:[46] 1890-ին դպրոցում սովորում էր 54 երեխա, որոնց թվում՝ նաեւ հարեւան գյուղերից համախող մի քանի աշակերտ:[47] Դպրոցական շենքը ավերակվեց 1905թ. հայ-թրքական ընդհարման ժամանակ:[48] Ի դեպ, հիշյալ ընդհարման ժամանակ, 1905թ. նոյեմբերի վերջին, հայաբնակ հիմնական հատվածներից կտրված Սարովը (Մարալյան-Սարովի հետ մեկտեղ) շրջապատվել էր հազարավոր թուրք բաշիբոզուկներով: Պաշարվածներին մոտենալ չէր կարողացել մինչեւ իսկ կազակների հարյուրյակը՝ 2 թնդանոթով հանդերձ, սակայն Դավիթ-բեկ Մելիք-Բեգլարյանը, թալիշեցի (Թրիշեցիք) քաջերի գլուխ անցած, գիշերային մի հուժկու հարձակումով փախուստի է մատնում թուրքերին, ճեղքում պաշարման շղթան եւ անխուսափելի կոտորածից ազատում սարովցիներին՝ վերջիններիս առաջնորդելով Ջվանշիր գավառի հայաբնակ գյուղերը:[49]

## ՄԱՐԱԼՅԱՆ-ՍԱՐՈՎ

Մարալյան-Սարով գյուղը հյուսիս-արեւմուտքից գրեթե կից է Բեգում-Սարովին: Գտնվում է միեւնույն բնական պայմաններում, ինչ Սարովն էր, բայց միայն այն տարբերությամբ, որ Մարալյանի բնակիչները դարերի փորձությունների հետեւանքով կորցրել էին իրենց մայրենի լեզուն եւ դարձել էին թրքախոս. «Այս գիւղի բնակիչները հայադաւաններ են: Սարով-Մարալեան գիւղի բնակիչները թէ իրենց կենցաղավարութեամբ եւ թէ սովորութեամբ շատ նման են սարովցիներին. միայն ցաւալին այս է, որ հայերէն խօսել չգիտեն. իրար հետ թուրքերէն են խօսում»:[50] Մեկ այլ դեպքում Մարալյանը բնութագրված է որպես «թրքաբարոյ հայաբնակ գիւղ»:[51]

XIX դարում գյուղի տերերն էին թուրք բեկերը: Ինչպես Բեգում-Սարովում, այստեղ եւս նրանք խլել էին Մարալյան-Սարովին պատկանող հողատարածքները: Կորցրածը (որ հնուց ի վեր այդ գյուղին էր պատկանել) ետ վերադարձնելու հույսով Մարալյան-Սարովի բնակիչ Շամիր Զիլֆիղարյանը դատ էր հարուցել շրջակա թուրք գյուղերի բեկերի դեմ, բայց հենց այդ պատճառով էլ 1895թ. ապրիլի 24-ին խորամանկությամբ սպանվել էր թուրքերի ձեռքով:[52]

Հայ բնակիչների թիվը, ըստ աղբյուրների, հետեւյալ պատկերն է ներկայացնում.

| Տարեթիվ | տուն | արական | իգական | միասին |
|---|---|---|---|---|
| 1841 | 14 | 20 | 19 | 39[53] |
| 1851 | 10 | 39 | 34 | 73[54] |
| 1876 | | | | 177[55] |
| 1889 | | 121 | 123 | 244[56] |
| 1891 | 32 | 126 | 124 | 250[57] |

39. «Նոր-Դար», 1895, N 36, էջ 2:
40. «Արցախ», էջ 33:
41. **Մ. Խուդոյան**, Արեւելահայ դպրոցները 1830–1920 թվականներին, Երեւան, 1987, էջ 384:
42. Նույն տեղում:
43. «Նոր-Դար», 1887, N 55, էջ 1:
44. «Արձագանք», 1886, N42, էջ 550: Տես նաեւ «Նոր-Դար», 1897, N164, էջ 2: «Մշակ», 1906, N53, էջ 2:
45. «Նոր-Դար», 1890, N 122, էջ 3:
46. Ն. Գրիգորյանը հեղինակն է СМОМПК տարեգրքում տպված Սարով գյուղի մասին մի ուշագրավ հոդվածի:
47. «Նոր-Դար», 1890, N 148, էջ 3:
48. **Մ. Խուդոյան**, նույն տեղում:
49. «Հորիզոն», 1913, N 214, էջ 2. «Մշակ», 1906, N 20, էջ 1:
50. «Նոր-Դար», 1890, N 122, էջ 3:
51. «Նոր-Դար», 1890, N 148, էջ 3:
52. «Նոր-Դար», 1895, N 77, էջ 2–3:
53. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 305, թ. 47:
54. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 93:
55. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 6775, թ. 115–116:
56. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8583, թ. 45–46:
57. «Արցախ», էջ 34:

| | | | |
|---|---|---|---|
| 1901 | 189 | 142 | 331[58] |
| 1908 | | | 329[59] |

Չնայած գյուղի նկատելի սակավամարդության, Բեգում-Սարովի նմանությամբ Մարալյան-Սարովը նույնպես ունեցել է իր եկեղեցին (հողաշեն, փայտածածկ)՝ Սբ. Աստվածածին անվամբ: Սրա կառուցման ժամանակը հայտնի չէ, բայց 1841թ. այն արդեն հիշատակվում է վավերագրերում:[60]

## ԽՈՐՈԶԼՈՒ ԿԱՄ ՂԱՀՐԻԼԱՐ

Պարտավի դաշտավայրում Բեգում-Սարովից 7 կմ հարավ-արեւելք, ծովի մակերեւույթից 117-123 մ բարձրության վրա գտնվող հայաբնակ գյուղերից է Խորոզլուն: Տեղի հայերը նույնպես բնիկներ էին եւ ներկայանում էին հին Պարտավ գավառի հայության վերջին փշրանքներ: Գյուղամիջում գոյություն ուներ Սբ. Աստվածածնի անվամբ օծված հողաշեն ու փայտածածկ եկեղեցին:[61]

Արդեն XIX դարի կեսերին Խորոզլու-Ղահրիլարում գերակշռում էին թուրք գյուղացիները: Ըստ տարիների՝ հայերի թիվը Խորոզլուում ներկայացնում է հետեւյալ պատկերը.

| Տարեթիվ | ծուխ | արական | իգական | միասին |
|---|---|---|---|---|
| 1851 | 4 | 19 | 21 | 40[62] |
| 1889 | | 64 | 63 | 127[63] |
| 1891 | 20 | 60 | 53 | 113[64] |
| 1901 | | 42 | 39 | 81[65] |
| 1905 | | 59 | 44 | 103[66] |
| 1908 | | 66 | 54 | 120[67] |

## ՂԱՐԱՄԱՆԼՈՒ (ԲՈԶԼՈՒ) ԵՎ ՂԱՄԱՐԼՈՒ

Ներկայիս Թարթառի (Միր-Բաշիրի) շրջանի սահմանից դուրս, 1965 թվականին ձեւավորված Եվլախի շրջանի վարչական տարածքում գտնվում են երկու հարակից Ղարամանլու եւ Նամարլու գյուղերը, ուր մինչեւ XX դարի սկզբները նույնպես որոշ թվով հայեր են բնակվել: Վարչական միավորը, որի կազմում ընդգրկված են ներկայացվելիք երկու գյուղերը:

Ղարամանլուն գտնվում է Բեգում-Սարովից 3 կմ արեւելք, Խորոզլուից 4 կմ հյուսիս, դարձյալ հարթ տեղանքում: Երբեմնի զուտ հայաբնակ, բայց արդեն XIX դարի վերջերին մեծամասամբ թրքաբնակ Ղարամանլու գյուղում հայերի թիվը խիստ աննշան էր:

| Տարեթիվ | ծուխ | արական | իգական | միասին |
|---|---|---|---|---|
| 1851 | 4 | 17 | 19 | 36[68] |
| 1889 | | 24 | 20 | 44[69] |
| 1891 | 7 | 29 | 28 | 57[70] |
| 1901 | | 51 | 45 | 96[71] |
| 1905 | | 59 | 53 | 112[72] |
| 1908 | | 73 | 64 | 137[73] |

Ներկայիս Եվլախի շրջանի կազմում է գտնվում նաեւ Ղարամանլուից 1 կմ հարավ-արեւմուտք գտնըվող Նամարլու գյուղը: Սա նույնպես հնում զուտ հայաբնակ է եղել, բայց արդեն 1890-ին նրա 200 տուն բնակչից հայեր էին միայն 5-ը (մնացածը՝ թուրք):[72]

## ԹՈՒՐՔ-ՍԱՐՈՎ

Թարթառի շրջանի կազմում է գտնվում նաեւ Սարով անունը կրող 3-րդ գյուղը: Ի տարբերություն Բեգում եւ Մարալյան Սարովների՝ վերջինս ավելի հայտնի էր Թուրք-Սարով անվամբ: Հետաքրքիր փաստաթուղթ է այս գյուղի բնակիչ Աղիզ-Հյուսեին օղլու՝ հոգեւոր իշխանությանը 1858թ. հղված մի խնդրագիրը,[75] ըստ որի պարզվում է, որ Հայ Առաքելական Եկեղեցու ծոցով վերամկրտվելու վերջինիս ցանկության դրդապատճառն այն է, որ խանական տիրապետության օրոք (XVIII դարի կեսերին) նրա նախնիներին բռնությամբ մահմեդական էին դարձրել, եւ նա, օգտվելով բարեպատեհ առիթից, խնդրել էր իրեն վերստին մկրտել Հայոց Եկեղեցու ծոցով:

Այս փաստը առիթ է տալիս կարծելու, որ Թուրք-Սարով գյուղի բնիկ բնակիչները, ի տարբերություն Մարալյան-Սարովի թրքախոս բնակիչների, որոնք պահպանել էին իրենց դավանանքը, զոհաբերել էին նաեւ իրենց նախնյաց հավատքը, ուստի՝ իսպառ թուրքացել:

58. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 241-242:
59. "Кавказский календарь на 1910г.", Тифлис, 1909, էջ 360:
60. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 305, թ. 47:
61. «Արձախ», էջ 32:
62. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 93:
63. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8583, թ. 45-46:
64. «Արցախ», նույն տեղում:
66. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 241-242:
67. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 10403, թ. 140-141:
68. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 10837, թ. 223-224:
68. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 93:
69. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8583, թ. 45-46:
70. «Արցախ», էջ 33:
71. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 241-242:
72. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 10403, թ. 140-141:
73. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 10837, թ. 223-224:
74. «Նոր-Դար», 1890, N148, էջ 3:
75. ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 3666, թ. 18:

# ՊԱՐՏԱՎԻ (ԲԱՐԴԱ) ՇՐՋԱՆ*

***Պատմական ակնարկ:*** Պարտավի շրջանը կազմավորվել է 1930թ.: Տարածքն է 957 քկմ:[1] Զբաղեցնում է Կուր գետի աջակողմին տարածված հարթավայրերը՝ Խաչեն եւ Տրտու գետերի ստորին հոսանքի շրջանում: Սահմանակից է Եվլախի, Թարթառի, Աղդամի, Աղջաբեդու, Աղդաշի եւ Զարդոբի շրջաններին: 1976թ. դրությամբ ուներ 1 քաղաք (շրջկենտրոնը) եւ 107 գյուղ: Շրջանի ներկայիս տարածքում մինչեւ խորհրդային կարգերի հաստատումը գոյություն ուներ միայն մեկ հայաբնակ գյուղ (Հասանղայա):

Միջնադարում տարածքն ընդգրկված էր Ուտի-Առանձնակ գավառի կազմում, բայց հաճախ այն հիշվում էր գավառի գլխավոր ու միակ քաղաքի՝ Պարտավի անունով: Մինչեւ իսկ XIX դարում գավառի համար առավել գործածական էր Բարտաբասան (Պարտավի գավառ) անվանումը:

Չնայած Հայոց Արեւելից Կողմանց պատմության մեջ իր կատարած նշանակալի դերին, այնուամենայնիվ ներկայիս Պարտավ քաղաքում եւ գավառի բնակավայրերում հայ մշակույթի հետքերը մեծաթիվ չեն:

## ՊԱՐՏԱՎ

Առավել քան 2000 տարվա պատմություն ունեցող Պատմական Հայաստանի խոշորագույն քաղաքներից մեկը՝ Պարտավը գտնվում է դաշտային Արցախի՝ Տրտու (Թարթառ) գետի ափին:

Քաղաքի հիմնադրման ժամանակի վերաբերյալ սկզբնաղբյուրներում պահպանվել են մի քանի իրար փոքր-ինչ հակասող տվյալներ: Մասնավորապես՝ պարսիկ պատմիչ Ղազվինիի վկայությամբ Պարտավը հիմնվել է Ալեքսանդր Մակեդոնացու աշխարհակալության օրոք (մ.թ.ա. 336-323թթ.),[2] իսկ հայ պատմիչները հաղորդում են, որ Պարտավի հիմնադիրն է Սասանյան Պերոզ (459-484) արքան. «Եւ ի հրամանէ Պերոզի՝ պարսից արքայի, շինեցաւ ի Վաչէէ Պերոզապատ մեծ քաղաքն, որ այժմ կոչի Պարտաւ»:[3] Գուցե թե այդ վկայությունը քաղաքի հերթական հիմնավոր վերաշինությանն է վերաբերում, իսկ այն, որ աշխատանքների իրականացումը իրոք գլխավորել է Աղվանքի հայ թագավոր Վաչեն, հաստատվում է նաեւ այլ աղբյուրով. Խոսքը Մխիթար Այրիվանցու աշխատության մասին է, ուր նա ուղղակիորեն վկայում է. «Պարտավ շինեցաւ ի Վաչէէ արքայէ...»:[4]

Քաղաքի հերթական վերաշինումը կապվում է Սասանյան Կավատ (488-496, 498/9-531) արքայի գործունեության հետ. «Ապա Կավատը... Առանում կառուցեց Բայլական քաղաքը եւ Պարտավը (Բարդաա), որն ամբողջ սահմանային գոտու [գլխավոր] քաղաքն է...»:[5] Հետագա դարերում նույնպես Պարտավը բազմիցս ավերվել է, սակայն ամեն անգամ վերստին շենացել:

Առհասարակ, որեւէ պատմական անցքի հիշատակման առիթով Պարտավի անունը նշելիս պատմիչները մշտապես շեշտել են այդ քաղաքի առաջնային ու մեծ լինելու հանգամանքը: Օրինակ, 450թ. Խաղխաղի ճակատամարտում Վարդան Մամիկոնյանի զորքից պարտված պարսից բանակի մնացորդները, Եղիշեի վկայությամբ, ապաստան են գտել շահաստան քաղաքում:[6] Առանց Պարտավի անունը տալու էլ արդեն հասկանալի է, որ խոսքը Պարտավի մասին է, քանզի այդ տարածաշրջանում Պարտավը միակ «շահաստան» քաղաքն էր (շահաստան անունն էին կրում մեծ ու վաճառաշահ քաղաքները, նահանգների կամ գավառների գլխավոր քաղաքները):

Քաղաքը. «...Պարտավ շահաստան...» է հիշում նաեւ VII դարի պատմիչ Ղեւոնդը,[7] իսկ Կաղանկատվացին. «Եւ մայրաքաղաք ունի զմեծն Պարտաւ»[8] կամ «... յԱղուանս ի գերահռչակ քաղաքդ Պարտաւ»:[9] Մեկ այլ հիշատակությունից պարզվում է, որ Պարտավը բերդաքաղաք էր. «... ի մեծ մայրաքաղաքն Պարտաւայ բերդին...»:[10] Արաբ պատմիչ Իսթախրին վկայում է, որ Պարտավն ուներ ավելի քան 1 փարսախ[11] լայնություն եւ նույնքան էլ երկարություն:[12] Դա նշանակում էր, որ քաղաքը զբաղեցնում էր մոտ 40 քկմ մակերես կամ

* Շրջանի պատմական հուշարձանների ցանկը տես՝ էջ 211:

1. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր II, Բաքու, 1978, էջ 146:

2. «Барда» (ադրբ. եւ ռուս. լեզուներով), Բաքու, 1987, էջ 7:

3. **Մովսէս Կաղանկատուացի**, Պատմութիւն Աղուանից Աշխարհի, Երեւան, 1983, էջ 42, 355:

4. **Մխիթարայ Այրիվանեցւոյ** Պատմութիւն Հայոց, Մոսկվա, 1860, էջ 47:

5. **Իբն-ալ-Ասիր**, Երեւան, 1981, էջ 40: Տես նաեւ՝ Markwart, Eranschahr, Berlin, 1901, էջ 118: Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր Բ, մաս Ա, Երեւան, 1957, էջ 310:

6. Եղիշեի Վարդանանց պատմությունը, Երեւան, 1958, էջ 71:

7. **Ղեւոնդ**, Պատմություն, Երեւան, 1982, էջ 96:

8. **Մ. Կաղանկատուացի**, էջ 9:

9. Նույ. տեղ., էջ 303:

10. Նույ. տեղ., էջ 135:

11. 1 փարսախը մոտ 6 կմ է:

12. «Արաբական աղբյուրները Հայաստանի եւ հարեւան երկրների մասին», կազմեց Հ. Թ. Նալբանդյան, Երեւան, 1985, էջ 12:

4000 հեկտար:[13] Նկարագրելով քաղաքը Իբն-ալ-Ֆակիհը նշել է, որ շինությունները կանգնեցված էին գլխավորապես գաճից եւ կղմինդրից: Սրան հարկ է ավելացնել նաեւ հում եւ թրծված աղյուսն ու գետաքարը, որոնք օգտագործվել են հին քաղաքատեղիի տարածքում գոյացած ժամանակակից Բարդայի կառուցապատման ժամանակ:[14]

Հայոց եկեղեցական շինությունների վերաբերյալ աղբյուրներում որոշակի տեղեկություններ չեն պահպանվել, բայց դրանց գոյությունը Պարտավում՝ քրիստոնեության տարածման առաջին իսկ դարերից, որեւէ կասկած չի հարուցում: Համենայն դեպս, երբ 551թ. «... փոխեցին զաթոռ հայրապետութեանն Արուանից ի Չորայ քաղաքէն ի մայրաքաղաքն Պարտաւ վասն հիմնահալած արշաւանաց թշնամեաց խաչին Քրիստոսի»,[15] քաղաքում հարկավ արդեն գոյություն ուներ քրիստոնեական ժողովարանը՝ եկեղեցին: Քիչ ուշ Պարտավի Սբ. Գրիգոր մեծ եկեղեցու մասին հիշվում է պատմական հետեւյալ դիպվածների առիթով: 711 թ. երբ Աբդ-Ազիզ իշխանը Պարտավում ազատների տոհմից սերված Մանկիկին նահատակեց քրիստոնեությունը չուրանալու համար, քաղաքաբնակ հայերը նրա մարմինը ամփոփեցին հիշյալ եկեղեցում. «Եւ եդան պատուական նորա նշխարք ի մեծ եկեղեցւոջն Պարտաւայ՝ ի սուրբն Գրիգոր...»:[16] Ի դեպ, «Պարտաւայ վանք Սուրբ Աստուածածինն» անվամբ մի վանք էլ գոյություն ուներ ի թիվս Երուսաղեմի հայոց վանքերի:[17]

Հայոց եկեղեցու Աղվանից ճյուղի կաթողիկոսանիստը Չողից (Չոր) Պարտավ փոխադրելուց հետո այդտեղ գահակալած առաջին հայրապետը եղավ Տեր Աբասը (551-595):[19] Պատմիչի վկայությամբ «Տէր Աբաս կաթողիկոս Աղուանից ի Դարբանդայ ի Պարտաւ գայ եւ դնէ զաթոռն»:[19] Միմյանց հաջորդած թվով 20 կաթողիկոսներ[20] Պարտավն անփոփոխ պահեցին իբրեւ աթոռանիստ քաղաք: Միայն 799-824թթ. գահակալած Հովհաննես կաթողիկոսը հայրապետական աթոռը Պարտավից փոխադրեց Տրտուի ափին գտնվող Բերդակուր ամառանոցը. «Տէր Յովհաննէս,... փոխեաց զկաթողիկոսարանն ի Բերդակ՝... յորժամ հանաւ ի Պարտաւայ»:[21] V դարի վերջին կամ VI դարի սկզբին Աղվենում գումարված եկեղեցական ժողովին Պարտավից մասնակցել էին. «Շուփհաղիշոյ՝ Պարտաւայ արքեպիսկոպոս...»-ը[22] եւ «Մատթէ՝ Պարտաւայ երէց...»-ը:[23]

623-624 թթ. ամբողջ ձմեռը, իր բանակով հանդերձ, Պարտավում էր անցկացրել Բյուզանդիայի կայսր Հերակլը: Մեկը մյուսին հաջորդող նվաճողների պատճառած արհավիրքներից հերթական անգամ Պարտավը զերծ էր մնացել Զաքարիա կաթողիկոսի (629-644) օրոք: «Աղօթիւք իւրովք ապրեցոյց զմեծ քաղաքն Պարտաւ ի գերութենէ»,- վկայում է պատմագիրը:[24]

Հայոց եւ Աղվանից եկեղեցիների միաբանությունը անխախտ պահելու եւ Պարտավում իրեն՝ Ներսես կաթողիկոս հռչակած Բակուր եպիսկոպոսին պատժելու նպատակով (սա դավանաբար համակիր էր քաղկեդոնականությանը) 706 թ. Պարտավ է ժամանում Ամենայն Հայոց կաթողիկոս Եղիան (703-717): Նա նախ անարգելով հեռացնում է ինքնակոչ Բակուր-Ներսեսին (մերկացված նստեցնում է մի էշի վրա ու ման տալիս Պարտավի փողոցներով), ապա գումարում եկեղեցական ժողով եւ, ինչպես վկայում է պատմագիրը «....ի տեղի նորին նստուցանել զՍիմէոն սարկաւագապետն կամօք ժողովրդեան Աղուանից»:[25]

Արաբական տիրապետության ժամանակ, սկըսած 789 թվականից, Պարտավը խալիֆաթի կողմից նշանակված կառավարիչների (ոստիկանների) նստավայրն էր:[26] Հետագայում Պարտավը վերածվեց Արմինիայում արաբ ոստիկանների վարչական՝ երկրորդ նշանակության նստավայրի (առաջինը՝ Դվին քաղաքն էր):[27]

Հարուն-ալ Ռաշիդ խալիֆի օրոք՝ 793-94 թթ., հայերից բացի Պարտավն արդեն ուներ զգալի թիվ կազմող պարսիկ բնակչություն: Ահա, հիմնականում վերջիններս էլ բարձրացրել էին արաբների դեմ ուղղված այնպիսի հզոր մի ապստամբություն, որը ճնշելու համար պահանջվել էին խալիֆի բանակները (Արմինիայի ոստիկաններին այդ անել չէր հաջողվել):[28]

IX դարի կեսերին արաբական բանակի՝ ծագումով թուրք Բուղա զորապետը հայ իշխան Եսայի Աբու-Մուսեի հետ պատերազմելուց առաջ «...գնաց մտավ Պար-

13. *Հ. Մանանդյան, նշվ. աշխ., հ. Բ, մաս Բ, Երեւան, 1960, էջ 366:14. «Барда», նույն տեղում:*

15. *Մ. Կաղանկատուացի, նշվ. աշխ., էջ 119:*

16. *Նշվ. աշխ., էջ 319:*

17. *Նշվ. աշխ., էջ 285:*

18. *Նշվ. աշխ., էջ 350:*

19. *Մխիթարայ Այրիվանեցւոյ պատմութիւն..., էջ 48-49, Կաղանկատվացու մոտ (նշվ. աշխ., էջ 342-343). «Տէր Աբաս, որ ի սկզբանն թուականին Հայոց փոխեաց զաթոռ հայրապետութեանն ի Չորայ ի Պարտաւ...»:*

20. *Պարտավում գահակալած 19 կաթողիկոսներն էին՝ Աբաս (551-595), Վիրո (595-629), Զաքարիա (629-644), Հովհան (644-671), Ուխտանես (671-683), Եղիազար (683-689), Ներսես (689-706), Սիմեոն (706-707), Միխայել (707-744), Անաստաս (744-748), Հովսեփ (748-765), Դավիթ (765-769), Դավիթ (769-778), Մաթեւ (778-779), Մովսես (779-781), Ահարոն (781-784), Սողոմոն (784), Թեոդորոս (784-788), Սողոմոն (788-799):*

21. *Կիրակոս Գանձակեցի, Պատմություն Հայոց, Երեւան, 1961, էջ 198: Տես նաեւ՝ Մաթեոս Ուռհայեցի, Ժամանակագրություն, Երեւան, 1991, էջ 249:*

22. *Կաղանկատուացի, նշվ. աշխ. էջ 89:*

23. *Նշվ. աշխ., էջ 90: Այդ մասին տես նաեւ՝ Գանձակեցի, նշվ. աշխ. էջ 194:*

24. *Գանձակեցի, նշվ. աշխ. էջ 195:*

25. *Կաղանկատուացի, էջ 296-297, Ստեփանոս Օրբելյան, նշվ. աշխ., էջ 357:*

26. *«Արաբական աղբյուրները Հայաստանի եւ հարեւան երկրների մասին», էջ 145-146:*

27. *Ղեւոնդ, Պատմություն, Երեւան, 1982, էջ 131, 169 (ծանոթ. 146):*

28. *Հ. Մանանդյան, նշվ. աշխ., հ. Բ, Երեւան, 1960, էջ 33, 60, 225:*

տավ մեծ քաղաքը»,[29] իսկ 853-ին Արցախի հայ իշխանավորներին ղավով գերելուց եւ Սամառա ուղարկելուց հետո. «...մտավ Պարտավ՝ ձմեռելու...»:[30]

X դարում Պարտավը 2 անգամ հայտնվել է նաեւ ռուսների ձեռքում: Նախ՝ 913 թ., ապա՝ 943-944թթ. «Ռուսները գրավեցին քաղաքը, ... շատ ժողովուրդ կոտորեցին եւ կոտորելուց հետո էլ մի քանի տասնյակ հազար գերեվարեցին: Մնացածներին հավաքեցին մզկիթում եւ ասացին՝ ձեր փրկագինը տվեք, թե չէ կկոտորվեք: Նրանց համար միջնորդեց մի քրիստոնյա..., սակայն այս բանը ընդունեցին միայն խոհեմները: Երբ ռուսները տեսան, որ ոչինչ չի դուրս գալիս, բոլորին կոտորեցին, եւ միայն փախչողներն ազատվեցին: Նրանք [քաղաքի] բնակիչների ունեցվածքը ավարի տվին, գերեվարեցին եւ կանանցից, ով որ իրենց հաճելի թվաց, տարան»:[31] Նշված իրադարձությունների մասին մեկ այլ վկայություն. «Հիջրի 332 թվականին (943-944) մի խումբ ռուսներ ծովից անցան եւ Կուր գետով հասան մինչեւ Պարտավ քաղաքը, որին տիրեցին... ապա նավերով վերադարձան դեպի իրենց երկիրը»:[32] Դժվար է ասել, թե ի՞նչ դրության մեջ էր Պարտավը ռուսների գրավումից հետո, բայց աղբյուրների՝ թեկուզ միաժամանակ, բացակայությունն ինքնին քաղաքի անկումային եւ անմխիթար կացության մեջ գտնված լինելու արտահայտությունն է: Փոքր-ինչ ուշքի եկած Պարտավի հերթական գրավումը եղավ 1121թ., վրաց Դավիթ թագավորի կողմից:[33] Թուրք-Սելջուկների տիրապետության ներքո հայտնված Պարտավի ազատագրումը հայ-վրացական միացյալ ուժերով (Զաքարե եւ Իվանե եղբայր-իշխանների գլխավորությամբ) կատարվեց 1211թ.[34] «... [Ապա վրացիք] դիմեցին Պարտավ (Բարդավ)՝ հինավուրց մեծ քաղաքը, եւ կործանեցին Առանը եւ սաստիկ պատերազմներով նվաճեցին...»:[35]

Այնուհետեւ Պարտավն իրենց բանակների համար իբրեւ ձմեռոց ծառայեցրին երկրամաս ներխուժած մոնղոլները (1230-ական թվականներին):[36] Այն հանգամանքը, որ հետագա մի քանի դարերում Պարտավն այլեւս աղբյուրներում գրեթե չի հիշատակվում, ցույց է տալիս, որ մոնղոլները Պարտավում կատարել էին այն առավելագույնը, ինչին ընդունակ էին նրանք:

Ուշ միջնադարում Պարտավը նորից կենդանացել էր, բայց անպակաս էին արհավիրքները: Մասնավորապես հայտնի է, որ երբ 1579/80թ. Դարբանդի կողմից մեծաքանակ բազմությամբ Արցախ աշխարհի վրա էին հարձակվել լեզգիներն ու ղայթաղները, Պարտավում կային հայ իշխաններ. «...եւ զիշխանն Գանձայոյ եւ Պարտաւոյ փախստական արարին: Եւ ինքեանք սփռեալ ընդ դաշտս եւ ընդ լերինս՝ զԳանձայ եւ զԲարտայ...»:[37] Ըստ ամենայնի այդ իշխաններն իրենց իրավական վավերացումները ստացել էին պարսից շահերից (ինչպես Արցախի որոշ մելիքները), բայց պատմագրության մեջ նրանց մասին միայն կցկտուր տվյալներ են պահպանվել: Մասնավորապես՝ 1630թ. մի վավերագրում հիշվում է. «Մելիք Սարուխան Բարտայոյ» հայ իշխանի մասին:

1691 թվականին Աղվանից երկրի հոգեւոր եւ աշխարհիկ ներկայացուցիչների՝ կողմից Աղվանից Երեմիա կաթողիկոսին (1676-1700) տրված «Թուղթ դաշնադրութեան» ներքո ի թիվս այլ հայ մեծամեծաց կա նաեւ Պարտավի հայ մելիքի ստորագրությունը. «Ես մելիք Թուրշիս Պարտու դապըլ արի մերեցի»:[39]

XVIII դարի սկզբներին լեզգիները, ըստ կաթողիկոս Հասան Ջալալյանցի վկայության, բալանի նպատակով պարբերաբար ներխուժում էին Պարտավ եւ հարակից շրջաններ. «...ամ ամէ ասպատակ սփռեալ յայս կողմ եւ յայն կողմ Կուր գետոյն... յոլովք ի գիւղօրէիցն Պարտայու, եւ զդաշտավայր գիւղօրայսն միահողոյն կոտորեալ, գերի եւ աւարի առեալ ամայի արարին, եւ զմնացեալսն փախստեայ ի լերինս եւ ի գաւառնձաւ Արցախու...»:[40]

Նույն դարի 20-ական թվականներին՝ Արցախում ծավալված ազգային-ազատագրական շարժման շրջանում, Պարտավի շրջանը, անտարակույս, դեռեւս հայաբնակ էր: Ավելին, նրանք ունեին բավականաչափ զինուժ, որը զորապետ Եսայու գլխավորությամբ 1723 թ. միացել էր հարեւան Ջրաբերդի հետ ու ամրացել լեռներում, հիմնել հատուկ զորակայան՝ սղնախ: Խնդրո առարկա ուշագրավ է ժամանակի վավերագրերից մեկը, ուր մասնավորապես նշված է. «...Հայոց ասկեւ քանի մի ընդդեկազոյն զօրաւարք, ... որ մեկ քանի հազար զորք ունին ի լերանց ամուր տեղաց սղնախ են արել, որ զմին Եսային, որ է Պարտաւու երկրէն եւ երկրորդն Սարգիսն Չարապերթո երկրէն»:[41]

Ցավոք, անհայտ է, թե մինչեւ ո՞ր թվականն է Պարտավն ունեցել իր հայ մելիքները, մինչեւ ե՞րբ է եղել հայաբնակ, բայց այն հանգամանքը, որ Պար-

29. *Թովմա Արծրունի եւ Անանուն, Պատմություն Արծրունյաց Տան, Երեւան, 1978, էջ 191:*

30. *Նշվ. աշխ., էջ 203:*

31.

32. *«Արաբական աղբյուրները...», նշվ. աշխ. էջ 214:*

33. *Զուանշեր, էջ 119-120:*

34. *Ստեփանոս Օրբելյան, նշվ. աշխ. էջ 16: Տես նաեւ՝ «ՄԺԱ», էջ 399:*

35. *Վրաց աղբյուրները Հայաստանի եւ հայերի մասին, հ. Բ, Երեւան, 1936, էջ 14:*

36. *Նշվ. աշխ., էջ 58:*

37. *«ՄԺԲ», էջ 242:*

38. *«Արարատ» ամսագիր, 1914, օգոստոս, էջ 736:*

39. *Խ. Ծ. Վ. Դ., Երկու վաւերագրեր Տ. Խաչիկ վարդապետի ձեռագիրների ժողովածուից, «Արարատ», 1900, էջ 320:*

40. *Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի յօրինեալ ի Տ. Եսայի Աղուանից կաթողիկոսէ Հասան Ջալալեանց, Երուսաղէմ, 1868, էջ 23:*

41. *«Армяно-русские отношения в XVIII веке», հատոր 2, մաս 2, Երեւան, 1967, էջ 29: Այդ մասին տես նաեւ՝ Զավեն Արզումանյան, Սղնախների առաջացումը եւ ռազմաքաղաքական նշանակությունը, «ԼՀԳ», 1982 N9, էջ 79:*

տավի թուրքական մզկիթի կառուցումն իրականացվել է Ղարաբաղում խան հռչակված Փանահի (1747-1761) օրոք ու նրա իսկ հոգածությամբ,[42] հուշում է այն հնարավոր հանգամանքը, որ Պարտավը հիմնականում հայաթափ է եղել XVIII դարի 2-րդ քառորդին: Դրան նպաստել է, անշուշտ, նաեւ Նադիր շահի արշավանքը:

XIX դարում երբեմնի մեծահռչակ Պարտավ քաղաքն արդեն վերածվել էր զուտ թրքաբնակ, Բարդա հորջորջվող մի գյուղի: Ուրիշ համանման գյուղերից այն առանձնանում էր միայն յուրաքանչյուր ուրբաթ այդտեղ բացվող տոնավաճառով եւ խանութների ու մի քանի արհեստանոցների առկայությամբ: Դրանց հիմնական մասի տերերը Շուշեցի հայեր էին: 1888թ., օրինակ, գյուղում կար արծաթագործ հայերին պատկանող 5 եւ դերձակների 6 խանութ: Հայերն այդտեղ ունեին նաեւ 4 դարբին, 2 սուսերագործ, 1 ներկարար (բոլորն էլ Շուշեցի):[43]

Այնուամենայնիվ, Բարդա գյուղի կարեւոր առանձնահատկությունն էր հին դարերից մնացած նյութական մշակույթի բազմաթիվ եւ տարաբնույթ հիշատակների առկայությունը: Դրանց առաջին եւ կարեւոր նկարագրությունը տվել է Մակար եպիսկոպոս Բարխուտարյանցը. «Այժմ համարեա թէ մի գիւղ է Պարտաւն, զրկուած իւր մեծութեան եւ հարստութեան փառքից, սակայն հնութիւններն ու աւերակներն այնքան շատ են, որք պահպանած են քաղաքի յատկութիւն:

Քաղաքս ունեցած է համարեա թէ մի մղոն երկարութիւն եւ կէս մղոնից աւելի լայնութիւն, ինչպէս երեւում է աւերակի հետքերից եւ փորուածքների նշաններից: Հին շէնքերն ընդհանրապէս շինուած են եղել եփած աղիւսով եւ պարզ հողեայ ցեխով, զոր օրինակ երեւում են նոր ի նորոյ քանդած ստորերկրեայ հնութիւններից: Հողն ունի կաճային զօրութիւն, որ անքակ պահած է մօտ հազար տարի ստորերկրեայ բնակարանները: Մինչեւ 6 մեթր փորուածքներից երեւում են ոսկի, արծաթ, պղինձ, հին դրամներ եւ ամօրներ եւ երկաթեղէն ու խեցեղէն գործիքներ, կարասիներ եւ ամաններ»:[44] Բարխուտարյանցը, որ քաղաքի մնացորդները տեսել էր 1880-ական թվականների վերջերին, ուշագրավ տվյալներ է հաղորդում նաեւ քաղաքատեղիի երբեմնի շրջապարսպի եւ դրանց հզորացրած բրգաձեւ աշտարակների ավերակների վերաբերյալ. «Այժմ անհետացած են քաղաքիս շրջապարսպի պատերն, բայց տակաւին մնում են երեք միջնաբերդներ, որոնց պարիսպներն շինուած են հողեայ ցեխով: Առաջին միջնաբերդն, որ զանում է փոշտի ճանապարհի տակին, այս է արեւելյան կողմում, ունի վեց բարձրագոյն բուրգեր եւ հաստ ու բարձր պարիսպ, որի արեւելյան կողմից խախտուած է փոքր ինչ տեղ: Շրջապարսպիս մէջ տեղում արձանացած է մի երկյարկ աշտարակ, որ շինուած է թրծեալ աղիւսով եւ կրաշաղախ ցեխով...: Երկրորդ բերդակն, որ նմանապէս շինուած է հողեայ ցեխով, առանց բուրգի է եւ կիսաւէր եւ զանուում է մեծ ճանապարհի արեւմտեան բլրի մօտ եւ ունի 104 մետր երկարութիւն եւ 93 լայնութիւն: Բերդակից շատ հեռի չեն եւ միւս միջնաբերդերն»:[45]

Հին Պարտավի եկեղեցիներից եւ ոչ մեկը կանգուն վիճակով մեզ չի հասել, բայց դրանցից մեկը, որը թուրքերը քիչ ձեւափոխելով վերածել էին մզկիթի, դեռեւս XIX դարում պահպանել էր իր մի շարք հայկական նշանները. «Պարդաւում կայ մի ուխտատեղի, որ թուրքերը կոչում են «չարվիշտ իմամզադայ» (այսինքն, չարվիշտ մարգարէի որդի): Այդ ուխտատեղին մի եկեղեցի է, եւ այդ եկեղեցու գլխին մինարէներ են պատրաստել, որպէսզի հայերը չկարծեն, թէ դա հայի եկեղեցի է: Այդ եկեղեցու մէջ կայ երեք խորան, սեղանի բեմի վրայ դրած է մի գիրք՝ որ աւետարան է, մի քառանկիւնի հարթած քար, վրան խաչ, հաւանական է, որ դա շարժական սեղան եղած լինի. կան նաեւ մի քանի խաչեր պատերի վրայ նկարած, թէեւ թուրքերն աշխատել են ջնջել, որպէս զի շէնքն իրենց սեպհականութիւնը համարուի: Եկեղեցու մէջ, սեղանի առաջ, կայ մի սիւն: ... Այդ եկեղեցուց դուրս մի ջնջուած արձանագրութիւն կայ... «ԵՍ ԿԱՄԻ», ուրիշ ոչինչ: Եկեղեցու հիւսիսային կողմը կայ մի ուրիշ ջնջուած գրութիւն, այսպէս՝ «ՌՃՂ.[46] ԹԻ. Ս.ՀՈԿԱՆ»:[47] 1893թ. հրապարակած իր մի հոդվածում Ջրաբերդի Կուսապատ գյուղի ուսուցիչ Օսիպովը մզկիթի վերածված նույն եկեղեցու մասին գրել է. « Ինչպես պատմում են փեղացի հայերը, Իմամը եկեղեցի է եղել, բայց թաթարներն այն վերածել են մզկիթի, իսկ ներսի պատերի արձանագրություններն ու սրբապատկերները՝ ոչնչացրել»:[48] Մզկիթի վերածված այդ եկեղեցին կառուցված է եղել «...թրծեալ աղիւսով եւ կրաշաղախ ցեխով...»:[49] Նրա երեք մուտքերը բացված են եղել հարավային, արեւմտյան եւ հյուսիսային ճակատներից:

Մեկ այլ ավերակ եկեղեցու հիմքերը հայտնաբերվել են 1970 թ. Ռ. Գեյուշեւի ղեկավարությամբ քաղաքատեղիում կատարված պեղումների ընթացքում: Վերջինս ուներ եռանավ բազիլիկի հորինվածք, արեւելակողմում կիսաշրջան եզրագծով երեք խորաններ: Եկեղեցու արտաքին չափերն էին 11x6 մ: Պատերը, որ պահպանվել էին հազիվ 1,5 մ բարձրությամբ, շարված են եղել տարբեր չափերի թրծված աղյուսով: Աղյուսապատ է եղել նաեւ եկեղեցու հատակը: Խորանը

42. *Г. Осипов, Селение Барда, СМОМПК, VII, Тифлис, 1893, էջ 136:*
43. *«Նոր-Դար», 1888, N 217, էջ 3:*
44. *«Արցախ», էջ 29:*
45. *Նշվ. աշխ., էջ 29-30:*
46. *ՌՃՂ=1690 թ. (փրկչականով):*
47. *«Նոր-Դար», 1888, N217, էջ 3:*
48. *СМОМПК, նույն տեղում:*
49. *«Արցախ» էջ 30:*

սրահի հատակի համեմատ ունեցել է որոշակի բարձրություն, իսկ գլխավոր մուտքը բացված է եղել արեւմտյան ճակատից: Ուսումնասիրությունները պարզել են, որ եկեղեցին ավերվել էր ուժեղ հրդեհի հետեւանքով, VIII դարի սկզբում: Հայկական այս եկեղեցու վերաբերյալ եղել են ադրբեջանական գիտնականների մի շարք հրապարակումներ, որտեղ, սակայն, այն միտումնավոր կերպով ներկայացված է իբրեւ ոչ հայկական, այլ «աղվանական»:[50]

Հին Պարտավից մնացած ավերակ հիշատակների թվին է պատկանում նաեւ քաղաքի մոտ, Տրտու գետի հին հունի վրա գցված կամուրջը, որի կառուցումն ավանդաբար վերագրվում է Աղվանից Վաչե Բ թագավորին: Կամուրջն ուներ. «... 170 մետր երկարութիւն, 5 մետր լայնութիւն եւ 16 աչք, որոնց կամարներն արդէն քանդուած են եւ մնում են միայն ոտներն եւ երկու կողմերի պատերն: Սրբատաշ եղած են բոլոր անկիւնաքարերն, իսկ անտաշ՝ մնացեալ քարերն: Ինչպէս վկայում են, ունեցած է հայերէն արձանագրութիւն, բայց անյայտացած է, չկայ այժմ...»:[51]

Ադրբեջանում խորհրդային կարգերի հաստատումից հետո Պարտավ քաղաքատեղիի տարածքում գտնվող թրքաբնակ Բարդա գյուղն արագ թափով սկսեց ընդարձակվել ու կառուցապատվել:[52] Այդ ընթացքում պարբերաբար հայտնաբերվող հնագիտական նյութերն ի վերջո գրավեցին Բաքվի «գիտնականների» ուշադրությունը, որոնք, սակայն, յուրաքանչյուր դեպքում առնչվելով ակնհայտ՝ քրիստոնեական մշակույթի հուշարձաններին, իրենց մի շարք ուսումնասիրություններում ու հրապարակումներում[53] դրանք միտումնավոր կերպով ներկայացնում էին որպես «աղվանական» մշակույթի արժեքներ:

50. *Р. Б. Геюшев, Раскопки на хромовом участке средневековой Барды (Тезисы докл. посвящ. итогам полевых археол. исслед. в 1970 г. в СССР. Тбилиси, 1971): Նույնի՝ Христианство в Кавказской Албании, Баку, 1984, էջ 88: Ի դեպ, հայտնի է, որ Խաղախստեղիի տարածքում հնագիտական պեղումները սկսվել են 1881 թվականից (այդ մասին տես՝ **Е. Вейденбаум,** Путеводитель по Кавказу, Тифлис, 1888, էջ 394):*

51 *«Արձագանք», էջ 31-32:*

52. *1874 թ. Բարդայում բնակվում էին 337 շունչ շիա դավանանքի մահմեդականներ («Кавказский Календарь на 1886 г.», Тифлис, 1885, էջ 126:*

53. ***З. Бунятов,** Азербайджан в VII-IX вв., Баку, 1965. С. Ашурбейли, Ремесла и торговля раннесредневековых городов Азербайджана, "Труды Музея истории Азербайджана", том 2, Баку, 1957. Տես նաեւ՝ Бардинский клад 1940 г., "Известия Аз. ФАН ССР", 1943, №8.*

## ՀԱՍԱՆՂԱՅԱ (ՀԱՍԱՆԻՐՁ)

Պարտավի դաշտավայրում գտնվող եւ մինչեւ XX դարի սկզբները հայաբնակ մնացած գյուղերից ամենաարեւելյանը ներկայիս Բարդայի շրջանում գտնվող (Բարդա շրջկենտրոնից 7 կմ հյուսիս-արեւմուտք) Հասանղայան է: Այն տարածվում է ծովի մակերեւույթից 77-85 մ բարձրության վրա (ի դեպ, ամենացածրը Կուր գետի ստորին ավազանի երբեմնի հայաբնակ գյուղերից): Ուներ նոսր կառուցապատված ընդարձակ ու այգեւետ թաղամասեր: Այստեղի բնիկ հայերի թվաքանակը՝ ըստ տարիների, հետեւյալ պատկերն է ներկայացնում.

| Տարեթիվ | տուն | արական | իգական | միասին |
|---|---|---|---|---|
| 1841 | 22 | 45 | 42 | 87[54] |
| 1851 | 18 | 77 | 74 | 151[55] |
| 1876 | | | | 248[56] |
| 1889 | | 142 | 88 | 230[57] |
| 1891 | 46 | 158 | 160 | 318[158] |
| 1901 | | 220 | 168 | 338[159] |
| 1908 | | | | 459[60] |

Հայտնի է, որ տեղի հայերը. «...զզուելով իր պարսիկ բէկի անկարգ արարմունքներից՝ 1880 թուին տեղափոխւում են Փիրումեանց Նիկալայ-բէկի կալուածն, որ գտնւում է Մարաղայ գիւղից վերեւ եւ բնակութիւն հաստատում նոյն կալուածի մէջ: Սակայն 1883-ին՝ որպէս թէ անհամաձայնութեան պատճառաւ վերստին վերադառնում են իւրեանց նախկին գիւղն Հասան Ղայա...»:[61]

Հասանղայան Պարտավի դաշտավայրի այն հայաբնակ գյուղերից էր, ուր մինչեւ XX դարի սկզբները գործել է եկեղեցին (Սբ. Աստվածածին): Վավերագրերում վերջինիս մասին ամենավաղ հիշատակությունը վերաբերում է 1841թ.:[62] Ըստ վկայության այն եղել է հողաշեն եւ գետնափոր:[63]

54. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 305, թ. 47:*
55. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, 2596, թ. 93:*
56. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, 6775, թ. 115-116:*
57. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8583, 45-46:*
58. *«Արձագանք», էջ 32:*
59. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 241-242:*
60. *"Кавказский календарь на 1910г.", Тифлис, 1909, էջ. 219:*
61. *«Արձագանք», էջ 32:*
62. *ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 305, թ. 47:*
63. *«Արձագանք», էջ32:*

# ԱՂԴԱՄԻ ՇՐՋԱՆ




Պատմական ակնարկ: Կարկառ եւ Խաչեն գետերի միջին եւ ստորին ավազանների շրջանում, 1094 քկմ մակերես զբաղեցնող Աղդամի շրջանը կազմավորվել է 1930թ.: Սահմանակից է ԼՂ Հանրապետության Մարտակերտի, Ասկերանի եւ Մարտունու շրջաններին, իսկ Ադրբեջանից՝ Թարթառի, Պարտավի եւ Աղջաբեդու վարչական շրջաններին: Ունի 1 քաղաք (Աղդամ շրջկենտրոնը) եւ 119 գյուղ:[1]

Շրջանի ներկայիս տարածքը միջնադարում մտնում էր Մեծ Հայքի Ուտիք նահանգի Ուտի-Առանձնակ գավառի կազմի մեջ (վերջինիս հարավային մասն էր), որտեղ, առանձնապես, հայտնի էր Տիգրանակերտ ավանը: Առնվազն վաղ միջնադարից գոյություն ունեցած մի քանի հնավայրեր ներկայում հայտնի են սոսկ XIX-XX դարերում դրանց տրված օտարոտի անվանումներով, իսկ պատմական անվանումները մոռացության են մատնվել:

Առհասարակ, Աղդամի շրջանի տարածքում պահպանված հայ մշակույթի հուշարձանների մեծագույն մասը վերաբերում է միջնադարի վաղ շրջանին: Միայն սակավաթիվ հուշարձաններ են թվագրվում XIII-XIV դարերով: Ասել կուզի՝ ներկայիս Աղդամի շրջանի տարածքի մեծ մասը, հարթավայրային բնաշխարհի ունեցող այլ վայրերի նմանությամբ, համեմատաբար ավելի վաղ շրջանից է հայազրկվել ու բնակեցվել զանազան խաշնարած ցեղերով:

## ԱՂԴԱՄ

Ժամանակակից Աղդամ քաղաքի տարածքը մինչեւ XVII դարի 2-րդ կեսն անմարդաբնակ էր. այն, փաստորեն, որսատեղի էր (նշվում է, որ Փանահ խանը (1747-60) Շուշին տիրանալուց հետո ներկայիս քաղաքի տեղում որսորդների համար իբրեւ գիշերատեղ կառուցել էր տվել մի քարաշեն տուն:[2] Ավելի ուշ Փանահն ու նրա հաջորդները Աղդամն օգտագործում էին իբրեւ ձմեռոց:

Աղդամի առաջին բնակիչները նույն Փանահի հովանավորությամբ Ղարաղաղի շրջանից հրավիրված ազերի թուրքեր էին: Հետագայում Աղդամը

1. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հ. I, Բաքու, 1976, էջ 105:*

2. *"Кавказ", 1883, №212, էջ 2:*

համալրվեց Պարսկաստանի նաեւ այլ շրջաններից եկած թուրք ցեղերով, եւ նորահիմն բնակավայրը ձեւավորվեց որպես գյուղ:[3] 1805 թ. այն արդեն «մեծ գյուղ էր»:[4] 1868 թ. ի վեր Աղդամում յուրաքանչյուր կիրակի գործում էր տոնավաճառը: 1868-70թթ. ընթացքում գյուղում կառուցվել էր նաեւ մզկիթ:[5]

1886-ին Աղդամում արդեն հաշվում էին 99 տուն թուրք բնակիչ (458 շունչ),[6] իսկ 1914-ին՝ 260 շունչ (նվազման պատճառը մեզ հայտնի չէ):[7] Խորհրդային տարիներին (1930-ից) Աղդամը վերածվեց համանուն շրջանի կենտրոնի եւ դարձավ քաղաքային բնակավայր:

1980-ական թթ. Աղդամի կենտրոնական մասում, մարզադաշտի հարեւանությամբ, քաղաքային իշխանությունները հիմնել էին բացօթյա թանգարան, որտեղ հավաքել էին շրջանի զանազան հնավայրերից փոխադրված մի շարք հուշարձաններ, դրանց թվում՝ Վանքասարի եկեղեցու մոտից բերված մի գեղաքանդակ խաչքար (XIII-XIV դար)՝ կերտված սպիտակ կրաքարից: Խաչքարը պահպանվել է եզրերից փշրված վիճակով: Չափերն են 136x80 սմ:[8]

**ՎԱՆՔԱՍԱՐ**

Աղդամ շրջկենտրոնից 8,5 կմ հյուսիս-արեւմուտք, Շահբուլաղ գյուղից 1,5 կմ արեւմուտք վեր է խոյանում շրջապատի նկատմամբ բավական առանձնացած (ստորոտից մինչեւ գագաթ 290 մ է) Վանքասար լեռը, որը ծովի մակերեւույթից ունի 681 մ բարձրություն:

Այդ լեռան գագաթին, մինչեւ 1980-ական թվականների սկզբները, կիսավեր դրությամբ պահպանվում էր մի եկեղեցի, որը, շնորհիվ իր պատկառելի հնության (VI-VII դարեր) եւ հորինվածքային առանձնահատկությունների (խաչաձեւ-գմբեթավոր, եռախորան), արժանացել է պատմաբան-ճարտարապետների ուշադրությանը: Այս եկեղեցու մասին գրավոր առաջին խիստ թռուցիկ հիշատակությունը թողել է Սարգիս արքեպիսկոպոս Ջալալյանցը. «Ի գագաթ լերին է աւերակ մենաստանի, զորմէ աւանդեն զոլ առաջնորդարան այսր նահանգի»:[9] Ավելի ուշ՝ Եղիշե ավագ քահանա Գեղամյանցը (Հայկունի) նշել է, որ «Յիշեալ մատռոին ժողովուրդը անուանում է «Լեռնաբերդ»:[10]

1890-ականների սկզբներին հնավայր է այցելել նաեւ Խ. վ. Դադյանը, որը գծագրել է (առանց չափերը նշելու) եկեղեցու հատակագիծն ու ընդօրինակել եկեղեցու մոտ գտնված «4 արշին» երկարությամբ մի խաչքարի արձանագրությունը.

ԵՍ ՇԱՀԱՆՇԱՀ ՈՐԴԻ ԱՇՈՏԱՅ ԿԱՆԳՆԵՑԻ ԶԽԱՉՍ ՀՈԳԻՈՅ ԻՄՈՅ, ՈՎ ԿԱՐԴԷՔ ՅԱՂԱԻԹՍ ՅԻՇԵՑԷՔ, ԹՎԻՆ ՉԺԲ(1263):[11]

1895-ին իր ուսումնասիրությունը հրատարակած Մակար եպիսկոպոսը Վանքասարի եկեղեցուն վերաբերող բաժնում ներկայացրել է մի քանի ավանդույթներ: Ըստ դրանցից մեկի՝ եկեղեցու կառուցումը վերագրված է Վաչե Բ գահերեց իշխանին (V դար). «...Աղուանից Վաչէ Բ շինած է մի խաչաձեւ մենաստան, որի գլուխն այժմ խոնարհուած է ամբողջապես...»:[12]

Տասնամյակներ անց, արդեն խորհրդային տարիներին, Վանքասարի եկեղեցուն նվիրված մի հոդված է հրապարակել Զ. Յամպոլսկին: Այստեղ ընդարձակ նյութին առընթեր, առաջին անգամ հրատարակել են նաեւ եկեղեցու հատակագիծն ու լուսանկարները:[13] Նշելով հայերեն արձանագրության ու հայատառ բազմաթիվ նշանագրերի գոյության մասին եւ շեշտելով եկեղեցու հորինվածքային առանձնահատկությունների նույնականության հանգամանքը հայկական վաղ միջնադարյան մի շարք այլ եկեղեցիների հետ՝ Յամպոլսկին, սակայն, տուրք տալով յուրաքանչյուր հայկական հուշարձան «աղվանական» հայտարարելու՝ Բաքվի «գիտնականների» նկրտումներին, միանգամայն անհիմն կերպով եկեղեցին «աղվանական» է համարել:

Ըստ էության խնդրի մեջ որեւէ պարզաբանում չի մտցրել նաեւ Հայաստանի եւ Կովկասյան Աղվանքի (Բուն Աղվանք) ճարտարապետական առնչություններին եւ մասնավորապես Վանքասարի եկեղեցուն նվիրված հետազոտության մեջ Ա. Յակոբսոնը:[14]

Այնուհետեւ մի քանի անգամ վերահրատարակած իր աշխատասիրության մեջ Վանքասարի եկեղեցուն մի ամփոփ բաժին է հատկացրել Շ. Մկրտ-

3. *Նույն տեղում:*

4. ***Վ. Պոտտո**, Ղարաբաղի առաջին կամավորները, Երեւան, 1976, էջ 14:*

5. ***Ш. С. Фатуллаев,** Градостроительство и архитектура Азербайджана XIX - начала XX века, Ленинград, 1986, էջ 264-265:*

6. *"Свод статистических данных извлеченных из посемейных списков населения Кавказа. Елисаветопольская губерния", Тифлис, 1888, էջ 13:*

7. *"Кавказский Календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 83: Տես նաեւ մեր՝ «ԼՂՀ-ն շրջապատող Ադրբեջանի քաղաքները 80 տարի առաջ» հոդվածը, «Ազատամարտ», 1994, N46, էջ 14:*

8. *Ի դեպ 1986 թ. այն դեռեւս գտնվում էր իր նախնական տեղում՝ Վանքասարի եկեղեցու մոտ, ավերված գերեզմանոցում: Այդ մասին տես մեր՝ «Մի խաչքարի հետքերով» հոդվածը, «Ազատամարտ», 1994, N47 էջ 14:*

9. ***Սարգիս արքեպիսկոպոս Ջալալեանց**, Ճանապարհորդութիւն ի մեծն Հայաստան. Տփխիս. 1858, մասն Բ, էջ 344:*

10. *«Մեղու Հայաստանի», 1885, N 64, էջ 3:*

11. *ՀՀՊՊԿԱ. ֆ. 319, ց. 1, գ. 137, թ. 4:*

12. *«Արցախ», էջ 414:*

13. ***З. С. Ямпольский,** Памятники Кавказской Албании на горе Бешидаг, "Советская археология", 1960, №2.*

14. ***А. Л. Якобсон,** Архитектурные связи Кавказской Албании и Армении, «ՊԲՀ», 1976, N 1:*











*ՎԱՆՔԱՍԱՐ. լեռան տեսքը արեւմուտքից, եկեղեցու արեւմտյան մուտքի բարավորի խաչաքանդակը 1986 թ. եւ «վերականգնումից» հետո, վանքասարից Աղդամ փոխադրված խաչքար (XII-XVI դդ), «վերականգնված» որմնախարիսխ (1993 թ.)*

չյանը:[15] Վերջինս, ի դեպ, օգտագործել է ճարտ. Արմեն Ղազարյանի չափագրական աշխատանքները:

Վանքասարի եկեղեցին հայ մշակույթից օտարելու եւ «աղվանացնելու» նպատակ հետապնդած Զ. Յամպոլսկու հրապարակմանն արժանի գնահատական ու պատասխան է տվել ճարտ. Վ. Գրիգորյանը, փաստերով հերքելով՝ այլ հուշարձաններում եղած նշանագրերի հետ Վանքասարի նշանագրերի «չհամընկնելու» եւ, իբր, աղվաներեն արժանագրություններն VIII դարում քերված (2-րդ խոշոր կրովանը) լինելու պնդումները:[16]

1986 թ., ճարտ. Ա. Ղազարյանի հետ տեղում կատարած ուսումնասիրությունների ընթացքում, «վերականգնման» անվան ներքո արդեն զգալի չափով աղավաղված եկեղեցու արեւմտյան մուտքի հյուսի-

*15. **Շ. Մկրտչյան**, Լեռնային Ղարաբաղի պատմաճարտարապետական հուշարձանները, Երեւան, 1980, էջ 60-61: Նույնի նշվ. աշխ., լրացված 2-րդ հրատ., Երեւան, 1985: Նույնի՝ նշվ. աշխ. (ռուսերեն), Երեւան, 1988, էջ 63-64: Նույնի՝ նշվ. աշխ. (ռուսերեն 2-րդ հրատ.), Երեւան, 1989, էջ 63-64:*

*16. **Վահագն Գրիգորյան**, Հայաստանի վաղ միջնադարյան կենտրոնագմբեթ փոքր հուշարձանները, Երեւան, 1982, էջ 26-27, 102:*

ՎԱՆՔԱՍԱՐ. եկեղեցու կտրվածքը դեպի արեւմուտք եւ հատակագիծը (վերակազմություն ճարտ. Արմեն Ղազարյանի)

ՎԱՆՔԱՍԱՐ. եկեղեցու տեսքը «վերականգնման» ընթացքում (1986 թ.) եւ «վերականգնումից» հետո (1993 թ.)

սային կողմում արտաքուստ նկատեցինք կիսաեղծ վիճակում գտնվող երկու արձանագրություն: Դրանցից առաջինը, որ եռատող փորագրված է մի պարզ խաչաքանդակի կողքին, սկզբնամասից խպառ հողմնահար է.

...ՅԱ|ՂԱՒԹՍ ԻՇԵՍ|ՋԻՔ ՅՍ ՔՍ Ի ՏՐ:

Սրբատաշ երեսպատի քարերին, մեկ շարք ցած, նախորդ վիմագրի տակ, երկու տողով փորագրված է.

... ՈՒ Ս(Ր)ԲՈՅ ԵԿ|(Ե)ՂԵՑԻՍ ՅԱՂ(ԱՒ)ԹՍ ԻՇԷՋԻՔ:

Բացի այս երկու վիմագրերից, որոնց հնագրական առանձնահատկությունները թույլ են տալիս դրանք համարել եկեղեցուն ժամանակակից վիմագրություններ, եկեղեցու պահպանված որմերի վրա նկատվում են նաեւ մի շարք այլ նշանագրեր: Դրանք հիմնականում 2 տիպի են՝ հայերեն տառաձեւերով եւ պատկերներով:

1986 թ. դրությամբ Վանքասարի եկեղեցում «վերականգնողական» աշխատանքների ժամանակ արդեն տեղում չէր Խաչիկ վարդապետի նկարագ-

ՎԱՆՔԱՍԱՐ. վարպետների նշանագրեր

րած՝ 1263 թ. արձանագիր խաչքարը, բայց եկեղեցու բակում շինարարական մնացորդների մեջ մենք նկատեցինք զեղարդանդակ ու անարձանագիր մեկ այլ խաչքար, որը հետագայում փոխադրվեց Աղդամի բացօթյա թանգարան:

Վանքասարի եկեղեցուց 2 կմ հյուսիս, Խաչենագետին նայող լեռան արեւմտահայաց ժայռապատ լանջին պահպանվում է վիմափոր մի մատուռ: Այն ունի 8,0x3,5 մ ներքին չափեր եւ 4,7 մ բարձրություն: Եկեղեցու արեւելյան կողմում ընդամենը 2 քմ մակերես զբաղեցնող խորանն է: Պատերին կան պարզ խաչաքանդակներ, իսկ առջեւում՝ ոչ մեծ վիմակերտ հարթակ: Ավելի ցած՝ վաղ միջնադարյան հայկական գերեզմանոցի մնացորդներն են: Ինչպես վիմափոր եկեղեցին, այնպես էլ գերեզմանատունը 1970 թ. ուսումնասիրել են Ռ. Գեյուշեւն ու Ն.Գուլիեւը, ովքեր, սակայն, հուշարձաններին վերաբերող հրապարակումների մեջ դրանց, միտումնավոր կերպով, «աղվանական» պիտակն են տվել:[17]

Վանքասարի հարավ-արեւելյան ստորոտում, «Շահբուլաղ» անվամբ հայտնի հորդառատ աղբյուրից քիչ հարավ պահպանվում է անկյուններն ու միջնապատերը կիսաշրջանաձեւ աշտարակներով հզորացված եւ ուղղանկյուն հատակագծով մի փոքր, բայց ամուր բերդակ: Սրա մասին Եղիշե ավագ քահանա Գեղամյանցը նշել է. «Թառնագիտը կամ Տիգրանակերտ աւերակների վրայ առաջին անգամ Փանահ-խանը մի բերդ շինեց, որ հայ մելիքները քանդեցին: Յետոյ այդ բերդը պարսից ձեռքով վերստին նորոգուեցաւ»:[18] Հայտնի է, որ սկզբնապես Բայաթ բերդում[19] հաստատված




*ՇԱՀԲՈՒԼԱՂ. ամրոցի տեսքը XIX դարի սկզբին*

Փանահ-Ալին խնամիության ճանապարհով միանալով Քաբրլի թափառական ցեղի հետ, Նադիր շահի սպանվելուց (1747) հետո՝ 1748-ին. «...ուզի է հանում իր քոչվոր քաքարներին եւ իրեն հռչակում է Ղարաբաղի խան»:[20]

Առանց երկար ժամանակ կորցնելու Փանահը «Իրեն հակառակ ցեղերի եւ հայ մելիքների դեմ հաջողությամբ կռվելու համար ... մի նոր բերդ հիմնեց Թարնակյուտ անունով տեղում, Շահբուլաղ մեծ աղբյուրի վրա, որ համարյա Խաչենի սահմանագլուխն էր կազմում: Այդ նոր բերդի մեջ էլ նա շուկա ու մզկիթ կառուցեց եւ 1749 թ. հաստատվելով այնտեղ՝ սկսեց ընդհարումներ Ջրաբերդի եւ Գյուլիստանի մելիքների հետ՝ աշխատելով քանդել մելիքների միությունը»:[21]

Սերձակա աղբյուրից իր անունն առած Շահբուլաղի բերդն էլ Փանահին իբրեւ հենակետ երկար չծառայեց, քանի որ արդեն 1752-ից նա հաստատվել էր մելիք Շահնազարի կողմից տրամադրված Շոշ (Շուշի) ամրոցում:

Անտերությունից արդեն քայքայվող ամրոցը կրկին ռազմավարական մեծ նշանակություն է ստանում հատկապես 1805-12 թվականներին, երբ ռուսական զորախմբերի հրամանատարներ Կորյագինն ու Կոտլյարեւսկին հայ կամավորների աջակցությամբ մի շարք փայլուն հաղթանակներ են տանում պարսից զորքերի նկատմամբ:

Արժանահիշատակ է նաեւ 1890 թ. ֆրանսիացի ճանապարհորդ Շանթր ամուսինների կողմից տրված վկայությունը, որոնք հնավայր այցելել էին Գանձակից Շուշի մեկնելիս. «...Չորս կողմը զանուած աւերակներէն հաւաստի թուի կարծելը թէ Շահ-պուլաք մասնաւոր կարեւորութիւն ունեցող տեղ մը եղած ըլլայ ատենով, ունենալով նաեւ իր խաղացած դերը Հայոց ազգի պատմութեան մէջ, որ դժբաղդաբար՝ տեղագրական մասամբ շատ խառնակ է»:[22]

XIX դարի վերջին արդեն կիսավեր վիճակում գտնվող բերդի մասին Մակար եպիսկոպոսը նշում է իրկ. «... մի նոր բերդակ, որ շինուած է ամբողջապէս սրբատաշ քարով եւ կոչւում է Թառնագիտի կամ Շահբուլաղի բերդ»:[23]

Ի դեպ, 1980-ականներին Վանքասարի եկեղեցուն զուգահեռ, այս ամրոցը նույնպես վերականգնվել է:

---

*17. **Р. Б. Геюшев, Н. М. Гулиев**, О пещерном храме Кавказской Албании (Материалы сесии посвящ. итогам археолог. исслед. 1971 г. в Азербайджане, Баку, 1970 (ադրբեջաներեն): **Р. Б. Геюшев**, Христианство в Кавказской Албании, Баку, 1984, էջ 98-99:*

*18. «Մեղու Հայաստանի», 1885. N64. էջ 3:*

*19. Բայաթ կամ Բոյաթ բերդի ավերակները տեղադրվում են ներկայիս Աղջաբեդու շրջանի համանուն գյուղի մոտ:*

*20. **Վ. Պոտտո**, Ղարաբաղի առաջին կամավորները, Երեւան, 1974, էջ 6–7: Տես նաեւ՝ **В. Потто**, Кавказская война в отдельных очерках, эпизодах, легендах и биографиях, том 1, выпуск 3, СПБ, 1885, էջ 405-418: **Е. Вейденбаум**, Путеводитель по Кавказу, Тифлис, 1888, էջ 394-395:*

*21. **Լեո**, Երկերի ժողովածու, հատոր 3, գիրք երկրորդ, Երեւան, 1973, էջ 265:*

*22. «Բազմավէպ», 1892. էջ 154::*

*23. «Արցախ», էջ 28:*

## ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ

Հայոց Տիգրան Մեծ արքայի (մ.թ.ա. 95-55) կողմից հիմնված եւ իր իսկ անունը կրող 4 քաղաքներից մեկը հետազոտողները տեղորոշում են Շահբուլաղ ամրոցից հյուսիս-արեւելք՝ հռչակավոր աղբյուրի եւ ներկայիս Թարնոյուտ (Թառնագյուտ) գյուղի (Վանքասարի ստորոտում) եւ կամ Գյավուրղալա քաղաքատեղիի տարածքում:

Հարկ է նշել, որ Աղձնիքում, Գողթնում, Ուտիքում եւ Արցախում գտնվող եւ միեւնույն Տիգրանակերտ անունը կրող 4 քաղաքներից վերջին երկուսի վերաբերյալ առկա մատենագրական տվյալները ուսումնասիրողների կողմից շփոթված են իրար հետ: Մասնավորապես, սկզբնաղբյուրներում հիշված Տկռակերտը գտնվում էր ոչ թե Արցախում, այլ Ուտիքում, Շամքոր գետի աջ ափին:[24]

## ԽԱՉԵՆ-ԴՈՐԲԱՆԴԼԻ

Վանքասարից 6 կմ հարավ-արեւմուտք, դարձյալ Խաչենագետի աջ ափին փռված է նստակեցության անցած խաշնարածների կողմից Խաչեն-Դորբանդլի կամ Ջինլի անվանումը ստացած գյուղը, որից 1 կմ արեւմուտք, խաղողի այգիներով շրջապատված մի բլրաքմբի վրա տարածված գերեզմանոցի կենտրոնում, ամբողջական վիճակով պահպանվում է 1314 թ. կառուցված մի դամբարան: Հատակագծում բազմանիստ եւ սրածայր վեղարով ավարտվող «քյումբազը» կառուցված է համակ սրբատաշ դեղնավուն կրաքարից: Ներքուստ, նրա որմերի մեջ բացված խորշերի շուրջ պատկերված ցլի, վագրի եւ կենդանակերպ այլ հարթաքանդակների կատարման ոճն ու գեղարվեստական առանձնահատկությունները հար եւ նման են 1301 թ. Եղվարդում՝ Շահիկ վարդպետի (ճարտարապետի) կառուցած Սբ. Աստվածածին եկեղեցու արեւմտյան ճակատի հարթաքանդակներին: Բացի պատկերաքանդակներից, համանման են նաեւ այդ շինությունների զարդաքանդակները եւ, հատկապես, ստալակտիտավոր լուծումները (դամբարանում՝ խորշերի, իսկ եկեղեցում՝ մուտքի բարավորի փոխարեն): Առկա ընդհանրությունները, նաեւ կառուցման ժամանակաշրջանի համընկնումը (ընդամենը՝ 13 տարվա տարբերություն) առիթ են տալիս կարծելու, որ Խաչեն-Դորբանդլիի դամբարանի ճարտարապետը նույն ինքը՝ Շահիկ վարդպետն է (վարդպետ=ճարտարապետ):







*ԽԱՉԵՆ-ԴՈՐԲԱՆԴԼԻ. Նմուշներ դամբարանի հարթաքանդակներից*



*ԵՂՎԱՐԴ. Աստվածածին եկեղեցու արեւմտյան ճակատի պատկերաքանդակը*

## ԳՅԱՎՈՒՐՂԱԼԱ

Վաղ միջնադարի ծաղկուն եւ մարդաշատ մի քաղաքատեղիի ավերակները, որի պատմական անունը, ցավոք, մեզ չի հասել (որոշ ուսումնասիրողներ ենթադրում են, թե հենց սա է Արցախի Տիգրանակերտը) եւ ներկայում հայտնի է խաշնարած ցեղերի կողմից հնավայրին տրված Գյավուրղալա (թարգմ. անհավատների=քրիստոնյաների=հայոց, ղալա=բերդ) անվամբ, գտնվում է Խաչենագետի ձախ կողմում, Աղդամի շրջանի Բոյ-Ահմեդլի եւ նրան արեւելքից գրեթե կից՝ Սոֆուլու կոչված գյուղերի միջեւ, շրջկենտրոնից 12 կմ հյուսիս-արեւմուտք:

1950-ական թվականներից հնավայրում պեղումներ են կատարել բաքվեցի «գիտնականները», որոնք այստեղ եւս հայտնաբերված ամեն հայկա-

24. *Տե՛ս Բառում եւ Բառում գյուղերի շրջանի մանրատեղանունների ցանկը («Գարդմանք» ամսաթերթ, 1996 N3, էջ 7): Ըստ էության, այս ուղղությամբ դեռեւս անհրաժեշտ խորությամբ ուսումնասիրություն չի կատարված:*

կանը ներկայացրել են իբրեւ «աղվանական»:[25]

Պեղումները քաղաքատեղիում ի հայտ են բերել հայոց եկեղեցու հիմքերը, գերեզմանոց, արձանագիր տապանաքար եւ այլ բազմաթիվ հնություններ:

Եկեղեցին բազիլիկ հորինվածքով շինություն է՝ 11.95 x 5.25 մ արտաքին չափերով, կառուցված՝ կրաքարով եւ կրաշաղախով: Հատակը պատված է քառանկյունի սալաքարերով: Արեւելյան կողմում խորանն ունի կիսաշրջանաձեւ եզրապատ:

Եկեղեցու շուրջ տարածված է եղել հայոց գերեզմանոցը: Այտտեղ, եկեղեցուց քիչ արեւմուտք, ի թիվս այլ շիրմաքարերի, հայտնաբերվել է նաեւ սպիտակ կրաքարից կերտված, երկթեք վերնամասով, երկու մասի բաժանված ու անբվակիր արձանագրությամբ մի տապանաքար: Ինչպես պարզվում է քառատող տապանագրից, այն կերտվել է IX դարի 2-րդ կեսում սպանված Աղվանից Համամ թագավորի եղբոր հիշատակին.

ԱՅՍ ԴԻՐ ԴԱՄԲԱՆԻ ... ԵՂԲԱՒՐ ՀԱՄԱՄ ԻՇԽԱՆԻ | ԵՒ Տ(ԵԱՌ)Ն ՓՂՊԷԻ ԵՒ Տ(ԵԱՌ)Ն ՍՆՊԱՏԱ...ԶՐԿ|ԵԱԼ Ի ՃՈՐՏ ՀԱՍԱԿԷ ԵԼԱ ՅԱՇԽԱՐՀԷՍ. ԴԱՌՆ ԹՈՂԻ ՍՈՒԳ ԶԳԻՐՍ ԶԱՅՍ ՄԻ ՈՔ ԻՇԽԵՍՑԷ ՄԵՐՁԵՆԱԼ Ի ՍՄԱ ՆԶՈՎԵԱԼ ԵՂԻՑԻ Ի Ք(ՐԻՍՏՈՍ)Է Ա(ՍՏՈՒԾՈ)Յ:[26]

Տապանաքարը, որի արձանագրությունը տարբեր աշխատություններում հրատարակվել է նաեւ հետագա տարիներին,[27] հայտնաբերումից հետո փոխադրվել է Բաքու:

Գյավուրղալա քաղաքատեղիում հայտնաբերվել են նաեւ բազմաթիվ այլ կառույցների մնացորդներ (կառուցված գլխավորապես կրաքարից) եւ սյուների խարսխաքարեր: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ քաղաքում միաժամանակ գոյություն են ունեցել երկու գերեզմանատներ, մեկը՝ քրիստոնեական (հմա՝ հայոց), իսկ մյուսը՝ հեթանոսական:[28] Հայկական գերեզմանոցը թվագրվում է IV-IX դարերով, իսկ եկեղեցին՝ VIII-IX դարերով:[29]

25. **Р. М. Ваидов,** *Ковургала археоложи газынтылары, Азербайчанын мадди мэдэнийэти, h. 6, Բաքու, 1965:* **Р. Б. Геюшев,** *Каменные идолы нового типа, ДАН, Азерб. ССР, 1966, № 6, էջ 77-79: Նույնի՝ „Раскопки городища Гявур кала, "Археологические открытия в Азербайджане за 1971 год", Баку, 1972: Նույնի՝ Работы на городище Гавур кала, "Археологические открытия 1977 года", Москва, 1978: Նույնի՝ Христианство в Кавказской Албаний, Баку, 1984, էջ 60:*

26. **Ս. Բարխուդարյան,** *Տապանագիր Համամ իշխանի անունով, «Տեղեկագիր ԳԱ», 1964, N 1, էջ 61–64:*

27. *«Դիվան հայ վիմագրության», պրակ 5, Երեւան, 1982, էջ 136:* **Р. Б. Геюшев,** *Христианство в Кавказской Албании, էջ 85:*

28. *Խոսքը այն գերեզմանոցի մասին է, որտեղ հայտնաբերվել են խաչքարերին վերագրվող մարդակերպ կոթող-գերեզմանաքարեր: Դրանց մեծ մասը տեղումներից հետո փոխադրվել է Աղդամի բացօթյա թանգարան-քարեդարան:*

29. **Р. Б. Геюшев,** *Христианство в Кавказской Албании, էջ 60:*

## ՓԱՓՐԱՎԵՆԴ

Գյավուրղալա հնավայրից ընդամենը 3 կմ հյուսիս-արեւմուտք, Գյուլաբաղ վտակի ափերին, ԼՂՀ Մարտակերտի շրջանի սահմանին գրեթե կից գտնըվում է մինչեւ վերջերս (1992 թ.) թրքաբնակ, Փափրավենդ անունը կրող գյուղը: Այստեղ պահպանվել են գմբեթավոր հորինվածքով եւ բոլորաձեւ հատակագծով մի եկեղեցու ավերակները: Վերջինիս արեւելյան պատից բացվում է մի նեղ լուսամուտ, մուտքը արեւմտյան ճակատից է: Հյուսիսային եւ հարավային պատերի մեջ ունի ոչ մեծ խորշեր: Կառուցված է անմշակ քարով, կրաշաղախով: Թվագրվում է VI-VII դարերով:[30]

Նույն գյուղի մոտ, Մարտակերտ-Աղդամ մայրուղուց ոչ հեռու պահպանվում է նաեւ թաղակապ հորինվածքով մեկ այլ եկեղեցի, որին մերձաբնակ հայերը կոչում են «Սուրբ», իսկ թուրքերը՝ «Փիր» (փիր=սուրբ): Անմշակ քարով կառուցված այս եկեղեցին եւս արեւելյան կողմում ունի կիսաբոլորաձեւ եզրապատով խորան:[31]

## ՂԱՐԱԹԱՓԱ (ՂԱԼԱԹԱՓԱ)

Հնավայրը, որը մի բարձր դամբարանաբլուր է, գտնվում է Կարկառ գետի աջ կողմում՝ թրքաբնակ Շիխբաբալի գյուղի հարեւանությամբ:

XIX դարի վերջին հնավայրում պեղումներ է կատարել Է. Ռյոսլերը: Հայտնաբերված նյութերը՝ կարասային թաղումներ եւ այլն, վերաբերում էին նախաքրիստոնեական շրջանին:[32]

## ԳՅՈՒԼԱԲԼԻ

Աղդամի շրջանի Գյուլաբլի եւ Աբդալ միմյանց հարեւան գյուղերը, որոնք իրենց պատկանող հողատարածքով փռված են պատմական Վարանդա գավառի բարեբեր հովիտներից մեկի տարածքում, գտնվում են սեպաձեւ երկարած մի նեղ ձորակում:

XIX դարի ընթացքում այդտեղ նստակեցության անցած թրքական ցեղերն, առհասարակ, հայտնի են եղել իրենց ավազակաբարո վարքով: Նրանց չարագործությունները չէին դադարել մինչեւ իսկ XX դարի սկզբներին: Ահա թե ինչ է գրել ժամանակի մամուլն այդ առթիվ. «Եթե Ղարաբաղում կան թրքական յայտնի գիւղեր, որոնց արտադրած աւազակների գործունէութիւնն առասպելական բնաւորութիւն է ստացել եւ պատմւում է հայ գիւղերում

30. *Նշվ. աշխ., էջ 97:*

31. *Նշվ. աշխ., էջ 64:*

32. **Эмиль Рёслер,** *Археологическая изыскания в Закавказье, "Кавказ", 1903 г., N 134, էջ 2: Տես նաեւ՝ «Էլմ վե հայաթ» («Գիտություն եւ կյանք» (ադրբեջաներեն), Բաքու, 1990, N5, էջ 11-13:*

բերնէ բերան. եթէ կան թրքական յայտնի գիւղեր, որոնց մօտով հայը առանց երեսը խաչակնքելու չի անցնում, այդպիսի գիւղերից մէկն էլ Գիւլափլու գիւղն է, որը գերազանցում է միւս բոլոր աւազակաբարոյ գիւղերին, որպիսիք են օրինակ՝ Սէյդլար, Շելլու, Ղաջար, Զարգեար, Դիլաղարդա եւ այլն»:[33]

Ըստ ամենայնի մինչեւ XVIII դարի կեսերը հայաբնակ, բայց այնուհետեւ եկվոր խաշնարած ցեղերից գրավված Գյուլափլու գյուղում դեռեւս XIX դարի վերջերին նկատելի էին երբեմնի բնիկների թողած մշակութային արժեքների հետքերը: Ըստ ականատեսի վկայության. «Վարանդ գաւառակի հայ գիւղերի շարքում կայ մի թուրքի գիւղ «Գիւլափլու» անունով, որ ունի 700 ծուխ.[34] այդ գիւղում երեւում են հայի գերեզմանների յիշատակներ եւ ինչպէս պատմում են, թուրքերը նկատելով այդ գիւղի դիրքը՝ լաւ եւ ընտիր տեղը հետզհետէ հալածել են հայերին, որոնք այժմ նրա մօտակայ լեռներում գիւղեր շինած ապրում են, իսկ թուրքերը բուն դրած այն տեղերը փառաւորապես ապրում են: Տեղի համար խօսք չկայ ասելու, անազին մեծութեամբ այգիներ, ծառաստաններ, որքան ջրաղացներ եւ այդ ամենով լիանում է թուրք ազգը...»:[35]

Գյուլափլու գյուղի մերձակայքում պահպանվել են մեծաթիվ հնագիտական հուշարձաններ:

Դեռեւս XIX դարի վերջերին դրանց վրա իր ուշադրությունն է բեւեռել գերմանացի հնագետ Է. Ռյոսլերը. «Գյուլափլու գյուղի մերձակայքում ես հանդիպեցի 3 տեսակ թաղումների. 1) քարարկղային թաղումներ, 2) վերեւից սալաքարով ծածկված հողափոր թաղումներ եւ 3) դամբարանաբլուրներ: Հետազոտվեցին առաջին տեսակից ընդամենը 36 գերեզման, երկրորդից՝ 5, իսկ երրորդից՝ 3 դամբարանաբլուր: Քարարկղային թաղումները գտնվում էին լեռան ստորոտում, տեղի գյուղացիներին «գյավուր-կաբրի» անվամբ հայտնի հին գերեզմանոցում...»:[36]

33. «Նոր-Դար», 1903, N 52, էջ 3:

34. Ակնհայտ չափազանցություն է, քանի որ 1886 թ. գյուղն ուներ 250 տուն (876 ար., 536 իգ. թուրք բնակիչ): Տես՝ Свод статистических данных, извлеченных из посемейных списков населения Кавказа. Елисаветопольская губерния", Тифлис, 1888, էջ 176-177:

35. «Նոր-Դար», 1887, N 109, էջ 2:

36. **Эмиль Рёслер,** նույն տեղում: Ի դեպ, թուրքերից՝ Գյավուր-գաբրի հորջորջված անվան բառացի թարգմանությունն է անհավատների, իմա՝ քրիստոնյաների՝ հայոց գերեզմանոց:

# ԱՂՋԱԲԵԴՈՒ ՇՐՋԱՆ

ԱՂՋԱԲԵԴՈՒ ՇՐՋԱՆԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ
Եկեղեցիներ
Գերեզմանոցներ
Հնագիտական հուշարձաններ

Պատմական ակնարկ: Աղջաբեդու վարչական շրջանը կազմավորվել է 1930թ.: 1963-65 թթ. միացված է եղել հարեւան Աղդամի շրջանին, բայց այնուհետեւ կրկին հանդես է եկել որպես առանձին վարչական միավոր: Զբաղեցնում է 1756 քկմ տարածք:[1] 1976 թ. դրությամբ ուներ 1 քաղաք (շրջկենտրոնը՝ Աղջաբեդի) եւ 44 գյուղ:

Շրջանի ներկայիս տարածքը համապատասխանում է պատմական Մեծ Հայքի Ուտիք նահանգի Ուտի-Առանձնակ գավառի հարավային եւ Բելական (Բայլական) գավառի հյուսիս-արեւմտյան հատվածին: Միջնադարում շրջանն ավելի հայտնի էր Բեղամեջ անվամբ: Ուշագրավ է, որ ներկայիս շրջանի մի զգալի մասը զբաղեցնող տարածքը (Աղգյոլ լճի եւ շրջակա բազում ավելի մանր լճերի, ճահճուտների եւ աղուտների շրջանը) միջնադարում եւս ունեցել է առկա բնական պայմանները: Համենայն դեպս դա է վկայում Կիրակոս Գանձակեցին: 1220 թ., երբ Դարբանդի կողմից ներխուժած լեռնցիները, Հայոց մի շարք գավառները (մինչեւ Տփղի-

1. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն) հ. I, Բաքու, 1976, էջ 113:*

սի մատույցները) ապաստակելով, եռադարձին բանակել էին Բեղամեջում, նրանք, պատմագրի վկայությամբ. «...ամրացուցին զաղխս իւրեանց ի մօր եւ ի տղմուտ տեղիս, որ կայ ի մէջ երկուց քաղաքացն՝ Պարտաւայ եւ Բեյլուկանայ յամրագոյն տեղիս, զոր Բեղամէջն կոչեն, եւ ինքեանք յանդուգն յարձակմամբ աւերէին զբազում գաւառս»:[2]

Առհասարակ ներկայիս Աղջաբեդու ամբողջ շրջանը զբաղեցնում է Կուր-Արաքսյան ողջ միջագետքը ներառող Առանի (Մուղան) լայնարձակ դաշտավայրի մի նշանակալի մասը. «...յինքնաբաւ դաշտն Ռռանայ, որ ասի Մուղան»:[3] Վերջինս, ինչպես հայտնի է, հարկ եղած դեպքերում պաշտպանություն կազմակերպելու տեսանկյունից իր ունեցած ծայրահեղ անբարենպաստ պայմանների պատճառով արդեն միջնադարում մեծավ մասամբ մնացել էր անբնակ ու ամայի: Մինչեւ ուշ միջնադար երկրամասի բնիկները նահանջել ու ամրացել էին Արցախի լեռներում, իսկ լայնարձակ տափաստանները զբաղեցրել էին թափառական խաշնարած ցեղերը (քաբրլի, ջվանշիրլի, օբուզինջի, բոլանի եւ այլն): Ճիշտ այս հանգամանքով է պայմանավորված, որ ներկայիս շրջանի տարածքում պահպանված հայ մշակույթի հուշարձանների մեծագույն մասը վերաբերում է նախաքրիստոնեական եւ քրիստոնեության վաղ շրջաններին:

#### ԹԱԶԱՔՅԱՆԴ

Աղջաբեդի շրջկենտրոնից 14 կմ հյուսիս-արեւմուտք, միանգամայն հարթ տեղանքում գտնվող Թազաքյանդ գյուղից 3 կմ հեռավորությամբ, «Չաբալթափա» կոչված բլրի հարեւանությամբ 1969թ. կատարված գյուղատնտեսական աշխատանքների ընթացքում միանգամայն պատահաբար հայտնաբերվեցին վաղ միջնադարյան մի եկեղեցու մնացորդներ: Եռանավ բազիլիկի հորինվածք ունեցող տաճարի (արտաքին չափերն են 16,5x9,25) ուշագրավ առանձնահատկությունն է ավագ խորանի նաեւ արտաքուստ ընդգծված կիսաբոլորաձեւ եզրապատը: Ունի ավանդատներ: Միակ մուտքը բացված է արեւմտյան ճակատից: Առավելագույնը մինչեւ 1,6 մ բարձրությամբ կանգուն մնացած եկեղեցու պատերը եւ սյուները շարված են անմշակ եւ կոփածո քարով, ինչպես նաեւ թրծված աղյուսով: Վերջինս օգտագործված է նաեւ եկեղեցու հատակապատման համար: Սրահի հատակի համեմատ խորանն ունեցել է 45 սմ բարձրություն:

Ինչ վերաբերում է եկեղեցու թվագրման խնդրին, ապա դրան հատկապես նպաստում է հնավայրում առատորեն հայտնաբերված խեցեղեն նյութի ուսումնասիրությունը, համաձայն որի, եկեղեցին, ոորոշ պայմանականությամբ, թվագրվում է VI դարով:[4]

Մատենագիր աղբյուրները Բեղամեջ գավառում կառուցված միայն մի եկեղեցու մասին են տվյալներ հաղորդում, եւ այդ տվյալները, միանշանակ կերպով, ինչպես տեղագրորեն, այնպես էլ ժամանակագրորեն, համընկնում են վերոհիշյալ եկեղեցու թվագրման եւ տեղադրման մասին ենթադրվող տվյալներին: Մասնավորապես՝ Մովսես Կաղանկատվացին, անդրադառնալով Չողում նստած (մինչեւ 551 թ.) Աղվանից Ղազար հայրապետի գործունեությանը, վկայում է. «Սա շինեաց Ղազարապատ գտեալ ի Բեղամէջս, զոր եկեղեցին Պանտալէտովնի, եւ շինէ ահատր տեսլամբ»:[5]



Թազաքյանդի եկեղեցու հատակագիծը

#### ԲՈՅԱԹ (ԲԱՅԱԹ)

Աղջաբեդուց 26 կմ արեւմուտք, շրջկենտրոնից դեպի Աղդամ ձգված ճանապարհին գտնվող Բոյաթ գյուղը ուշագրավ է այն բազմաթիվ դամբարանաբլուրների առկայությամբ, որ պահպանվել են այդ գյուղի մերձակայքում եւ ներկայում հայտնի են խաշնարածներից տրված Ղըշլաքթափա, Ղոշաթափա, Գաբիրիստանլըղթափա եւ Ղալաղթափա անուններով: Մասնավորապես՝ դեռ 1883 թ. գնդապետ Վեյս-Ֆոն-Վեյսենհոֆը Բայաթի տարածքից հայտնաբերել էր ջնարակած աղյուս եւ խեցեղեն նմուշներ, որոնք գրավել էին գիտնականների ուշադրությունը:[6]

Ուշագրավ է նաեւ միջին դարերին վերաբերող՝

2. *Կիրակոս Գանձակեցի*, Պատմություն Հայոց, Երեւան, 1961, էջ 202-203:
3. *Մխիթար Այրիվանեցւոյ* Պատմութիւն Հայոց, Մոսկվա, 1860, էջ 66:
4. *Р. Б. Геюшев*, նշվ. աշխ., էջ 86-87:
5. *Մովսէս Կաղանկատուացի*, նշվ. աշխ. (հավելված), էջ 350:
6. *И. З.*, Археологические находки на Кавказе, "Кавказ", 1884, № 222, էջ 2-3:

Ծաhարգաh հնավայրը:[7]

Բոյաթ գյուղը դաշտավայրով մեկ սփռված բազմաթիվ այլ գյուղերից առանձնանում է նաեւ նրանով, որ այստեղ, XVIII դարի 40-ական թվականներին, թափառական խաշնարած ցեղերից մեկի առաջնորդ Փանահը հին ամրոցի հիմքերի վրա կառուցեց թուրքական առաջին մզկիթը. «Քաբիրլի գավառամասում նա շինեց այդպիսի մի բերդ, որը կոչվեց Բայաթ: Բերդը շրջապատեց խոր խրամատով, մեջը կառուցեց մզկիթ: Այս մի աչքի ընկնող երեւույթ էր թափառական խաշնարածների աշխարհում, եւ նոր բերդը շատ բնակիչներ գրավեց զանազան կողմերից»:[8]

Բայաթի հնությունների նախնական ուսումնասիրությամբ եւ լուսանկարահանումներով առաջինը զբաղվել է գերմանացի հնագետ Է. Ռյոսլերը:[9]

Աղջաբեդիի շրջանի տարածքում, հավանաբար ժամանակակից Հինդարխ գյուղի տեղում էր գտնըվում Հունան բնակավայրը, քանի որ այն գտնվում էր Պարտավի եւ Բայլականի մեջտեղում. «Յունան-վայր՝ Պարտավից յոթ փարսախ հեռավորության վրա: Այնտեղից մինչեւ Բայլական յոթ փարսախ հեռավորություն է»:[10]

---

7. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հ. II, Բաքու, 1978, էջ 223:*

8. ***Լեո**, Երկերի ժողովածու, հատոր 3, գիրք երկրորդ, Երեւան, 1973, էջ 265:*

9. *"Кавказ", 1903, №134, էջ2:*

10. *«Արաբական աղբյուրները Հայաստանի եւ հարեւան երկրների մասին», հատոր 3, Երեւան, 1965, էջ 121:*

***Պատմական ակնարկ:*** Պատմական Հայաստանի Արցախ նահանգի հարավ-արեւելյան ծայրում, Ադրբեջանի Խորհրդային Հանրապետության ստեղծումից հետո, 1939 թ., ձեւավորվել է Ժդանովի վարչական շրջանը՝ 1131 քկմ մակերեսով: 1963-ին այն միացվել է հարեւան Իմիշլիի շրջանին, բայց 1964-ից կրկին հանդես է եկել որպես առանձին վարչական միավոր: Ունի 1 քաղաք՝ Բայլագան (Ժդանով) շրջկենտրոնը (մինչեւ 1932-ը՝ ավան, 1932-66-ը՝ քաղաքատիպ ավան, այնուհետեւ՝ քաղաք) եւ 39 գյուղ (1979 թ.):[1] Սահմանակցում է Ադրբեջանի Աղջաբեդու, Ֆիզուլու, Իմիշլիի եւ Ջաբրդոբի շրջաններին, ինչպես նաեւ Արաքս գետով՝ Պարսկաստանին:

Բացառապես հարթավայրային մակերեւույթ ունեցող ներկայիս շրջանի տարածքն ուշ միջնադարում արդեն խսպառ հայաթափ էր: Կուր-Արաքսյան միջագետքի այլ հատվածների հայերի նման այդ տարածքի հայությունն ամբողջապես քաշվել ու ամփոփվել էր Արցախի լեռնային գոտու գյուղերում:

Բայլականի շրջանի տարածքի մի զգալի մասով է անցնում Արաքս գետից սկիզբ առնող Գյավուր-Արխ կոչված հնագույն ջրանցքը, բայց առանձնապես մեծ հռչակ է վայելում այդ ջրանցքի հարեւանությամբ գտնվող հինավուրց Բելուկան (Բայլական) քաղաքը (այժմ՝ Բայլագան):

### ԲԵԼՈՒԿԱՆ (ԲԱՅԼԱԿԱՆ)

Հակառակ այն հանգամանքին, որ Բելուկան-Բայլականն ունեցել է բավականին հարուստ պատմական անցյալ եւ բազմիցս վկայակոչված է հայ եւ օտար մատենագիրների երկերում, այնուամենայնիվ մինչեւ XX դարի 30-ական թվականներն այդ մեծահռչակ քաղաքի տեղն անգամ գիտությանը հայտնի չէր: Մակար եպիսկոպոս Բարխուտարյանցն այն նույնացրել է Բայաթ ամրոցի հետ. «Բելուկան աւերակ՝ քաղաքատեղին Գարգարի ձախ կողմում, որ այժմ կոչվում է Բայեաթ...»,[2] իսկ պատմաբան Լեոն նշել է. «Նահանգն իր անունը ստացել է Փայտակարան քաղաքից, որ հիշատակվում է շատ անգամ, բայց որի տեղը որոշել անկարելի է»:[3]

Սակայն, ներկայիս Բայլագանի (նախկին՝ Ժդանովի) շրջանի Քյաբրլի եւ Խաչինստրոյ գյուղերի միջեւ գտնվող եւ խաշնարածների կողմից Էորանդալա անվանումը ստացած հնավայրում 1933 թ. սկսված եւ տասնամյակներ տեւած ուսումնասիրությունները սպառիչ կերպով հստակեցրին խնդիրը, պարզելով, որ այդ հնավայրը նույն ինքը՝ Բայլական կամ Բելուկան քաղաքատեղին է:

Բայլական քաղաքն, իր գոյության ընթացքում առանձնահատուկ նշանակություն է ունեցել հայ ժողովրդի պատմության մեջ:

Արաբական աղբյուրները քաղաքի հիմնադրումը հիմնականում վերագրում են Սասանյան Կավատ արքային (488-496, 498/9-531),[5] սակայն այլ տվյալների առկայությունը գալիս է հավաստելու, որ Կավատ արքան կարող էր լինել միայն քաղաքի վերաշինողը եւ ոչ երբեք՝ հիմնադիրը:

IX դարի կեսերին արաբական աղբյուրները հիշատակում են Բայլական գավառի մասին: Ուշագրավ է, որ այդ ժամանակ նրա կազմում է հիշվում նաեւ Լեռնային Արցախի հարավում գտնվող Քթիշ բերդը (այժմ՝ Հադրութի շրջանի Տող գյուղի մոտ). «Ապա Բուղան գնաց Իսա իբն Յուսուֆի (Եսայի Աբու-Մուսե-Ս.Կ.) դեմ, որը Քթիշ (Քատիշ) ամրոցում էր Բայլականի գավառում»:[6]

Բայլականը աննախադեպ արհավիրքի ենթարկվեց 1221թ., մոնղոլ-թաթարական արշավանքի ժամանակ «Թաթարները հարձակվեցին, կռվեցին, ապա սրի ուժով գրավեցին քաղաքը (վեց հարյուր տասնութ թվականի Ռամադան ամսին (30 հոկտ. - 28 նոյ.) ու սրի քաշեցին, կենդանի չթողնելով ո՛չ փոքրին, ո՛չ մեծին, ո՛չ էլ կանանց...»,- վկայում է արաբ պատմագիրը:[7] Նույն դեպքերի առնչությամբ պատմագիրը նշում է նաեւ. «նրանք հասան Առան երկրի Բայլական քաղաքը, որը պաշարեցին ու գրավեցին, բնակիչներին կոտորեցին այնքան, որ գրեթե բնաջինջ արեցին»:[8] Ուշագրավ է, որ չնայած մոնղոլների կողմից բնակչության կոտորածից հետո քաղաքը հրդեհվել էր, այնուամենայնիվ նվաճողների հեռանալուց հետո այն չէր լքվել, այլ կրկին շենացվել էր. «... Թաթարները եկան եւ սպանեցին ձեռքն ընկած բնակիչներին, կողոպտեցին, հետո այրեցին քաղաքը: Երբ նրանք հեռա-

*1. «Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր IV, Բաքու, 1980, էջ 265:*

*2. «Արցախ», էջ 28:*

*3. **Լեո**, Երկերի ժողովածու, հ. 1, Երեւան, 1966, էջ 160:*

*4. Քաղաքի տեղադրության մասին. «... (Արաքսին - Ս. Կ.) միանում է Կուրը եւ երկուսի միջեւ մնում է Բայլական քաղաքը...» («Արաբական աղբյուրները Հայաստանի եւ հարեւան երկրների մասին», հ. 3, Երեւան, 1965, էջ 69): Տես նաեւ նշվ. աշխ., էջ 171 եւ 148-ի N 114 ծանոթագրությունը:*

*5. Մասնավորապես, Իբն-ալ-Ասիրը հաղորդում է. «Ապա Կավատը հասավ նրանց ետեւից եւ Առանում կառուցեց Բայլական քաղաքը...» (Իբն Ալ-Ասիր, էջ 40): Կամ. «... հիմնադրողը եղավ Կավատ թագավորը Արմինիային տիրելուց առաջ: Ոմանք էլ ասում են, թե նրա հիմնադրողն է եղել Կոնանի որդի, Լանտայի որդի, Արմանի որդի Բայլականը» («Արաբական աղբյուրները...», հ. 3, Երեւան, 1965, էջ 40): Կամ. «Կոբադը ինքն իր զորավարի ետեւից հասնելով, խազարներին տեղահան անելուց հետո, Առանում կառուցել տվեց Բայլական եւ Բարդաա քաղաքները» (նշվ. աշխ., էջ 17):*

*Բազմաթիվ ուսումնասիրողներ Բայլականը նույնացրել են հայկական աղբյուրներում բազմիցս հիշատակվող Փայտակարանի հետ: Աղբյուրների համալիր քննության շնորհիվ այդ հնարավորությունը բացառել է Բ. Հարությունյանը (տես նրա՝ «Փայտակարան քաղաքը եւ նրա տեղադրությունը» հոդվածը, «ԼՀԳ», 1981, N12, էջ 61-76):*

*6. **Իբն-Ալ-Ասիր**, նշվ. աշխ., էջ 159:*

*7. Նշվ. աշխ., էջ 303:*

*8. Նշվ. աշխ., էջ 307:*

ցան, փախստական բնակիչները կրկին վերադարձան եւ վերստին բնակություն հաստատեցին այնտեղ» վկայում է պատմագիրը:[9] Մեկ տարի անց, 1222-ին, Բայլականն մտան հայ-վրացական միացյալ զորքերը:[10]

1246 թ. Գտիչ վանքի մի ընդարձակ արձանագրության մեջ Բայլական քաղաքը՝ Բելուկան ձեւով հիշվում է որպես հիշյալ վանքի թեմական իրավասության ներքո գտնվող վայր. «...ԴԻԶԱԿՈ ԲԷԼՈՒԿԱՆ ԻՒՐ ԿԵՐՈՎՆ...»:[11] Ուշագրավ է, որ եթե IX դարի դեպքերի առթիվ Քթիշ (Գտիչ) բերդն է հիշվում որպես Բայլական գավառի մեջ գտնվող վայր, ապա XIII դարում Բայլականն է հիշվում Դիզակի կազմում: Այսինքն՝ տարածաշրջանի գավառանվան տեսակետից Բայլականը տեղի էր տվել Դիզակին:




*ԲԱՅԼԱԿԱՆ. Խաղաքատեղիի կենտրոնական մասի հատակագիծը*

Բայլական քաղաքին վերաբերող վերջին հիշատակություններից մեկը թողել է իսպանացի ճանապարհորդ Ռույ Գոնզալեց դի Կլավիխոն, XV դարի սկզբին. «... Թիմուրը սովորություն ուներ նախապես այդ դաշտերը գալու, ուր նա հաստատում էր իր ձմեռան բնակատեղը, եւ հիրավի վերջերս նա հրամայել էր մի քաղաք (կոչված Բեյլագան) կառուցել այստեղ, ուր արդեն հաստատված 20.000 մարդիկ կային»:[12]

Վերջին դարերի՝ մատենագրական աղբյուրների բացակայությունն ինքնին վկայությունն է այն իրողության, որ քաղաքն այլեւս պատմական ասպարեզից դուրս էր մղվել, այլ կերպ ասած՝ իբրեւ բնակավայր դադարել էր գոյություն ունենալ, եւ երբեմնի գավառանիստը XX դար էր հասել նաեւ պատմական անվան կորստյամբ, սոսկ իբրեւ մի ավերակ քաղաքատեղի:

Խորհրդային տարիներին Պատմական Հայաստանի Արեւելից Կողմանց (Արցախ, Ուտիք նահանգները) շատ գավառների թվում նորաստեղծ Ադրբեջանի կազմում հայտնվեց նաեւ Բայլական քաղաքատեղին, որն արդեն, առավելապես հայտնի էր խաշնարած ցեղերից սպացած Էորանդալա անվանումով: Այստեղ, ինչպես նշել ենք, սկսած 1930-ականներից մի քանի տասնամյակ շարունակ պեղումների ուղեկցմամբ հնագիտական ուսումնասիրություններ իրականացրին բաքվեցի «գիտնականները»՝ ամեն հայտնաբերվածը ներկայացնելով կամ իբրեւ «աղվանական» եւ կամ էլ որպես «ադրբեջանական»:[13]

### ԹԱԶԱՔՅԱՆԴ

Բայլագանի (Ժդանովի) շրջանում, շրջկենտրոնից 4,5 կմ հյուսիս-արեւմուտք գտնվող Թազաքյանդ գյուղը հիմնել են Մարտակերտի, Մարտունու եւ Հադրութի շրջաններից եկած հայերը 1938թ. փետրվարին: Հայերից առաջ, նախախորհրդային տարիներին այդտեղ ռուսներ էին բնակվել: Սկզբնապես զուտ հայաբնակ Թազաքյանդում 1988-ի դրությամբ բնակվում էին 44 տուն հայեր, 1 տուն՝ լեզգի եւ 350 տուն՝ թուրքեր: Նույն թվին գյուղի բոլոր հայերը բռնագաղթվեցին:

Բայլագան վերանվանված նախկին Ժդանովի շրջանում սակավաթիվ հայեր բնակվում էին նաեւ շրջկենտրոնում, Խաչինստրոյ գյուղում եւ Դաշբուռուն երկաթուղային կայարանում: Նրանք եւս բռնագաղթվել են 1988 թվականին:

---

*9. «Արաբական աղբյուրները...», հ. 3, Երեւան, 1965, էջ 40: Իրական հիմք չունի Հ. Մանանդյանի այն կարծիքը, թե «1221 թ. իսպառ կործանվեց Աղվանքի խոշոր քաղաք Բայլականը, որն այլեւս չվերականգնվեց» (Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր 3, Երեւան, 1952, էջ 257):*

*10. Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 186:*

*11. «Դիվան...», V, էջ 183:*

*12. Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատոր Ա, Երեւան, 1932, էջ 129:*

*13. **И. М. Джафарзаде,** Отчет о раскопках городских ворот городища Орен-кала в 1933...: Նույնի՝ Археологические раскопки городища Оренкала в 1951 г., Труды Института истории и философии", том 4, Баку, 1954. **Н. В. Минкевич-Мустафаева,** О ремесленном квартале Байлакана, "Советская археология", 1958, №4. **А. Л. Якобсон,** Раскопки на городище Орен-кала в 1953-1955 г., "Труды Азербайджанской (Оренкалинской) экспедиции, т. 1, МИА СССР, №67, М-Л., 1959. **Н. Наджафова,** Редкий вид Азербайджанской художественной ангобированной керамики из раскопок Оренкала и старой Гянджи, "Известия АН Аз. ССР", 1959, №4, էջ 15-25: **Г. М. Ахмедов,** Поздняя городская стена города Байлакана, "Известия АН Аз. ССР", 1962, №6, էջ 17-31: **В. П. Фоменко,** Стеклянные изделия VIII-X вв. городища Оренкала, "Известия АН Аз. ССР", 1962, №7, էջ 31-41: **Г. М. Ахмедов,** Оренгала, Бакы, 1962, Նույնի՝ О "Тимуревской" стене города Байлакана, "Советская Археология", 1964, №1. Նաեւ "Труды Азербайджанской экспедиции", МИА СССР, № 125, М.-Л., 1965.*

# ՖԻԶՈՒԼՈՒ ՇՐՋԱՆ

ՖԻԶՈՒԼՈՒ ՇՐՋԱՆԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

***Պատմական ակնարկ:*** Շրջանը կազմավորվել է 1930 թ.: Մինչեւ 1959 թ., ի պատիվ ռուսական բանակի հրամանատար Կորյագինի, կրում էր նրա անունը եւ կոչվում` Կորյագինի շրջան: Զբաղեցնում է 1386 քկմ մակերես: 1986 թ. տվյալներով ուներ 1 քաղաք (շրջկենտրոնը), 1 քաղաքատիպ ավան եւ 71 գյուղ:

Շրջկենտրոն Ֆիզուլի քաղաքը հիմնադրվել է 1827թ.: Սկզբնապես այն կոչվել է Ղարաբուլաղ եւ բնակեցված է եղել ռուս վերաբնակիչներով, իսկ այնուհետեւ վերանվանվել է` Կորյագինո: 1959-ից համանուն շրջանի հետ մեկտեղ վերանվանվել է` Ֆիզուլի:[1]

Սահմանակցում է ԼՂՀ Հադրութի եւ Մարտունու շրջաններին, Ադրբեջանից` Ջաբրայիլի, Աղջաբեդու եւ Բայլագանի (Ժդանով) շրջաններին, իսկ Արաքս գետով` Իրանին:

Ներկայիս շրջանի տարածքը միջնադարում մտնում էր Պատմական Հայաստանի Արցախ նահանգի կազմի մեջ: Ուշ միջնադարում տարածքի մեծագույն մասն ընդգրկված է եղել Դիզակի (Տուգախ) մելիքության կազմում:

Պարտավի, Աղջաբեդու, Բայլագանի (Ժդանով) շրջանների նմանությամբ Ֆիզուլու շրջանի տարածքի հիմնական մասն էլ հարթավայրային է եւ այդ իսկ պատճառով էլ համեմատաբար ավելի վաղ է հայազրկվել: Այդ տարածքը ժամանակի ընթացքում եւ, հատկապես, XVIII-XIX դարերում, զբաղեցրել են խաշնարած (թյուրքական ծագմամբ) զանազան թափառական ցեղերը:

Տակավին XX դարի սկզբներին ներկայիս Ֆիզուլու շրջանի տարածքում թուրքերը հիմնականում վարում էին թափառաշրջիկ (թարաքյամա) կյանք: Գոյություն ունեին միայն սակավաթիվ նորահիմն թրքաբնակ գյուղեր, որոնցից միայն Մեծ ու Փոքր Բահմանլուների եւ Մարալյանի «...բնակիչները նստակեաց թուրքեր են»:[2]

Հայ մշակույթի հուշարձանների պահպանված փոքրաթիվ նմուշները գտնվում են շրջանի արեւմտյան, այն է` ԼՂՀ Հադրութի շրջանին հարող, համեմատա-

1. *«Ադրբեջանական խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), հ. X, Բաքու, 1987, էջ 17:*

2. *Ք. Օհանեան, Շուշւց-Թաւրիզ (ճանապարհորդական նկատողութիւններ), «Մուրճ», 1903, N 1, էջ 60:*










*ՀՈՂԵՐ. եկեղեցու տեսքը հյուսիս արեւելքից եւ հյուսիսային ճակատից բացված միակ մուտքը, հասված գերեզմանոցից եւ եկեղեցու հատակագիծը*

բար լեռնային հատվածում, այսինքն՝ այն վայրերում, ուր հայերը կարողացել էին ավելի երկար դիմակայել (ի դեպ, նշենք, որ շրջանի Հողեր գյուղը մինչեւ 1988թ. դեռեւս ուներ սակավաթիվ հայ բնակչություն:

## ՀՈՂԵՐ (ՈՂԵՐ)

Մինչեւ 1938թ. Հադրութի շրջանի կազմում գտնըվող, բայց այնուհետեւ Ադրբեջանի Կորյագինի (1959-ից՝ Ֆիզուլու) շրջանին միացված Հողեր հայաբնակ գյուղը գտնվում է Իշխանագետի աջակողմում, Վնեսաբերդի հյուսիս-արեւելահայաց լեռնալանջին, ծովի մակերեւույթից 620-780մ բարձրության վրա: Գյուղի առավել բարձրադիր մասը (780մ) նրա հարավային ծայրին գտնվող Սբ. Աստվածածին եկեղեցու շուրջ պարածված գերեզմանատունն է: Մոտավորապես 1890-ին գյուղ այցելած եւ բնակիչների պեղաբնիկության խնդրով հետաքրքըրված Մակար եպիսկոպոս Բարխուտարյանցը նշել է, որ Հողերի «բնակիչք բնիկ»-ներ էին, իսկ ծխական եկեղեցու շենքն էլ գտնվում է թերաշեն վիճակում. «... եկեղեցին կիսատ...»:[3]

Հայ բնակիչների թիվը, ըստ աղբյուրների, հետեւյալ պատկերն է ներկայացնում:

| Տարեթիվ | տուն | արական | իգական | միասին |
|---|---|---|---|---|
| 1889 | | 128 | 98 | 226[4] |
| 1897 | 65[5] | | | |
| 1914 | | | | 630[6] |
| 1921 | 139 | 288 | 312 | 600[7] |

Հատկանշական է, նաեւ օրինաչափ, որ 1938 թվականից հետո, երբ գյուղը միացվեց թրքաբնակ Ֆիզուլու շրջանին, իսկույն եւեթ ծայր առավ հայերի

3. «Արցախ», էջ 71:
4. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8583, թ. 42-43:
5. **Ա-Դօ**, Հայ-թուրքական ընդհարումը Կովկասում (1905-1906 թ.), Երեւան, 1907, էջ 172:
6. "Кавказский Календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 110:
7. **Карапетян М. М.**, Этническая структура населения Нагорного Карабаха в 1921 г. (по сельско-хозяйственной переписи Азербайджана 1921 г.), Ереван, 1991, էջ 15:

արտագաղթը: Արդեն 1980-ականներին Հողերում մնացել էին միայն 3-4 հայ ընտանիք, իսկ գաղթած հայերի թափուր բնակարանները զբաղեցրել էին դրսեկ թուրքերը: 1986թ. գրեթե ամբողջովին թըրքաբնակ Հողերն ուներ 366 բնակիչ:[8]

1989-ից ի վեր ադրբեջանական կողմը արդեն խլպառ հայաթափ Հողերը վեր էր ածել մերձակա հայաբնակ՝ Ջրակուս, Դուդուկչի, Դրախտիկ եւ այլ գյուղերին հարվածելու ռազմական հենակետի: Այն վնասազերծվեց 1992թ. մարտի 31-ին, երբ Արցախի ազատամարտիկները ազատագրեցին Հողերը:

Հողերի Սբ. Աստվածածին եկեղեցին, որ հնի հիմքերի վրա XIX դարի վերջերին վերակառուցված միանավ թաղակապ շենք է, արխիվային վավերագրերից մեկում միեւնույն անվամբ հիշվում է 1880թ.:[9] Կառուցված է անմշակ քարով, սրբատաշ են միայն անկյունաքարերը: Ըստ տեղանքի ընձեռած հնարավորությունների՝ եկեղեցու միակ մուտքը բացված է հյուսիսային ճակատից: Իր ավանդական տեղում է (հյուսիսային պատի մեջ) մկրտարանի քարե (միակտոր) տաշտակաձեւ ավազանը: Արեւմտյան ճակատը դրսի կողմից մեծ մասով թաղված է հողի շերտի մեջ: Շուրջը տարածված է գերեզմանոցը: Այստեղ արձանագրություն կրող պահպանված ամենահին շիրմաքարը 1807 թվականից է: Ուղղանկյունաձեւ տապանաքարի (149x28x40սմ) նեղ կողին երկտող փորագրված է.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԱՍԿԱՐԻ ՈՐԴԻ ԷՎԱՆԷՍ(Ի)Ն, Թ-Վ(ԻՆ) ՌՄԾԶ (1807):

Թվակիր ամենաուշ մի քանի տապանաքարերը վերաբերում են 1960-ականներին:

Գերեզմանոցից ոչ հեռու, ձորակում պահպանվում է նաեւ ակնհայտորեն հայ վարպետների կառուցած աղբյուրը:

**ԱԿԱՐՈՒՄ (ԽԱԼԱՖՇԱ)**

Հաջորդ բնակավայրը, որ մինչեւ XIX դարի վերջերը նույնպես ուներ հայ բնակչություն, Ակարում կամ Խալաֆշա գյուղն է: Այն գտնվում է Ֆիզուլի շրջկենտրոնից 5 կմ հարավ-արեւմուտք, ԼՂՀ Հադրութի շրջանի սահմանից հազիվ 1 կմ հեռավորության վրա, ծովի մակերեւույթից 500-650 մ բարձրությամբ, արեւելահայաց ձորալանջին:

Ցավոք, Ակարումցի հայերի պատմությունը լուսաբանող արխիվային վկայագրերը խիստ սուղ են: Հայտնի է միայն, որ այստեղ 1886 թ. բնակվում էին 8 տուն՝ հայեր 58 շունչ (32 ար., 26 իգ): Ի դեպ, նույն աղբյուրի համաձայն, գյուղն արդեն ուներ նաեւ ավելի մեծաթիվ թուրք բնակչություն (33 տուն, 110 արակ., 95 իգ.):[10] 1889թ. մեկ այլ վիճակագրական վավերագիր Ակարում գյուղում հայ բնակիչների թիվը ցույց է տվել 122 շունչ (59 ար., 63 իգ.):[11] Թրքախառն գյուղում ու նաեւ այլ թրքաբնակ գյուղերով շըրջապատված ակարումցի հայերը ըստ ամենայնի դըժվար թե երկար դիմանային եւ, իրոք, XIX դարի վերջին եւ XX դարի սկզբներին ստեղծված մի շարք վավերագրերում այլեւս Ակարում գյուղում հայերի գոյությունը չի արձանագրվում:[12] 1914 թ. զուտ թրքաբնակ Խալաֆշան (գյուղի այս անվանումը գործածում էին հատկապես թուրքերը) ուներ 255 բնակիչ:[13] Խալաֆշայի արեւմտյան թաղի բարձրադիր մասում պահպանվել են հայոց գերեզմանատան մնացորդները:

**ՂԱՐՂԱԲԱԶԱՐ**

Ֆիզուլուց 6,5 կմ հարավ, հնուց ի վեր իր կարեւորությունը պահպանած գլխավոր ճանապարհի վրա փռված Ղարղաբազար գյուղը հատկապես նշանավոր է եղել պարսից շահերի տիրապետության վերջին շրջանում՝ XVII դարի 2-րդ կեսին, երբ այստեղ հայ քարգործ-վարպետների աշխատությամբ կառուցվել է պարսկական մզկիթ (1682թ.) եւ իջեւանատուն (1684թ.): 1960-ականներին այստեղ այցելած Ս. Բարխուդարյանը նշել է. «Ամբողջ քարավանատունը արտաքուստ անտաշ քարերով է շինված, իսկ հյուրասենյակները եւ մանավանդ սրահը՝ սրբատաշ քարով: Սրահի կամարները պայտաձեւ են եւ կառուցված հայ ճարտարապետության միջնադարյան լավագույն ոճով: Այդ սրահի կենտրոնական կամարի սյան վրա խազագրով եւ անվարժ ձեռքով կա հետեւյալ հիշատակագրությունը.

ԵՍ ՋԼԻՎԱՐԴՍ ԵԿԻ, Թ-Վ(ԻՆ) ՌՃԼ(1681)...»:[14]

**ՖԻԶՈՒԼԻ**

Այնտեղ, որտեղ ներկայիս համանուն շրջանի կենտրոն Ֆիզուլի քաղաքն է, 1827թ. հիմնվել է Ղարաբուլաղ անվամբ բնակավայրը: Սկզբնական շրջանում նրա միակ բնակիչները ռուս աղանդավորներ էին (մալականներ), բայց հետագայում փոքրիկ Ղարաբուլաղը համալրվեց թուրքերով ու նաեւ փոքրաթիվ հայերով: 1886թ. Ղարաբուլաղը դեռ զուտ ռուսաբնակ գյուղ էր (45 տուն, 213 շունչ՝

---

8. «Ադրբեջանի խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն) հ. X, Բաքու, 1987, էջ 259:

9. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 6, գ. 33, թ. 17:

10. "Свод статистических данных извлеченных из посемейных списков населения Кавказа. Елисаветопольская губерния", Тифлис, 1888, էջ 104-105: Ղարղաբազարի գյուղական համայնքում, բացի հայ եւ թուրք բնակչություն ունեցող Ակարում-Խալաֆշայից, միավորված էին նաեւ զուտ թրքաբնակ եւս 6 գյուղեր (Դաղալի, Ջուվարլի, Իշխլի, Քոչ-Ահմեդլի, Յալ-Փիր-Ահմեդլի եւ Մանդիլու):

11. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8583, թ. 42-43:

12. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 14, գ. 205, թ. 238-239:

13. "Кавказский Календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 194:

14. «Դիվան...», պրակ 5, էջ 191:



ՂԱՐԱՔՅՈՓԱԿ-ԹԱՓԱ. բլրի ընդհանուր տեսքը

104 ար., 109 իգ.),[15] բայց, օրինակ, 1915 թ. արդեն Կորյագինո վերանվանված նախկին Ղարաբուլաղում ռուսները (65 տուն) իրենց թվաքանակով զիջում էին տեղի թուրքերին: Ըստ վկայագրության՝ «Վարանդայի եւ Դիզակի գաւառամասերի գիւղացիների առեւտրական կենտրոնը Կարեագինն է: Այստեղի ազգաբնակութեան ճնշող մեծամասնութիւնը թուրքեր են կազմում, որոնք գլխաւորապէս պարապում են առեւտրով: Թուրքերից յետոյ երկրորդ տեղն են բռնում մօլօկանները:... Մօլօկանների գլխաւոր զբաղմունքը հողագործութիւնն է. այգեգործութեան ճիւղին մեծ զարկ են տուել: Մասնաւորապէս հայերը չնչին փոքրամասնութիւն են կազմում, որոնց մի մասը խանութպաններ են, իսկ միւս մասը դերձակներ ու կոշկակարներ...»:[16] Ի դեպ, եւ թուրքերի, եւ հայերի հիմնական մասը այդտեղ էր գաղթել Շուշիից, քանի որ ռուսների հիմնադրած գյուղը, իր աշխարհագրական հարմար դիրքի շնորհիվ ամենշաբաթյա տոնավաճառների վայր էր դարձել:[17]

1959 թվականից Ֆիզուլի վերանվանված շրջկենտրոնը նշանավոր է հատկապես քաղաքի հյուսիսային եզրին գտնվող եւ շուրջ 50 մ բարձրություն ունեցող մի ուշագրավ բլրով: Թուրքերն այն կոչում են «Ղարաքյոփակթափա»: Բլրի հարթ մակերեւույթը ամբողջապես ծածկված է խեցեղեն կտորտանքներով: Արդեն XX դարի սկզբներին հնագետների ուշադրությունը գրաված հնավայրում 1964 թվականից ի վեր պեղումներ են կատարվել: Հայտնաբերված նյութերը, որ թվագրվում են մ.թ.ա. IV-III հազարամյակներով,[18] ներկայանում են իբրեւ Հայկական Լեռնաշխարհի բազմաթիվ այլ հնավայրերից ի հայտ եկած նյութերին հարազատ ու անքակտելի մաս:

## ՂԱՋԱՐ, ԴԻԼԱԳԱՐԴԱ, ՎԵՅՍԱԼՈՒ

Հայտնի է, որ թուրքաբնակ գյուղերից, առհասարակ, թալանի նպատակով պարբերաբար ավազակային հարձակումներ էին գործում հայաբնակ գյուղերի վրա: Այդ գյուղերի մեջ հատկապես առանձնանում էին ներկայիս Ֆիզուլու շրջանի տարածքում գտնվող՝ Դիլագարդա, Վեյսալու եւ Ղաջար գյուղերը:

Նախախորհրդային տարիներին դրանց գործած բազում չարիքների մասին վկայություններով լեցուն է հատկապես ժամանակի մամուլը: Մասնավորապես՝ Դիլագարդա գյուղի վրանաբնակ թուրքերի հիմնական զբաղմունքը մերձակա եւ նույնիսկ հեռավոր հայ գյուղերից անասնագողությունը եւ սպանություններն էին:[19] Վեյսալուցիները հմտացել էին անասնագողության եւ դրանք փրկագնով հայերին ետ վերադարձնելու մեջ:[20] Ղաջարցիների հիմնական զբաղմունքը ճանապարհներին դարանակալելն ու խեղճ գյուղացիներին թալանելն ու սպանելն էր: Այդ ավազակաբարո հարձակումներն ուղղակի անտանելի էին դարձել 1906 թ. հայ-թուրքական ընդհարումների ժամանակ՝ համատարած անպատժելիության պայմաններում:

Ի պատասխան դրա, ինչպես վկայում է ժամանակի մամուլը, 1906 թ. հունվարի 11-ը դարձավ ավազակաորջի կործանման օրը. «...Վերջապէս...: ...քանդվեց աւազակների որջը: Տասնեակ տարիների ընթացքում կրած տառապանքների վրէժը վերջապէս այսօր լուծեց Դիզակի եւ Վարանդայի հայ ժողովուրդը: Ղաջարը քարուքանդ եղաւ այդ բառի կատարեալ իմաստով...»:[21]

Հետագայում այն կրկին վերաբնակեցվեց թուրքերով: 1993 թ. ապրիլին հայ ազատամարտիկները ազատագրեցին ադրբեջանական թուրքերի կողմից ռազմական հենակետերի վերածված եւ Արցախի հայաբնակ գյուղերը հրետակոծող Ղաջար գյուղը:

Ինչ վերաբերում է պատմական հուշարձաններին, ապա Ղաջարը հայտնի էր իր աղբյուրով, որի կառուցման համար, ինչպես վկայում է Ք. Օհանյանը, հրավիրվել էին Վարանդայի հայաբնակ Թաղավարդ գյուղի վարպետները:[22]

15. "Свод статистических ...", էջ 174:

16. **Ս. Ս.**, Տպաւորութիւններ Կարեագինից, «Մշակ», 1915, N86:

17. **Լ. Յովսէփեան**, Նամակ Ղարաբաղից, «Մշակ», 1905, N132, էջ 2:

18. **А. А. Ивановский**, По Закавказью, МАК, VI, Москва, 1911. **Г. С. Исмаилов**, Гаракепек тепе - древний памятник материальной культуры Азербайджана, "Известия АН Азерб. ССР", 1969, №1, «Էլմ վե հայաթ», Բաքու, 1988, №2, էջ 20-21:

19. «Նոր-Դար», 1896, N142, էջ 3:

20. «Մշակ», 1900, N204, էջ 2:

21. «Մշակ», 1906, N14, 21 յունվարի, էջ 1:

22. **Ք. Օհանեան**, Շուշի-Թաւրիզ (ճանապարհորդական նկատողութիւններ), «Մուրճ», 1903, N1, էջ 59:

# ՋԱԲՐԱՅԻԼԻ ՇՐՋԱՆ

ՋԱԲՐԱՅԻԼԻ ՇՐՋԱՆԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

***Պատմական ակնարկ:*** Արցախի Մյուս Հաբանդ (միջնադարում՝ Բելուկան կամ Դիզակ) գավառի հարավային կես մասի տարածքի վրա գոյացած եւ խորհրդային կարգերի օրոք նորաստեղծ Ադրբեջանին միացված Ջաբրայիլի շրջանը կազմավորվել է 1930 թ.: Տարածքն է 1050 քկմ: 1987 թ. դրությամբ ուներ 1 քաղաք (շրջկենտրոն Ջաբրայիլը, որը քաղաքի կարգավիճակ է ստացել 1980 թ., 1950-80-ը այն քաղաքատիպ ավան էր, իսկ մինչ այդ՝ գյուղ) եւ 77 գյուղ:[1]

Նախախորհրդային տարիներին ներկայիս Ջաբրայիլի շրջանի տարածքը գտնվում էր համանուն ուեզդի կազմում, որը ձեւավորվել էր 1875 թ. եւ առավել լայնարձակ մակերես էր զբաղեցնում՝ ներառելով մի շարք հայաբնակ գյուղեր ներկայիս ԼՂՀ Հադրութի շրջանի հարավային մասից:

Ուշագրավ է, որ ընդհուպ՝ XX դարի սկզբներին երկրամասի հողագործ տարրը մնում էին հայերն ու փոքրաթիվ ռուս վերաբնակիչները, իսկ տարածքի հիմնական մասը զբաղեցրած թուրքական ցեղերը վարում էին թափառական կյանք. «Հողագործներ են հայերն ու Ռուսաստանից գաղթած մոլոկանները: Թաթար բնակիչները գրեթե բոլորը քոչվոր են...», վկայում է ժամանակի մամուլը:[2] Հետեւաբար, 1987 թ. դրությամբ շրջանի տարածքում արձանագրված 77 գյուղերի մեծ մասը, փաստորեն, խորհրդային տարիների ծնունդ են:

## ՋԱԲՐԱՅԻԼ

Շրջկենտրոն Ջաբրայիլը, որ մինչեւ 1950 թ. սոսկ մի գյուղ էր, գտնվում է Արցախի լեռների հարավահայաց լանջերի ստորոտում, ծովի մակերեւույթից 570-640 մ բարձրության վրա, ամառային ամիսներին խսպառ ցամաքող Ծամձոր վտակի հովտում:

1. *«Ադրբեջանի խորհրդային հանրագիտարան» (ադրբեջաներեն), h. X, Բաքու 1987, էջ 406–407:*

2. *"Тифлисский листок", 1902, № 139, էջ 2:*



*ԹՈՒՄԱՍ. գյուղի տեսքը արեւելքից*



*ԹՈՒՄԱՍԱԲԵՐԴ. բերդաստի տեսքը արեւմուտքից*

Բնակավայրի պատմական՝ հայկական անվանումը անհայտ է: Հայտնի չէ նաեւ, թե մինչեւ ե՞րբ է այն հայաբնակ եղել: Հավանաբար գյուղը հայաթափ է եղել երկրամասի դաշտավայրային մասում գտնվող ուրիշ շատ բնակավայրերի հետ մեկտեղ՝ XVIII դարի սկզբներին:

XIX դարում այն արդեն զուտ թրքաբնակ փոքրիկ գյուղ էր: Մասնավորապես 1874-ին այն ուներ 250 շունչ շիա դավանանքի թուրք բնակիչ:[3]

Արժանահիշատակ հնություններից կարելի է նշել 1000-ամյա սոսու (չինարի) գոյությունը:[4] Բնակավայրի՝ երբեմնի հայաբնակ լինելու հավաստումն են թեկուզ աղբյուրի խաչաքանդակ քարերը. «Այստեղի միակ կենդանացուցիչ պարրը համարվում է սառ քանքանի (ջրհոր) ջուրը, որ եթէ հաւատ ընծայելու լինենք մերձակայ հայ գիւղացիների աւանդութեանը, Լուսաւորչի օրից է դուրս բերված, սրանց ասածը ոչ միայն հաւանականութիւն է ստանում, երբ Քանքանի սալայատակի վրա փորված խաչերը տեսնում ենք, այլ եւ կարծել է տալիս, որ երբեմն հայաբնակ եւս եղած է»,[5]- հավաստում է XIX դարի 70-ական թվականների մամուլը: Հայտնի է նաեւ, որ Ջաբրայիլում 1870-ական թվականների սկզբներին բացված արքունի դպրոցում ազգությամբ հայեր էին ոչ միայն աշակերտների մի զգալի մասը (1878-ին՝ 30 տղա), այլեւ դպրոցի ուսուցչական ողջ կազմը (տեսուչ՝ Աղեքսանդր Տեր-Աբրահամյան-1879 թ-ից, ուսուցիչ՝ Արշակ Թումանյանց-1884 թ-ից, կրոնուսույց՝ Տեր-Գաբրիել Տեր-Հարությունյանց-1885 թ-ից):[6]

### ԹՈՒՄԱՍ

Ջաբրայիլի շրջանի արեւմուտքում, Թումաս լեռան (1580 մ) հարավահայաց լանջին, գեղատեսիլ վայրում փռված է համանուն գյուղը: Առավել հին թաղամասը, ուր միայն տնափոսերն ու հիմնապատերն են մնացել, գտնվում է Թումաս[7] գյուղի հյուսիսային եզրին: Գյուղի հենց այդ հատվածում էլ գտնըվելիս է եղել դեռեւս XIX դարի վերջին ավերակ վիճակում գտնվող եկեղեցին:[8] Խորհրդային տարիներին այն եւս վերջնականապես ավերվել է, իսկ քարերն օգտագործել են գյուղամիջի դպրոցի շինարարության համար: Այժմ էլ այդ դպրոցի կիսավեր շենքի պատերի՝ հատկապես 2-րդ հարկ բարձրացող քարե սանդուղքի մեջ նկատվում են երբեմնի եկեղեցու կոփածո եւ նախշազարդ քարերը:

Թումաս գյուղի կենտրոնում բխում է մի հորդ աղբյուր: Նրա հնաշեն քարե միակտոր գոռը ակնհայտորեն միջին դարերին վերաբերող նմուշներ են: Վերջին անգամ կամարակապ հորինվածքով աղբյուրը դարաբաղցի վարպետների ձեռքով նորոգվել է 1929 թ.:

Թումասից 1,2 կմ հյուսիս-արեւելք, ծովի մակերեւույթից 1150 մ բարձրության վրա, ոչ մեծ մակերես զբաղեցնող հարթակին պահպանվում են անմըշակ քարերով եւ առանց կրաշաղախի շարվածքով բերդապարսպի մնացորդները: Պարիսպը ձգվում է

3. *"Кавказский Календарь на 1886 г.", Тифлис, 1885, էջ 126: Մեկ այլ տեղեկության համաձայն 1878 թ., գյուղի 125 տուն թուրքերի մեծ մասը դասվանում էին սյունի դավանանքին («Մշակ», 1878, N150, էջ 2):*

4. *"Лесная промышленность", 1984. IX. 8, էջ 4:*

5. *«Մշակ», 1878, N 150, էջ 2:*

6. *«Արձագանք», 1886, N42, էջ 549-550:*

7. *Թումաս՝ Թովմաս հատուկ անվան բարբառային ձեւն է, ուղեւ արտասանում են Արցախի հայերը:*

8. *«Արցախ», էջ 400:*





ԹՈՒՄԱՍԱԲԵՐԴ. Տեսարաններ պարսպապատից (արտաքուստ եւ ներքուստ)

բերդի միայն հյուսիսային եւ հյուսիս-արեւմտյան կողմում (մնացած կողմերից բերդը պաշտպանված է բնական անմատչելի ժայռերով), ունի 25 մ երկարություն, հատակագծում աղեղնաձեւ, 2 մ միջին հաստությամբ եւ ընդամենը 1,0-1,5 մ պահպանված բարձրությամբ: Բերդամիջում շինությունների հետքեր չկան: Բերդասարի հարավային եւ հարավ-արեւելյան ստորոտում, ժայռերի փակ նկատվում են տնատեղեր: Հաշվի առնելով պարսպի պահպանված հատվածի շարվածքային առանձնահատկությունները (մեծաչափ անմշակ կամ կիսամշակ քարեր, կրաշաղախի բացակայություն), կարծում ենք՝ այն կառուցվել է վաղ միջնադարում կամ, ավելի ստույգ, IV-VII դարերում:

Բերդից 1 կմ հյուսիս-արեւելք, ընդարձակ ու ջրառատ հովտում կան հին գյուղատեղիի հետքեր:

Թումաս գյուղից 3,5 կմ հյուսիս, խաշնարած թուրքերի կողմից Խանագյաբուլաղ անվանվող հին գյուղատեղիի հյուսիսարեւելյան եզրին, ժայռերի միջից բխող աղբյուրին կից կա քարակերտ մի փոքրիկ ավազան:

Թումաս գյուղից 5 կմ արեւելք, մի նեղ ու սեղմըված ձորում պահպանվում են Ջրաբերդ գյուղատեղիի ավերակները, որին խաշնարածները քիչ աղավաղելով անվանումը, կոչում էին Չեյլաբիլյար:

## ԽՈՒԴԱՓԵՐԻՆ

Ջաբրայիլի շրջանի եւ Իրանի սահմանի երկարությամբ հոսող Արաքս գետի վրա, Խուդափերին գյուղի մոտ, միմյանցից 750 մ հեռավորության վրա պահպանվել են երկու բազմաթռիչք կամուրջներ: Արաքսի այդ հատվածը, որտեղ գտնվում են կամուրջները, բավական սեղմված է երկու ափերին վեր խոյացող լեռնազանգվածներով: Կամուրջների մոտ գետը հոսում է ծովի մակերեւույթից 247-248 մ բարձրության վրա:



ԽՈՒԴԱՓԵՐԻՆ. Նոր կամրջի ճակատն ու հատակագիծը

Կանգուն վիճակում է եւ առայսօր իր նպատակին է ծառայում 15 թռիչքից բաղկացած եւ 150 մ երկարություն ունեցող այն կամուրջը, որը կառուցվել է XVII դարում եւ հետագա դարերում բազմիցս նորոգվել: Կամրջի «... ոտերը շինուած են մանր քարերից եւ կանգնած են վիթխարի քարուածքի վրայ, իսկ կամարները շինուած են թրծած աղիւսից»:[9] Նրանից, գետի հոսանքով 750 մ վեր, պահպանվում են 11 թռիչքներից բաղկացած, բայց արդեն մեծ մասամբ կործանված թաղերով կամրջի մնացորդները: Ի տարբերություն նախորդի, որը գերազանցապես կառուցված է աղյուսով, վերջինս առավելապես շարված է սրբատաշ եւ կոփածո քարով, կրաշաղախով: Ուսումնասիրողները հանգել են այն հետեւության, որ այն, առնվազն VII դարում կառուցված կամրջի հիմքերի վրա վերականգնվել է XIII դարում,[10] բայց, այնուամենայնիվ, չի դիմացել ժամանակի փորձությանը:

9. *Ք. Օհանեան, նշվ. հոդվածը, էջ 62:*

10. ***А. В. Саламзаде, К. М. Мамедзаде,** Мосты Азербайджана XII-XIII вв. "Архитектурное наследство", Москва, 1983, էջ 91-97:*

# ՎԵՐՋԱԲԱՆ

Ամփոփելով շարադրանքը նշենք, որ քննության առարկա տարածաշրջանը չի կարելի համարել վերջնականապես ուսումնասիրված: Ընդհանրապես, որեւէ տարածքի հուշարձանների առավել ամբողջական պատկերը կազմելու համար անհրաժեշտ է բնակիչ-ուղեցույցի առկայությունը: Այնինչ, մեր դաշտային աշխատանքները գերակշիռ մասով կատարվել է մի ժամանակահատվածում, երբ տարածքը համարյա անբնակ էր: Կարծում ենք, որ տարիներ անց այս աշխատանքը կարելի է լրացնել՝ արդեն տեղաբնակների օգնությամբ: Հարկ է նշել նաեւ, որ մեր նպատակը չի եղել ընդգրկել միայն հայկականը, սակայն ներկայացված ոչ հայկական տարբեր տարրերի (շուրջ՝ 100) եւ հայկական (շուրջ՝ 1700) հուշարձանների քանակային հարաբերակցությունը եւ ժամանակագրական տարբերությունը լիովին փաստում են տարածքի՝ հնուց անտի հայապատկանությունը:

# ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

## ՄԱՏԵՆԱԳԻՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ


**Անանիա Շիրակացի,** Մատենագրություն, Երեւան, 1979:

**Առաքել Դավրիժեցի,** Գիրք Պատմութեանց, Երեւան, 1990:

«Արաբական աղբյուրները Հայաստանի եւ հարեւան երկրների մասին», հ. 3, Երեւան, 1985:

**Գրիգոր Խլաթեցի,** Յիշատակարան աղէտից, Վաղարշապատ, 1897:

**Եղիշեի** Վարդանանց պատմությունը, Երեւան, 1958:

**Զաքարեայ սարկաւագի** պատմագրութիւն, Վաղարշապատ, 1870:

**Թովմա Արծրունի եւ Անանուն,** Պատմություն Արծրունյաց տան, Երեւան, 1978:

**Իբն-Ալ-Ասիր,** Երեւան, 1981:

**Կիրակոս Գանձակեցի,** Պատմություն Հայոց, Երեւան, 1961:

Համառօտ Պատմութիւն Վրաց ընծայեալ **Ջուանշէրի պատմչի,** Վենետիկ, 1884.

**Ղեւոնդ,** Պատմություն, Երեւան, 1982:

**Ղուկաս Սեբաստացի,** Դավիթ Բեկ կամ Պատմություն Ղափանցոց, Երեւան, 1972:

**Մատթեոս Ուռհայեցի,** Ժամանակագրություն, Երեւան, 1991:

**Միխայիլ Ասորի,** Ժամանակագրութիւն, Երուսաղէմ, 1871:

**Մխիթարայ Այրիվանեցւոյ** Պատմութիւն Հայոց, Մոսկվա, 1860:

**Մովսէս Կաղանկատուացի,** Պատմութիւն Աղուանից Աշխարհի, Երեւան, 1983:

**Սամուէլ Անեցի,** Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893:

**Ստեփանոս Օրբելյան,** Սյունիքի Պատմություն, Երեւան, 1986:

**Ստեփանոս Օրբէլեան,** Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1911:

«Վրաց աղբյուրները Հայաստանի եւ հայերի մասին», հ. Բ, Երեւան, 1936:


## ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ


**Ա-Դօ,** Հայ-թուրքական ընդհարումները Կովկասում 1905-06 թթ., Երեւան, 1907:

«Ադրբեջանական Խորհրդային Հանրագիտարան» (ադրբեջաներեն), հ. I, Բաքու, 1976. հ. II, Բաքու, 1978. հ. III, Բաքու, 1979. հ. IV, Բաքու, 1980. հ. V, Բաքու, 1981. հ. VI, Բաքու, 1982. հ. VII, Բաքու, 1983:

**Ալիշան Ղ.,** Սիսական, Վենետիկ, 1893:

**Ալիշան Ղ.,** Արցախ, Երեւան, 1993:

**Ալիշան Ղ.,** Հայապատում, Վենետիկ, 1901:

**Ահմեդով Գ. Մ,** Էօրանղալա (ադրբեջաներեն), Բաքու, 1962:

**Ամինե Ավդալ,** Անդրկովկասյան քրդերի կենցաղը, Երեւան, 1950:

**Ասատրյան Գառնիկ, Գեւորգյան Նիկոլայ,** Ադրբեջան. յուրացման սկզբունքը եւ իրանական աշխարհը, Երեւան, 1990:

**Բարխուդարեանց Մ.,** Արցախ, Բագու, 1895:

**Գրիգորյան Վ.,** Հայաստանի վաղ միջնադարյան կենտրոնագմբեթ փոքր հուշարձանները, Երեւան, 1982:

«Դիվան Հայ Վիմագրության», պրակ 3, Երեւան, 1973:

«Դիվան Հայ Վիմագրության», պրակ 5, Երեւան, 1982:

«Դիւան Հայոց Պատմութեան», Գ, Թիֆլիս, 1894:

**Էփրիկեան Հ. Ս.,** Բնաշխարհիկ բառարան, Վենետիկ, 1900:

**Էփրիկեան Հ. Ս.,** Պատկերազարդ Բնաշխարհիկ բառարան, հ. Ա, Վենետիկ, Ս. Ղազար 1903-05:

**Էֆենդիեւ Սամեդ օղլի,** Քարերն են խոսում (ադրբեջաներեն), Բաքու, 1980:

**Թորամանյան Թ.,** Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, Երեւան, 1948:

**Թօփճեան Յակոբ Յ.,** Յուցակ ժողովածուաց Դաղեան Խաչիկ վարդապետի, մասն Բ, Վաղարշապատ, 1900:

«Ժամանակագրութիւն **Ստեփաննոսի Օրբէլեանի**» (հավելված), Երեւան, 1942 թ.:

«ԺԴ դարի Հայերեն Ձեռագրերի Հիշատակարաններ», Երեւան, 1950:

«ԺԵ դարի Հայերեն Ձեռագրերի Հիշատակարաններ, հ. Ա, Երեւան 1955, հ. Գ. Երեւան., 1967:

«ԺԷ դարի Հայերեն Ձեռագրերի Հիշատակարաններ», հ. Ա, Երեւան, 1976:

«ԺԷ դարի Հայերեն Ձեռագրերի Հիշատակարաններ», հ. Բ, Երեւան, 1978:

«ԺԷ դարի Հայերեն Ձեռագրերի Հիշատակարաններ», հ. Գ, Երեւան, 1984:

**Լեո,** Հայոց Պատմություն, հ. 1, Երեւան, 1966. հատոր 3, գիրք 1, Երեւան, 1969, հատոր 3, գիրք 2, Երեւան, 1973:

**Լէօ,** Պատմութիւն Ղարաբաղի Հայոց թեմական հոգեւոր դպրոցի. 1838-1913, Թիֆլիս, 1914:

**Խուդոյան Ս. Կ.,** Արեւելահայ դպրոցները 1830-1820 թվականներին, Երեւան, 1987:

**Կարապետ եպիսկոպոս,** Նիւթեր հայ մելիքութեան մասին. Դօփեանք եւ Մելիք Շահնազարեանք, պրակ. Բ, Էջմիածին, 1914:

**Հակոբյան Հովհ.,** Ուղեգրություններ, հ. Ա, Երեւան, 1932:

«Հայաստանը ըստ Աշխարհացոյց»-ի, Երեւան, 1963:

«Հայ Ժողովրդի Պատմություն», հատոր 4, Երեւան, 1972:

**Հասրաթյան Մորուս,** Պատմա-հնագիտական ուսումնասիրություններ, Երեւան, 1985:

**Հասրաթյան Մ. Մ.,** Հայկական ճարտարապետության Արցախի դպրոցը, Երեւան, 1992:

«Հայերեն արձանագրությամբ առարկաներ»,

պրակ 1, Երեւան, 1964:
**Հովհաննիսյան Գ. Ա.,** Սովետական իշխանության հաստատումը Լեռնային Ղարաբաղում, Երեւան, 1971:
**Հովսեփյան Գ.,** Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, Վաղարշապատ, 1928:
**Ղանալանյան Ա.,** Հայկական ավանդություններ, Երեւան, 1989:
**Մանանդյան Հ.,** Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Գ, Երեւան 1952. հ. Բ, մաս Ա, Երեւան 1957:
«Մանր Ժամանակագրություններ», հատոր Ա, Երեւան, 1951:
«Մանր Ժամանակագրություններ», հատոր Բ, Երեւան, 1956:
«Մատենադարանի պարսկերեն վավերագրերը. հրովարտակներ», պրակ երկրորդ, Երեւան, 1957:
**Մկրտչյան Շ.,** Լեռնային Ղարաբաղի պատմաճարտարապետական հուշարձանները, Երեւան, 1980. 2-րդ հրատարակությունը՝ Երեւան, 1985:
**Յովհաննէս եպիսկոպոսի Շահխաթունեանց** - Ստորագրութիւն կաթուղիկէ Էջմիածնի եւ հինգ գաւառացն Արարատայ, հատոր Բ, Էջմիածին, 1842:
**Յովհաննիսեան Ա.,** Պետրոս դի Սարգիս Գիլանենց, Վաղարշապատ, 1916:
**Նասիր Ռ-զաեւ,** Ժայռերն են խոսում (ադրբեջաներեն), Բաքու, 1985:
**Ոսկանեան Ղ.,** Արցախի վանքերը, Վիեննա, 1953:
Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի յօրինեալ ի **Տ. Եսայի Աղուանից կաթողիկոսէ Հասան Ջալալեանց,** Յերուսաղէմ, 1868:
**Որտտո Վ.,** Ղարաբաղի առաջին կամավորները, Երեւան, 1976:
**Ջալալեան Սարգիս վարդապետ** (արքեպիսկոպոս), Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Ա, Տփխիս, 1842. մասն Բ, Տփխիս, 1858:
Ջամբռ համաժողովեցեալ եւ շարադրեցեալ ի **Սիմէօնէ կաթողիկոսէ Երեւանցւոյ,** Վաղարշապատ, 1873:
**Սահինյան Ա.,** Քասաղի բազիլիկայի ճարտարապետությունը, Երեւան, 1955:
**Սերովբե Կարնեցի,** Ուղեգրություն Բաղդադից Էջմիածին, Երեւան, 1968:
**Տէր-Մովսիսեան Մեսրոպ արքեպիսկոպոս,** Հայկական երեք մեծ վանքերի՝ Տաթեւի, Հաղարծնի եւ Դադի եկեղեցիները եւ վանական շինութիւնները..., Երուսաղէմ, 1938:
«Ցուցակ Ձեռագրաց», հ. Ա, Երեւան, 1965, Բ, Եր., 1970:
**Ուլուբաբյան Բ.,** Խաչենի իշխանությունը X-XVI դարերում, Երեւան, 1975:

"Азербайджанская ССР, Административно территориальное деление", Баку, 1979:
"Армяно-русские отношения в первой трети XVIII века", հ. 2, մաս 1, Եր. 1964, հ. 2, մաս 2, Եր. 1967:
**Ахундов Д. А.,** Архитектура древнего и ранне-средневекового Азербайджана, Баку, 1986:
**«Барда»** (արդբ. եւ ռուս. լեզուներով), Բաքու, 1987:
**Бунятов З.,** Азербайджан в VII-IX вв., Баку, 1965.
**Букшпан А.,** Азербайджанские курды, Баку, 1930.
**Вейденбаум Е.,** Путеводитель по Кавказу, Тифлис, 1888.
**Геюшев Р. Б.,** Христианство в Кавказской Албании, Баку, 1986.
**Григорян Вардан,** Насилственная ассимиляция в Азербайджане (Азербайджаский вариант решения Курдского вопроса), Ереван, 1992.
**Дурново Л. А.,** Очерки изобразительного искусства средневековой Армении, Москва, 1979.
"Елисаветопольская губерния. свод статистических данных извлеченных из посемейных списков населения Кавказа", Тифлис, 1888.
**Карапетян М. М.** Этническая структура населения Нагорного Карабаха в 1921 г., Ереван, 1991.
**Мкртчян Ш,** Историко-архитектурные памятники Нагорного Карабаха, Ереван, 1989:
**Потто В.,** Кавказская война в отдельных очерках, эпизодах, легендах и биографиях, том I, выпуск 3, СПБ, 1885.
**Потто В.,** Генерал-адьютант Иван Давидович Лазарев, Тифлис, 1900.
**Расим Эфенди,** Декоративно-прикладное искусство Азербайджана, Баку, 1976:
**Расим Эфенди,** Народное искусство Азербайджана, Баку, 1984:
**Фатуллаев Ш. С.,** Градостроительства и архитектура Азербайджана XIX - начала XX века, Ленинград, 1986.

**Markwart J.,** Eranschahr, Berlin, 1901;
"Documenti Di architettura Armena. Gharabagh, N19, Milano, 1988.
**Donabedian Patrich, Mutafian Claude,** Artsakh, Histoire du Karabagh, Paris, 1991.
The Life and Adventures of **Joseph Emin,** London, 1792:

**ՊԱՐԲԵՐԱԿԱՆՆԵՐ**

«Ազատամարտ», 1992, N15, 22: 1993, N17, N40, N49, 1994, N29, 40, 43,44, 46, 47:
«Ազգ», 1995, N 2:
«Ազգագրական Հանդէս», գիրք Դ, N 2, Թիֆլիս, 1898, գիրք XII, Թիֆլիս 1905, գիրք XXV, N 2, Թիֆլիս, 1913, գիրք XXVI, Թիֆլիս, 1916:
«Առավոտ», 1995, N 23:
«Առերեսում», 1996, N5, N16:
«Ար», 1995, N 9:

«Արարատ» ամսագիր, 1879, 1896, 1900, 1902, 1905, 1910, 1911, 1914, 1915, 1916:
«Արձագանք» 1886, N 42, 44, 1892, N111:
«Արշալոյս», 1905, N 6:
«Բազմավէպ», 1892:
«Բանբեր Երեւանի Համալսարանի», 1972, N 2, 1978, N 3:
«Բանբեր Հայաստանի գիտական ինստիտուտի», գիրք Ա եւ Բ, Երեւան, 1921-1922:
«Բանբեր Հայաստանի Արխիվների», 1975, N 3:
«Բանբեր Մատենադարանի», N 15, Երեւան, 1986:
«Բիւզանդիոն», 1901, N 1492:
«Գարդմանք», 1996, N 3:
«Գիտություն եւ տեխնիկա», 1981, N 9:
«Երկիր», 1994, N 107, 131, 166:
«Երկրապահ», 1998, N 14:
«Էլմ վե հայաթ» («Գիտություն եւ կյանք» (ադրբեջաներեն)), 1987, N 3:, 1988, N2, 1990, N 5:
«Էջմիածին», 1971, Ջ-Է, 1986, Ջ, 1987, Ե-Ջ:
«Լրաբեր Հասարակական Գիտությունների», 1984, N8: 1980, N 12, 1981, N 12: 1982, N 9, 1987, N1, 2,1989, N 7:
«Հայկական Հայկազեան Հանդէս», Պեյրութ, 1980, Ը:
«Հայկական Համաշխարհային Համագումար», 1995, N1:
«Հանդիպում», 1995, N9:
«Հայք», 1995, N105:
«Հայրենիքի Ձայն», 1993, N12, 19, 20, 26, 27, 1994 N15:
«Հայաստանի Հանրապետութիւն», 1995, N 49, 52, 89, 209, 216:
«Հորիզոն», 1913, N124, 129, 136, 146, 214:
«Մեղու Հայաստանի», 1862, N28: 1877, N 17, 1885, N 64, 65, 78, 80, 94, 101:
«Մշակ», 1878, N 150, 1888, N 94, 122, 217, 1890, N 1, 1895, N 77, 1896, N 86, 107, 1900, N 204, 1902, N161, 1905, N132, 1906, N 2, 5, 11, 14, 20, 39, 53, 56, 70, 240, 257, 1913, N 171, 1914, N 39, 154, 1915, N 86:
«Մուրճ», 1899, N 1, 1903, N 1, 1905, N 10:
«Նոր Դար», 1887, N 55, 94, 1888, N 26, 33, 188, 211, 1885, N 28, 29, 34, 104, 1890 N 122, 148, 168, 158, 1891, N123, 1892, N15, 1893 N17, 1895, N 77, 1896, N142, 1897, N 164, 1899, N 29, 63, 64, 1903, N 52:
«Նպատակ», 1995, N1:
«Պատմա-Բանասիրական Հանդես», 1966, N 4, 1979. N 1, 1980, N 2, 1998, N 1-2:
«Սովետական Հայաստան», 1984, N 6:
«Տարազ», 1892, N 19, 1913, N7-8:
«Տեղեկագիր ԳԱ», 1964, N1:
«Փորձ», 1880, մայիս:
"Азатамарт", 1992, № 7:
"Археологические открытия в Азербайджане за 1971 год", Баку, 1972.
"Археологические открытия 1977 г.", Москва, 1978.
"Археологические открытия 1980 г.", Москва, 1981."Архитектурное наследство", № 33, Москва, 1983.
"ДАН Азерб. СССР", 1966, Н6.
"Известия АН Аз. ССР", 1959, № 4. 1962, № 6, 7.
"Известия Азербайджанского комитета", Баку, 1925, выпуск 1.
"Известия Аз. ФАН ССР", Баку, 1943, №8, 1969, №1.
"Лесная промышленность", 1984.
"Кавказ", 1852, № 23. 1883, № 212, 1884, № 222, 1903, № 134.
"Кавказ и Византия", Երեւան, 1980, N2:
"Кавказский календарь на 1886 г. ", Тифлис, 1885.
"Кавказский календарь на 1910 г. ", Тифлис, 1909.
"Кавказский календарь на 1915 г. ", Тифлис, 1914.
"Кавказский календарь на 1917 г. ", Тифлис, 1916.
"Материалы сесии посвященной итогам археологии, исслед. 1971 г. в Азербайджане", Баку, 1970.
СМОМПК, выпуск VI, Тифлис, 1888, выпуск VII, Тифлис, 1893, выпуск XXV, Тифлис, 1898.
"Советская археология", 1958, №4. 1960, № 2. 1964, №1.
"Труды Азербайджанской (Оренкалинской) экспедиции, том 1, МИА СССР, № 67, М-Л, 1959, №125, М-Л, 1965.
"Материалы по археологии Кавказа", VI, Москва, 1911.
"Тифлиский листок", 1902, №139.
"Труды Музея истории Азербайджана", том 2, Баку, 1957.
"Труды института истории и философии" том 4, Баку, 1954.
«NT», 1995, 5 ապրիլ:
"Revue des Etudes Arméniennes", IV, Paris, 1967, XVI, Paris, 1982.

## ՎԱՎԵՐԱԳՐԵՐ

ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 56, ցուցակ 1, գործ 305, 1127, 1837, 2596, 3666, 6775, 8583, 8584, 10403:
ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 56, ցուցակ 4, գործ 422:
ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 56, ցուցակ 6, գործ 33, 675, 2124:
ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 56, ցուցակ 14, գործ 205:
ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 56, ցուցակ 18, գործ 968, 1127:
ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 57, ցուցակ 1, գործ 4, 139, 400:
ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 57, ցուցակ 2, գործ 1851:
ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 150, ցուցակ 1, գործ 59:
ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 319, ցուցակ 1, գործ 5, 95, 137, 155, 165:
ՀՀՊՊԿԱ, ֆոնդ 468, ցուցակ 2, գործ 73:

# ԳՈՒՆԱՎՈՐ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐԻ ՑԱՆԿ

1. Լեւ գետի կիրճը ստորին հոսանքի շրջանում
2. Մռավի լեռնաշղթայի հարավահայաց լանջերն ու Լեւ գետի կիրճը Հանդաբերդից
3. Տրտու (Թարթառ) եւ Դուտխու գետերի վերին հոսանքի ջրբաժան գիծը
4. Հանդաբերդ. տեսքը հարավ-արեւմուտքից եւ արեւմտակողմի պարսպաշարը
6-7. Հանդաբերդ. բերդասարը եւ կեռծ դարպասը հարավից
8-9. Լեւ գետի հովիտը Հանդաբերդից եւ դիտակետ աշտարակ «Պահակ» լեռան գագաթին
10-11. «Թաքյաղայա» գյուղ. եկեղեցի XIII-XIV դդ. (տեսքը արեւմուտքից եւ բարավորը)
12-13. Չափնի գյուղ. մահարձան եւ խաչքարը 1275 թ.
14. Չափնի գյուղ. խաչքար 1281 թ.
15. Չափնի գյուղ. խաչքար XIII դ.
16-17. Գորտագարակ լիճը Մռավ լեռնաշղթայի հարավահայաց լանջին
18-19 Երիցուշեն գյուղատեղի. եկեղեցի XVII դ., տեսքը հարավ-արեւմուտքից եւ ներքին տեսքը դեպի արեւելք
20. Եկեղեցի (XIII դ.). Բարսոհիշեն եւ Ղամշլի գյուղատեղիների միջեւ (տեսքը արեւմուտքից)
21. Սբ. Աստվածածին վանքի սյունասրահը, XII դ.
22-23. Եկեղեցի «Քիլիսա» գյուղում (XVII դ.). տեսքը հարավից եւ մուտքի մեջ ագուցված խաչքարերը (XIII դ.)
24. Դուտխուի հովիտը. տեսարան «Քիլիսա» գյուղից
25-26. Ցրտնոտ (Սողուղբուլաղ) գյուղ. կամուրջ (XII-XIII դդ.) Տրտու (Թարթառ) գետի վրա
27-28. Ծար (Ջառ) գյուղ. Սբ. Սարգիս եկեղեցի (1279 թ.). տեսքը արեւմուտքից եւ արեւելյան ճակատից բացված լուսամուտը
29-30. Տրտու գետի հովիտը Դադի վանքի մոտ եւ հատված նույն գետի վերին հոսանքի շրջանից
31. Դադի վանք. տեսքը հարավ-արեւմուտքից
32-33. Դադի վանք. տեսքը հարավից եւ արեւմուտքից
34. Դադի վանքի կաթողիկե եկեղեցու (1214 թ.) տեսքը հյուսիս-արեւելքից
35. Դադի վանք. զանգակատունը (1283 թ.) հյուսիս-արեւմուտքից
36-37. Դադի վանքի գմբեթավոր փոքր եկեղեցին հյուսիս-արեւմուտքից եւ խաչքարեր ագուցված արեւմտյան ճակատում
38-39. 1190 եւ 1173 թվականների խաչքարեր ագուցված գմբեթավոր փոքր եկեղեցու մուտքի աջ եւ ձախ կողմում:
40-41. Ժամատան (1224 թ.) եւ կաթողիկե եկեղեցու թմբուկները՝ ներքուստ
42. Խաչքար (916 թ.) Քարվաճառում
43. Մենավոր խաչքար ( XIII դ.) Ներքին խաչ եւ Չայքենդ գյուղերի միջեւ
44. Հաճավ գյուղատեղի, աղբյուր, 1677 թ.
45. Ծար գյուղ. տեսքը հարավից
46-47. Ծիծեռնավանք (VI-VII դդ.). տեսքը հարավ-արեւմուտքից եւ հյուսիս-արեւմուտքից
48-49. Ծիծեռնավանք (VI-VII դդ.). տեսքը հարավ-արեւելքից եւ տապանաքար (1809 թ.) հարավային պատի տակ
50. Ծիծեռնավանք. ընդհանուր տեսք
51-52. Վարազգոմ գյուղատեղի. եկեղեցու (IX-XI դ.) տեսքը հարավ-արեւմուտքից եւ հյուսիս արեւմուտքից
53-54. «Մկնատամի խաչ» եկեղեցու (XIII դ.) տեսքը արեւմուտքից եւ հյուսիս-արեւմուտքից
55. Կապուտավանքի (IX-X դդ.) եւ տեսքը հարավից
56. Կամրջի մնացորդ (XII-XIII դդ.) Կապուտավանքի մոտ, Հոչաս գետի վրա
57. Վիմափոր եկեղեցի (XII-XIII դդ.) «Ղարաղշլաղ» գյուղի մոտ
58. Շեյլանլի գյուղ. կամուրջ (XIII դ.) Հոչաս գետի վրա
59-60. Տապանաքարեր (XVII դ.) ագուցված Արքո (Արըքլի) եւ Շալվա գյուղերի եկեղեցիների արեւելյան ճակատներում
61. Շալվա գյուղ. եկեղեցու (XVII-XVIII դդ.) տեսքը արեւմուտքից
62. Տանձատափ գյուղատեղի. եկեղեցու (XIX դ.) տեսքը հյուսիս-արեւելքից
63-64. Հարար գյուղ. եկեղեցու տեսքը հարավից եւ բարավորի տեղում ագուցված տապանաքար (XVII դ.)
65-66. Պահու՞ բերդը Քաշունի գետի ձախ ափին (պարիսպները հարավից եւ բերդասարը արեւելքից)
67-68. Եկեղեցի Ամուտեղ լեռան գագաթին, տեսքը հյուսիս-արեւմուտքից եւ հարավ-արեւելքից
69. Խալաշ գյուղ. բնակապատկան տուն (XIX դ.)
70. Մազրա գյուղատեղի. եկեղեցի 1694 թ. (տեսքը հարավ-արեւմուտքից)
71. «Լալազար» կամուրջը (1867 թ.) Որոտան գետի վրա

# ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԱԴՐԲԵՋԱՆԻՆ ԲՌՆԱԿՑՎԱԾ ՇՐՋԱՆՆԵՐՈՒՄ

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

RAA Հրատարակչակազմ

Մասնագիտ. խմբագիր՝ ԷՄԻԼ ԴԱՆԵՂՅԱՆ
Խմբագիր՝ ԼԱՈՒՐԱ ՄԱՆՈՒԿՅԱՆ
Ռուսերենից հայերենի թարգմանիչ՝ ՍԵՐԳԵՅ ՄԿՐՏՉՅԱՆ
Համակարգչային ձեւավորումը՝ ԿԱՐԻՆԵ ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ

Գունաբաշխումը եւ սեւ-սպիտակ լուսանկարների պատրաստումը՝ «ՓՐԻՆԹԻՆՖՈ» ՍՊԸ

Ստորագրված է տպագրության 20.01.1999
Տպագրությունը օֆսեթ, չափսը՝ 42x60. 1/8
Տպագրական 36 պայմանական մամուլ:
Տպաքանակը՝ 500
Գինը՝ պայմանագրային

«ՌՈՒԲԻՆ» տպագրական ԱՁ
Երեւան-33, Գյուլբենկյան 38

